# Ազգագրական հանդէս
# *Azgagrakan Hande's [Ethnographic Review]*

## Բորչալուի գաւառ
## The District of Borch'alu

Ervand Lalayan's studies of the district of Borch'alu in northern historical Armenia, extracted from *Azgagrakan Hande's* 7-8 (1901), pp. 271-436; 9 (1902), pp. 197-262; 10 (1903), pp. 113-268; and 11 (1904), 33-128. Compiled and indexed by Robert Bedrosian, September, 2015, in 510 pdf pages.

---

### **VII** և **VIII** գրքեր **(1901)**


Լալայեան, Ե., Բորչալուի գաւառ. Յառաջաբան. Տեղագրութիւն, էջ 271-302

Պատմական համառօտ տեսութիւն, էջ 303-312

Կիւրիկեան թագաւորութիւն, էջ 312-318

Սպասալարների տոհմ, էջ 319-329

Քաղաքական մասն, էջ 330

Հայաբնակ գիւղեր, էջ 331-367

Այլազգիների գիւղեր, էջ 368-372

Նշանաւոր վանքեր. Ա. Հայոց, էջ 373-427

Նշանաւոր վանքեր. Բ. Վրաց վանքեր, էջ 427-436


---

### **IX** գիրք **(1902)**


Բորչալուի գաւառ. Ազգաբնակութիւն, էջ 197-205

Բնակարան, էջ 206-208

Զգեստ և զարդ, էջ 209-211

Ամուսնութիւն և հարսանիքի սովորութիւններ, էջ 212-245

Տղաբերք և կնունք, էջ 246-262

---

## X գիրք (1903)

Բորչալուի գաւառ. Ընտանեկան կեանք. Սերունդ և տոհմ, էջ 113-119

Նահապետական գերդաստան, էջ 119-129

Ընտանիք, էջ 130-137

Մաքրասիրութիւն, էջ 137-140

Կերակուր և խմիչք. Բուսեղէններ, էջ 141-147

Ձուեղէն, էջ 147-148

Կաթնեղէն, էջ 148

Մսեղէն, էջ 149-150

Ձկնեղէն, էջ 150-151

Ժողովրդի առողջապահիկ դրութիւնը, էջ 151-156

Ժողովրդական դեղեր, էջ 156-167

Մահ, թաղումն և մեռելոց, էջ 167-180

Հաւատք. Լեռների և քարերի պաշտամունք, էջ 181

Ջրի պաշտամունք, էջ 182-183

Կրակի պաշտամունք, էջ 183-184

Ծառերի պաշտամունք, էջ 185-189

Կենդանիների պաշտամունք, էջ 189-197

Տարրերի և ֆիզիքական երևոյթների պաշտամունք, էջ 197-203

Ոգիների պաշտամունք. Բարի ոգիներ, էջ 203-205

Չար ոգիներ, էջ 205-210

Ցաւեր, էջ 211-215

Սրբեր, էջ 215-217

Օհան Օձնեցի, էջ 217-222

Աւելորդ պասեր և տօներ, էջ 222-225

Ուխտագնացութիւն, էջ 225-229

Կախարդութիւն, էջ 229-246

Մնոտիապաշտութիւններ, էջ 246-249

Նշանաւոր տօներ, էջ 249-268

---

## XI գիրք (1904)

Բորչալուի գաւառ. Բանաւոր գրականութիւն. Աղօթքներ, էջ 33-37

Մանկական երգեր, էջ 37-46

Սիրոյ երգեր, էջ 46-49

Վիճակի երգեր, էջ 49-62

Ընտանեկան երգեր, էջ 62-66

Պանդխտութեան երգեր, էջ 66-69

Երկրագործի երգեր, էջ 69-75

Երգիծական երգեր., էջ 76-78

Աշուղական երգեր, էջ 78-95

Հանելուկներ, էջ 95-108

Աշուղական կապանքներ, էջ 108-111

Առածներ, էջ 112-117

Երդումներ, էջ 117-119

Օրհնանք, էջ 119-121

Անէծք, էջ 121-126

Հեքիաթ, էջ 126-128

# ԲՈՐՉԱԼՈՒԻ ԳԱՒԱՌ

*Ե. ԼԱԼԱՅԵԱՆԻ*

## ՅԱՌԱՋԱԲԱՆ



Ի նկատի ունենալով, որ նոր շինուած Թիֆլիս-Կարսեան երկաթուղին շատ շուտով ոչնչացնելու է ազգագրութեան վերաբերեալ թանկագին նիւթերը նաեւ Լոռում, որ դեռ ապրում էր իւր նահապետական կեանքով, ես շտապեցի կարելւոյն չափ շուտ գրի առնելու դրանց, ուստի եւ անցեալ եւ նախանցեալ ամառներն ճանապարհորդեցի այս կողմերում, եղայ Բորչալուի գաւառի բոլոր հայաբնակ գիւղերը, բացի Ծալկայից, որի միջով միայն մի երկու ուղղութեամբ անցայ, որովհետեւ այս տեղի հայ ժողովուրդները Կարնի գաղթականներ լինելով՝ ազգագրական տեսակէտից չեն տարբերւում Ջաւախքի բնակիչներից, որ նոյն տեղից եկած միեւնոյն ժողովուրդներն են, որոնց վերաբերեալ նիւթերը ես արդէն գրի եմ առել եւ հրատարակել „Ջաւախք“ խորագրով։ Իմ բուն նպատակը եղել է ուսումնասիրել Լոռու բնիկներին, ուստի եւ թէ՛ ճանապարհորդութեանս միջոցին եւ թէ՛ յետոյ ես բաւականաչափ մնացել եմ բնիկ ժողովուրդներ ունեցող գիւղերում եւ մանաւանդ Օձուն (Ուզունլար), որ Լոռու մայրաքաղաքը կարող էր համարուել։

Իմ անձնական դիտողութիւններն ու հաւաքած նիւթերը վերաստուգել եւ լրացրել եմ թէ՛ անտիպ եւ թէ՛ տպուած գրութիւններով, որ կարողացել եմ գտնել։ Առաջիններից նշանաւոր են. 1) Մեր յայտնի պատմաբան պ. Աղէքսանդր Երիցեանի Բորչալուին վերաբերեալ ժամանակագրական տեղեկութիւնները, ռուսերէն լեզուով. 2) Նոյնպէս իւր բազմաթիւ հետազօտութիւններով յայտնի պ. Ս. Զելինսկու Բորչալուի գաւառի Լոռու շրջանի արքունական գիւղացիների տնտեսական դրութեան մասին նիւթեր, ռուսերէն լեզուով. 3) Վաղամեռիկ Եղիշէ Երզնկեանի (հաղբատցու) հաւաքած ժողովրդական բանաստեղծութիւնները, որ արժանապատիւ Եզնիկ քահանայ Երզնկեանը հաճեց ինձ յանձնել, եւ 4) Ութսունական թուականներին Ուզունլար գիւղում ուսուցիչ, իսկ այժմ նոյն գիւղում խանութպան պ. Գէորգ Խարազեանի «Մի

տարի գիւղում կամ վարժապետի յիշատակարանը» խորագրով գիւղական անցքերի բաւական ստուար օրագրութիւնը, որից ես քաղեցի զուտ ազգագրական նիւթերը·

Յայտնելով իմ խորին շնորհակալութիւնս վերոյիշեալ յարգելի անձնաւորութիւններին, ինչպէս եւ իմ լօռեցի աշակերտներին, քահանաներին, տանուտէրներին եւ այն բոլոր անձինքներին, որոնք մի որեւէ կերպ նպաստեցին ինձ իմ ճանապարհորդութեանս միջոցին, ես կամենում եմ յիշել այստեղ նաեւ ինձ յայտնի այն բոլոր, արդէն լոյս տեսած աշխատութիւններն ու լրագրական փոքր ի շատէ նշանաւոր յօդուածները, որոնք վերաբերում են Բորչալուի գաւառին եւ որոնցից, սակաւ բացառութեամբ, ես օգտուել եմ։ Այս ցուցակը թերեւս օգտակար լինի այն անձերին, որոնց հետաքրքրութիւնը չի կարողանայ յագուրդ ստանալ ներկայ աշխատութիւնիցս։ Ինչ վերաբերում է պատմական տեսութեան աղբիւրներին, ես զանց եմ առնում վերստին յիշել այստեղ, որովհետեւ Բորչալուի գաւառին վերաբերեալ յատուկ գրուած չկայ, այլ զանազան տեղեկութիւններ, սաստիկ խառն կերպով գրուած հայ եւ վրաց գրեթէ բոլոր մատենագիրների մէջ։ Ես ամիսների ընթացքում թերթեցի սրանցից շատերը եւ ումից ինչ գտայ, յիշատակեցի իւր տեղում։

Ինճիճեան. Ստորագրութիւն հին Հայաստանեայց. Վենետիկ 1822.

Ս. Ջալալեան. Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան. ա. եւ բ. հատոր. Թիֆլիս 1842 եւ 1850.

Կիրակոսեան. Հին Իգահացիք. Մեղու Հայաստանի 1858.

Կիրակոսեան. Գաւառական հանելուկի վրայ. Մեղու Հայաստանի 1860 № 3 եւ 4.

Ռ.-բէկ Երզնկեանց. Նկարագրութիւն Սանահնի. Մեղու Հայաստանի 1860 № № 1, 2, 3.

Հրովարտակ երեք թագաւորաց, Հայոց, Վրաց եւ Աղուանից, Հաղբատի վանքի մասին։ Մեղու Հայաստանի 1860 № 10.

Շ. Ն. Գուգարաց աշխարհ. Փորձ. Ա. տարի № 2.

Եժ. Գ. Քոչարեան. Լոռու գիւղական կեանքից պատկերներ. Փորձ.

Ք. Ճանապարհորդական յիշատակարան. Արձագանք. 1884 թ. № № 42, 43, եւ 1885 թ. № № 2 եւ 3.

Երզնկեան Ռոստոմ բէգ. Հնախօսական տեղագրութիւն Հաղբատայ (գրաբառ). Վաղարշապատ 1886.

Վրէն Տաշրացի. Ժողովրդական աղօթքների մասին. Նոր-Դար 1887 № № 123 - 127.

Լոռու գաւառի գիւղացիների տնտեսական վիճակը, Նոր-Դար, 1890 № 182.

Digitized by Google

Աղայեան. Թիֆլիսից Ջալալ-օղլի. Նոր-Դար 1892 №№ 101–108.

Վ. Մեհրաբեան. Բորչալու գաւառի ազգաբնակութեան տնտեսական դրութիւնը. Տարազ 1893 ե. 247.

Ն. Քարամեան. Ծալկա. Երեք օր գաղթական հայ գիւղացիների շրջանում. Արձագանք. 1894 №№ 89, 90, 91, 92, 100.

Յ. Թումանեան. Բորչալուում. Հորիզոն, գրական հանդէս. 1894.

Վիճակագրական տեղեկութիւնք Լոռուայ. Արձագանք 1895 № 21

Ի. Յարութիւնեան. Սանահին. Ազգագրական Հանդէս, գիրք Գ.

Գ. Ք. Երզնկեան. Լոռեցոց հարսանիքը. Ազգագրական Հանդէս, Գ. գիրք.

Նոյն. Կայեան բերդ եւ Կայենոյ ձոր. անդ.

Տեղացի. Բաղձանաց ս. Գրիգորի վանքը, Արաքս 1897. գիրք Բ.

Բժ. Գ. Տ. Գ. Զաքարիա սարկաւագի սուրը. (կեղծ է), Արձագանք 1897 № 74.

Փիւս ա. Ք. Աղանեան. Հնից նորից, հնախօսական ուղեւորութիւն. Լումայ 1900 № 1 եւ 2. եւ 1901 № 2.

Ի. Յարութիւնեան. Իմ օրագիրը. Լումայ 1901 № 1.

Ե. Ս. Սանահին եւ Հաղբատ վանքերը, Արարատ 1901 № 8, 9

Գ. Ե. Տուտէորդու գերեզմանը. Արձագանք 1894 № 143.

Գ. Ե. Ճնող եւ Կայծոն բերդերը. Արձագանք 1894 № 85

*Муравьевъ. Грузія и Арменія. часть II. Спб. 1848.*

*Абихъ. О кристаллическомъ градѣ въ тріалетскихъ горахъ, въ Зап. Кавк. Отд. Имп. Русс. Геогр. Общ. Кн. X. вып. 3-ый 1879.*

*Гриммъ: Памятники христіанской архитектуры въ Грузіи и Арменіи. Спб. 1866.*

*Іосселіани, Путевыя замѣтки отъ Тифлиса до Ахталы. Тифлисъ.*

*А. Ерицовъ. Монастырь Ахпатъ. Кавказская Старина 1872 г. № 2 и 3.*

*А. Ерицовъ. Монастырь Ахтала Кавказская Старина 1872 № 1.*

*Бакрадзе. Кавказъ въ древнихъ памятникахъ христіанства.* Տպուած է նախ *„Акты Археографической коммисіи“ V* եւ *VI* հատորներում եւ յետոյ *„Записки Общества Любителей Кавказской Археологіи“* մէջ. *Тифлисъ 1875 г.*

*А. Ерицовъ. Экономическій бытъ государственныхъ крестьянъ Борчалинскаго уѣзда, Тифлисской губерніи. Тифлисъ 1889 г.*

*Кондаковъ. Опись памятниковъ древности въ нѣкоторыхъ храмахъ и монастыряхъ Грузіи. Спб. 1890.*

*А. М. Аргутинскій—Долгорукій, В. П. Бочкаревъ и Р. И. Даниловичъ. Районъ Тифлисско-Карсско-Эриванской желѣзной дороги въ экономическомъ и коммерческомъ отношеніяхъ. Изданіе Закавказской желѣзной дороги. Тифлисъ. 1897 г.*

*Кондратенко. Сборникъ статистическихъ данныхъ о землевладѣніи и способахъ хозяйства въ пяти губерніяхъ Закавказскаго края. Изд. Закавказскимъ статистическимъ комитетомъ. Тифлисъ 1899.*

*Mém. de l'Acad. des sciences de S. Petersb. VII série, t. VI.* № 6. *p.* 1—46. Ց. Դրեմեցու Հաղբատի եւ Սանահնի Եկարագրութիւնը։

*Déscription géographique de la Géorgie, par le tsarévitsh Wakhoutch. trad. par Brosset, S. Petersb.*

*Histoire de la Géorgie, depuis l'antiquité jusqu'au XIX siecle. traduite par M. Brosset. S. Petersb.* 1849—1858 5 հատոր.

*Additions et éclaircissements à l'histoire de la Géorgie, depuis l'antiquité jusqu'en* 1469 *de J. C. par M. Brosset.* 1851.

*De Morgan. Mission scientifique au Caucase*). Paris* 1890

*) Շարունակելով որոնել պարբերական հրատարակութիւնների մէջ Բորչալուին վերաբերեալ յօդուածներ, գտածներս կը յիշատակեմ աշխատութեանս վերջում։

Digitized by Google

# Ա. ՄԱՍՆ

# ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ

## Ա.

## ԲՆԱԳՐՈՒԹԻՒՆ:



որչալուի գաւառն իբր մի առանձին վարչական միութիւն կազմուեց 1880 թուին Թիֆլիսի գաւառից։ Սրա մէջ մտան Բորչալուի հարթութիւնն և Լօռի ու Թրիալէթ լեռնային գաւառակները, կամ հայկական հին բաժանմամբ՝ Գուգարաց աշխարհի Ձորափոր (Դեբեդ գետի հովիտը, իւր Սևորդեաց (Սաղուձոր) և Կայենոյ ձորերով). Ծոբոփոր (Սոմխէթը և Բորչալուն), Տաշիրը (Լօռի), Թռեղք (Թրիալէթ), Բաղափոր (Բոլնիսի ձոր) և Դմանեաց աշխարհ (Դմանիս) գաւառակները։

Ամբողջ գաւառը կոչուել է իւր մի մասի՝ Բորչալուի հարթութեան անունով, իսկ սա, որ հայերից Ծոբոփոր, իսկ վրացիներից Սոմխէթ էր կոչւում, վերակոչուել է Բորչալու այն թուրք ցեղի անունով, որ Շահ-Աբասը վերաբնակեցրել է այստեղ, (1603 թ.) ինչպէս պատմում է վրաց թագաւորազն աշխարհագիր Վախուշտը *)։

Այս գաւառը տարածւում է հիւսիսային լայնութեան 41°48′ ու 40°46′ և արևելեան երկարութեան 61°26′ ու

*) Déscription géographique de la Géogie, par le tsarévitch Wakhoucht. trad. par M. Brosset p.

Digitized by Google

62°47′ միջև, բռնելով $111_{96}$, քառ. մղոն, կամ $5{,}417{,}_2$ ք. վերստ, և կամ մօտ 564,472 դեսիատին տարածութիւն։

Պատկանելով Թիֆլիսի նահանգին, նա ընկնում է նրա հարաւ-արևելեան մասում և նրա Գորու և Սղնախի գաւառներից յետոյ ամենամեծ գաւառն է իւր տարածութեամբ։

*Սահմանները.* —Ամենահիւսիսային սահմանային կէտը կազմում է Ջամ-ջամ (41°48′ հ.) լեռը, որ պատկանում է Թրիալէթու կամ Արջևանու լեռնաշղթային։ Իսկ վերջինս կազմում է այս գաւառի հիւսիսային, բնական սահմանը։ Այս գիծը Ջամ-ջամ լեռից փոքր ինչ հարաւ թեքուելով՝ ուղղւում է համարեա 41°45′ զուգահեռականի ուղղութեամբ, բաժանելով Բորչալուի գաւառը Գորու գաւառից։ Այսպիսով այս սահմանը 33 վերստաչափ ձգուելով մինչև Մգիս Ցխվիրի (7390 ֆ.) լեռան մօտերքը, թեքւում է դէպի հարաւ, ուղղակի այն տեղը, ուր Բորչալուի, Գորու և Թիֆլիսի գաւառներն ընդհարւում են միմեանց։ Արևելեան սահմանն այսպիսով սկսւում է Մգիս Ցխվիրի լեռից, ուղղւում նախ դէպի հարաւ, ապա՝ թեքուելով դէպի արևելք, և կտրելով Ալգետ գետն ու Գեղին լեառը (5976′), Եայլօ (6409′), Գելլիդաղ, Խալէկ (6022′) լեռների վրայով հարաւ-արևմտեան ուղղութեամբ հասնում է մինչև գերմանացիների Ալէքսանդրսհիլֆ գաղութը ու յետոյ արդէն դառնում է դէպի արևելա-հարաւ, և կրկին արևելք՝ Կուրի վտակ՝ Խրամ գետի ուղղութեամբ։ Այստեղ սահմանն անցնում է Խրամի նեղ ու խոր ձորով և Արխլու գիւղից ոչ հեռու, համարեա 62°22′ ա. երկ. ուղղւում է դէպի հիւսիս-արևելք, երկրորդ անգամ կտրում Ալգետ գետը և գաւառի հարթ մասով ու Եաղլուջա լեռնաշղթայով հասնում է մինչև Կուր գետը։ Գնալով Ղարայազի դաշտավայրի և Կուրի հոսանքի ուղղութեամբ, այս արևելեան սահմանն երրորդ անգամ կտրում է Ալգետը, նրա Կուրի հետ խառնուելու տեղում, անցնելով Խրամի վրայի Կարմիր կամրջով գաւառի լեռնային մասը, հիւսիս արևելքից դէպի հարաւ-արևմուտք։ Ապա կտրում է Պովերի-Թալա, Սալերկա-Թալա, Պոնդար, Ճիշ-Թափա, Մարգաքար (7379′), Չաթին-դաղ լեռները, միքանի պտոյտներ է անում և հասնում

գաւառի հարաւային վերջին կէտին՝ Ծակ-քար լեռան, որի մօտ գտնւում է Խաչաբ բարձր գագաթը, որ հասնում է մինչև 9918՛ բարձրութեան։ Խրամը Կուրի մէջ թափուելու տեղից գաւառիս սահմանն այլ ևս չի շփւում Թիֆլիսի նահանգին, այլ Գանձակի նահանգի Ղազախի գաւառին։ Ծակ-Քարից արդէն սկսւում է գաւառիս արևմտեան սահմանը, որ բաժանում է Բորչալուի գաւառը Երևանեան նահանգի Աղէքսանդրապօլու գաւառից։ Այս սահմանը հարաւից դէպի հարաւ-արևմուտք տարածուելով՝ Քեօմադաղ լեռան վերայով ուղղւում է դէպի Սիսի-Մադանի պղնձահանքը (4120՛), կտրում է Դեբեդ գետը, Քարհանք (7328՛), Բզովդալ (9184՛) լեռներով ձգւում է Չուբուխլու և Աղլախանու լեռների ուղղութեամբ և Աղլախան լեռան գագաթից ուղղակի դառնում է դէպի հիւսիս և յետոյ հիւսիս-արևմուտք։ Այստեղ նա ուղղւում է դէպի Մօկրիա կամ Ղարաաղաչ լեռների գլխաւոր շղթան, և Ախալքալաքի գաւառի սահմանից ոչ հեռու, Լէկլի-դաղ լեռան (10491՛) մօտ համարեա ուղիղ գծով բարձրանում է հարաւից հիւսիս։ Անցնելով Ախալքալաքի գաւառի Թափարաւան լըճից 3-4 վերստ և Պլկէտ լեռան ու Թիքմա-տաշ սիւնի վրայով, այս սահմանը համարեա ուղիղ անկիւնով ուղղւում է գաւառի ամենա-արևմտեան կէտին, Սամսար լեռան (10777՛), կտրում Ղարաղուզէյ, Ճաւ-Նաբաթ (9611՛), Տաւ-Գոթելի (9211՛) լեռները և Գորու գաւառի ուղղութեամբ անցնում նախ հիւսիս-արևմուտք, յետոյ հիւսիս-արևելք և հասնում Ջամջամ լեռան, այն կէտին, որտեղից մենք սկսեցինք գծել սահմանը։

Այսպիսով Բորչալուի գաւառի մեծ մասը շրջապատուած է բնական սահմաններով, կամ կից լեռնաշղթաներով, կամ սըրանց փոքրիշատէ բարձր ճիւղերով, մօտ 365 վերստ տարածութեամբ. և միայն հիւսիսային և արևելեան սահմանների մի մասն է իջնում հարթութեան վրայ և ձգւում Կուրի և նրա վտակ Խրամի հոսանքի ուղղութեամբ մօտ 85 վերստ, և բլրոտ հարթութեան վրայով Խրամ և Կուր գետերի միջև մօտ 30 վերստ։ Այսպիսով Բորչալուի գաւառի սահմանային գիծը,

որ հասնում է մինչև 480 վերստի, ընդհարւում է հիւսիսից՝ Գորու (մօտ 55 վ.), արևելքից՝ Թիֆլիսի (մօտ 145 վ.) և Ղազախի (մօտ 100 վ.), հարաւից և հարաւ-արևմուտքից՝ Աղէքսանդրապօլի (մօտ 100 վ.) և արևմուտքից՝ Ախալքալաքի (մօտ 80 վ.) և Գորու գաւառների հետ։

*Լեռներ.* Բորչալուի գաւառն երեք կողմից լեռներով շրջապատուած բարձրաւանդակ է, որի միջին մասը մի քանի ուղղութեամբ կտրտուած է շրջապատող լեռների ճիւղաւորութիւններով։ Միայն հիւսիս արևմտեան մասը, որ կոչւում է Բորչալի, սաստիկ տարբերւում է միւս մասերից, կազմելով Ղարայազի հարթութեան շարունակութիւնը, որից նա բաժանւում է Կուր գետով։

Այս գաւառի հիւսիսային սահմանում տարածւում է Թրիալէթի լեռները, որ ձգւում են բաւական երկար և կազմում Խրամ և Կուր գետերի ջրաբաշխը։ Այս լեռները ձգւում են Բորժոմի հովտից և կազմում փոքր Կովկասի արևելեան կէսը, իսկ արևմտեանը կոչւում է Ախալցխա-Իմերէթեան լեռնաշղթայ։ Թրիալէթի լեռնաշղթան տարածուելով Փոցխով գետը Կուրի մէջ թափուելու տեղից մինչև Թիֆլիս քաղաքը, մօտ 133 վերստ երկարութեամբ, իւր ամենալայն մասերում հասնում է միայն 50 վերստի։ Այս լեռների միջին բարձրութիւնը հասնում է մինչև 7800 ոտ. իսկ մի քանի գագաթներ 9300 ոտ. էլ անցնում են։ Թրիալէթի լեռների հիւսիսային լանջը, որ դէպի Գորի գաւառն է նայում, շատ զառիվայր է, և ամբողջովին անտառապատ։ Իսկ հարաւայինը, որ մտնում է Բորչալուի գաւառը, աւելի պակաս զառիվայր է և անտառազուրկ։ Թրիալէթի լեռնային շրջանը սաստիկ ձգուած ձուածիրի ձև ունի, որ երեք կողմից շրջապատուած է Կուր գետով և որի մեծ շառաւիղի մի ծայրը մօտենում է Թիֆլիսին, իսկ միւսը Փոցխովի և Կուրի խառնարանին։ Այս շրջանի կենտրոնական մասում բարձրանում է Արջևան լեռնաշղթան, որի ճիւղերը մօտակայ մասերի հետ միասին կրում են Թրիալէթ անունը։ Արջևան լեռնաշղթան դէպի հիւսիս իջնում է շատ ուղղաձիգ լանջերով, իսկ դէպի հարաւ շատ թեք է։ Այս մասը ցածրանում է դարատափերով, որոնք միմեանցից բաժանւում են լայն հովիտներով։ Գրէթէ

այս բոլոր հովիտներն սկիզբն են առնում հարթ բարձրաւանդակի վրայ, ուր նրանց ափերն աղդէն նկատւում են ցածր բարձրութիւններով։ Բայց դէպի արեւելք գնալով, հովիտների յատակը սկսում է խորանալ և միքնչ էլ հեռու, նրանց ափերն բարձրանում են իբր առանձին նշանաւոր շղթաներ. սակայն և այնպէս՝ այս ափերի սուր ճիւղաւորութիւնների և շղթաների միջին բարձրութիւնն այնուամենայնիւ ցածր է մընում արեւմտեանից, – Թրիալէթի լեռների բարձր, հարաւային լանջից, որ կազմում է Ծալկայի բարձր սարահարթը, որի միջին բարձրութիւնը հասնում է 5000 ոտնաչափի։

Թրիալէթի լեռների հարաւային լանջն աւելի նեղ, բայց և աւելի քիչ զառիվայր է, քան հիւսիսայինը, ցանցառ բնակութիւն ունի, բայց և ծածկուած է ընդարձակ արօտատեղիներով և լի է հրաբխային խոշոր քարերով։ Հարաւային լանջի լայնութիւնը, որ նայում է Բորչալուի գաւառին, տատանւում է 30 մինչև 12 վերստի մէջ։

Երկրաբանական տեսակէտից, Թրիալէթի լեռնաշղթան, պ. Փիլիպպովի կարծիքով, *) շատ նման է Ախալցխա-Իմերէթեան լեռներին։ Միևնոյն երկրորդական և երրորդական նստուցքային կազմութիւններն են, որոնց վերին մասերը կտրտուած են և մասամբ ծածկուած պորփիւրով, նմանաքարով (долеритъ) և նորագոյն կազմութեան ուրիշ հրաբխային տեսակներով։

Երկրաբանների կարծիքով Ախալցխա-Իմերէթեան և Թրիալէթի լեռները մի ժամանակ կազմել են մի լեռնաշղթայ և երբ երրորդական կազմակերպութեան շրջանում Վրացա-Իմերէթեան լեռնաշղթան բարձրացել է ուղղահայեաց դէպի Ախալցխա-Թրիալէթեան լեռնաշղթան՝ այս վերջինիս մէջ յառաջացրել է մի ճեղքուած — Բորժոմի հովիտը, որի միջով և դուրս է թափուել Ախալցխայի ծովը։ Աբիխ ակադեմիկոսն ենթադրում է, որ Թրիալէթի լեռների ամբողջ հիմքը կազմուած է հատա-

*) В. Н. Филипповъ. Топографическое описаніе Тифлисской губерніи.

քարից (гранитъ), փայլարախառն և քլորիտային թերթաքարից (слюдистые и хлоритовые сланцы) և գղձաքարերից (гнейсы), որոնք, սակայն, շատ քիչ են երես դուրս գալիս։

Նստուցքային կազմութիւնից այստեղ պատահում են միայն կաւճային և երրորդական, նորարշալրշային նստուցքներ։ Երրորդական նստուցքի հաստութիւնը հասնում է 3000—3500 ոտնաչափի։ Լեռների գլխաւոր զանգուածը կազմուած է հրաբխային հետևեալ տեսակներից. խստաքար (трахитъ, trachyte), անտեզիտ (антезитъ), պորփիւր (авгитовый порфиръ) և այլն, ինչպէս և զանազան տեսակի լաւաներ։

61°53' միջէօրէական մօտ, Արջևանու լեռնաշղթայից բաժանւում է Բեդենեան լեռնաշղթան, և տարածուելով դէպի հարաւ-արևելք՝ մտնում է Թիֆլիսի գաւառի սահմանները։ Այս լեռների մի ճիւղն ուղղուելով դէպի հարաւ-արևմուտք, կրկին մտնում է Բորչալուի գաւառը։ Այստեղ նրա թեք լանջերը, որ առաւելապէս ժայռոտ են և միայն Ալէքսանդերհիլֆ գաղութի հանդէպ ծածկուած են բուսականութեամբ, կազմում են Խրամ գետի այն խոր ձորը, որ ձգւում է մինչև Քոլագիրանի կամուրջը, ուր գետը ձորից դուրս է գալիս դաշտավայրը։

Թրիալէթի լեռներն արևմտեան կողմից միանում են Ցխէ-Ջուարի լեռնաշղթայի հետ, որ ձգւում է գաւառիս հիւսիս-արևմտեան սահմանից դէպի հարաւ։ Այս լեռնաշղթան գաւառիս հիւսիսային մասումը դէպի ներս տալիս է մի քանի ճիւղեր։

Այն տարածութիւնը, որ հիւսիսային կողմից շրջապատուած է Արջևանի լեռներով, արևմտեան և մասամբ էլ հարաւային կողմից Ցխէ-Ջուարի լեռնաշղթայով և արևելքից՝ Բեդենեան լեռներով ու Խրամ գետի ժայռոտ ձորով, կազմում է Ծալկայի հարթութիւնը։ Սա բոլորովին հարթ, համարեա ուղղանկիւն սարահարթ է, որ ունի 30 վերստ երկարութիւն, 10 վ. լայնութիւն և մօտ 340 ք. վերստ մակերևոյթ։ Նա կազմուած է նմանաքարի լաւայից և բարձրանում է ծովի մակերևոյթից 5000 ոտ։ Այս սարահարթը ցածրանալով դէպի ա-

րևելք, վերջանում է հարթ մարգագետիններով հարուստ բարձրաւանդակով, որն ունի ուղղաձիգ իջնող լանջեր և կազմում է Դեղին լերան վերին մասը։ Համարեա այս ամբողջ սարահարթը ծածկուած է սարերով և մարգագետիններով։ Կցխա և Խրամ գետի այստեղի ափերը ցածր են և միջոց են տալիս օգտուելու նրանց ջրերից ոռոգելու համար։

Ցխէ-Ջուարի լեռները, որ սահմանափակում են Ծալկայի հարթութիւնն արևմտեան կողմից, հարաւ ուղղուելով ստանում են Ղարա-աղաչ կամ Մոկրիա լեռներ անունը։ Այս լեռների նշանաւոր գագաթներն են. Դաւաղրան (9254,), Աղլեքար (9765'), Էմլէկլի (10.018') և Լէկլի-դաղ (10,491')։ Մոկրիա (Թաց) անունն այս լեռներին տուել են ռուսներն այն կպչուն ցեխի պատճառով, որ գոյանում է սրանց վրայ օդերևոյթային ամենափոքր նստուցքի ժամանակ։ Իսկ Թուրքական Ղարա-աղաչ (սև-փայտ) անունը վկայում է, որ այս լեռները, որ այժմ բոլորովին զրկուած են անտառային բուսականութիւնից, մի ժամանակ անտառապատ են եղել։ Այս լեռների արևելեան լանջը, որ ամբողջովին մտնում է Բորչալուի գաւառը, հետզհետէ լայնանում է և հասնում 10 մինչև 20 վերստ լայնութեան։ Նա բաղկացած է յետին ժամանակի հրաբխական նստուցքային խառնուրդից, որ ամենափոքր խոնաւութեան միջոցին դառնում է անանցանելի կպչուն ցեխ։ Այս լանջերն ամբողջ Անդրկովկասում յայտնի են իրենց հրաշալի արօտատեղիներով։

Ղարա-աղաչի լեռներն արևմուտքից 20 վերստից աւելի սահմանափակում են Լոռու լեռնային հարթութիւնը և հարաւում միանում Բզովդալի լեռնաշղթայի հետ։ 5—10 վերստ լայնութեամբ տարածուելով՝ այս լեռնաշղթան իր զանազան մասերում կրում է առանձին լեռների անուններ, ինչպէս՝ Աղլախան, Զուբուխլի և Դվալ։ Բզովդալի լեռնաշղթան, որ բաժանում է Բորչալուի գաւառն Աղէքսանդրապոլի գաւառից, իւր հիւսիսային, տեղ տեղ անտառապատ լանջով, հարաւից սահմանափակում է Լոռու հարթութիւնը, որ կտրտուած է գետակների ժայռոտ հուններով։

Բզովդալի արևելեան կէսում առաւելապէս գտնւում են սիէնաքար (сіэнитъ), որձաքարային պորփիւր (кварцовый порфиръ), դիարիտ (діаритъ), ֆելզիտային պորփիւր (фельзировый порфиръ) և բիւրեղային որձաքար (кристаллическій кварцитъ), որ գործնական մեծ նշանակութիւն ունի, որովհետև նրանից ստանում են գաւառի ամենալաւ ջաղացաքարը։ Այստեղ ակադեմիկոս Աբիխը գտել է բիւրեղային կրաքար, որ նման է Ղարայազի մարմարիօնին, և տանիքի բաւական հաստ թերթաքար։ Հարուստ է նաև հանքերով։ Բզովդալի լեռնաշղթան մօտ 50 վերստ երկարութիւն ունի, իսկ ամենալայն մասը հասնում է 20 վերստի։ Նրա երկու լանջերն էլ միատեսակ թեք են։

Ոչ մի տեղ, ասում է ակադեմիկոս Աբիխը *), այնպէս լաւ ֆելզիտ չի գտնւում, ինչպէս Ուզունլարում, ուր խպտահւում են ահագին մեծութեան կտորներ։ Սրանք ճարտարապետական տեսակէտից շատ նշանաւոր են, որովհետև քանդակագործութեան մէջ գործ են ածւում, շատ դիմացկուն են, և կլիմայական ազդեցութիւններին դժուարութեամբ են ենթարկւում։

Բզովդալի լեռնաշղթայից հիւսիս, Ղարաղաչի լեռների Լէկլի-դաղ գագաթից սկիզբն են առնում Սոմխէթի կամ Աղգիբէուկ լեռները, որ ուղղւում են արևմուտքից արևելք մինչև Դեբեդ գետը։ Այս լեռներն սկզբում նեղ են, միջին մասում հասնում են 50 վերստ լայնութեան, բռնելով այն տարածութիւնը, որ սահմանափակւում է հետևեալ գետերով. Օրօզման, Մաշավեր, Խրամ, Բօրչալի (Դեբեդ), Կամենկա և Ջիլղի։ Այս լեռները մեծ մասամբ ծածկուած են ամենալաւ անտառներով։ Սոմխէթի լեռները, որ իրենց արևմտեան վերջաւորութեան վրայ հազիւ նկատելի են, իրենց շարունակութեան վրայ հասնում են զգալի բարձրութեան։

40°17′ և 41°30′ հիւսիսային լայնութեան և 62°15′ և 62°48′ արևելեան երկարութեան միջև տարածւում է

*) Геологическія наблюденія въ нагорной странѣ между Курой и Араксомъ. կհ. Марковъ Зап. Геогр. Общ. кн. VIII 1873 г.

Բորչալուի ընդարձակ ցած հարթութիւնը, որ ոռոգւում է Ալգետ, Խրամ, Բորչալի (Դեբեդ) գետերի գետաբերաններով։ Այս դաշտը հիւսիսից սահմանափակւում է Թրիալէթի լեռների և Եաղլուջա լեռնաշղթայի փէշերով, արևելքից՝ Կուր գետով, իսկ հարաւից և արևմուտքից՝ Հայ-Գանձակեան և Սոմխէթի լեռների ստորոտներով։ Դաշտի բացարձակ բարձրութիւնը 1070 ոտ. չի անցնում։ Նա մօտաւորապէս բռնում է 520 ք. վերստ տարածութիւն. ամենամեծ երկարութիւնը հասնում է 35 վերստի, լայնութիւնը՝ մինչև 26 վերստի։ Բորչալուի հովիտը, արտերն ոռոգող ջրերի առատութեան պատճառով, սաստիկ արգաւանդ է և խիտ բնակութիւն ունի։ Նրա մակերեւոյթը բոլորովին հարթ է, զուրկ անտառային բուսականութիւնից։ Այստեղ գետերը հոսում են ցած ափերի միջով և արտերը ջրելու բոլոր յարմարութիւններն ունին։ 62° միջօրէականից դէպի արևելք, Սոմխէթի և Բզովդալի լեռները մօտենում են միմեանց իրենց ստորոտներով և կազմում Կամենկա գետի հովիտը. իսկ 60° միջօրէականից արևմուտք՝ այս լեռների միջև տարածւում է բոլորովին հարթ բարձրաւանդակ - Լօռուդաշտավայրը, որ կլոր ձև ունի և բռնում է 450 ք. վերստ տարածութիւն, մօտ 4700 ֆ. միջին բարձրութեամբ, և կազմուած է Անդրկովկասում սովորական հրաբխային տեսակներից, ինչպէս են բազալտ (базалитъ) և խստաքար (трахитъ)։ Այս վերջիններս երբեմն երես են դուրս գալիս։

Այս դաշտավայրի հիւիս արևմտեան մասում կան շատ ճահիճներ և շամբեր, որ սկիզբն են տալիս շատ գետակների և վտակների։ Միւս մեծագոյն մասը ծածկուած է պարարտ արօտներով, որոնք գիւղերի մօտ փոխւում են արտերի։ Հողը առաւելապէս մութ շագանակագոյն կամ տիպական սևահող է, և մասամբ կաւահող, տեղ տեղ լի հրաբխային տեսակների քարային մնացորդներով։ Անտառներ պատահում են միայն Ջալալօղլու մօտերքից։

*Գետերը.*—Գետերով, գետակներով շատ հարուստ է այս գաւառը. Նրան է պատկանում Խրամ գետի աւազանը և Ալգետի միջին ու ներքին ընթացքը։

*Խրամ*. Սա, որ Կուրի աջ վտակն է, սկիզբն է առնում Բորչալուի գաւառից դուրս՝ Ցխրա-ծղարոս-մթա լերան հարաւային ստորոտից և հոսելով Տաւ-Գոթելի գագաթից փոքր ինչ հիւսիս՝ մտնում է այս գաւառը՝ պատմական Կցխա անունով։ Ապա Աւրսնլի գիւղի մօտ դուրս է գալիս Ծալկայի դաշտա-վայրը և սաստիկ դանդաղ հոսելով՝ յառաջացնում է ճահճային ափեր։ Եղգլի-քիլիսա գիւղի մօտ նրա մէջ թափւում են ձախ կողմից՝ Ջինիս և աջից՝ Նարդւան և Աեազմա վտակները։ Հոսելով շատ քիչ բարձրացող ափերի միջով, Կցխան Ծալկա բերդի (Գունիա-ղալա) մօտ ստանում է Խրամ անունը։ Այնու-հետև Բարմաղորս գիւղից սկսած, նրա երկու կողմից տարած-ւում են հրաբխային պանգուած ունեցող բլուրներն, որոնք ջրի մակերևոյթից տեղ տեղ մինչև 500 ոտնաչափ բարձր են։ Ծալկայի դաշտավայրի բնակիչները չեն օգտւում Խրամից՝ ջր-ելու իրենց դաշտերը, որովհետև տեղի բարձրութեան պատ-ճառով (մօտ 5000 Ֆ.) հողը շատ դանդաղ է չորանում, մա-նաւանդ որ ամառը վտակները դուրս գալով ափերից, հարկա-ւոր եղածից շատ աւելի խոնաւութիւն են տալիս երկրին, այն-պէս որ ցանքսերը շատ անգամ աւելի խոնաւութիւնից են վը-նասւում, քան թէ չորութիւնից։ Բայց Խրամն այս տեղերում տալիս է այն համեղ ձկների մի քանի տեսակները, որոնք Թիֆլիսում յայտնի են ընդհանուր «Խրամուլի» անունով։

Ալէքսանդրսհիլֆ գաղութից ներքև Խրամն աջ կողմից ընդունում է իւր երկու նշանաւոր վտակները՝ Չոչիան և Ղարաբուլախ, որոնք սկիզբն են առնում Մոկրիա լեռներից, իսկ ձախ կողմից՝ մի քանի աննշան վտակներ։ Մօտ ութսուն վերստ հոսելով նեղ ձորի միջով՝ Խրամն Արխլու Թրքաբնակ գիւղի մօտ դաշտ է դուրս գալիս։ Փոքր ինչ ցած, Մոլլա-Ահմէտլի գիւղի մօտ Խրամի մէջ աջ կողմից թափւում է աւելի ջրառատ Մաշաւեր (նոյնպէս Չասըալ) վտակը։ Սա կազմուելով Մոկրիա լեռներից բղխող բազմաթիւ լեռնային վտակներից, Բաշքեչուտ գիւղի մօտ ձախ կողմից ընդունում է Մահմուտլի վտակը, և շուտով մտնում մի բաւական խոր ձոր։ Ապա նրա մէջ թափ-ւում են նոյն աջ կողմից ոսկու աւազով հարուստ Բինաձոր

և Գոմբլուտ վտակները. սակայն Մաշաւեր գետակը մինչև Քվեշի գիւղը շարունակում է հոսել խոր հունով, համարեա ոչ մի օգուտ չբերելով շրջապատող գաշտերին։ Իսկ Բաշքէչուտ գիւղից մինչև Քվեշի գիւղը գտնուող այգիներն ու պարտէզներն առաւելապէս ջրւում են Մաշաւերի մէջ թափուող վտակների ջրով։ Եկատերինէնֆէլդ գաղութի մօտ Մաշաւերն ստանում է գիւղատնտեսական նշանակութիւն, երկու մեծ ջրանցքներով առատութեամբ ջրելով գերմանացիների այգիներն ու մասամբ նաև արտերը։ Այս գաղութից ներքև, Մաշաւերի մէջ աջ կողմից թափւում է Բոլնիս-չայը, ոռոգելով Բոլնիս խաչէնի, Խատիս Սոպելի, Միգլիլու, Արդալա և այլ գիւղերի այգիները և մասամբ նաև արտերը։

Ձմեռն աջ կողմից սրա մէջ թափւում է նաև Ճուլավէր վտակը, որովհետև մնացած ժամանակ նա հազիւ է բաւականանում ոռոգելու Ճուլավէրի բազմաթիւ այգիները։

Ամենամեծ և գիւղատնտեսական տեսակէտից ամենաօգտաւէտ ջրամբար հանդիսանում է Խրամի աջ վտակ Ձորագետը, որ կոչւում է նաև Դեբեդ, Բերդուջ, Մեծ-ջուր, Բորչալա, Պալըղ-չայ և որ վերջերս ընդունել է նաև Կամենկա (քարքարոտ) անունը։ Այս գետը յառաջանում է Մոկրիա լեռներից սկիզբն առնող Ջիլգի և Ղարագալա վտակների միախառնումից, Ջալալօղլու մօտ, և կոչւում է Կամենկա։ Ջալալ-օղլու կամուրջից փոքր ինչ բարձր, աջ կողմից Կամենկայի մէջ թափւում է Ձուբուխլի վտակը, ուր աջ և ձախ կողմերից ջրանցքներ են անցկացրած Ջալալ-օղլու ջրբաղացների և պարտէզների համար։ Ջալալ-օղլի գիւղից ներքև ձորը, որով որոտալով անցնում է Դեբեդը,-հետզհետէ նեղանում և խորանում է և բոլորովին անմատչելի և ոռոգելու տեսակէտից անօգուտ դառնում բնակիչների համար։ Լօռի բերդի մօտ Դեբեդի մէջ թափւում է ձախ վտակ Ողզիբէիւկ գետակը, իսկ աւելի ցածր Լեջան, Ագարակ, Օվան-դարա և Տոտկայ-ջուր վտակները։ Այս բոլորը բղխում են Սոմխէթեան լեռների արևմտեան ճիւղերից, արագընթաց են, պտտեցնում են մի քանի ջրաղացներ և ջրում տեղացիների աննշան պարտէզները։ Կուրթան գիւղի մօտ Դեբեդ գետի հետ միանում է Բզովդալի ճիւղերից սկիզբն առնող

Գարգառայ-գետը։ Այնտեղից Դեբեդ գետը իւր հարաւ արեւելեան ուղղութիւնը փոխում է դէպի արեւելք և Ծաթեր գիւղի մօտ մտնում է սաստիկ նեղ, Բզովդալի և Սոմխէթի լեռների ճիւղերից յառաջացած անցքը, յետոյ և թափուելով 20—25 ֆ. բարձրութիւնից, կազմում է մի աղմկալի, գեղեցիկ ջրվէժ։ Եւ ապա հիւսիս ուղղուելով՝ խառնւում է Փամբակ գետի հետ, որ գալիս է Երեւանեան նահանգի Աղէքսանդրապօլի գաւառից, ընդունելով Քեօլագիրան և Ջանախչի կամ Ալեբեքսի-ջուր վտակները։ Այնուհետեւ Դեբեդը անցնում է մի գեղեցիկ, անտառապատ հովտով, որ տեղ-տեղ 500—600 ոտ. բարձրութեան քարաժայռերով է պատած, և որից վերև տարածւում են հայաբնակ գիւղեր։ Եւ չնայելով, որ չափազանց դժուար է իջնել այս ժայռոտ հովիտը, այնուամենայնիւ, սրա լանջերը պատած են հայ գիւղացիների այգիներով և պտղատու ծառերի պարտէզներով։ Սկսած Դսեղ գիւղից մինչև Այգեհատ ամբողջ հովիտը պատած է խաղողի այգիներով և թութունի տնկարաններով, իսկ այն կողմը՝ պտղատու ծառերի պարտէզներով և բանջարանոցներով։ Ծաթեր գիւղից մինչև Արչիսի այգիները, որ մօտաւորապէս 50 վերստ տարածութիւն է, Դեբեդ գետն ընդունում է ձախ կողմից, Սոմխէթեան լեռներից՝ Սեղուի, Լեալվար, և Ուչ-քիլիսա, իսկ աջ կողմից՝ Հայ-Գանձակեան լեռնաշղթայի ճիւղերից՝ Աստուածածին, Որնակայ-ջուր, Ճիվանք, Բերդա-ջուր, Ճնօղա-ջուր և Արչիս վտակները։

Դուրս գալով Բորչալուի դաշտը, Դեբեդն առատութեամբ ջրում է այստեղ տարածուած բոլոր թուրքաբնակ գիւղերի դաշտերը և Կարմիր կամուրջից փոքր ինչ բարձր թափւում Խրամ գետի մէջ։

Ալգետը, որ Կուրի ձախ վտակն է, պատկանում է Բորչալուի գաւառին միայն իւր վերին և ներքին հոսանքով։ Ըսկիզբն առնելով Թրիալէթու լեռներից, նա Մանգլիսի մօտ ուղղւում է հարաւ-արեւելք Թիֆլիսի գաւառը և ապա մտնում է Բորչալուի գաւառը Մարնէուլ գիւղից 7 վերստ հեռաւորութեան վրայ։ Այս գետը շատ ջրառատ չէ, ամառը ջրանցք-

ներով գնում է ուղղման համար, և գետի հունը բոլորովին չորանում է։

*Լճեր*.—Բորչալուի գաւառում մեծ լճեր չկան, այլ մի երկու սաստիկ փոքր լճակներ, որոնք գոյացել են ձիւների և անձրևների ջրերից՝ հանգած հրաբուղխների կալնուած բերաններում։ Սրանք են. Բաշքէօյի լճակ Ծալկայում, Բաշքէօյի գիւղի մօտ, և Սալխօլնի-գեօլ Բաշքէչուտի մօտ։ *)

## ՀԱՆՔԵՐ

Ոսկի. գտնւում է Ախտալա գետի ձախ կողմը, Մահմուտլի գիւղի մօտ, Մաշաւեր գետի ափերին, Չատախի գործարանից ոչ հեռու Դամբլուղ կալուածքում և Մաշաւեր գետի ձախ ափին, Աբուլմուլք կալուածքում։ Այս բոլոր վերոյիշեալ տեղերում նա խառնուած է լինում արծաթ-անագային և պղնձի հանքերի հետ։ Ոսկու աւազ գըտել է 1875 թ. լեռնային ճարտարապետ իշխան Ցուլուկիձէն, *) 1) Դամբլուտի պղնձա-անագային գործարանի մօտերը, 2) Չատախու գործարանից հարաւ-արևմուտք 12 վերստ և 3) Աբուլմուլքից 8 վերստ հեռաւորութեան վրայ։ Դամբլուտ-գետի և նրա վտակների վըրայ ոսկուաւազը տարածւում է 10 վերստ տարածութեամբ։ Դամբլուտ գետի 10) փութ ոսկու աւազը պարունակում է 4 մինչև $48^{7}/_{40}$ մասն, իսկ նրա վտակներինը՝ մինչև 76։ 1885 թուին ևս նոյն իշխ. Ցուլիկիձէն գտաւ ոսկու աւազ հետևեալ տեղերում. Մաշաւեր գետի վրայ, նրա միջին ընթացքում, Կոզրէտի և Բալիչի գիւղերի մէջ, Աբուլմուլքի առաջ. 2) Մաշաւերի վտակ՝ Կոզրետ գետակի, 3) Պինազաուր գետակի ընթացքով, բարոն Կուչենբախի ապակու գործարանի մօտ, և 4) Բաշքեչուտ գետի ընթացքով, Բաշքեչուտ դուխաբորների գիւղի մօտ։ Այս բոլորից ստացւում էին մագնիսական աւազի հետ խառն ոսկու աւազ, որի 100 փութի մէջ մի քանի դոլեայից մինչև մի մսխալ 15 դոլեա ոսկի կար։

---

*) Օգտուել եմ հետևեալ աշխատութիւններից. Ерицовъ. Экон. Пол. Гос. Крест. Борч. уѣзда, Аргутинскій—Долгоруковъ. и др. Районъ Тифлисско-Карсско-Эриванской желѣзной дороги, Абихъ. О кристаллическомъ градѣ въ Тріалетскихъ горахъ (въ Зап. Кавк. Отд. Имп. Русс Геогр. Общ. кн х. вып. 3.)

**) Տես նրա յօդուածը Матеріалы для геологіи Кавказа Серія II. кн. I. II. с. 11.

Անցեալ դարու սկզբում հաստատուած է նաև, որ ոսկու աւազ գտնւում է Այգետի վտակների, Դեբեդ-գետի և Խրամի մէջ։

Արծաթա-անագային եւ անագի հանքեր թաքնուած են հետևեալ տեղերում. 1). յունաց Կողէս գիւղից մի վերստ դէպի հիւսիս. Տաւշան-Թանեսի լերան մէջ, 2) Լալուարի պղնձահանքի գործարանի մօտ, Լորիս-Մելիքեանի կալուածքում, (մի փթում $4^3/_8$ ֆ. անագ և 69 ղոլոտ արծաթ). 3). Ախտալու գետի ձախ կողմում, Ախտալու գործարանի մօտ. Անցեալ դարու սկզբում Հերակլ թագաւորի ժամանակ այստեղ աշխատում էին հազար յոյն բանուոր, որոնք թագաւորի կողմից կանչուած էին Գիւմիշխանէից *) (Անատոլիայ). Օմար խանի արշաւանքից յետոյ այս հանքը դադարեց և սրի կոտորածից ազատուած սակաւաթիւ յոյներն անցան Ալավերտու հանքերը շահագործելու.

Ախտալու հանքի քիմիական բաղադրութիւնը հետևեալն է **).

Պղինձ . . . . . . . . . . 38,% — 5,8%.
Անագ . . . . . . . . . . 11,% — 15,3%.
Ցինգ . . . . . . . . . . 33,7% — 41,6%.
Ծծումբ . . . . . . . . . 29,5% — 31%.
Արծաթ . . . . . . . . . 0,04% — 0,01%.

Արծաթ գտնւում է նաև 4) Մահմուտլի գիւղի մօտ (1 փութի մէջ $19^2/_8$ անագ և $2^1/_3$ մսխ. արծաթ։ 5) Տաշպաշի գիւղի մօտ,

*) Հերակլ թագաւորի ժամանակ այս հանքի տարեկան ծախսն ու արդիւնքը հետևեալն է եղել.

*Հերակլ թագաւորի ծախսը.* 1000 բանուորի համար ալիւր, ճարպ, ընծաներ, վառօդ. 23,000 ր.

*Յոյների ծախսը.* վրաց բանուորներին և վարպետներին, 25,000 ր.

*Թագաւորի եկամուտը* 99 փութ արծաթից ստացուած 2 փութ 35 ֆ. ոսկի, որ թագաւորը ծախում էր մսխալը 5 րուբլիով . 55,000 ր.

Արծաթ 25% . . . . . . . . 22,000 ր.

77,000

Ծախսը հանած . . . . . . . . 23.000 ր.

Եկամուտ 54,000 ր.

*Յոյների եկամուտը՝*

75% արծաթ . . . . . . . . . . . . . . . . 70,000

Ծախսը հանած՝ . . . . . . . . . . . . . 25,000

Եկամուտ՝ 45,000 ր.

**) Вѣстникъ горнаго дѣла и орошенія на Кавказѣ. Приложеніе къ газетѣ „Кавказъ“, 1900 г.. № 2.

Դաղէտակ ժայռի տակ. 6) Բարօն Կուչենբախի ապակու գործարանի մօտ․ 7) Չատախի չուգունի գործարանի մօտ, Դամբլուտ կալուածքում. 8) Աքուլմուլք կալուածքում, Մաշավեր գետի ձախ կողմում, Դեմուրխան—դաղ լերան ճիւղերում։ Այստեղ պատահում են պղնձի հարուստ հանքեր, բայց այստեղն աւելի յայտնի է իւր արծաթի հանքերով, որ պարունակում են իւրեանց մէջ ոսկի *)։ 9) Չայլուղ գետի ձորում, Ախտալա արծաթահանքից երկու վերստ հեռաւորութեան վրայ։ Այս հանքը քննել է 1800 Թ. գրաֆ Մուսին Պուշկին և կարծում է, թէ նրա բաղադրութիւնը միևնոյնն է, ինչ Ախտալինը։ 10) Հին Ճամլուղի պղնձահանքի մօտ. Ալավերտու պղնձահանքից 8 վերստ հեռաւորութեան վրայ։ 1803 Թ. մինչև 1806 Թ. այստեղ հանած է 8900 փութ հանք և հալած է։ Իւրաքանչիւր փթից ստացուած է $2^{1}/_{4}$ մսխալ արծաթ և $2^{3}/_{4}$ փունտ արճիճ։

Ախտալայի, Ալավերտու, Ճամլուղի պղնձահանքերից վրաց թագաւորութեան ժամանակ ստանում էին քիչ քանակութեամբ արծաթ։ Արծաթ ստանում էին նաև Ախտալից ոչ հեռու գտնուող Դամբլուտ գիւղից 4 վերստ հեռաւորութեան վրայ, Դամբլուտ գետի ձախ ափին գտնուած արծաթահանքից։ 1798 Թ. այս հանքը Մուսին Պուշկինի հրամանով հետազօտուեց։ Դեռ 1793 Թուին յոյները այս հանքից արծաթ էին ստանում, բայց լեզգիների յարձակման պատճառով թողել փախել էին. վերջերքում թէև տէրութեան նիւթական օգնութիւնով նորից սկսեցին յոյները մշակել, բայց գործը աննկանոն տանելուց ստիպուեցան թողնել այդ հարուստ հանքը։ Այս յիշեալ հանքերի շուրջը գտնւում են մի քանի արծաթահանքեր, որոնց թւում են նաև Արդուի գիւղի արծաթահանքը, որ սկսուել է մըշակուել 1825 Թ. էլի յոյների ձեռքով և ապա թողնուել է։ Արդուի արծաթահանքը գտնւում է գիւղից մի վերստ վերև. մինչև այժմ մնացել է հալոցքի և վառարանների հետքերը։ Մի փութ հանքը պարունակում է $4^{3}/_{8}$ փունտ արճիճ և 69 մասն արծաթ. արծաթահանք կայ և մշակուել է հին ժամանակ Դումանիս գիւղի մօտ։

Առհասարակ պէտք է ասել, որ բոլոր այս արծաթահանքերը կենտրոնացած են մի լեռնաշղթայի մէջ, որ տարածւում է արևելքից դէպի արևմուտք, սկսած Դեբեդ գետից մինչև Թրիալէթի լեռները, Կամենկա գետի ձախ ափին և այս լեռնաշղթայի բոլոր տարածութեան վրայ։ Ախտալից սկսած մինչև Դամբլուտի արծաթահանքը շատ տեղերում ցրուած են բոլորովին չմշակած արծաթահանքեր **)։

---

*) В. Меллеръ. Полезныя ископаемыя и минеральныя воды Кавказскаго края.

**) Краткій очеркъ горнаго дѣла на Кавказѣ О. Карапетяна, եր. 29

Վերջերքս գտնուած են Լօրուտ գիւղի մօտ, Չաթին դաղի վրայ և Մարցի կալուածքում բաւականին հարուստ արծաթա-անագային հանքեր։

Պղինձ.—Պղնձի հանքերով սաստիկ հարուստ է այս գաւառը. օրից օր նորանոր հանքեր են գտնւում և հների արտահանութեան եղանակը կատարելագործւում է։ Այս հանքերից ամենանշանաւորը Ալավէրտու հանքն է, իւր գործարանով, որ գտնւում է Լալուար լերան (8392) մօտ, Լալուար գետակի ձախ կողմում։ Թիֆլիսից գործարանը, հեռու է 112 վերստով, որից 104 վ. անցնում է Թիֆլիս—Կարսեան երկաթուղին։

Ալավէրտի պղնձահանքի պատմութիւնը սկսում է 1755 թուականից, երբ Ախտալայի արծաթա-անագային հանքերը շահագործելու համար Գիւմիշխանից կանչուած յոյն հանքագործները այստեղ հանքեր գտան։ Չէնց այդ ժամանակ և մանաւանդ Օմար խանի արշաւանքից յետոյ, երբ Ախտալայի հանքերի շահագործութիւնը դադարեց, այս յոյներն սկսեցին այստեղ աշխատել և միմեանցից բոլորովին անկախ հորեր փորել։ Երբ Վրաստանը միացաւ Ռուսաստանին, կառավարութիւնը ճանաչեց այդ յոյներին որպէս սեփականատէրեր։ Եւ որովհետև շատ քիչ բանուորներ կային, ռուսաց կառավարութիւնը 1822 թուին նոյն Գիւմիշխանից (Անատոլիայում) յոյներ կանչեց և բնակեցրեց Կողէս և Եաղդան գիւղերում։

Կարճ միջոցում այս հանքագործները գտան հանքեր նաև Ճամլուխում, քսան վերստ հեռու Ալավէրտուց։ Չետզհետէ կառավարութիւնը յատկացրեց այս երկու պղնձահանքերին 9000 դեսեատին արքունական հող, որի 7000 դ. ծածկուած է անտառով։

1835 թուին այս հանքատէրերը կազմեցին երկու բաժնակցական ընկերութիւն, Ալավէրտու համար 7,560, իսկ Ճամլուխի համար՝ 1440 բաժիններով։ Այնուհետև աւելի կանոնաւոր կերպով շահագործելով՝ տարեկան ստանում էին 3—10 հազար փութ պղինձ, որ առաւելապէս տարւում էր Ճամախու մօտ Լահիճ գիւղը, ուր տեղական ձևով պատրաստում էին ամանեղէններ։

Վերջերքս, երբ Գէդաբէկի և Ղարաբաղի պղնձահանքերն աւելի կատարելագործուած և եւրոպական եղանակով սկսեցին գործել, պղընձի գինը ընկաւ, և 1887 թուին այս հանքատէրերը ստիպուեցան թէ Ալավէրտու և թէ Ճամլուխի հանքերն ու գործարանը կապալով տալ ֆրանսիական ակցիօներական մի ընկերութեան երեսուն տարով, տարեկան իւրաքանչիւր բաժնին 1 ր. բոլորին 9000 ր. վճարով։ Այս ֆրանսիական ընկերութիւնը իրաւունք ունենալով վերանորոգել կապալը դարձեալ երեսուն տարով, պարտաւոր է ժամանակամիջոցը լը-

րանալիս վերադարձնել բաժնետէրերին գործարանը այնպէս՝ ինչպէս ստացել է բոլոր անշարժ կայքերի հետ միասին։

Ֆրանսիական ընկերութիւնը մինչև այժմ երկու միլիօն ֆրանկից աւելի ծախսել է գործարանի, ճանապարհի, բնակարանների, թէ այրերի մէջ և թէ դուրսը՝ երկաթուղու գիծ անցկացնելու վրայ։

Ալավէրտու պղնձահանքի բաղադրութիւնը.

| | | | | |
|---|---|---|---|---|
| $SiO_2$ | սկսած | $27,_{8}$ի | մինչև | $56,_{24}$ |
| S. | « | $20,_{11}$ | « | $34,_{08}$. |
| Ca. | « | $1,_{13}$ | « | $7,_{69}$. |
| Fe. | « | $23,_{23}$ | « | $76,_{76}$. |

1878—1887 թուականը, երբ այս հանքերը շահագործում էին իրենք յոյն և հայ հանքատէրերը, ստացուած է 20,737 փութ պղինձ, իսկ հետևեալ տասնամեակում՝ Ֆրանսիական ընկերութիւնն ստացել է 39,068 փութ, 100 % ով աւելի։

Բացի Ալավէրտի և Շամլուխ պղնձահանքերից, որ շահագործւում են, պղինձ նկատուած է նաև հետևեալ տեղերում, 1) Ջան-բախչա գետի աջ կողմը՝ Ջիրարխօր կալուածքում, 2) Եաղդան գիւղից հիւսիս արևելք, 3). Դամբլուտ կալուածքում, 4) Արուլմուլք կալուածքում, 5) Ջալալ-օղլու և Նովո-Պոկրովսկի գիւղի միջում, 6) Զուբուխլու հովտում, 7) Եաղդան գիւղից 12 վերստ հեռաւորութեամբ Ղարաւլ-թաբա լերան ստորոտում. 8). Միխանա կալուածքում, որ Պրիվոլնօ գիւղից 2 վերստ հեռու է. 9). Կողէս գիւղի մօտ, Դեբեդ գետի վտակ՝ Տոտկայրի ափերում. 10) Զանախչիից բարձր, Փամբակու գետի եզերքում. 11) Քարինջ գիւղի մօտ, 12) Արդուի հովտում. 13) Ալստալու գործարանի մօտ։ 14) Ուռութ գիւղի մօտ։ 15) Հայդարբէկ գիւղի մօտ։ 16) Հայ-Գեառ գեառ գիւղի մօտ։ 17) Ուզունլար գիւղից վերև, Դեբեդ գետից ոչ հեռու։ 18) Լեճան լեռնաշղթայի վրայ։ 19) Եգարակ գիւղից մի քիչ վերև դէպի հիւսիս, լեռնաշղթայում, 2 տեղում։ Մէկը սկսում է գետի միջից։ 20) Ճահալու գիւղից ոչ հեռու հարաւային լեռնաշղթայում։ 21) Նազարդաղ և Մուսախան Իւրտ լեռներկ մէջ։ 23. Ճնող գիւղի մօտ։ Այս հանքը գտնուած էր դեռ ևս 1815 թ. 24) Ալավէրտի պղնձի հանքից ոչ հեռու Բուղաքեար գիւղի մօտ։ 25). Քաչալ-Կոնդ լեռան ստորոտում։ 27) Զաթին դաղ լեռնաշղթայում։ 28) Ղամշկուտ գիւղից դէպի արևելք, լեռնաշղթայի փեշերում։

Երկաթի հանքերով շատ հարուստ է այս գաւառը. առաւելապէս գտնւում է 1) Բոլնիս գետի հովտում։ Ամբողջ Կովկասում միակ երկաթի գործարան հիմնուել է Բորչալու գաւառի Բոլնիս գիւղի մօտ, 1862 թ. բայց 1875 թ. դադարեց գործելուց։ Այս հանքից մինչև

1807 Թուականը, տեղական կարիքների համար, գիւղացիք իրանք հալում էին երկաթ, բայց յետոյ Թողին։ 2) Դեբեդ-գետի աջ կողմում Վարդակերտ գիւղի աւերակների մօտ, Կողբ գիւղից 4 վերստ հեռաւորութեան վրայ։ Կողբի բնակիչները 1807 Թուականից այս հանքից տանելով իրանց հնոցներում հալում և ստանում էին երկաթ. հին հետքերից երևում է. որ այս հանքերը մշակւում էին շատ վաղուց. 1807 Թ ա. Լոդինովը իւր հետազօտութեան ժամանակ, հին հորերի վրայ բուսած դարևոր կանաչներից եզրակացրեց, որ դա շատ հին ժամանակներից է սկսուել մշակուել։ Այս հանքը մի քիչ հարուստ է քան Բոլնիսինը։ 1899 Թ. այս հանքում կատարուած է նոր պեղումներ, բայց մինչև այժմ մշակում չէ սկսուած։ 3) Ուռութ գիւղի դիմացը մի բլրակի լանջում։ 4) Դեբեդ գետի աջ ափին, Դսեղ գիւղից վերև 3) Պրիվօլնօ գիւղից 2 վերստ հեռու. 4) Լեջան սարի վերայ. 5) Չաթլն դաղ ամբողջ լեռնաշղթայի վրայ շատ տեղերում կան բազմաթիւ երկաթահանքեր։

Առհասարակ Բորչալուի գաւառում հին ժամանակներից մշակուած բազմաթիւ երկաթահանքերի հետքեր կան։ Այդ հանքերի մշակման տևողութեան և հնութեան մասին կարելի է դատել անտառոտ լեռների վրայ եղած բազմաթիւ հանքերի մնացորդների հետքերով, որոնք մի քանի ժամ ճանապարհով ցրւում են լեռների վրայ։

Բազմաթիւ հին հորեր, հին հալոցքների հետքերի հետ պատահում են անտառների մէջ և բարձր լեռների լանջերում, առանձնապէս Չաթին-դաղ լեռնաշղթայի վրայ, որոնք երկար շարքերով ցրուած են միմեանց յետևից *)։

**Մարմարիոն եւ մարմարանման կրաքար.** (**Мраморовидный известнякъ**). պատահում է Ճուլավէր գիւղի մօտ, Սատախլու գիւղի շուրջը և Բզովդալի արևելեան կողմում։

**Ցինկանման հանք.** (**Цинковая обманка**) պատահում է Դամբլուտ կալուածքում, արծաթա-կապարային հանքի հետ։

**Թխաքար.** (**Марганецъ**). գտնւում է 1) Եկատերինէնֆէլդ գաղութից 2 և Բաշքեչուտ գետից 3 վերստ հեռու, Տապայ կոչուած տեղում, 2) Փոքր Ռատևան գիւղի մօտ, Եկատերինէնֆէլդից 3 վերստ հեռու։ 3) Ալերէքսի գիւղի մօտ։ 4) Չինգիլ դաղի ստորոտում, Կարսի գծից 8 վերստ դէպի արևելք։ 5) Միջի-Գեատուկ կոչուած տեղում, երկաթուղու գծից դէպի արևելք՝ Ղամշկուտ գիւղից 8 վերստ հեռու։

*) Տես „Краткій очеркъ развитія Горнаго дѣла на Кавказѣ“ О. Карапетяна стр 28.

Այս բոլոր Թխաքարերի հանքերը զետեղուած են միմեանց շատ մօտ և աւելի հարուստ են քան Բորչալուի գաւառի միւս Թխաքարերի հանքերը. Թխաքար գտնուած է նաև Հաղբատի կալուածքում։

**Շինութեան քարերից. Որձաքար** (**Кварцитъ**) դեղնագոյն, որ գործ են ածում Թիֆլիսում, Բոլնիսի հովտում։

**Ֆելզիտ.** (**мелко зернистыя плотныя видоизмѣненія фельзита**) առատութեամբ գտնւում է Դեբեդ գետի վերին ընթացքում։ Այս քարը հեշտութեամբ է տաշւում և սաստիկ դիմանում է օդերևութական ազդեցութիւններին. գլխաւորապէս նրան գործ են ածում գերեզմանաքարեր շինելու։

**Շիբ կամ սապ** (**квасцы**) Ճամլուղի պղնձահանքերի մօտ։

**Գրաֆիտ.** Իշխան Օրբէլեանների հողում, Լոք կոչուած տեղում, Ջանտար գետակի վրայ։

**Օխրա** (**охро**) նոյն տեղում։

**Բիւրեղային որձաքար** (**Кристаллическій кварцитъ**), որից ստացւում են ջրաղացի ամենալաւ քարեր, գտնւում են Բզովդալ լերան արևելեան կողմը, Գարգառ գետի մօտ և Ճահալի և Գոքուրէտի գիւղերի մօտ։

**Կրակի դիմացող կաւ** (**огнеупорная глина**) պատահում է Ալավերտի պղնձահանքի շրջանում, և Դեբեդի աջ ափում, Ուզունլար գիւղի մօտ։

**Հանքային ջրեր** շատ քիչ կան այս գաւառում, եղածներն էլ այնքան աննշան են, որ շատ քչերն են օգտւում։ Նրանցից արժէ յիշել հետևեալները. 1). Թրիալէթի ոստիկանական շրջանում, Աեազմա գիւղում, հէնց եկեղեցու հիմքից բղխում է սովորական ջրի համ ունեցող մի աղբիւր, որին տեղացիները կաշուի և նոյն իսկ ներքին հիւանդութիւններ բուժող են համարում. 2) Լօռու ոստիկանական շրջանում, Արդուի գիւղում, Օձի պորտից հոսող սառը ջուրը, որ հաւանականօրէն պարունակում է իւր մէջ երկաթ և ծծումբ, տեղացիներից գործ է ածւում թէ մարդկանց և թէ կենդանիների կաշու հիւանդութիւնների դէմ. 3) Բորչալուի ոստ. շրջանում, Օպրետ գիւղից ոչ հեռու, Ճուլավէր գետակի մօտ բղխում է մի աղբիւր, որ գելտերեան ջրի համ ունի *)։ Դեբեդ գետի աջ ափին, գետից մի քանի քայլ վերև, Կարսի երկաթուղու գծի վրայ, Ճահալի կայարանից հարաւ, երկաթի ջուր է բղխում բաւականին առատ. խմելիս շատ դուրեկան է։

*) **Ерицовъ. Экон. Пол. Гос. Крест. Борч. уѣзда եր. 12.**

## ԿԼԻՄԱՆ

Դժբաղդաբար այս ընդարձակ գաւառի և ոչ մի կէտում դեռ և ս օդերևոյթաբանական կայարան չէ հիմնուած, այնպէս որ անհնարին է կլիմայի վերաբերութեամբ ճիշտ որոշումներ անել։ Իսկ ընդհանրապէս կարելի է ասել, որ Բորչալուի ամբողջ գաւառը ներկայացնում է կլիմայական բոլոր գօտիները, սկսած տաքից, ուր հասնում են չալտիկ և բամբակ, մինչև Ալպիական բարձր արօտատեղիների գօտին։ Այս ծայրայեղ կէտերի բարձրութեան տարբերութիւնը հասնում է մինչև 10,000 ոտնաչափի, և մինչդեռ Խրամի գետաբերանում հձնում են գարին, Ծալկայում նոր նոր սկսում են գարնանացանը, և երբ այստեղ հասնում են հունձերը, Բորչալուում կանաչում է աշնանացանքը։

Ուստի և ամբողջ գաւառի կլիման որոշելու համար պէտք է բաժանել մի քանի շրջանների.—1) Բորչալուի հարթութեան, 2) Լոռու, 3) Ծալկայի սարահարթերի և 4) Դեբեդ, Բոլնիս ու Մաշաւեր գետերի հովիտների։

Սրանցից Բորչալուի հարթութեան (1,000 Ֆ. միջին բարձր.) կլիման ընդհանրապէս տաք է. հարաւից, արևմուտքից և հիւսիսից նրան շրջապատող անտառապատ լեռներն ընդհատում են քամիների հոսանքը այս կողմերից, մինչդեռ Ղարայեազից ազատ փչում է տաք, հեղձուցիչ քամիներ։ Ամառային կիզիչ արեգակի ճառագայթները արագութեամբ գոլորշիացնում և վերլուծում են ամեն տեղ սփռուած ջրանցքների կազմած ճախճախուտների և փոքրիկ ճահիճների մէջ կանգնած ջուրը։ Յարատև տենդը, որից տանջւում է այստեղի ամբողջ ազգաբնակութիւնը, մոծակների, մժեղների, մորմերի, օձերի և այլ սողունների ահագին բազմութիւնը ստիպում են բնակիչների մեծ մասին վաղ գարունքից իրենց հօտերով եայլա դուրս գալու։

Տենտի զարգացման չափազանց նպաստում է նաև չալտիկի դաշտերը, որ ամբողջ ամառ ծածկուած են ջրով, հոտում են, վերլուծւում և նպաստում ամեն տեսակ ստորին օրգանիզմների զարգացման։

Բնակիչներն ամառը լեռների վրայ, մաքուր օդի, հրաշալի ջրի և առողջարար կաթնային սնունդի շնորհիւ բաւական ամրապնդուած, սեպտեմբերին իջնում են լեռներից, և թէպէտ աշունը այստեղի ամենալաւ եղանակն է կազմում, բայց և այնպէս՝ բնակիչներն սկզբում ստիպուած են լինում խմել ջրանցքների հոտած ջուրը, որովհետև գետերը այս ժամանակ չորացած են լինում, և 2—3 շաբաթուայ ընթացքում կորցնում են այն ոյժը, որ ամառը հաւաքել էին։ Այնուհետև արևմուտքից փչող քամիները շատ անգամ անձրևներ են բերում իրենց հետ։ Ձմեռն ընդհանրապէս մեղմ է, ձիւնը երբեմն միայն

Digitized by Google

5—6 օր է գետնին մնում։ Գարունը սովորաբար նոյնպէս անձրեւային է և շատ է գալիս։

Բորչալուի հարթութեան տաք և Ծալկայի և Լոռու սարահարթերի բարեխառն կլիմաների միջև որպէս անցողական գօտի կազմում են Դեբեդ գետի հովիտը, որ սկսւում է Ճալա գիւղից և ձգւում մինչև Ճնող գիւղը, Ճուլավէր-գետակինը, Մեծ Ճուլավէրից մինչև Աղբեօրփի գիւղը, Բոլնիսի-գետինը՝ Խատիս-Սոպէլի գիւղից մինչև Զատախի Նալսկին գործարանը, և Մաշաւեր գետինը, Եկատերինէնֆելդ գաղութից մինչև Աբուլմուլք կալուածքը։ Խեղդող քամիները Կուրի հովտից անդադար այստեղ էլ են փչում, բայց անտառապատ լեռների և խմելու աւելի առողջարար և նոյն իսկ մի քանի գիւղերում աղբրի ջրի շնորհիւ, այս քամիների ազդեցութիւնը փոքր ինչ թուլանում է։ Տենդը այստեղ էլ յայտնի է, սակայն այնքան վնասակար չէ, որքան Խրամի գետաբերանում, այնպէս որ կարելի է ամառը ապրել, ուստի և բնակիչները, որ մեծ մասամբ քրիստոնեաներ են, սարն են ուղարկում միայն իրենց տաւարները, իսկ իրենք մնում են պահպանելու խաղողի այգիները, որ կազմում են իրենց բարօրութեան գլխաւոր աղբիւրը։ Եւ որովհետև այստեղ գիւղատնտեսութեան այս ճիւղն է ամենից աւելի զարգացած՝ ուստի կարելի է սրան խաղողի մշակման գօտի կոչել *.)

Լոռու և Ծալկայի բարձրաւանդակների կլիման միմեանց շատ նման են, միայն վերջինս փոքր ինչ աւելի խիստ է, որովհետև 500 ֆ. աւելի բարձր է և բոլորովին չէ պաշտպանուած մօտակայ Սամսար (10,777′), Ճահ-Նաբաթ (9,611′), Տաւ-Գօթէլի (9,211′) և ուրիշ գագաթներից, որոնց վրայ ձիւնը հալչում է միայն ամարային ամիսներում. այն էլ ոչ միշտ, այնպէս որ խոռոչներում, լեռների գառիվայրներում ձեան շերտեր մնում են նաև տարւայ ամենատաք ժամանակն անգամ։ Առաջին աշնանային անձրևների հետ, սովորաբար սեպտեմբերին, լեռների գագաթները ծածկւում են ձեան բարակ շերտերով և զգալի ցրտերը շատ անգամ վնասում են հունձին։

Սակայն այս առաջին ձիւնը շուտ է հալւում, կամ քամուց ցրւում, յետոյ, մօտ երեք ամիս լաւ, բայց ցուրտ եղանակ է անում, առաւօտուայ և երեկոյեան մշուշի պատճառով։ Նոյեմբերին գալիս է ձմեռը, խիստ, շատ անգամ ձիւնաշատ, և միշտ բքախառն, որ արգելում է բնակիչներին յարաբերութիւն ունենալ շրջակայքի հետ։ Ծալկայի սարահարթն այս ժամանակ ընդարմանում է և նրա բնակիչները փակւում են իրենց գետնափոր խրճիթների մէջ։ Ապրիլի վերջին ձիւնը հարթութիւնների վրայ հալչում է, միայն լեռների վրայ դեռ

* Ерицовъ յ. գ. եր. 18

ևս մնում։ Փոսերը լցւում են հեղեղատներով, Խրամը իւր վտակներով շատ անգամ դուրս է գալիս ափերից, հեղեղում է շրջակայքը և ճահիճներ կազմում։

Դաշտային աշխատանքները սովորաբար սկսւում են մայիսին, գարունն անձրևային է և ցուրտ, ամառը՝ բարեխառն—տաք, յաճախ կարկուտ է գալիս և մշուշ պատում։ Ընդհանրապէս՝ Ծալկայի սարահարթի կլիման առողջարար է, թէև տեղացիների վատ բնակարանների պատճառով մրսելուց յառաջացած հիւանդութիւններ և տարափոխիկ տիֆը այստեղ սովորական են։

Համարեա միևնոյնը կարելի է ասել և Լօռու դաշտավայրի վերաբերութեամբ։ Այստեղ էլ առատութեամբ են գալիս անձրևը, ձիւնը և կարկուտը, այնպէս որ տարեկան նստուցքը լինում է 391 (Վորոնցովկա) մինչև 576 m m. քամիները փչում են անդադար և երբեմն սաստիկ ուժգին։ Անցեալ տարի այնպէս սաստկութեամբ էր փչել, որ արմատախիլ էր արել ս Սարգիս ուխտատեղու հարիւրամեայ ահագին ծառերը։ Բարեխառնութիւնը բնորոշւում է հետևեալ գիւղատնտեսական փաստերով. դաշտերը ծածկւում են գարնանացան ցորենով, հաճարով, վարսակով և կարտոֆիլով. պտղատու ծառերից աճում են այստեղ խնձորենիների ամենադիմացկուն տեսակները—այնքան խիստ են այստեղ ձմեռները։

## ԲՈՒՍԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Թէ կլիմայի և թէ հողի բազմազանութեան պատճառով Բորչալուի գաւառի բուսականութիւնը շատ հարուստ է։ Այստեղ գտնւում են ստորին—ալպեան գօտուց մինչև սուեղով (chenobodiaceae) և օշինդրով ծածկուած դաշտավայրի գօտու բոյսերը, ուստի և այս գաւառի բուսականութեան մասին փոքր ի շատէ լիակատար գաղափար տալու համար, պէտք է կրկնել այստեղ գրեթէ այն բոլորը, ինչոր ասւում է ամբողջ Անդրկովկասի մասին։ Այդ պատճառով և՝ հետաքրքրուողներին առաջարկելով Կովկասեան Թանգարանի կառավարիչ դոկտոր Գ. Ռադդէի Կովկասի բուսականութեան բարեխիղճ ուսումնասիրութիւնը *)՝ ես միայն առաջ կըբերեմ բոյսերին վերա-

---

*) Основныя черты растительнаго міра на Кавказѣ. տպուած „Коллекціи Кавказскаго Музея“ հրատարակութեան Բ. հատորում, ինչպէս և „Записки Кавказскаго Отдѣла Императорскаго Русскаго Географическаго Общества.“ книжка XXII, выпускъ 3й 1901.

Սա մի քաղուածք է այն աշխատութիւնից, որ հեղինակը պատրաստել է երկու յայտնի պրոֆեսոր Ա. Էնգլերի (Բեռլինում) և Օ. Դրուդէի (Դրեզդենում) յանձնարարութեամբ, որոնք միացած ուժով սկսեցին հրատա-

բերեալ լոռեցիների՝ գաւառական բառերը, որ կամ բոլորովին և կամ շատ քիչ անգամ երևացել են գրականութեան մէջ։ Սրանցից շատե-րի համապատասխան լատինական անունները չկարողացայ գտնել, ուս-տի և խնդրում եմ լոռեցի բնագէտների աջակցութիւնը։ Բնական գիտութիւններին վերաբերեալ մեր գրական բառերն այնքան սակա-ւաթիւ են, որ անհրաժեշտ է հաւաքել գաւառականները։

Մեզ հետաքրքրող գլխաւոր վայրը Լոռին լինելով՝ հարկաւոր եմ համարում, սակայն, ասել, որ պրոֆ. Դոկուչայեվը այսպէս է որոշում նրա բուսականութիւնը. «Լոռու դաշտավայրը ծածկուած է տիպական-սևահողի հարուստ բուսականութեամբ, որի մէջ կան հետևեալ բնորոշ տեսակները։

**Փետրախոտ** (stipa pennata var. graffiana).
**Ճիւղախոտ** — Festuca ovina.
Koeleria cristata
**Տերեփուկի մի տեսակը.** — Centaurea scabiosa.
**Քոսաքոյս** — Scabiosa ochroleuca.
**Ճիլ** — Phleum Boehmeri.
**Եղեսպակ** Salvia Aethiopis.
**Զանգակիկ** — campanula glomerata.
**Կտաւատ** (Linum hypericifolium).
**Կաղանչան** (Euphorbia condylocarpa) և այլն. *)

Անտառները բռնում են գաւառի ամբողջ կենտրոնական, հարաւա յին և հարաւ-արևելեան մասերը. արևմտեան, հիւսիս-արևելեան և հիւ-սիսային մեծ մասը բոլորովին զրկուած են անտառային բուսականու-թիւնից։ Տեղական իշխանութեան տուած տեղեկութիւնների համե-մատ, վերոյիշեալ անտառները բռնում են 155,306 դեսեատին կամ գաւառի ամբողջ մակերևոյթի մօտ 27%։ Այս տարածութիւնից 66, 919 դեսեատինը պատկանում է արքունի գանձարանին, իսկ 88,387 մասնաւոր մարդկանց **)։

Այս անտառներում լինում են հետևեալ ծառերը.

**Բալի.**
**Բարդի** — populus pyramidalis.
**Բոխի** — грабъ — carpunus betulus.

---

բակել «Երկրագնդիս բուսականութիւնը» (Die Vegetation der Erde) խո-րագրով ստուար աշխատութիւնը, որի Գ. հատորը կազմում է պ. Ռադդէի այս հետազօտութիւնը։ Տպագրուած է Լայպցիգում, 1899 Թ.

*) Предварительный отчетъ профессора В. В. Докучаева объ изслѣдованіяхъ на Кавказѣ лѣтомъ 1899 года. Кавк. Сельское Хозяйство. 1900 № 362.

**) Аргутинскій յ. գ. եր. 126.

Գէնի—тисъ. tatus baccata.
Դեղձնի—prunus persica.
Թեղի.
Թխկի—кленъ, acer tatarica.
Լենասրեւի - остролистный кленъ.
Լորի կամ լորըքի--липа. tilia europ ea.
Խնձորենի—яблоня. pyrus malus.
Կաղնի—quercus.
Կեչի—береза, betulus
Հացի—ясень, fraxinus excelsior.
Հաճարի—букъ, fagus silvatica.
Ճամի—сосна, pinus silvestris.
Ուռենի—salix.
Սրհացի—рябина.
Տանձենի—груша, Pyrus communis.

*Ինչպէս հետեւեալ թփերը.*

Ալաժաճրի կամ ըլաժաճրի.
Բռնչքի.
Գերեմասփի կամ զրեմասփի. гордовина,—Viburnum lantana.
Եսամանի (վայրի).
Զկռի.—мушмула—mespylus germanica.
Կռզնենի
Կծոխուրի—барбарисъ, berberis vulgaris.
Հոնի—кизилъ, corna.
Հաղարճի.
Ղաժի.
Ճապկի.
Մամխի.—тернъ, prunus.
Մասրի шиповникъ. rosa canina.
Մոշըքի ежевика, rubus caesis.
Մոռըքի малина—rubus idacus.
Չիմշիրի—buxus sempervirens.
Ջագի.
Սնձնի
Տխլի—лещина, corilus avelana.
Ցրբնի—можевельникъ, juniperus.
Ցաքի—держи дерева, palyurus aculeatus.
Քըբըղկենի (բանբռուենի) sambucus nigra.

Digitized by Google

## Բ Ո Յ Ս Ե Ր

Ախպախպուկ Sisymbrium sophia.
Աղերքնակ.
Աղուէսապոչ—Alo pécurus pratensis.
Անդուղ.
Բամբուղ.
Բարձմենակ—Abrotanum.
Բդլդան.
Գաղցիկուռ—Myosurus minimus.
Գինազոխ.
Գռնանկան.
Դանդուռ - портулакъ—Zedum vulgaris.
Դեւ - lolium temulentum.
Դեւախոտ—плевелъ—lolium tolicum.
Դուղդուք.
Դրիչ—(մախօքելի վրացերէն) Սրա սեւ գլուխները ցորենի հետ ա-ղում են, որ հացը համով լինի։
Եղածաղիկ—Kanunculus Lingua.
Եզնանակաս,
Զտիթեր.
Ըրհնուկ.
Ըղրմակոբ.
Իծամիրուք.
Իշալոբի.—Fasolus grandi floıa
Իշակաթնուկ—Euphorbia sp.
Իշապոպոկ.
Իշխանաքոխ.
Լեզուախոտ.
Լիղակածաղիկ.
Լուածաղիկ—Anthemis nobilis.
Լօշանզան
Խոռ. Սրանից թէյ են պատրաստում.
Խռովելախոտ—Scrophulıria sp. s. vernolis, s. alota.
Ծղասորն.
Ծնեփակ—Asparagus officinalis.
Ծտաչքը.
Ծտապատառ կամ հանդակոտեմ. Bursa Pastoris.
Կաչաղակի սատրոն.
Կատուախոտ—Valeriana. poa,

Կարմրածծուկ.
Կծղուկ.
Կծմնակոր.
Կովայեզու.
Կուժկոտրուկ—Pœouia.
Հաւկուր.
Ղանդածաղիկ.
Ղանբափիլ.
Ղնջլուզ.
Ղօլոյ
Ճանդուկ.—Bromus Secalinus.
Ճպռաքոյ. Արմատը կարով եփում են եւ խմում, հազից բժշկուելու.
Ճրնատուկ.
Մեղրածուծ —Marrubium
Ցռչանպուռ.
Ջնադեղ.
Ջնայեզու—Gynoglossum.
Ջնապուտ.
Ջնքոխ.
Ջիշուլիկ.
Ջիշուլիկամեր.
Ջնհաղող—Solanum.
Ոչխարախոտ—Poa, Мятликъ
Որցատու.
Ուրց—Thymus serpyllum. богородичная трава.
Պապաժիժի —սրանից երեխաները խաղալիք են շինում.
Պեռախոտ.
Պիտնա —Mentha.
Պուտ—макъ. papaver.
Ռաւիդ
Ռեհան—Ocimum.
Սմքուլ —Stipa pennata
Սիքեխ.—Bininm Falcaria.
Սիրաքոյ
Սիրի' սիրի' (երեքնուկ) առուոյտ. клеверъ. trifolium.
Սրածաղիկ.
Վարբկանան.
Տերաղօբիկ.
Տղաքերուկ.

Ցառատենի — можжевельникъ juniperus.
Ցորենախոտ — тимоѳеева трава — Phleum pratense.
Քրմնձուկ — persie.

## ԹՌՉՈՒՆՆԵՐ

Օլայ.
Աղունակ. աղաւնի.
Բաբանըզտ
Գեղակռաւ
Գուքու.
Լաչին.
Թնահաւք.
Թռռոն.
Ժիռ, սարեակ. скворецъ
Ծղկապոչ
Ծօտ.
Կունձինայ
Կուրեան.
Հոպոպ — յոպյոպ. удодъ Upopa
Ձկնակուլ.
Ճանճակուլ.
Ճքառուկ.
Մովրուվու
Մկռոց.
Մկրծեռ.
Մշկաբելուկ.
Ներկահաւ.
Նիբուլ
Ներկատոտիկ.
Չլածիտ.
Չոբանխաբուկ.
Ջրապիպիզ — трясогузка
Սրահածիտ.
Վիրահաւ.
Ցրտարաք — տատրակ. (վայրենի աղաւնի).
Տորոց.
Քոռաբու.

## Ք Ր Դ Ե Ր

Ագրուանլու.
Ողուխանլու.
Արշանլու.
Թռանլու.
Կայանլու.
Կանչելանլու.
Կասկար.
Կմբրանլու.
Կովազիգիկ.
Ճամիրանլու.
Ճիզանլու.
Մրզանլու.
Զեչանլու.
Պռանլու.
Սիպեանլու.
Սրոցանլու *).

*) Օգտուել եմ հանգ. Ե. Երզնկեանի ժողովածուից։

## ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Թերթելով հայոց և վրաց մատենագիրների մեծագոյն մասը, մենք քաղեցինք Բորչալուի գաւառին վերաբերեալ պատմական տեղեկութիւնները, որոնց ամենաչնչին մասն է վերաբերում ժողովրդի կուլտուրական զարգացման, այնպէս որ այս նիւթերով անհնարին է գաւառիս բնակիչների կուլտուրական զարգացման մասին մի աղօտ գաղափար անգամ կազմել։ Նիւթերի մեծ մասը պատերազմների և հերոսների նկարագրութիւններ են, միմեանցից բոլորովին անկախ, անկապ պատմուած։ Ուստի և մենք աշխատեցինք կազմել գէթ այս, քաղաքական ասպարէզում նշանաւոր դարձած տոհմերի, հարստութեան. պատմութիւնը. բայց այստեղ էլ մեծ դժուարութիւնների պատահեցանք, որովհետև նշանաւոր անցքերի, անձերի մէջ բաւական մեծ անջրպետ է մնում. մատենագիրները յիշել են նշանաւոր անցքերն ու անձնաւորութիւնները, բայց նրանց յաջորդութեան վրայ ոչ մի ուշադրութիւն չեն դարձրել։ Ստիպուած աշխատեցանք գոնէ տալ Գուգարաց բդեշխութեան, Կիւրիկեան թագաւորութեան և Սպասալարների տոհմի պատմութիւնը, իսկ մնացած դէպքերը, որոնք առաւելապէս վերաբերում են գաւառիս բնակիչների ուրիշ տեղեր և կամ ուրիշ երկիրներից այստեղ գաղթելուն, որպէս ազգաբնակութեան շարժման գործօններ, տեղաւորեցինք ազգաբնակութեան բաժնում, ուր և կըպատմենք այն մի քանի մելիքական տների մասին, որոնք առաջնորդել են ժողովուրդներին գաղթելիս և միաժամանակ կառավարել են նրանց հաստատուելուց յետոյ։

Իսկ ինչ վերաբերում է եկեղեցու և մանաւանդ Սանահնի և Հաղբատի վանքերի կատարած կրօնական, հասարակական դերին, այդ ամփոփ կերպով կըտանք վանքերի նկարագրութիւնից յետոյ։

### ԳՈՒԳԱՐԱՑ ԲԴԵՇԽՈՒԹԻՒՆ

Բորչալուի գաւառին վերաբերեալ ամենահին տեղեկութիւնները, բացի մի քանի հատ ու կտոր անցքերից, չեն անցնում հայոց Վաղարշակ թագաւորի (148–127) ժամանակից և առաւելապէս վերաբերում են Գուգարաց բդեշխութեան։

Մովսէս Խորենացու ասելով Վաղարշակ թագաւորը բաժանել է

Գուգարքը Ձարայի որդիներից յառաջացած Գուշարի և սրա սերունդների մէջ։ Գուգարքի հարաւային մասը՝ Տաշիրը (Լօռին) տուել է Գուշարի սերունդներին, Ջաւախքի կէսը, Կանգարքը, Կողբը, Ծոբը, Ձորը մինչև Հնարակերտ ամրոցը՝ իրեն Գուշարին, հիւսիսային և արևմտա—հիւսիսային մասը (Արդահան, Կղարջք, Թռեղք և Ջաւախքի կէսը՝) յանձնել է Վրաստանի կառավարիչ Միհրդատին, տալով նրան Բդեշխ Գուգարաց տիտղոսը։ Եւ որովհետև Գուգարքը կազմում էր Հայաստանի հիւսիսային սահմանային նահանգը, և իբր ճանապարհ էր ծառայում թէ հիւսիսից հարաւ և թէ հարաւից հիւսիս գաղթող ժողովուրդների՝ ուստի և Գուգարաց բդեշխը, միւս երեք բդեշխների հետ միասին, սահմանակալ զորապետ և թագաւորի խորհրդարանի «բարձերէց», «գահերէց» անդամը դարձաւ, ինչպէս վկայում են Ագաթանգեղոս (82Թ գլ.) և Բիւզանդ (Գ. 10)։

Արտաշէս Ա (127—114) ժամանակ Գուգարաց բդեշխի իշխանութիւնն աւելի մեծացաւ, որովհետև Արտաշէսը իւր Արտաշամահ դուստրը տուեց «Միհրդատայ ումեմն, վրաց բդեշխի մեծի... և հաւատայ սմա զկողմնակալութիւն հիւսիսային լերանցն և Պոնտոս ծովու» *)։

Միհրդատից յետոյ յայտնի չէ, թէ ով է կարգւում Գուգարաց բդեշխ, որովհետև Արտաշէս Բ-ի թագաւորութեան (85—131) պատմութիւնը շատ թերի է, և հայ ու օտար մատենագիրների ասածները միմեանց անհամապատասխան։ Նոյն իսկ վրաց «Քարթլիս Ցխովրէբան» նկարագրելով Փարնաջում թագաւորի պատերազմները Տաշիրում, ուր ապաստանած էին վրաց էրիստաւները և հայերից էլ օգնութիւն էին ստացել, ոչ մի խօսք չի ասում Գուգարաց բդեշխի մասին։ Միևնոյն լռութիւնը պահպանում է այս բդեշխի մասին, երբ Երուանդ Բ-ը (65—85) ջարդելով վրաց Փարսման թագաւորի զորքերը, տիրում է մինչև Կուր գետը, առնում է Ծունդան (Ջաւախքում), բնակեցնում այնտեղ քաջ մարդիկ և վերակոչում է «Քաջաց տուն»։ Միայն Արտաշէս Բ. ժամանակ, երբ Սմբատ Բագրատունին կրկին տիրապետում է այս կողմերին, Գուգարքի բդեշխ և սահմանակալ զօրապետ նշանակւում է թագաւորի որդի Զարեհը. և որովհետև սա վատ պատերազմող էր, ուստի վրաց Քարձամ թագաւորն ապստամբեցնում է նրա հպատակներին, և Զարեհին բռնելով բանտարկում է։ Բայց Արտաւազդ, Տիրան և Սմբատ բդեշխները միասին յարձակւում են վրաց վրայ և ազատում Զարեհին բանտ՚ց և գերութիւնից **)։

Քարթլիս Ցխովրէբայում այս միևնոյն անցքը `այս կերպ է

*) Մովսէս Խոր.

**) Խոր. Բ. գիրք. գլ. ԾԳ.

պատմում. Հռովմէացիների և պարսից մէջ ծագած պատերազմի ժամանակ հայոց զօրքը, Թագաւորի երկու որդէների և Սմբատի հետ պատերազմում էին պարսից դէմ։ Վրացիներն ու օսերը բազմացրին իրենց յարձակումները ի վնաս Հայաստանի, Արտաշան Թագաւորը հաւաքեց իւր մնացած զինուորները և յանձնելով իւր որդի Զարենին ուղարկեց վրացիների դէմ։ Սրանք և սրանց դաշնակից օսերը գնացին նրան պատահելու Ջաւախքում. պատերազմեցին նրանց հետ, Զարենը յաղթուեց, փախաւ, զօրքը ցրուեց. Նրանց հետեւեցին մինչև Հայաստանի սահմանը։ Զարենը, Թագաւորի որդին, գերուեց Ցիլկնի ափին։ Օսերը կամենում էին նրան սպանել, իբր վրէժխնդրութիւն իրենց Թագաւորների արեան, բայց վրացիներն ազատեցին նրա կեանքը, իրենց սահմանները նրանով վերագնելու համար. և նրան Դարիալան ամրոցում բանտարկած պահեցին։ Հայերը պարսից պատերազմով զբաղուած լինելով՝ չկարողացան վրէժխնդիր լինել։ Բայց երեք տարուց յետոյ Սմբատ Բիւրիտեանը Թագաւորի երկու որդիների, Արտավազ և Տիգրանի հետ և Հայաստանի բոլոր զօրքով դուրս եկան պատերազմի։ Վրաստանի Թագաւորները հրամայեցին փախչել ամուր քաղաքները, հայերը բանակ դրին Թրիալէթում և սկսեցին բանակցել։ Վրացիները դաշն կապեցին, վերադարձրին գերի արքայորդուն, դաշնակից դառան և խոստացան Արտաշանի անունով և պատկերով դրամ կտրել։ Իսկ հայերը վերադարձրին Ծունդան, Ջաւախէթը, և մի քանի ուրիշ ամրութիւններ *)։

Սրանից յետոյ էլ պատմութիւնը լռում է Գուգարաց բդեշխների մասին մինչև 321 Թուականը, երբ Տրդատ Թագաւորը Հայաստանը բաժանելով չորս զինուորական շրջանի, հիւսիսայինը յանձնեց վրաց Թագաւոր Միհրանին, որի որդին ամուսնացած էր իւր դստեր հետ։ Սա միաժամանակ և կրում էր բդեշխ Գուգարաց կոչումը և առաջնորդում հայոց հիւսիսային բանակը։ Եւ երբ Տրդատի մահից յետոյ հռովմէացւոց Անտիոքոս զօրապետն եկաւ Հայաստան Տրդատի որդի Խոսրով Բ. Թագաւորացնելու, (344 Թ). Նա վերահաստատեց Միհրանին վրաց Թագաւոր և բդեշխ Գուգարաց, առաջնորդ հիւսիսային բանակի։ Այս Միհրանը, որ ս. Նունէի քարոզութեամբ ընդունել էր քրիստոնէութիւն (318 Թ.), մեռաւ այն պատերազմում, որ նա վարեց Հայաստան խուժող Հոների և Ալանների դէմ՝ որոնք մինչև Վաղարշապատ հասան, բայց կարճ միջոցում յետ քշուեցան։ Միհրանի փոխարէն հիւսիսային բանակի առաջնորդ և Գուգարաց բդեշխ կարգուեց Գարջոյլ Մալխազունին կամ Գարջոյլ Մալխաս Խորխոռունին **)։

* Brosset o. c. եր. 71.
**) Մ. Խոր. Գիրք Գ. գլ. Թ.

Այս տանից էր Մանասսյ Խորխոռունին, որ Ձորոց իշխան Գորուժի և ուրիշների հետ 336 թ. ուղեկցեց Յուսիկ կաթուղիկոսին Կեսարիա [1]։ Յայտնի չէ, թէ այս Գարջույլ Մալխազունի բդեշխը, թէ մի ուրիշն էր, որ Արշակ Բ. թագաւորութեան (364—382) միջոցին ապստամբուեց, որի պատճառով և Մուշեղ զօրապետը յարձակուելով նրա վրայ՝ բռնեց նրան, գլխատեց և արու զաւակներին կոտորեց, իսկ կանանց և աղջիկներին գերի տարաւ,պատանդներ առաւ և մնացածներին հպատակեցրեց։ [2])

Այնուհետև մինչև Ե. դարը չենք պատահում Գուգարաց բդեշխների, միայն Վարդանանց պատերազմի ժամանակ հանդէս է գալիս Աշուշա բդեշխը, «այր խելացի և խորհրդական» [3])։

Սա հրաւիրեց ս. Մեսրովբին վերացնելու Տաշիրում տարածուած կռապաշտութիւնը, և նա գալով (424 թ.) արմատախիլ արաւ չարիքը և երկրի հոգատարութիւնը յանձնեց Սամուէլ եպիսկոպոսին։ Հայոց նախարարների և վրաց ու Աղուանից թագաւորների հետ Աշուշա բդեշխն էլ կանչուեց Յազկերտ Բ-ի մօտ. և սա էր նախարարներին խորհուրդ տալիս, որ երեսանց ուրանան քրիստոնէութիւնը, որպէս զի կարողանան հայրենիք վերադառնալ և պաշտպանել անտէր ժողովուրդը։ Բայց երբ նախարարները նրա խորհուրդին հետևելով վերադարձան, Յազկերտ Բ թոյլ չտուեց նրան, ինչպէս և վրաց ու Աղուանից թագաւորներին, վերադառնալ և պահեց իւր մօտ [4])։

Եւ երբ 455 թուին նա իրաւունք ստացաւ վերադառնալու, մեծամեծ ընծաներ տալով կարողացաւ վերցնել իւր հետ իւր փեսայակից Ջմայեակ Մամիկոնեանի (Վարդանի եղբօր) Վահան, Վասակ և Արտաշէս որդիներին, որոնց Վասակը Պարսկաստան էր ուղարկել, որպէս մահապարտի որդիներ մահուան դատապարտելու։ Աշուշան բերեց նրանց Գուգարք և յանձնեց նրանց մօր, Ձուիկին, որ ապրում էր իրենց մօտ. Նրա քոյր՝ Անուշվռամը՝ Աշուշայի կինն էր։

Ջաւանականօրէն Աշուշայի մահից յետոյ վրաց Վախթանգ Գուրգասլանը (446—499) իւր թագաւորութեան վերջին օրերում բաժանելով Վրաստանը իւր որդիների և էրիստաւների մէջ՝ վերացրեց Գուգարաց բդեշխութիւնը՝ տալով Ճամշվիլդէն՝ էրիստաւ Աղսարկազին, Կղարջքը՝ Արտաւազին, Ծունդան՝ Նազարին [5])։

Այնուհետև այս նահանգը, ենթարկուելով վրաց իշխանութեան, կառավարուեց մի քանի էրիստաւներով, մինչև որ արաբացիները

---

1) Բիւզ. դպ. Գ. գլ. ԺԲ.
2) Բիւզ. դպ. Ե. գլ. ԺԵ.
3) Ղազար. Վէն. 165.
4) Ղազար Փարբ. եր. 191.
5) Brosset o. c. Ip. 200.

Digitized by Google

տիրապետելով Հայաստանին և Վրաստանին, տիրեցին և՛ Գուգարքը։ Այս ժամանակուանից մինչև Ժ դարը Գուգարքը մի առանձին իշխանութիւն, մի առանձին միութիւն չկազմեց, այլ որպէս ենթակայ երբեմն վրաց, երեմս արաբացւոց, երբեմն հայոց, նա նոյն այդ երկիրների վիճակն ունեցաւ, միայն երբեմնապէս տեղի ունեցան մի քանի նշանաւոր անցքեր, որոնք հարկ ենք համարում յիշել ժամանակագրական կարգով, որովհետև հէնց այս անցքերն էլ ցոյց են տալիս, թէ ինչպէս Գուգարքը բազմաթիւ ապստամբութիւններով ձգտում էր մի անկախ իշխանութիւն կազմելու, որին և հասաւ Կիւրիկեան թագաւորութեամբ։ Որդ՝ 782 թուին Սմբատ Բագրատունու որդիները մաքրեցին արաբներից նախ Տաշիրն ու Օշոցը և ապա հայկական այլ գաւառներ, բայց շուտով այս բոլորն էլ նորից ընկան արաբացիների տիրապետութեան տակ, և ենթարկուեցան բազմաթիւ արշաւանքների և անողորմ կոտորածների։ Սրանցից պէտք է յիշել Բուղայի արշաւանքը 850 թուին, որ ահագին աւերումներ և կոտորածներ գործելուց յետոյ, բազմաթիւ գերիների հետ Բաղդատ տարաւ Սևորդեաց Ստեփանոս Կոնին, որ քրիստոնէութիւնը չուրանալու համար՝ նահատակուեց բանտում 854 թուին։

Այնուհետև Հայաստանի հետ Գուգարքն էլ հարկ էր վճարում Բաղդատի ամիրապետին։ Գուգարքի հիւսիսային մասը՝ Կղարջքը, Ջաւախքը, Թռեղքը, Կանգարքի, Ծոբոփորի մի մասը և առհասարակ Դեբեդ գետի ձախ կողմն ընկած երկիրները իրենց վրայ դրուած հարկը յանձնում էին Թիֆլիսի ամիրային. Կողբոփորը, հաւանականօրէն ընկնում էր Գանձակի ամիրայի շրջանում, իսկ Տաշիրը, Ձորոփորը և Արդահանը ենթարկւում էին Հայաստանի ամիրային, որ Դուինն էր նստում։

Այս ժամանակներում Բագրատունիք հետզհետէ զօրացան, և շատ երկրներ ձեռք բերին, որոնց մէջ և Տայքն ու Գուգարքի մի մասը։ Այս ցեղից մինը ամուսնացաւ Վախթանգ Դուրգասլան թագաւորի դստեր հետ և սրա սերունդն ստացաւ բացի Տայքի հիւսիսային մասից, նաև Գուգարքից Կղարջքը, Ջաւախքը և Թռեղքը (Թրիալէթը)։ Այս ցեղը հետզհետէ զօրանալով տուեց շատ նշանաւոր մարդիկ և նոյն իսկ թագաւորներ, որոնցից առաջինն եղաւ Աշոտ I, որ բարձրացաւ վրաց գահը 787 թուին։

Նոյն բաղդին արժանացան Բագրատունիք և Հայաստանում, Աշոտ Ա. (885 թուին) հիմնելով Բագրատունեաց հարստութիւնը, նուաճեց նաև Գուգարքը։

889 թուին մեռաւ Աշոտ թագաւորը, և նրա Սմբատ որդին, որ դեռ Ճամշկիլդէումն էր գտնւում, Գուգարքի վրայ կառավարիչ նշանակեց

Digitized by Google

Գնթունեանց ցեղից Վասակ և Աշոտ եղբայրներին և ինքը վերադարձաւ, գահ բարձրանալու։

896 Թուին Ատրպատականի կառավարիչ Օշինը Ուտիով անցնելով ամէն կերպ աշխատեց Գուգարքի բնակիչներին ապստամբեցնել Սմբատ Թագաւորի դէմ. Բայց սրանք չենթարկուելով նրա ներշնչումներին՝ ինքեանք հաւաքուեցան անմատչելի ամրոցներ, որպէսզի սրանով ստիպէին Օշինին թողնել երկիրը։ Նա պաշարեց Ջաւախքում Տմուկվի և Կվէլի բերդերը, բայց անյաջող. Ուստի Օշինը վերադարձաւ Վանանդ (Կարսի գաւառակը)։

899 Թուին Օշինը նորից եկաւ Թիֆլիս և այստեղից Գուգարքի վրայով անցաւ Շիրակ.

Այս ժամանակ Օշինը յարձակուեց Սևորդեաց Նահապետ Դէորգի վրայ և նրան անպատրաստ գտնելով՝ գերեց իւր Արուէս եղբօր հետ, տարաւ Փայտակարան, ուր նրանց նահատակեց քրիստոնէութիւնը չուրանալու պատճառով։

Օշինի մահից յետոյ Ատրպատականի ամիրայ դարձաւ նրա եղբայր Յուսուփը, որ Թշնամանալով Սմբատ Թագաւորի հետ՝ 902 Թուին անցկացաւ Փայտակարանով և Ուտիով Տաշիր՝ Տաշրատափ. [1]) Սմբատը լսելով այս մասին՝ բռնեց Տաշիրի և Աշոցի նեղ անցքերը [2]) արևելեան կողմից, սակայն Յուսուփը տեղեկանալով այդ մասին, շտապեց անցնել հարաւ-արևմտեան կողմից և մտաւ Շիրակայ դաշտը.

904 Թուին Հայաստան արշաւեց Աբխազաց Կոստանդին Թագաւորը և տիրեց Գուգարքին, բայց Հայոց և Վրաց զօրքից յաղթուեց և գերի ընկաւ.

907 Թուին Սմբատ Թագաւորը հանգիստ ապրում էր Տաշիրում, երբ մի քանի հայ նախարարներ, վրաց Ատրներսէհ Թագաւորի հետ նրա դէմ դաւադրութիւն կազմեցին և մարդ ուղարկեցին նրան բռնանելու, բայց Թագաւորն այդ իմանալով ուղևորուեց Շիրակ, և ջարդեց ու ցրուեց դաւադիրներին. Շուտով Յուսուփը նորից մտաւ Հայաստան և Սմբատ Թագաւորն իւրեններից Թողնուած, 909 Թուին իւր զօրքով անցաւ Գուգարք, Օձուն գիւղը և ապա Թաղնուեց Կղարջքի անմատչելի այրերում [3])։ Յուսուփը վերադարձաւ Դուին, վերցրեց իւր հետ Յովհաննէս կաթուղիկոսին, իսկ Սմբատ Թագաւորը Գուգարքից անցաւ Շիրակ։

910 Թուին Հայոց Յովհաննէս կաթողիկոսը կարողացաւ փախչել Յուսուփի մօտից Եղուանից երկրով Գուգարք, ուր և երկար ապրեց, հաւանականօրէն Օձուն և Երդուի գիւղերում։

[1]) Տաշրատափն այժմ Ջիլղի է կոչւում։

[2]) Հաւանականօրէն այժմեան Ղարաքիլիսու և Դվալի անցքերը։

[3]) Աստղիկ եր. 112.

Digitized by Google

Այս միջոցներում Սմբատը հաւաքեց իրեն հաւատարիմ մնացած նախարարներին, և իւր որդիների առաջնորդութեամբ ուղարկեց Յուսուփի վրայ. Սմբատի հետ միացաւ և Սևորդեայ ցեղը, բայց հէնց առաջին կռւում Սևորդեանք դաւաճանեցին թագաւորին և իրենք յանձնեցին Յուսուփի ձեռքը իրենց առաջնորդ՝ Մուշեղ արքայորդուն։

911 թուին Յուսուփը զօրք ուղարկեց Տաշիրը և Գանդարքը ասպատակելու. Ի վերջոյ Յուսուփի կռիւը Սմբատի հետ վերջացաւ նրանով, որ Սմբատը գերի ընկաւ և գլխատուեց Դուինում։ Նրա մարմինը բերին Օձուն և ամփոփեցին եկեղեցու մօտ, ուր մինչև այժմ էլ կանգուն է մահարձանը *)։

Ցուտով Հայաստանն ենթարկուեց Յուսուփին, բացի Գուգարքի մի քանի անմատչելի տեղերը, ուր այդ ժամանակ թաք էր կենում Սահակ Սիսակեանը։

Սմբատի մարտիրոսական մահից յետոյ, նրան յաջորդեց նրա որդին՝ Աշոտ Երկաթը։ Սա շուրջն հաւաքելով իւր քաջերին, սկսեց հալածել Հայաստանից արաբներին և 914 թուին մաքրելով Գուգարքը նրանցից՝ յանձնեց նախկին կառավարիչներին—Վասակ և Աշոտ Գնթունիներին։ Ապա անցնելով Թիֆլիս և Ուտի, կրկին եկաւ Տաշիր, որ իմանալով, որ Կողբոփորում (Աղստաֆա) դեռ ևս մնացել են արաբներ, շտապեց նրանց ևս դուրս քշելու. Բայց երկար չտևեցին Աշոտ Երկաթի յաջողութիւնները. Նախարարները թողին նրան և սկսեցին միմեանց դէմ կռիւներ վարել։ Երկիրը մնաց անպաշտպան։ Այդ ժամանակ, այն է 917 թուին, նորից Յուսուփի զօրքերը մտան Հայաստան, և աւերելով երկիրը՝ բնակիչների մեծ մասին գերի տարան Յուսուփի մօտ, որ անգթաբար գլխատել տուեց հաւատը չուրացողներին։ Այսպէս գլխատուեց մի 17 տարեկան գեղեցիկ երիտասարդ Գուգարքից, Միքայէլ անունով, որ չկամեցաւ մահմեդականութիւն ընդունել։ Հայաստանեայց եկեղեցին միւս մարտիրոսների հետ յիշատակում է նաև այս Միքայէլին։

Այս միջոցին Հայաստանի հարևան ազգերը՝ աբխազներն ու Կովկասեան լեռների բնակիչները, ինչպէս և իրենք Գուգարքի և Ուտի գաւառի հայերը, օգտուելով Հայաստանի անիշխանութիւնից, սկսեցին թալանել ինչպէս Հայաստանի անպաշտպան գաւառները, այնպէս և մէկը միւսին։ Ականատես մատենագիր Յովհաննէս կաթուղիկոսի ասելով անհնարին էր այդ ժամանակներում անցնել Գուգար-

*) Տես Օձունի Խաչգոնտ եկեղեցու նկարագրութեան մէջ։

քով և Ուտիքով. Թալանում էին ամէն րոպէ և կրակի մատնում տըներն ու կալքերը։ Այս բոլորի հետևանքն եղաւ սով և երկրի աւերումն։

Այս միջոցին Աշոտից կարգուած Գուգարքի Վասակ և Աշոտ Գնթունի կառավարիչները Գուգարքի բնակիչներին ապստամբեցրին թագաւորի դէմ և 921 թուին իրենց անկախ հրատարակեցին։ Աշոտ Երկաթ թագաւորն իւր եղբայր Աբասի և ուրիշ նախարարների հետ մտաւ Գուգարք և պաշարեց Շամշուլդէ ամրոցը, ուր թաքնուած էին Գնթունի նախարարները։ Պաշարումն անյաջող անցաւ. թագաւորական զօրքի պաշարը հատաւ և Աշոտ ստիպուեց բաց թողնել իւր զօրքը շրջակայքը ուտեստ գտնելու, իսկ ինքը 250 մարդով հեռացաւ Ասուրէստ *) ամրոցը։ Վասակ և Աշոտ Գնթունիները տեսնելով, որ Աշոտ թագաւորը մեկնեց իրենցից, ցրուեց զօրքերը զանազան գաւառներ և առանձին մնացել է Ասուրէստի մօտ, ծածուկ պատրաստութիւններ տեսան, մօտ չորս հազար մարդ վարձեցին Կովկասի լեռնականներից և Թիֆլիսի զօրքերից և յանկարծակի յարձակուեցան Աշոտ թագաւորի վրայ։

Աշոտ այսպիսի անակընկալ յարձակման ենթարկուելով շուարեց, բայց յետոյ քաջացաւ, քաջալերեց իւր երկու հազար մարդկանց. և ընկնելով սրանց վրայ, արիաբար որին սրէ անցկացրեց, որին դերի բռնեց. ապա անհաւատների ականջներն ու դունչը կտրեց, իսկ քրիստոնեաներին մերկացրեց և արձակեց։ Միայն Վասակը մի քանի մարդկանցով կարողացաւ փախչել և ամրանալ Շամշուլտէում։ Այս ժամանակ Աշոտ թագաւորն իւր եղբայր Աբասի հետ գնաց Տփխիսի մեծ իշխան և իւր սիրելի Գուրգէնի մօտ։ Այստեղ ինքն իրեն եկաւ Վասակ Գնթունին և խնդրեց ներել իրեն։ Աշոտ թագաւորն էլ ներողամիտ եղաւ և կրկին հաստատեց նրան իւր եղբայր Աշոտի հետ Գուգարքի վերակացու։ Կարճ ժամանակից յետոյ Վասակի եղբայր Աշոտ Գնթունին օտարազգի թշնամիների դէմ վարած պատերազմում մեռաւ և այնուհետև միայն Վասակը տիրապետեց Գուգարքին։

Սակայն Վասակ նորից մտածեց ապստամբել Աշոտ Երկաթից, անձնատուր եղաւ աբխազաց Գուրգէն մեծ իշխանին և խոստացաւ յանձնել նրան իւր ամրոցը, միայն թէ նա ևս տայ իրեն մի ուրիշ ամրոց իւր երկրի մէջ։ Գուրգէն այս յետկարի համաձայն պահանջեց նրանից բերդը. և Վասակ յանձնելով բերդը իւր մի քանի ազգականների, գնաց Գուրգէնի մօտ, որ արդէն զօրքն առած դէպի իրեն էր գալիս։ Նրան պատահելով՝ Վասակը միացաւ նրան և եկաւ յետ, դէպի ամրոցը։ Բերդապահները զարմանալով Գուրգէնի այդպէս արագ

*) Այժմ կոչւում է Ազղոր. Ախալցխայի մօտ է։

վերադառնալու վրայ, կասկածեցին և բաց չարին դուռը, այլ խնդրեցին, որ թոյլ տայ միայն Վասակին ներս մտնելու և ապա նրա հաւանութեամբ կարող են յանձնել բերդը, որովհետև, ասում են, մենք իրաւունք չունինք առանց նրա հրամանի բերդը մինին յանձնելու։ Գուրգէնը պնդելով իւր ասածի վրայ, կամենում էր պատերազմով առնել բերդը։

Այս տեսնելով բերդապահները շտապով պատգամաւորներ ուղարկեցին Աշոտ Թագաւորի մօտ և իմացրին նրան եղելութիւնը։ Նա էլ զօրքն առած շտապով եկաւ այդտեղ։ Եւ երբ Գուրգէնը լսեց, թէ Աշոտը գալիս է, շտապով փախաւ այնտեղից, տանելով իւր հետ և Վասակին։ Պահապանները տեսնելով Գուրգէնի փախուստը, Աշոտի առաջն էլ բաց չարին դուռը և ասացին, թէ չեն կարող ոչ ոքի ընդունել, քանի որ Վասակը իրենց մօտ չէ։

Աշոտը այս բանի վրայ զայրացած պաշարեց ամրոցը և յարմար ժամի էր սպասում այն առնելու։ Այս պատճառով քաղաքացիները թշնամացան Աշոտի հետ։

Եւ որովհետև այդ ամրոցը յետևից ծածուկ դուռն և անխուլ ճանապարհ ունէր, ուստի այնտեղից Գուրգէն իշխանը մի պատգամաւոր ուղարկեց ներս և ծանր երդումով խոստացաւ նրանց տալու Վասակին, եթէ յանձնեն իրեն ամրոցը։ «Եւ ես, ասում է, քշելով այստեղից Աշոտին, կազատեմ ձեզ բոլորից նրանից, ապա թէ ոչ նա կը կոտորէ բոլորիդ և ես էլ կ'սպանեմ Վասակին»։ Այդ ժամանակ բերդապահները վախենալով, թէ մի գուցէ չկիջանին Գուրգէնի խնդրին, նա յիրաւի սպանէ Վասակին, վերադարձրին պատգամաւորին և խնդրեցին Գուրգէնին, որ զօրք ուղարկէ, տիրէ բերդին և հալածէ այնտեղից Աշոտ Թագաւորին։ Գուրգէն այս խոստումը առնելով քաղաքացիներից, երեք հարիւր մարդ ուղարկեց, որոնք այդ գաղտնի ճանապարհով ներս մտնելով, սկսեցին կոտորել բերդապահներին։ Եւ երբ այս տեսան բերդի բնակիչները՝ պահուեցան. և վերնաբերդը բարձրանալով՝ սկսեցին կռուել Գուրգէնի զօրքի հետ, աշխատելով դուրս քշել նրանց բերդից։

Իսկ Աշոտն այս մասին ոչինչ չգիտենալով, կարծում էր, թէ ամրոցի միջի մարդիկն են միմեանց կոտորում։ Եւ որովհետև նա չէր կարող կռուել բերդի մէջ եղողների հետ, որովհետև պարիսպը խանգարում էր, ուստի և սկսեց կռուել վերնաբերդի մէջ եղողների հետ և շատ նեղում էր նրանց, այնպէս որ նրանք չէին կարողանում այլ ևս կռուել Գուրգէնի զօրքի դէմ։ Ուստի սրանք սկսեցին բոլոր ձայնով աղաղակել և ասել Աշոտին, թէ Գուրգէնի զօրքերը բերդի մէջ են և իրենք նրա համար են կռւում և ոչ ուրիշի։

Երբ լսեց այս Աշոտը, շատ զարմացաւ և կանչեց նրանց թէ,

եթէ ինձ համար էք պատերազմում, ինչո՞ չէք բաց անում բերդի դուռը, որ ես էլ ներս մտնելով հեշտութեամբ կարողանանք վերջացնել պատերազմը, և ես վարձատրեմ ձեզ, ինձ համար պատերազմելու համար։ Եւ երբ բացին դուռը, Աշոտի զօրքերը ներս մտան և մի ակնթարթում ձերբակալեցին Գուրգէնի զօրքը։ Եւ որովհետև նրանք կապանքների մէջն անգամ լուռ չէին կենում, և վատ էին խօսում Աշոտի մասին, ուստի և Աշոտ հրամայեց հանել նրանց աչքերն և կտրել նրանց ականջներն ու դունչերը և այնպէս ուղարկել Գուրգէնի մօտ։

Այսպիսով Աշոտ Երկաթը նորից հպատակացրեց իրեն Գուրգէնին։

Սակայն այս ազատասէր երկիրը բոլորովին չընկճուեցաւ և կարճ միջոցից յետոյ, Աշոտ Ողորմածի ժամանակ նորից անկախութիւն ձեռք բերեց և առանձին թագաւորութիւն կազմեց, Կիւրիկեան հարստութեամբ։

## ԿԻՒՐԻԿԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Կիւրիկեան թագաւորութեան հիմնադիր համարւում է Աշոտ Ողորմածի կրտսեր որդի Գուրգէնը կամ Կորիկէ Ա. որ հօր մահից յետոյ ժառանգեց Տաշիրը, Կայեան, Կայծոն, Խոշոռնի, Խոռակերտ, Բագկերտ և ուրիշ անուանի բերդեր։ Մինչդեռ իւր աւագ եղբայր Սմբատ Բ. թագաւորում էր Անիում, սա իրեն թագաւոր հրատարակեց (982 թ.) և սկսեց առանձին դրամ կտրել, որոնցից մի հատ Խուդաբաշեվը նուիրել է Պետերբուրգի Ասիական թանգարանին։ Այս դրամը առաջին անգամ նկարագրել է Մ. Բրոսսէն իւր «Monographie des monnaies Arméniennes»,(S.Petersbourg 1839).և յետոյ Լանգլուան իւր «Numismatique générale de l'Arménie» (Paris 1859 թ.) աշխատութեանց մէջ։ Սա պղնձից է, առաջին երեսում տեսնւում է Յիսուս Քրիստոսի անդրին, ամբողջ դէմքով, գլխի շուրջը ճաճանչ և ձեռին մի գիրք՝ հաւանականօրէն՝ Աւետարանը բռնած. գլխի երկու կողմում ՅՍ ՔՍ է գրուած, վերևը կրճատման պատիւ։ Միւս երեսում որոշ կարդացւում է միայն

+ ՏՐ ՈԳ
'ՆԻ ԿՈՐԻԿ
Ի ԿՈՐԱ...
Ա...

այսինքն Տէր օգնեա Կորիկի կոր..ա ..

Բրոսսէ այս դրամը Կորիկէ առաջինինն է համարում, որովհետև «սրա ձևը միանգամայն յիշեցնում է Թամարի հայր Գէորգիի և Գի-

որդի Լաշա Վրաց Թագաւորների դրամի ձեւը [1]։ Բացի սրանից այս Կորիկէն սոյն հարստութեան ամենազօրեղը լինելով, կարելի էր աւելի հեշտութեամբ նրան վերագրել» [2]։

Բայց Լանգլուան նմանութիւն գտնելով Անանուրի խաչակիր իշխանների դրամների վերտառութեան (legende) հետ, վերագրում է Կիւրիկէ IV-ին [3]։

Մենք Բրոսսէի կարծիքը աւելի հաւանական ենք համարում, որովհետեւ որքան զօրեղ էր Կիւրիկէ Ա. այնքան թոյլ և աննշան էր Կիւրիկէ Դ. որ հալածուած Գուգարքից, ապրում էր Մածնաբերդում։



Գուրգէնը մեռաւ 989 թուին և թողեց երկու որդի՝ Դաւիթ և Սմբատ։ Դաւիթը, որ Անհող կոչուեց, ընդարձակեց իւր երկրի սահմանները Գուգարքումն ու Վրաստանում և Շամշուլդէն մայրաքաղաք դարձրեց։ Նա նուաճեց նաև Դմանեաց քաղաքը [4]) և հպատակեցրեց Թիֆլիսի ամիրային։

Այս ժամանակ (990 Թ.) Գանձակի Փալտուն ամիրան յարձակուեց Դաւթի վրայ, բայց ջարդուեց և հազիւ հազ կարողացաւ ազատուել [5]։ Հէնց այս միջոցին մի հայ նախարար, որ տիրում էր Գագ (Ղազախում) բերդին, դաւաճանեց Դաւթին, հպատակուեց Վրաց Թագաւորին, երկրորդ անգամ մկրտուեց յունական ծիսակատարութեամբ և անուանուեց Դիմիտրի։ Այս հաւատափոխութեան պատճառով նա Վրաց կողմից կառավարիչ (մամփուղ—արքայիկ) կարգուեց Գագում։ Այդ ժամանակ Դաւիթը յարձակուեց Դիմիտրիի վրայ և խլեց նրանից բերդը։ Դիմիտրին փախաւ և այս պարտութիւնից յետոյ երկար չապրեց։

Այսպէս զօրանալով՝ Դաւիթ Անհողը 1001 թուին իրեն անկախ հրատարակեց Հայոց Գագիկ Թագաւորից։ Այս պատճառով Գագիկը

---

1) Ma Numismatique de la Géorgie երես 19 և 25.

2) Յիշ. գիրքը՝ եր. 33.

3) Յիշ. գ. եր. 29.

4) Չամչեան Բ. 873.

5) Ասողիկ 156—157.

յարձակուեց Դաւթի երկրի վրայ, մտաւ Տաշիր, և երեք ամսուայ ընթացքում քարուքանդ արաւ Դաւթի երկրները. մինչև որ Աղուանից Սարգիս կաթուղիկոսը միջամտելով կարողացաւ հաշտեցնել և Դաւթին նորից հպատակեցրեց Գագկին։ Բայց երբ 1020 թուին մեռաւ Գագիկ Շահնշահ թագաւորը կտակելով իւր Յովհաննէս Սմբատ որդուն թագաւորական գահի և շատ երկրների հետ նաև Կայեան, Կայծոն բերդերը և Սևորդեաց Տաւուշ գաւառը [1]), Դաւիթ Անհողը նորից զէնք վերցրեց, և օգտուելով հանգամանքից, որ Յովհաննէս-Սմբատի թուլութեան պատճառով նրա եղբայր Աշոտն էլ թագ էր կապել Կարսում և այս պատճառով սկսուել էր ազգամիջեան պատերազմ՝ օրից որ զօրացաւ և ընդարձակեց իւր երկրի սահմանները դէպի Ուտէացւոց և Աղուանից աշխարհները, որի պատճառով և վերակոչուեց Աղուանից թագաւոր, պահպանելով իբր մայրաքաղաք դարձեալ Շամշուլտէն։

Դաւիթ Անհողը վերանորոգեց շատ բերդեր ու ամրոցներ. կառուցեց տասներկու նոր բերդ, շինեց կամ վերաշինեց Լօռի քաղաքը Տաշիրում և կառավարիչ կարգեց իւր որդի Գուրգէնին, որ Կորիկէ կամ Կիւրիկէ էլ էր կոչւում։ Այս միջոցներում Դաւիթ Անհողը խնամացաւ Դունի ամիրայ Աբուսուարի հետ, (որ ազգով պարսիկ էր), տալով նրան իւր քոյրը։ Աբուսուարը շատ նախանձոտ աչքով էր նայում Դաւթի այսպէս զօրանալու վրայ, ուստի և ծածուկ դաշն կապելով Պարսից գահի վրայ նոր հաստատուած Տուղրիլի հետ, հաւաքեց մինչև 150,000 զօրք և 1036 թուին մտաւ Աղուանք և հետզհետէ շարժուեց դէպի արևմուտք։ Թէև շատ քաղաքներ հպատակեցան այս ամիրային, բայց ամէն տեղ եկեղեցիները քանդուեցան, քրիստոնէական սրբութիւնները ծաղրի առարկայ դարձան և շատերը գլխատուեցան հաւատի համար։ Դաւիթը միայն տասն հազար զօրք ունէր, ուստի և չհամարձակուելով միայնակ պատերազմ սկսել, օգնութիւն խնդրեց Հայոց, Աբխազների և Կապանի թագաւորներից, ինչպէս և Աղուանից Տէր Յովսէփ գ. կաթուղիկոսից։ Յովհաննէս թագաւորն ուղարկեց 3000, Դարբանդի Սենեքերիմ թագաւորը՝ 2000, և Աբխազների թագաւորը՝ 4000 զինուոր, որ Գուգարքի զօրքի հետ կազմեց 19000։

Բացի դրանից Դաւիթը դիմեց Գուգարքի նշանաւոր վանքերին, և նրա մօտ հաւաքուեցան վարդապետներ և քահանաներ՝ խաչով, խաչվառով։ Հոգևորականութեան ներկայութիւնը և նրա երգեցողութիւնն ոգևորեցին Դաւթի զօրքին և հէնց առաջին կռւում Աբուսուարի զօրքը ջարդուեց և ցրուեց։ Հինգ օր շարունակ

[1]) Վարդ. Բարձ. եր. 92։

հայերը հետևեցին թշնամիներին և յետոյ նրանց թողած աւարը Դաւիթը բաժանեց զօրքին և հոգևորականութեանը ¹)։

1039 թուին մեռաւ Հայոց թագաւոր Յովհաննէս և նրա եղբայր Աշոտը, երկիրն երկու տարի մնաց առանց թագաւորի։ Դաւիթ Անհողը՝ իւր առաջին յաջողութիւններով հպարտացած, խիզախեց իրեն ամբողջ Հայաստանի թագաւոր հրատարակել և տիրել նրան։ Երկու անգամ նա մտաւ Շիրակ, հակառակորդներին սրից անցկացրեց, բայց երկու անգամին էլ նախարարները միացեալ ուժով ստիպեցին նրան վերադառնալ իւր թագաւորութիւնը՝ Գուգարք։

Բայց երբ Գագիկ Բ. դաւաճանութեամբ Կ. Պօլիս հրաւիրուեց, ուր նրան առաջարկեցին Յովհաննէս թագաւորի կտակի համեմատ Անին Յոյներին յանձնել, Հայոց նախարարներն երկու կուսակցութեան բաժանուեցան. մինը ցանկանում էր Անին Յոյներին յանձնել, միւսը՝ հրաւիրել Դաւիթ Անհողին՝ տիրելու նրան։ Առաջին կուսակցութիւնն աւելի զօրեղ եղաւ և Յոյները հրաւիրուեցին Հայաստան 1046 թուին ²)։ Նոյն տարին էլ մեռաւ Դաւիթ Անհողին թագաւորը և թաղուեց Սանահնի վանքի բակում։ Դաւիթ Անհողին յաջորդեց որդին՝ Կիւրիկէ Բ. Սա իւր մայրաքաղաքը Շամշուլդէից փոխադրեց իրեն սիրելի Լօռի քաղաքը։

Սորա ժամանակ, 1063 թուին պարսից թագաւոր Ալփասլանն ահագին բոլոր ցեղերից հաւաքած ահագին զօրքով մտաւ Աղուանք և բնակիչներին սրի ճարակ դարձրեց. ապա պատգամաւոր ուղարկեց Կիւրիկէի մօտ, Լօռի, և խնդրեց նրա դստեր ձեռքը, սպառնալով որ եթէ մերժէ՝ կարշաւի նրա երկիրը։ Կիւրիկէ թագաւորն ստիպուած տուեց նրան իւր աղջիկը և նրա հետ դաշն կապեց։ Ալփասլան ազատ թողնելով Կիւրիկէի երկրները, մտաւ Գուգարքի Ջաւախք գաւառը, առաւ Ախալքալաքն ու Շամշուլդէն ³)։

1082 թուին Կիւրիկէ թագաւորը արևելեան Հայաստանի հայերի խնդրով՝ հրաւիրեց Աղուանից Ստեփաննոս կաթուղիկոսին Հաղբատ և Հայոց կաթուղիկոս օծել տուեց Անիի առաջնորդ Բարսեղ եպիսկոպոսին։ Յետոյ այս նորընտիր կաթուղիկոսի հետ այցելութեան գնաց Պարսից Մելիքշահ շահին՝ Խորասան, ուր մեծ պատուով ընդունուեց ⁴)։ Վերադառնալով իւր երկիրը՝ Կիւրիկէ թագաւորը շարունակեց ջանք

---

¹) Մ. Ուռհայեցի 92–95. և Սմբատ սպար. 37–38.

²) Վարդան Բարձրբերդցին առանց բացատրելու, թէ ինչպէս Բջնի, Կայեան և Կայծօն բերդերը անցել էին Գրիգոր Մագիստրոսին, ասում է թէ նա տուեց սրանք Յունաց Մոնոմախոս կայսրին և սրանց փոխարէն առաւ Միջագետքի դքսութիւնը։ եր. 99։

³) Վարդ. Բարձր. եր. 101.

⁴) Կիր. եր. 55։ Վարդ. 102. 101. Մխիթ. Այր. 60. Չամչ. Գ. 7,

թափել պահպանելու իւր սահմանները վրացիներից, որոնք օրից օր զօրանում էին [1]։

Կիւրիկէն մեռաւ և թաղուեց Հաղբատի վանքում։ Նա թողեց երկու որդի՝ Աբաս և Դաւիթ, ինչպէս և երեք դուստր՝ Մարիամ, Ռուսուդան և Բաւրինայ, որոնք շինել են Սանահնի վանքի գաւթի երեք սիւները։

Կիւրիկէ Բ.-ից յետոյ սկսեց թագաւորել Աբասը, որի ժամանակ, 1105 թուին, Սկիւթացի Ղզիլ ամիրան ինքնակամ յարձակուեց Գուգարքի թագաւորութեան վրայ, առաւ Լօռին, Հաղբատն ու Սանահինը, գնաց մտաւ Դուին և սպանեց Աբունասարին։ Այս միջոցին վերջինիս եղբայր Մանուչէն, զօրք ստանալով Պարսից արքունիքից, եկաւ սպանեց Ղզիլին իւր եղբօր՝ Աբունասարի գերեզմանի վրայ և Դուինը յանձնեց պարսիկներին [2]։

Սակայն Մանուչէի այս յաղթութիւնը չփրկեց Կիւրիկեան թագաւորութիւնը, որովհետև վրաց Դաւիթ թագաւորը զօրանալով, խլեց պարսիկներից Թիֆլիսը, և յետոյ հայերի ձեռնտուութեամբ առաւ Ապրսուար ամիրայից Անին և աւելի ընդարձակելով իւր սահմանները՝ 1118 թուին տիրեց նաև Կայեան, Կայծոն, Լօռի, Տաշիր և ամբողջ Կիւրիկեան թագաւորութեան երկիրներին [3]։ Աբասն ու Դաւիթը գնացին «առ տեառն Ռանայ» (թերևս Առանայ, Աղուանք), և առան մի մի բերդ, (այն է Տաւուշ և Մածնաբերդ) և այնտեղ ապրում էին տառապանքով [4]։ Կարճ միջոցից Տաւուշն ընկաւ Պարսից ձեռը և Աբասը վերաբնակուեց Մածնաբերդում, իւր եղբայր Դաւիթի մօտ։ Այս երկուսի կանայքն էլ, Մամքան և Ռուզուդան, դարձան կրօնաւոր [5]։

Աբաս թագաւորն ու իւր եղբայր Դաւիթը մեռան և թաղուեցան Հաղբատի վանքում։ Աբաս որդի չունէր, ուստի և նրան յաջորդեց Դաւիթի որդին՝ Կիւրիկէ Գ.-ը, մի շատ բարեբարոյ և առաքինի անձնաւորութիւն։ Նա առանց մի յիշատակի արժանի գործ կատարելու մեռաւ և իշխանութիւնը թողեց իւր փոքրահասակ Աբաս Բ. որդուն. Աբասը չափահաս դառնալով՝ ամուսնացաւ Զաքարէ սպասալարի քոյր Նանայի հետ, սակայն երկու տարուց յետոյ վախճանուեց։ Այրի Նանա թագուհին ի յիշատակ իւր այդ վաղամեռիկ ամուսնուն, շինեց Սանահնի կամուրջը Ձորագետի վրայ։

---

1) Կիրակ. Գանձ. եր. 89։

2) Կիրակ. Գանձ. եր. 59. Վարդ. Բարձ. եր. 113. Մխիթ. Այր. եր. 61. Սամուէլ Անեցի եր. 121.

3) Brosset. Hist. de la Géorgie I. 360. Վարդ. Բարձ. 119. Մատթ. Ուռհ. 427—428 և 438-439

4) Վարդ. Բարձ. եր. 106.

5) Վարդ. Բարձ. եր. 90.

Արասը թողեց միայն մի ապօրինի որդի, որին նրա քոյր Ռուսուդանը առաւ իր մօտ և դաստիարակեց։ Սա, որ կոչւում էր Աղսարթան, մեծանալով դարձաւ «ատուածապաշտ ու քահանայասէր»։ Եւ երբ նա ժառանգեց Մածնաբերդը, Նոր բերդի Դաւիթ իշխանը Բագրատունեաց ազգից լինելով՝ չկամեցաւ որ Աղսարթանը, որպէս ապօրինի որդի, ժառանգէ Մածնաբերդը, ուստի և խաբէութեամբ ամուսնացրեց նրան իր դստեր հետ և ինքը տիրեց Մածնաբերդին, որից յետոյ հանեց իր աղջիկը նրա մօտից։ Այս պատճառով Աղսարթան իր կողմը գրաւեց բերդի բնակիչներին, որոնք յանկարծակի յարձակուեցին Դաւթի վրայ, և ամբողջ ընտանիքով դուրս հանեցին բերդից, և վերջինս յանձնեցին Աղսարթանին [1]։ Մի ժամանակից յետոյ Աղսարթան իշխանութիւնը թողեց իր որդի Կիւրիկէ Դ.-ին և ինքը կրօնաւոր դարձաւ Գիտակից վանքում [2]), Կիւրիկէ Դ. պաշտպանեց իր Մածնաբերդը թաթարաց արշաւանքից, կռուելով Մօլարնուի դէմ [3])։ Նա թողեց երեք որդի՝ Բահլաւան, Թաղիադին և Աղսարթան, որոնց մասին այս միայն յայտնի է, որ Թաղիադինը թաթարաց Հուլաղու խանի հետ 1257 թ. գնաց Ասորեստան պատերազմելու։ [4]) Յայտնի է նաև, որ նա կենդանի էր դեռ 1296 թ. [5])։

Այսպէս ուրեմն, Կիւրիկեան թագաւորութիւնն սկսուեց 982 թուին Աշոտ Ողորմածի որդի Գուրգէն կամ Կիւրիկէ Առաջնով և տևեց երկուս ու կէս դարից աւելի մինչև Կիւրիկէ Դ. մահը, որ հաւանականօրէն տեղի է ունեցել 1250 թուից յետոյ [6])։

[1]) Կիրակ. Գանձ. եր. 89—90.

[2]) Վարդ. 90.

[3]) Կիր. Գանձ. 142.

[4]) Չամչեան Գ. եր. 257.

[5]) Mon. des monnaies arméniennes p. 33.

[6]) Բրոսսէն համեմատելով Կախէթիայի և Աղուանից Կիւրիկեան թագաւորութիւնների անունների ցանկը՝ շատ մեծ նմանութիւն է գտնում նրանց մէջ և նոյն իսկ կարծում է, թէ մինը արտագրած է միւսից։ Նա աւելացնում է. «Եթէ հարկաւոր է ասել, ինչոր ես մտածում եմ, ես խոր համոզուած եմ, որ Կախէթիան աւելի շուտ հայերին է պատկանել, քան վրացիներին։ Մենք տեսնում ենք, որ ըստ Ստրաբոնի, Կուրը բաժանում էր Իբերիան Աղուանքից և ոչ մի վրացական լուրջ վկայութիւն չկայ, որ Կախէթը վրացիներին պատկանէր ԺԳ. դարից առաջ, և բացի սրանից, Վախուշտը և Վախտանգը պատմում են, որ Հերէթի (Կախէթի մի մասն) իշխան Նգարնագի ժամանակ այս երկիրը թողեց հայոց կրօնը՝ վրացականն ընդունելու։ Երդ. քանի որ յայտնի է այս երկու ազգերի փոխադարձ ատելութիւնը, չի կարելի կարծել, որ վրացի իշխանները մի քանի հարիւր տարի շարունակ մնացել են հաւատարիմ հայոց կրօնին։ Սա հակասութիւն կլինէր։ Ուրեմն պէտք է հայոց մատենագիրների հետ ընդունել, որ այս աղուանական հարստութիւնը հայկական ծագումն է ունեցել»։ (Brosset. Mon. des monnaies

Digitized by Google

Այսքան ժամանակամիջոցում միմեանց յաջորդել են ութ թագաւորներ, որոնք բնակուել են Ճամշուլդէ, Լոռի, Տաւուշ և Մածնաբերդ բերդերում և որոնց յաջորդութիւնը եղած է հետևեալ կարգով.—

Գուրգէն կամ Կորիկէ Ա. 982—989

Դաւիթ Անհող 989—1046

Կիւրիկէ Բ. կ. Թամար † 1032-ից յետոյ

Աբաս Ա. † 1118 յետոյ. Դաւիթ. Մարիամ. Ռուսուզան. Բաւրինա.

Կիւրիկէ Գ.

Աբաս Բ. կ. Նանա. † 1234.

Աղսարթան.

Կիւրիկէ Դ. կ. Թամար. † 1250 յետոյ

Բահլաւան. Թաղիադին † 1296. Աղսարթան.

Կիւրիկեան թագաւորութեան անկման միջոցին նշանաւոր դարձաւ Սպասալարների տոհմը, որ քաղաքական մեծ դեր կատարեց։

---

arméniennes p. 32)։ Շօշափելով այս վերին աստիճանի հետաքրքրական հարցը, մենք շեշտում ենք, որ անհրաժեշտ է մանրամասնօրէն ուսումնասիրել Կախէթը, հաւաքել արձանագրութիւնները, աւանդութիւնները, որոնց շնորհիւ միայն հնարաւոր կլինի լուծել վերոյիշեալ խնդիրը։

Digitized by Google

## ՍՊԱՍԱԼԱՐՆԵՐԻ ՏՈՀՄ

Սպասալարների տոհմը յառաջացել է քուրդ ազգից, որ փախչելով Զորագետի Բագրատունի, այսինքն Կիւրիկեան թագաւորի մօտ, քրիստոնէութիւն է ընդունել և պատուի արժանանալով բնակութեան համար ստացել Խոշոռնին [1])։

Այս տոհմի նախահօր անունը յայտնի չէ, ոչ էլ նրա Գուգարք գալու թուականը։ Ամենահին անդամը համարւում է Խոսրովը, որ յիշատակւում է Հաղբատի վանքի արձանագրութեան մէջ [2]), սրա որդին եղել է Աւագ Սարգիսը, իսկ թոռը՝ Զաքարէն։ Այս երեքի մասին էլ պատմութիւնը լռում է, յիշելով միայն նրանց անունները։ Իսկ Զաքարէի որդի Սարգսի մասին ասւում է, որ սա պատերազմներում վարժուած նշանաւոր հերոս է եղել, և վրաց Թամար թագուհուց սպասալար կարգուել և իբր սեպհականութիւն ստացել է Լօռին «Մրթաւար Սոմխէթիս» տիտղոսով [3])։

Այս Սարգիսն ամուսնացել է Կայեան բերդի և նրա գաւառի վրայ իշխող [4]) Քուրդ իշխանի քրոջ [5]) հետ և վրաց Գէորգի թագաւորից այս Քուրդ իշխանի որդի [6]) Սադունի փոխարէն Անիի կառավարիչ կարգուել [7])։

Սարգիսը մեռել է 1187 թուին [8]) և թաղուել իրենց տոհմական գերեզմանատանը՝ Սանահնում։

Աւանդութեան ասելով այս Սարգիսը, այսինքն Զաքարէի և Իվանէի հայրը, եղել է Ճիօշը, որ կոչուել է նաև Ջուջա-պապ. (գաճաճ պապ), որովհետև գաճաճ է եղել։ Սա յայտնի է եղել իւր արտակարգ քաջութեամբ։ Մի անգամ վրաց Թէհմուրազ-խան թագաւորը նրան պատգամաւոր է ուղարկում Ջիլի-սուլթան շահի մօտ։ Շահը նայել է նրան, նրա կարճ հասակին, չափազանց երկար պեխերին ու մորուքին և արհամարհանքով ասել. «Ձեր երկրում մարդ չկա՞ր, որ քեզ ուղարկեցին»։

—Մարդը մարդկանց մօտ, ինձ էլ քեզ մօտ ուղարկեցին, պատասխանել է Ճիօշը։

---

[1]) Վարդ. Բարձ. եր. 138.

[2]) Գաւթի հիւսիսային կողմում... Ես Աւագ Սարգիս միաբանեցայ ս. Նշանիս... և ետուն մեզ պատարագ... իմ հօրն Խոսրովին... (Առաջինը նկատել է Բրոսսէն. Hist. de la Géorgie, Add. p. 237.

[3]) Blosset. o. c. Ip. p. 309,

[4]) Կիր. Գանձ. եր. 122.

[5]) Վար. Բարձ. եր. 140.

[6]) Կիր, Գանձ եր. 125.

[7]) Վարդ. Բարձ. եր. 127.

[8]) Ինչպէս երևում է տապանագրից.

Այս պատասխանը շահին դիւր չէ եկել, ուստի և կամենալով ծաղրել նրան, հրամայել է ճաշին մածուն տալ, որպէսզի նրա երկար պեխերն ու մօրուքը մածնոտի. Ճիօշը այս հասկացել է և ասել, թէ մեր երկրում մածունը մեղրով են ուտում. Իսկոյն մեղր են բերում. Ճիօշը մի բրդուջով մեղր է վերցրել, և յետոյ մեղրոտած մատերով պեխերն ու մօրուքը սրբել և առանց մածնի մէջ ձգելու կերել է։

Շահը հաւանել է սրա հնարագիտութեանը, բայց չի մոռացել նրա հանդուգն պատասխանը, ուստի և վերադարձին հինգ ձիաւոր է ուղարկել, որ նրան սպանեն։ Ճիօշը քաշել է թուրը և հնգին էլ ըսպանել, ձիերն առել, դարձել շահի մօտ։ «Երկիրդ շատ անապահով է, ասել է նա շահին, ամէն քայլափոխում աւազակներ են յարձակւում, ահա հնգին սպանել եմ, բեր ինձ պահապաններ տուր, անունս էլ «քեօտկումը» (գլխաւոր մատեան) գրիր, որ իմացուի, թէ ես մըտել եմ քո երկիրը, որպէսզի եթէ երկրումդ մի բան պատահի, դու լինիս պատասխանատու»։

Շահն անճարացած պահապաններ է տուել և անվտանգ հասցրել մինչև սահմանը [1].

Սարգիսը թողել է երկու որդի, Զաքարէ և Իւանէ։ Զաքարէն, որ «մի քաջ և արժանաւոր զօրապետ էր» [2]) և իւր անձի մէջ ամենափայլուն կերպով միացրել էր մարդկային և աստուածային բոլոր առաքինութիւնները, իւր հօրը փոխարինող Գամրեսել սպասալարի մահից յետոյ [3]) Թամար թագուհուց, ոչ ուշ քան 1191 թուականը [4]), սպասալար (զօրքի ընդհանուր հրամանատար) է կարգւում, իսկ Իւանէն՝ աթաբէկ (հայրիշխան).

Զաքարէն և Իւանէն վրաց և հայոց զօրքերի գլուխն անցած՝ առան թուրքերից Շիրակը, Անբերդը, (Արագածոտի մի մասը) Անին, Բջնին, Դուինը, Կարսը, Գետաբակը, Չարեքը. Միայն Խլաթի պատերազմում Իւանէն գերի ընկաւ և ազատուեց Զաքարէի օգնութեամբ և իւր Թամթա աղջիկը Խլաթի տէր Մելիք Աշրաֆին կնութեան տալով [5])։ Բացի այս տիրապետութիւններից, սրանք հարկատու դարձրին Կարնոյ սուլթանին, աւերեցին պարսից շատ քաղաքները և Ատրպատականը [6])։ Այսպիսի մեծ յաղթութիւններով Զաքարէն և Իվանէն դարձան վրաց արքունիքի առաջին նշանաւոր և սիրելի անձնաւորութիւնները, հայոց ամենամեծ իշխան-

[1]) Պատմել են ինձ Օձուն գիւղում.
[2]) Hist. de la Géorgie trad. par Brosset I. P. p. 430.
[3]) Ibid. p. 420.
[4]) Ibid. Additions. p. 269.
[5]) Վարդ. Բարձ. եր. 138.
[6]) Կիր. Գանձ. եր. 95.

ները, որոնց ենթարկւում էին վրաց ձեռքն անցած Հայաստանի մի մասը, Անի մայրաքաղաքով [1]։

Սակայն յետին ժամանակներում Իւանէն «խաբուելով» [2]) կամ «հրապուրուելով» Թամար թագուհուց [3]) և կամ համոզուելով վրաց Յովհաննէս կաթողիկոսի հրաշքով [4]) ընդունեց վրաց օրթոդոքս կրօնը, և կառուց Ախտալայի հռչակաւոր վանքը։

Իսկ Զաքարէն միանգամայն հաւատարիմ մնալով լուսաւորչական կրօնին, ցանկացաւ մի քանի փոփոխութիւններ մտցնել նրա մէջ և բանակում պատարագի շարժական վրան ունենալ, որի պատճառով և աճագին աղմուկներ բարձրացան։ Այս մասին կըխօսենք, երբ կաշխատենք որոշել ընդհանրապէս Բորչալուի գաւառի և մասնաւորապէս Հաղբատ ու Սանահին վանքերի հոգևորականութեան կատարած դերը։

Զաքարիան մեռաւ 1214 կամ 1215 թուին [5]) և ամփոփուեց Սանահնում, իրենց տոհմական գերեզմանատանը։

Նրա մահից յետոյ սպասալար կարգուեց եղբայրը՝ Իւանէ աթաբէկը։ Սա յաջողութեամբ մի քանի պատերազմներ վարեց Վրաստան եկած հոների դէմ, 1214 թ. առաւ Ճամքորը, 1219՝ Որոտը իւր մերձակայ դղեակներով, բայց ոչ բոլորը։ Իսկ 1220 թուին վրաց Գէորգի Լաշա թագաւորի հետ ընկաւ մոնղոլ և թաթար զօրքերի յետևից, որոնք, թւով մօտ 20.000, մտել էին Գուգարք և կոտորում էին բնակիչներին։Սակայն Կոտման գետի [6]) մօտ յաղթուեցան և հազիւ կարողացան փախչելով իրենց կեանքը ազատել։ Թաթարները յառաջեցին մինչև Ճամշուլտէ, սրի ճարակ անելով ամեն ինչ [7])։

Վեց տարի յետոյ Իւանէն նորից Վրաց և հայոց զօրքի գլուխն անցած 40,000 զօրքով գնաց կռուելու խորազմեից թագաւոր Ջալալ-էդ-Դինի զօրապետ Իլեկ-խանի դէմ, որ եկել էր Լօռին աւերելու։ Սևանայ լճի մօտ մի յաղթութիւն տանելուց յետոյ նա պարտութիւն

---

[1]) Եւ հէնց այս պատճառով ժամանակակից գրիչները յիշատակում են այսպէս. Ցաշխարհակալութեան Զաքարէի և եղբօր Նորա. կամ 1214 թ. ի տէրութեան տեղւոյս, Իւանէի։ Մի ուրիշը 1218 թ. ի հազարապետութեան Հայոց և Վրաց, Իւանէի և մանկանն Շահնշահի (Զաքարէի որդու). Մի ուրիշը, 1235. յիշխանութեան իշխանաց իշխանի Իւանէի և որդւոյ նորին Աւագի, Սլիշան. Այրարատ եր. 321.

[2]) Վարդ. Բարձ. եր. 138.

[3]) Կիր. Գանձ. եր. 96.

[4]) Hist. de la Géorgie trad. par Brosset I. P. p 451.

[5]) Hist. de la Géorgie rad. tpar Brosset. Additions p. 269.

[6]) Վարդ. Բարձ. եր. 142։

[7]) Brosset, o. c. I. p 493.

կրեց, Լօռին պաշարուեց, բայց կարողացաւ ընդդիմադրել [1]։ Ապա երբ ինքը Ջալալ-էդ-Դինը իւր անթիւ զօրքով մտաւ Հայաստան, Գառնի գիւղաքաղաքի մօտ Իւանէն պարտութիւն կրեց և յետ քաշուեց։ Ջալալ-էդ-Դինը յառաջելով առաւ Թիֆլիսը, և սրի ճարակ դարձրեց ինչպէս Վրաստանի, այնպէս և Գուգարքի բնակիչներին։ Նա վերցրեց նաև Խլաթը, և իրեն կնութեան առաւ Իւանէ աթաբէկի դուստր և Մելիք Աշրաֆի կին Թամթային, որ Ջալալ-էդ-Դինի սպանուելուց յետոյ փախաւ Վրաստան. և որովհետև այս ժամանակ Լաշա թագաւորը մեռել էր՝ ուստի ապաւինեց նրա քոյր Ռուսուդան թագուհուն [2]։ Իւանէ աթաբէկը և Ռուսուդան թագուհին մի մի նամակով դիմեցին Հոնորիոս Գ պապին, օգնութիւն խնդրելով Թաթարների դէմ, սակայն պապը պատասխանեց (1224), թէ չի կարող օգնել [3]։

Այս անցքից երեք տարի յետոյ 1227 թուին մեռաւ Իւանէն [4]) և թաղուեց Ախտալայի իւր կառուցած վանքում [5])։

Իւանէի մահից յետոյ սպասալար կարգուեց որդին Աւագը [6])։ Սրա ժամանակ Թաթարները շարունակելով իրենց արշաւանքները՝ տարածուեցան ինչպէս մասն Վրաստան, Թրիալէտ, Գուգարք (Սոմխէթ), Ջաւշէթ, Ջաւախք, Կղարջք, Կարս, Անի և Դուին [7])։

«Ամէն տեղ լիքն էր դիակներով. քաղաքները, գիւղերը, դաշտերը, անտառները, լեռները, ձորերը, բոլորը, բացի բերդերից, որոնք կարողանում էին խուսափել։ Ամենայն տեղ տիրում էր ողբն ու կոծը... հայրերն ու մայրերը տեսնում էին իրենց որդիներին՝ կոտորած, որդիները՝ իրենց կեանք տուողների դիակները փռուած, ուրիշները իրենց եղբայրներին, իրենց ծնողներին, իրենց քոյրերին, որպէս որս տարուած, իրենց կանանցը, իրենց որդոցը, իրենց բոլոր հարըստութիւնը ցրուած իրենց աչքերի առաջ [8])»։

Այս ժամանակներում թաթարաց Չարմաղանը առաւ Գանձակը, իսկ Չաղատա զօրավարը պաշարեց Լօռի քաղաքը, որի տէր Շահնշահը, Զաքարէ սպասալարի որդին, առնելով Նազովդ կնոջն ու որդի-

[1]) Ըստ Իբն-ալ-Աթիր արաբ պատմագրի (տե՛ս. Brosset. Hist. de la Géorgie, I. p. 513.

[2]) Չամչեան. Հ. Պատմ. Գ. եր. 202—204.

[3]) Brosset Hist. de la Géorgie, Additions p. 302.

[4]) Brosset: Hist. de la Géorgie, Additions 333, իսկ ըստ Վարդ. Բարձ. 1229 թ. եր. 148.

[5]) Վարդ. Բարձ. եր. 148.

[6]) Brosset. o. c. I. p. 514.

[7]) ibid. եր. 514.

[8]) Brosset. Hist. p. 515.

ներին, ծածկաբար իջաւ ձորը և թագնուեց մի քարայրի մէջ։ Նա քաղաքի վերակացութիւնը յանձնեց իւր աներ աթաբէկ Սաթունին, իսկ սա յոյսը քաղաքի պարիսպների ամրութեան վրայ դրած՝ իրենների հետ ուտել խմելով էր ժամանակն անցկացնում։ Այս միջոցին թշնամիները պարիսպը քանդելով մտան քաղաքը և սպանեցին աթաբէկ Սաթունին 1237 թ. և բնակիչներին սրից անցկացրին, գտան Շահնշահի գանձերը և ապա յարձակուելով միւս քաղաքների վրայ առան Դումանիսը, Շամշուտէն, Թիֆլիսը և այլն։

Աւագ սպասալարը ամրացաւ Կայեան բերդում։ Գաւառի բնակիչներն էլ եկան ապաստանեցին բերդի շուրջը։ Այս իմանալով թաթարաց Խտուղատա զօրապետը մեծ զօրք առած եկաւ պաշարեց բերդը, և շատ անգամ պատգամաւորներ ուղարկելով Աւագի մօտ, առաջարկեց անձնատուր լինել և չվախենալ։ Աւագ իշխանը կամենալով բարեկամութեամբ հեռացնել նրանց, իւր աղջիկը և մեծ գանձ տուեց Խտուղատային։ Սակայն սա աւելի ևս ստիպեց անձնատուր լինել։ Այս ժամանակ թէ բերդի մէջ և թէ շուրջն ապաստանածները սկսեցին նեղուիլ ծարաւից։ Ճարահատուած շատ ձիեր և անասուններ տարան տուին թաթարներին, խնդրելով որ թոյլ տան մի քսնիսին ջուր տանելու, նրանք էլ թոյլ տուին և շատերը դիմեցին դէպի ջուրը, այս ժամանակ նրանց արգիլեցին և պահանջեցին, որ իրենց կանանցն էլ համոզեն վայր իջնելու, ապա թէ ոչ բոլորին կը կոտորեն. կանայք իրենց ամուսիններին ազատելու ցանկութեամբ վայր իջան։

Աւագը յուսահատ որոշեց անձնատուր լինել, ուստի և իրենց տան վերակացու Գրիգոր Տղային պատգամաւոր ուղարկեց Չարմաղանի մօտ, որ բանակած էր Սևանայ լճի ափին։ Սա անմիջապէս հրամայեց Խտուղատային վերցնել բերդի պաշարումը և Աւագին իւր մօտ ուղարկել։ Եւ երբ Աւագը ներկայացաւ նրան և իւր հպատակութիւնը յայտնեց, Չարմաղան վերադարձրեց նրան իւր երկրները և շատ գերիներ արձակեց [1]։

Շահնշահն էլ Աւագից խորհուրդ հարցնելով գնաց թաթարաց մօտ և իւր հպատակութիւնը յայտնեց։ Նրանք մեծ պատուով ընդունեցին նրան, և վերադարձրին թէ Անին և թէ նրա միւս երկիրները [2]։ Կարճ միջոցից յետոյ Աւագն ու Շահնշահը վրաց Ռուսուդան թագուհու կողմից պատգամաւոր գնացին Չարմաղանի մօտ և նրա հետ դաշն կապեցին այն պայմանով, որ Ռուսուդան թագուհին յանձնէ թաթարաց ձեռը իւր որդի Դաւթին, որին Չարմաղանը Թիֆլիսի և ամբողջ Վրաստանի վրայ թագաւոր կարգել կըտայ [3]։

[1] Կիրակ. եր 148—151.
[2] Brosset Hist. de la *Géorgie* I. p. 517.
[3] ibid p. 821.

Ռուսուդան թագուհին ընդունեց այս պայմանը և Դաւիթը մի քանի թաւատներով գնաց դէպի Չարմաղանը։ Ճահնշահ և Աւագը, որ «շատ յարգուած էին թաթարների մօտ», ընդառաջ եկան նրան և տարան ներկայացրին Չարմաղանին, որ յարգանօք ընդունելով նրան՝ վերադարձրեց ամբողջ Վրաստանը և Ճամշուլդէն, որ վերցրել էին Խօզէր Նոյինն ու Անջուրղան, Աւագի մասնակցութեամբ [1]։

Յետոյ երբ այս մասին իմաց տուին Բատու խանին, հրաման եկաւ, որ սրանց գլխաւորներին ուղարկեն իւր մօտ։ Ուստի Ն. Չաղատա Նոյինը ուղարկեց աթաբէկ սպասալար Աւագին և Խլաթի սուլթանին։ Աւագի հետ գնաց և նրա սենեկապետ (chambellan) Դաւիթը, Նխալցխայի կառավարիչ Իւանէի որդին։ Ճանապարհին Դաւիթը առաջարկեց Աւագին՝ թոյլ տալ իրեն խանի մօտ ձևանալ իբր տէր, իսկ ինքը Աւագը՝ իբր ծառայ, որպէսզի եթէ սպանել տայ, ինքը զոհ գնայ, որովհետև սովորաբար տիրոջն են սպանում և ծառային ազատ թողնում։ Աւագը դժուարացաւ համաձայնել, բայց երբ հասնում են Բատու խանին, Դաւիթը առաջ է անցնում և ներկայանում է իբր տէր։ Խանը հիանում է նրանց տեսնելով և շատ պատուով պահում իւր մօտ բաւական ժամանակ։ Տեսնելով Բատուի բարութիւնը, նրանք համոզւում են, որ կեանքից զրկուելու ոչ մի երկիւղ չի սպառնում. Ուստի երբ մի օր խանը նրանց կանչեց, Աւագը առաջ անցաւ, խանը զարմացած նկատեց նրան, թէ չգիտէ՞, որ իրեն հետևողը նրա տէրն է և որ նա նրանից առաջ է անցնում։—Մեծ և յաղթող տէր, պատասխանեց Դաւիթը ժպտալով, սա է տէր և ես նրա ծառան։ Խանը բացատրութիւնը լսելով գովեց Դաւթի տիրասիրութիւնը, գրեց այդ մասին Մանգու խանին և ուղարկեց նրանց նրա մօտ՝ Ղարաղուրում։ Կարճ միջոցից յետոյ թաթարները Ռուսուդանի որդի Դաւթին էլ ուղարկեցին Բատու խանի մօտ, որ երկու տարի պատուով իւր մօտ պահելուց յետոյ, ուղարկեց Մանգու խանին, Ղարաղուրում. Այստեղ նա բաւական լաւ ընդունուեց խանից և բնակուեց Աւագի հետ, որ աւելի առաջ եկած էր այնտեղ։ Սրանք այստեղ հինգ տարի մնացին։ Այս միջոցին Ռուսուդան թագուհին, որ ամէն միջոցների դիմել էր Լաշայի որդի Դաւթին սպանելու, որպէսզի իւր որդի Դաւիթը թագաւորէ, մեռաւ (1247), գահը մնաց թափուր։ Ուստի և Ճահնշահը, սրա որդի Զաքարէն, որ այդ ժամանակ սպասալար էր կարգուած, «փիլիսոփայ և հռետոր» Սարգիս Թմոկվելու և մի քանի ուրիշ իշխանների հետ Լաշայի որդի Դաւթին տարան Բատու խանի մօտ, որպէսզի թագաւոր կարգել տան։ Բատու խանը սրանց պատուով ընդունեց, պահեց իւր մօտ Զաքարէին, իսկ

[1]) Ibid I. 521.

մյուսներին Դաւթի հետ ուղարկեց Մանգու խանի մօտ Ղարաղուրում։ Այստեղ երկու հայ իշխաններ, հօրեղբօր որդիներ, աշխատում էին Թագի տարբեր թեկնածուների համար։ Ջահնշահը կամենում էր թագաւորացնել Գէորգի Լաշայի որդի Դաւթին, իսկ Աւագը՝ Ռուսուդանի որդի Դաւթին։

Վերջապէս խանը յարգեց երկու հայ իշխանների խնդիրներն էլ և երկու Դաւիթներին էլ թագ տուեց և ուղարկեց Վրաստան [1]։

Վերադարձաւ և Աւագը, որին ընդառաջ եկան բոլոր թաւատներն ու իշխանները, որոնց մէջ և Ջահնշահը, ինչպէս և Եգարսլան, «որին միմիայն թագաւորի տիտղոսն էր պակասում [2]։ Երբ սրանք մօտեցան, Աւագը կարծում էր թէ Եգարսլանը կիջնի ձիուց, բայց սա, որ սաստիկ հպարտ էր, չկամեցաւ ցոյց տալ այս յարգանքի նշանը և ոչ էլ գրկախառնել Աւագին։ Այս տեսնելով Աւագը զայրացաւ, մըտրակի մի հարուած տուեց նրան և հրամայեց իւր ստորադրեալներին նրան ամօթաբար վայր գլորել դետնին, որ և իսկոյն կատարեցին, որով այս յարգելի մարդը կորցրեց իւր յարգանքը և վռնտուեց, պատուից ձգուեց և այդ օրից արհամարհանքի ու ծիծաղի առարկայ դարձաւ վրաց իշխանների համար [3]։

Վախուշտի ասելով (եր. 6), Աւագը ամուսնացել էր մի թաթար իշխանուհու հետ, որից ունեցել էր մի դուստր Խոշաք անունով։

Մի առ ժամանակ էլ ապրելով իւր հայրենի երկրում, Աւագը մեռաւ և թաղուեց Ախտալայի վանքում, իւր հօր մօտ [4]։ Նրա մահուան թուականը ըստ Վարդանի 1250 է [5]։

Աւագի մահից մի քիչ յետոյ Լաշայի որդի Դաւիթ թագաւորը Հուլաւու խանի մօտից վերադառնալով անցաւ աթաբէկ Աւագի երկրով. մտաւ Բջնի, լաց լինելու Աւագի վրայ։ Այստեղ տեսնելով նրա այրուն, Գոնցային, որ Ռադշայի էրիստաւ Կախաբերի գերդաստանից էր և շատ գեղեցիկ, սիրեց նրան, թագուհու տիտղոս տուեց և տարաւ իւր թագաւորութիւնը [6]) և նրանից ունեցաւ Դիմիտրի որդին, որ թագաւորեց իրենից յետոյ [7]։ Աւագի մահից յետոյ թաթարները նրա կալուածները տուին Ջահնշահի որդի՝ Զաքարիա Գին, որովհետև Աւագը որդի չունէր, այլ միայն մի աղջիկ Խոշաք անունով, ինչպէս և մի ապօրինի որդի, որին Խոշաքը առնելով իւր մօտ սնուցեց

1) Brosset. o. c. p. 542.
2) Անդ.
3) Անդ.
4) Վարդ. Բարձ. եր. 148.
5) Անդ.
6) Brosset. o. c. եր 554.
7) Ստեփան Օրբելեան Բ. հ. եր. 167. և Brosset o. c. եր, 555.

իբր հարազատ եղբօր։ Բայց կարճ միջոցից յետոյ Թաթարները առան Աւագի երկիրը Զաքարէից և տուին Աւագի կին՝ Վարդուչ Գոնցային։ Սա՛կայն Սմբատ Օրբելեան իշխանը կամենալով տիրապետել Աւագի երկրներին, Թաթարների թոյլտուութեամբ սպանեց նրա կին Գոնցային, իսկ սրա դուստր Խոշաքին Թամար Սահիբ իշխանին կնութեան տուեց [1]։

Զաքարիա Գ Աւագի փոխարէն սպասալար կարգուեց [2]) և բացի մանր մունր պատերազմներից, 1257 թուին Հուլաւուն խանի, և Կիւրիկեան թագաւորութեան վերջին շառաւիղ Թաղիադին իշխանի հետ արշաւեց Ասորեստան և Միջագետք [3])։

Զաքարիա Գ. սպասալարը, այս «նշանաւոր և ամենայն առաքինութեամբ լի մարդը» [4]), մտածեց ապստամբել Թաթարների դէմ և փախաւ վրաց Նարին—Դաւիթ (Ռուսուդանի որդի) թագաւորի մօտ, Գութաթիս։ Թագաւորը նրան մեծ յարգանքով ընդունեց, բայց մի առ ժամանակ նրա մօտ մնալուց յետոյ խանը (ըստ Վարդանի հուլաղու) երդուելով որ ոչ մի վնաս չի հասուցանիլ նրան՝ կանչեց իւր մօտ և սպանել տուեց նրան, այս «նշանաւոր և յարգելի» մարդուն [5])։ Նրա մահուան վրայ դառնապէս սգացին վրացիներն ու հայերը՝ և մանաւանդ նրա հայրը Շահնշահ, որ և նոյն օրը սրտակտուր լինելով մեռաւ և թաղուեց Քոբայրում [6])։

Բացի Զաքարիայից Շահնշահն ունէր երեք որդի՝ Իւանէ Բ. Արտաշիր, Աւագ Բ. [7])։

Սրանցից Իւանէն chef des mandators էր, որի մօտ հաւաքուեցան վրաց թաւադները և նրա հետ ուղեկցեցին Դիմիտրուն խանի մօտ, թագաւոր նշանակելու [8]) (1272 թուին)։

Եւ երբ մեռաւ Աբաղա խանը և թագաւորութիւնը անցաւ նրա եղբայր Ահմէդին, Խորասանի նոյինն ապստամբեց։ Իւանէն Դիմիտ-

[1]) Վրաց աղբիւրների ասելով Գոնցան սպանուեց Թաթարների մօտ, (1263 թ.), իւր դուստր Խոշաքի թելադրութեամբ, որ ամուսնացած էր նա Սեվլիֆարդավ-Խոջա Սմես-էդ-Դինի հետ (Brosset. o. c. 569) ապա ամուսնացաւ Սաթուն Մանկաբերդելու հետ. (անդ. եր. 554), որից խլեց Սահիբ Դիւանը. (անդ. եր. 575)։ Խոշաքն ունեցաւ մի որդի Զաքարիա անունով, որ Գէորգի V ժամանակ մի քանի պատերազմների մասնակցեց. (անդ. եր. 641—642).

[2]) Brosset. o. c. I· 567.

[3]) Չամչեան Գ, եր. 257.

[4]) Brosset. o. c. 1· 568.

[5]) Brosset o. c. I. 568. Չամչեան հայ. պատմ. Գ. եր. 260.

[6]) Վարդ. Բարձ. եր. 153.

[7]) Չամչեան յիշում է և մի ուրիշը, Սարգիս. Գ, 260.

[8]) Brosset· o. c. I. p. 586.

րի Թագաւորի հետ գնաց Եհմէդին օգնելու, և չաղթութեամբ [1]) վերադարձաւ։

Արտաշիրի և Աւագ Բ. մասին տեղեկութիւններ չկան։

Իւանէ Բ. ունեցաւ մի դուստր և երկու որդի, Զաhնշահ և Աղբուղա[2])։ Դուստրն ամուսնացաւ Տարսայիճի որդի Ջալալի հետ. Զահնշահը ամիր սպասալար կարգուեց [3]), իսկ Աղբուղան, որ ամուսնացած էր Սիթի-խաթունի հետ [4]), յայտնի չէ, թէ ինչ եղաւ։

Զահնշահի որդին էր Մխարգրձէլը, որ ամուսնացած էր Սաթուն աթաբէկի դուստր Վանանէի հետ և 1245 թուին դեռ եւս կենդանի էր և որի սերնդից են այժմեան Պալինով Մխարգրձելի վրաց իշխանները [5]), իսկ Աղբուղայի որդին էր Զահնշահ Գ. [6])։

Սակայն սրանք հետզհետէ կորցրեցին իրենց նախկին մեծութիւնը և հեռացան քաղաքական ասպարէզից։ Բայց յետին ժամանակներում կրկին սկսեցին փայլել և Արղութէն իշխանի անունով վերակոչուեցին Արղութեան Երկայնաբազուկ։ Իբրև կալուածատէրեր տիրապետելով Սանահին գիւղին և սրա շրջակայքին, սրանք մեծ խնամք տարան Սանահնի վանքի վրայ՝ դարերի ընթացքում վերանորոգելով և պահպանելով նրան։ Նոյն իսկ այժմս նրանց օժանդակութեամբ է վերանորոգութիւններ կատարւում։

Եւ որովհետև այս տոհմի նշանաւոր անձերի գործունէութիւնը չի վերաբերում մեր ուսումնասիրելիք վայրին, ուստի և մենք լռում ենք նրանց մասին, յիշատակելով միայն Յովսէփ արքեպիսկոպոսին, որ 1795 թ. այցելելով իւր հայրենի Սանահնի և Հաղբատի վանքերը, տեսաւ նրանց ամայութիւնը և «մղկտաց նրանց վրայ», ինչպէս և Դաղստանի հերոս Մովսէսին, որի արձանը կանգնած է Թեմուր-Խան-Շուրայում։

Սպասալարների տոհմի ընկնելով կրկին բարձրացաւ Օրբէլեանների տոհմը, որոնցից Տարսայիճին վրաց Դիմիտր Թագաւորը Սմբատի հետ միասին տուեց նաև Աւագի ու Զահնշահի կալուածները 1284 թուին [7])։

Այդպիսով Օրբէլեանները, որ շատ հին ժամանակից իվեր որպէս Օրբէթ ամրոցի տէրեր բաւական նշանաւոր դեր էին խաղացել ընդհանրապէս Վրաստանի և մասնաւորապէս՝ մեր ուսումնասիրելիք վայրի հասարակական կեանքում, վերստին հասան իրենց նախկին

[1]) Brosset. o. c. I. p. 600.

[2]) Թալինի արձան. յիշ. Brosset. Additions p. 362.

[3]) Brosset o. c. Ad. եր. 362.

[4]) Մարմաշէնի արձ. յիշ. Brosset. Additions. եր. 362.

[5]) Баградзе. Кавказъ въ древнихъ памятникахъ христіанства. եր. 38

[6]) Արձանագր. Գանձասարի։

[7]) Չամչեան. պատմ. Հայոց գ. եր. 282.

բարձրութեան, և խլեցին սպասալարների տոհմից առաջնութիւնը։

Նրանց գործունէութեան մէ միայն մի փոքր մասն է վերաբերում մեզ զբաղեցնող վայրին, ուստի և մենք չենք պատմիլ ոչ նրանց ծագումը և ոչ վարվացումն ու անկումը և բաւականանում ենք միայն ասելով՝ որ ընդունում ենք Պատկանեանի այն կարծիքը, թէ Օրբէլեանները մեր Մամիկոնեաններն են, որ Տայքից Գուգարք անցնելով՝ մի մասը Վրաց արքունիքում այնպէս մեծ պատուի է հասել, իսկ միւս մասը բնակուել է Դսեղում, ուր նրանց դամբարան Ս. Գրիգորի վանքը մինչև այսօր էլ վկայում է նրանց մասին։

## ՍՊԱՍԱԼԱՐՆԵՐԻ ՑՈՀՄԸ




Digitized by Google

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԱՍ



Մեր ուսումնասիրութեան վայրը չունի իւր գաւառական կենտրոնական քաղաքը, նրան փոխարինում է Շուլավէր աւանը, ուր գտնւում են գաւառի բոլոր կառավարչական հաստատութիւնները և ուր բնակւում է գաւառապետը։

Գաւառը բաժանւում է չորս ոստիկանական շրջանների՝ Բորչալուի, Լօռու, Եկատերինէնֆելդի և Թրիալէթի։ Իւրաքանչիւր շրջանը կառավարում է մի ոստիկան, որ թէպէտ հաստատուն բնակութիւն ունի որոշ գիւղում, բայց շարունակ շրջում է իւր հսկողութեան յանձնուած գիւղերում։ Բորչալուի ոստիկանը բնակւում է Շուլավէրում, Լօռունը՝ Ջալալ-օղլում, Եկատերինէնֆելդինը՝ Եկատերինէնֆելդ, իսկ Թրիալէթինը՝ Ալէքսանդերսհիլֆ գերմանական գաղութներում։ Իւրաքանչիւր ոստիկանական շրջան բաժանուած է մի քանի գիւղական հասարակութիւնների, որոնցից իւրաքանչիւրը բաղկացած է մի քանի գիւղերից։ Իւրաքանչիւր հասարակութիւն կառավարւում է մի տանուտէրով։ Այսպէս՝ Բորչալուի ոստիկանական շրջանը բաժանուած է 12 հասարակութիւնների, բաղկացած 63 գիւղերից. Լօռունը՝ 17-ի, 66 գիւղերից. Եկատերինէնֆելդինը՝ 9-ի, 51 գիւղերից և Թրիալէթինը՝ 15-ի, 113 գիւղերից։

Այսպէս ուրեմն ամբողջ Բորչալուի գաւառը բաժանուած է 4 ոստիկանական շրջանների և 53 գիւղական հասարակութիւնների, բաղկանալով 293 գիւղերից։

Այժմ անցնենք գիւղերի նկարագրութեան։

Digitized by Google

# ՀԱՅԱԲՆԱԿ ԳԻՒՂԵՐ

## ԲՈՐՉԱԼՈՒԻ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ԾՐՋԱՆ

### ՇՈՒԼԱՎԵՐԻ ՀԱՄԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Շուլավէր*.—Բորչալուի գաւառի կենդրոնական աւանն է, ուր նստում են գաւառապետը, հաշտարար դատաւորը, հաշտարար միջնորդը, գաւառի բժիշկը և այլն։ Գտնւում է Թիֆլիս—Կարսեան երկաթուղու Աշաղա-Սարալ կայարանից փոքր ինչ ցած՝ Աշաղա Սարալ տախտակամածից 8 վերստ հեռու դէպի արևմուտք, համանուն գետակի վրայ, երեք կողմից բլուրներով շրջապատուած հովտի մէջ։ Գիւղը բաժանուած է ութ թաղերի, որոնցից իւրաքանչիւրը կրում է այն գիւղի անունը, որտեղից բնակիչները գաղթել են 1750—1760 թուականներին. սրանք են. Կորխ, Քամանդար, Մրէջուր, Ղարամուրադ, Ճմեղ, Մելիք-զադա, Աղբուլախ, Մմրթլու [1])։

Մի երկու կանոնաւոր և մնացածը անկանոն փողոցների վրայ շինուած են մեծ մասամբ նոր ձևի և բաւական ճաշակաւոր տներ, որոնցից մի քանիսի առաջ կան պարտէզներ։ Կան միքանի քաղցրահամ, սառնորակ աղբիւրներ, որոնք բերուած են 8 վերստ հեռաւորութիւնից գիւղացիների ծախսով և տանուտէր Պառաւեանի ջանքով։ Հայերն ունին երկու եկեղեցի, որոնցից Ս. Աստուածածինը հնաշէն է և կիսախարխուլ, իսկ միւսը՝ որ նուիրուած է Ս. Մեսրոպի անուան, սրբատաշ քարերով շինուած մի բաւական գեղեցիկ շէնք է, որի կաթուղիկէն դեռ ևս չէ կառուցուած։ Ներքուստ ևս զարդարուած չէ։ Եկեղեցու շինութիւնն սկսուել է 1844 թուին և մինչև այժմ շարունակւում է, որովհետև շինւում է ժողովրդեան ծախսով։ Եկեղեցու գաւթի հիւսիսային կողմում գտնւում է Գայիանէ Պառաւեանի 1893 թ. շինած գեղեցիկ, սրբատաշ, չորս սենեակներից բաղկացած ուսումնարանական շէնքը, որի հանդէպ, եկեղեցու որմին կից բարձրանում է իր, Գ. Պառաւեանի մահարձանը (1896 թ.)։ Գիւղում կայ և մի սինագոգայ։ Գիւղի շուրջը տարածւում են 700-ի չափ խաղողի այգիներ։

1) Գտնւում էին Ճամշատնի գաւառում։

Այն փոքրիկ բլրակի վրայ, ուր այժմ գտնւում է Քալանթարեանների տունը, հին ժամանակներում բարձրանալիս է եղել մի փոքրիկ ամրոց, որ պատկանում էր վրաց թագաժառանգներին։

Բնակիչներից հայերը Ղամշատնի գաւառից գաղթականներ են, որոնք ենթարկուել են Մելիք-Սարգսեան և Քալանթարեան տոհմերի մելիքներին, որոնցից Մելիք-Սարգսեան Յովհանջանը և Քալանթարեան Սօսին Բոլնիսի ձորում Օքլուգ-աղի (Հասան Խանի թոռ) դէմ կռուելով սպանուել են։ 1853 թուին գիւղացիները գանգատւում են Վօրօնցովին մելիքների հարստահարութիւնների մասին և նա հրամայում է տնատեղիները և այգիները գիւղացիներին սեպհականութիւն համարել և միայն արտերից տասանորդ տալ մելիքներին, ինչպէս և կատարւում է մինչև այժմ։ Ընդամէնը՝ 607 տուն են. 2242 ար. 1755 իգ. իմիասին՝ 3997 հոգի։ Բացի հայերից կան նաև որպէս ժամանակաւոր ապրողներ ռուսներ, հրէաներ և թուրքեր *)։

Այս գիւղիցն է Ռ. Նադիրեանը, որ իւր հաշւով 18 տարի շարունակ այս գիւղում ծխական դպրոց է պահել և յայտնի է իւր բարեգործութիւններով։

Շուլավէրից արևմտա-հարաւ, մօտ վեց վերստ հեռու, Բնի ձորի անտառապատ լանջին գտնւում է մի հինաւուրց վանք, որ շուլավէրցիներին յայտնի է Բնի ձորի մեծ վանք անունով։ Սա հասարակ քարից շինուած տասն արշ. երկ., 8 արշ. լայնութեան և մօտ 4 սաժէն բարձրութեան մի եկեղեցի է, տասն սիւնաւոր գեղեցիկ կաթուղիկէով, որը եկեղեցու ներսից չի երևում, որովհետև նրա տակը մի գաղտնի սենեակ է շինուած։ Ունի երկու փոքրիկ, երկար և նեղ պատուհան և մի կամարակապ դուռն, որի վրայ գրուած է. Թվ. ՌՃԺԲ. Կամաւն Ամենակալին Ած· Ց. Ք. շինեցաւ ձեռամբ Տէր Օհաննէս քհ։ Սրա երկու կողմը մի քանի փակագրեր։ Վան-

*) Բնակիչների թուերը իմ հաւաքած տեղեկութիւնների հիման վրայ են գրուած և վերաբերում են 1901 թուին և մօտաւորապէս միայն ճիշտ են. վիճակագրական բաժնում առաջ կը բերենք 1886 և 1897 թուականների աշխարհագրութեան թուերը։

քը շրջապատուած է կլկնակի պարսպով, ուր մէջ կան վեց բուրգ, այժմ կիսաւեր։ Ներքին պարսպին կից կան մի քանի կիսաւեր խցեր և ջրի մի աւազան։ Եկեղեցու շուրջը և մանաւանդ դռան առաջ կան ահագին մեծութեան գերեզմանաքարեր, մի քանիսի վրայ պատկերներ քանդակուած, միւսներին խաչքար կանգնեցրած։ Այսպէս՝ մի գերեզմանաքարի վրայ նկարուած է չորս մարդու պատկերներ, որոնցից երեքը գլխներին թագեր ունին, իսկ չորրորդը՝ գլխաբաց է և ձեռները կրծքին դրած՝ սրանց առաջ կանգնած. այս ու այն կողմ գինու գաւեր, բաժակներ, վրացական ըաժակեղջիւրներ։ Սրա վրայ կայ հետեւեալ տապանագիրը.

*Այս է իմ հացատուն, որ եղեւ տուն իմ բնակարան, նգալ մարտուսիս դամբարան պարոն Անլամազին։*

Սրա մօտի տապանաքարի վրայ նկարուած է մի ձիաւոր և գրուած.

*Ես ի ազէն ծովանշեցի, անուն իմ Թամազ կոչի, որ շինեցի սուրբ եկեղեցիս ի յիշատակի ծնողաց իմոց:*
Այս երկուսի վրայ թուական չկայ, իսկ սրանց մօտի խաչքարը կըրում է հետեւեալ թուականը և տապանագիրը. *Սուրբ խաչս բարեխօս է Քարամին եւ իւր կողակցին* *թ. ՌՃՀԳ.* [1]
Պարսպից դուրս կա մի ուրիշ գերեզմանատուն կայ, մօտը մի գիւղատեղի, այժմ *Բնի ձոր* անուամբ յայտնի։ Այս վանքից դէպի արեւմուտք, մի վերստ հեռու, միւս լեռան լանջին գտընւում է մի ուրիշ վանք։ Սա անտաշ քարերով շինուած մի եկեղեցի է, որի ձեղունը այժմ արդէն քանդուած է։ Մօտը կայ մի սրբատաշ, գեղեցիկ քանդակներով զարդարուած զանգ։ Մի եղծուած արձանագրութիւնից կարդացւում է. *Ս. Աստուածածին բարեխօսեա...* Շրջակայքցիք սրան կոչում են *Բնի ձորի Ներքին վանք*։ Երկու փոքրիկ, համեմատաբար աննշան մատուռներ ես կան գիւղի հարաւ-արեւելեան բլրի վրայ, Ս. Սարգիս և Ս. Կիրակի անուններով. ինչպէս և մինը՝ հարաւ-արեւմտեան կողմը, Սիպտակաշէն կոչուած գիւղատեղի հանդէպ, բլրի լանջի վրայ։ Վերջինիս շուրջը գտնուող գերեզ-

[1] 1634.

մաններից մինի վրայ դեռ ևս կարդացւում է. *Այս է տապան Ջիլաւին Թուէն ՌՃԼԱ,* [1]) *առ Աստուած փոխեցաւ*։ Գիւղի հիւսիսային կողմը հաղիւ երեք վերստ հեռաւորութեամբ մի քարաժայռ կայ, որի գագաթին կան երեք ծակեր, և մօտը՝ մի քանի սենեակներ։ Սա երբեմն իբր բերդ է ծառայել, բայց այժմ ամուլ կանանց և բորոտ մարդկանց ուխտատեղի է, որովհետև առաջիններն անցնում են այդ ծակերով, որպէսզի որդի ունենան, իսկ երկրորդները քսում են իրենց բորոտ մասերի վրայ դրա ստորոտում կաթկաթող հանքային ջրից, որ բժշկում է։ Տեղացիները այս նախկին բերդին կոչում են *«ծակ քար»*։

*Փոքր Շուլավէր.*—Գտնւում է Շուլավէրից հինգ վերստ հեռու դէպի հիւսիս և մի փոքրիկ, աննշան գիւղ է, որ մինչև անգամ եկեղեցի էլ չունի։ Բնակիչները՝ 27 տուն են. 65 ար. 43 իգ. ի միասին՝ 108 հոգի։

*Դուղրի.*—Աննշան գիւղ է, Շուլավէրից 12 վերստ հեռու, եկեղեցի էլ չունի։ Բնակիչները 4 տուն են. 17 ար. 14 իգ. ի միասին՝ 31 հոգի։

## ԼՈՌՈՒ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ

### ՇԱՀՆԱԶԱՐԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Շահնազար.*—Այս գաւառի հայ կաթոլիկների ամենամեծ գիւղն է, տարածուած մի ընդարձակ դաշտի վրայ։ Հեռուն բարձրանում է Մոկրիա կամ Ղարադաշ լեռները։ Գիւղը իւր անունն ստացել է Մելիք Շահնազարից, որի ամառանոցն (եայլա) է եղել, անցեալ դարի սկզբին։ Իսկ Թուրքերից կոչւել է Գոշ-քիլիսա, այստեղ եղած երկու եկեղեցիների պատճառով։ Սրանցից մինը այժմ վերանորոգուած է և կաթոլիկների ծխական եկեղեցի դարձրած։ Նախկին դռան կամարակալ քարը վերանորոգուած պատի մէջ է դրուած, որի վրայ Վրաց խուցուրի տառերով կայ մի արձանագրութիւն [2])։ Միւս եկեղեցին մի փոքրիկ, թաղակապ շէնք է, շուրջը գերեզմանա-

[1]) 1682։

[2]) Տես արձանագրութեան բաժնում։

տուն, ուր կան խոյի նմանութեան տապանաքարեր։ Այս եկեղեցում այժմ այլ ևս ժամասացութիւն չի կատարւում։ Առաջին եկեղեցու առաջ վազում է մի յորդ աղբիւր, որ շինել է գիւղի հոգևոր հովիւ Հ. Սարգիս վարդապետ Եազըճեանը,—մի բաւական կրթուած անձնաւորութիւն։

Տների մեծ մասը հին ձևի են, շատերը կալ.միր քարից շինուած, որի հանքը այստեղ է գտնւում։ Կան նաև մի քանի նոր ձևի գեղեցիկ տներ, որոնց մէջ նշանաւոր է Հ. Եազըճեանի երկյարկանի տունը, բլրի վրայ շինուած։ Բնակիչները Ալաշկերտցիներ են, 1818 թուին Աղէքսանդրապօլի գաւառը և ապա, 1822-ին այս տեղ գաղթած։ Ընդամէնը 170 տուն են. 1007 ար. 900 իգ. իմիասին՝ 1907 հոգի։

Հողը այժմ լինելով, գիւղացիների սեպհականութիւնն է կազմում, որովհետև գնել են կալուածատէրերից։

Ջաւհնազարի հասարակութեան մէջ և սրա շրջակայքում են *Մեծ-Ղարաքիլիսա*, *Փոքր-Ղարաքիլիսա*, *Ճիշլթափա* և *Սարչապետ* գիւղերը, որոնք գտնւում են կալուածատիրական հողերի վրայ և բաւական նեղւում են կալուածատէրերից։ Բոլոր գիւղերումն էլ կան մի-մի եկեղեցի։ Բնակիչները միևնոյն Ալաշկերտի հայ կաթոլիկ *) գաղթականներն են, միևնոյն ժամանակ եկած։ Մեծ-Ղարաքիլիսում ընդամէնը 75 տուն են. 440 ար. 364 իգ. ի միասին 804 հոգի. 5 հոգի հայ լուսաւորչական են։

Փոքր-Ղարաքիլիսում՝ 57 տուն. 288 ար. 293 իգ. իմիասին՝ 591 հոգի։

*Ճիշլթափում*՝ 50 տուն. 352 ար. 307 իգ. իմիասին 659 հոգի։

*Սարչապետում*՝ 55 տուն. 340 ար. 284 իգ. իմիասին 624 հոգի։

## ՀԱՅՏԱՐԲԷԿԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Հայտարբէկ*.—Զետեղուած է Լեջան լեռան հանդէպ, արևմտեան կողմը բարձրացող բլրի լանջին. առջևից անցնում է Պրիվոլնու կամ Միսխանի ջուր գետակը։ Ունի մի բաւական

*) Ուր չենք յիշել դաւանութիւնը պէտք է հասկանալ լուսաւորչական։

լաւ եկեղեցի, մօտը մի հին աւեր մատուռ, շուրջը գերեզմաններ։ Հիւսիսային կողմը, մի ուրիշ բլրի գագաթին կայ մի ուխտատեղի, Ս. Սարգիս անունով։

Բնակիչները՝ 71 տուն են, 376 ար. 372. իմիասին՝ 748 հոգի։

*Ուռուտ.*—Գտնւում է բլրի ստորոտում, և բաւական գեղեցիկ տեսք ունի, որովհետև ռուսաբնակ գիւղերի ազդեցութեան ենթարկուելով՝ փոքր ի շատէ միաձևութիւն է ստացել։ Տների մեծ մասը նոր ձևի են, կղմինտրի կտուրներով։ Մի բարձր թումբի վրայ կանգնած է սրբատաշ, նոր եկեղեցին, որ հին եկեղեցու տեղում նոր են կառուցել, օրինակ վերցնելով Օձունի եկեղեցու ձևից։ Կայ և մի ուրիշ եկեղեցու աւերակ։ Հաւանական է, որ գիւղը իւր անունը ստացած լինի այն բազմաթիւ ուռենիներից, որ երբեմն պատում էին համանուն գետակի ափերը։

Բնակիչներից մի քանիսը սերել են այն երկու տուն կարնեցի գաղթականներից, որ այստեղ են վերաբնակուել անցեալ դարի սկզբում։ Սրանք մինչև այժմ էլ մասամբ պահպանել են իրենց յատուկ հնչման և բարբառի հետքերը։ Ընդամէնը՝ 76 տուն են. 369 ար. 361 իգ. ի միասին՝ 730 հոգի։

*Ազարակ.*—Տարածւում է Լօռու բերդից մօտ երկու վերստ հեռու՝ ընդարձակ դաշտի վրայ։ Ունի մի հնաշէն եկեղեցի, որի մօտ կայ մի ուրիշ եկեղեցու աւերակ։ Տների մէջ երևում են բաւականաչափ, կղմինտրով ծածկուած, նոր ձևի բնակարաններ։ Գիւղից հազիւ երեք վերստ հեռու, «Աչքուհանք» գետի խոր ձորակում կան բաւականաչափ, մեծ և փոքր քարայրեր, որոնցից մինի մէջ շինուած է մի փոքրիկ մատուռ։ Սրա մէջ կայ մի առանձին խորշ, ուր, աւանդութեան ասելով, թաղուած է Բաղրամ անունով մի ճգնաւոր։ Սրանից փոքր ինչ հեռու կայ մի ուրիշ այր, մի նեղ դռնով։ Ասում են, թէ վերոյիշեալ ճգնաւորը այստեղ է ճգնել, և նոյն իսկ ցոյց են տալիս այն փոսիկները, որ յառաջացել են ճգնաւորի անթիւ ծնրադրութիւններից։

Այս այրերի մօտից բղխում են երկու սաստիկ յորդ և

սառն աղբիւրներ, որոնք երկու ջրաղաց են դարձնում։ Ասում են, թէ վերոյիշեալ ճգնաւորի աղօթքով են բղխել այս աղբիւրները։

Այս ձորի ճանապարհը չափազանց դժուարին է։ Աւանդութիւնն ասում է, թէ մի մարդ մի ուղտ բարձած բարձրանալիս է եղել այս ճանապարհով, և երբ ուղտը չի կարողացել ճանապարհը գտնել, բարկացել է վրան ասելով.

«Լուսն ու մութը գիտես, Ազարակայ մուտը չգիտե՞ս» և այս այժմ առած է դարձած։

Բնակիչները 81 տուն են. 348 ար. 335 իգ. ընդամէնը՝ 683 հոգի. քահանան՝ Տ. Վերանեան. Ներսիսեան դպրոցն աւարտած է։

*Լեջան.*—Տեղաւորուած է համանուն լեռան լանջին։ Ունի մի հնաշէն եկեղեցի, որի շուրջը կան հին գերեզմաններ։ Սրանցից մինի գերեզմանաքարի վրայ քանդակուած է մի մարդ՝ թաղը գլխին։ Գիւղացիների բացատրութեամբ այդ թաղը հայսանեաց թագ է, և որ շատ հին սովորութեամբ, այդ քանդակւում է այն երիտասարդների տապանաքարերի վրայ, որոնք հարսանիքից յետոյ շուտով մեռնում են։ Գիւղը բաւական գեղեցիկ տեսք ունի և եթե ամառանոց կարող էր ծառայել, եթէ շրջակայքում անտառ ունենար։ Բնակիչները՝ 84 տուն են, 352 ար. 348 իգ., ի միասին՝ 700 հոգի։

*Լօռու-բերդ.*—Ջալալ-օղլուց մօտ երեք վերստ հեռու դէպի արևելք, Մսխանա ջուրն ու Դեբեդ գետը երկու խոր ձորակներով միանալով միմեանց հետ կազմում են մի լեզուաձև, ժայռոտ հարթութիւն, որի վրայ գտնւում է նախկին բերդը, իսկ սրա մէջ՝ այժմեան գիւղը։ Մի քանի հին ձևի շինուած տներ, դռներ, կալեր, մի-երկու ծուռումուռ փողոց՝ ահա ամբողջ գիւղը. իսկ բերդը կընկարագրենք բերդերի բաժնում։ Բնակիչները 25 տուն են, 110 ար. 98 իգ. իմիասին 208 հոգի։

Լօռու բերդի մօտ գտնւում է *Ամրակից* անունով հին գիւղատեղին, ուր եղել է երկու եկեղեցի։ Այժմ այստեղ շինուած է ռուսաբնակ Նիկոլաևկա գիւղը։ Հաւանականօրէն այս հին գիւղը Ամրակից է կոչուել Լօռու բերդին (ամուր) կից լինելու պատճառով։

## ԿՈՒՐԹԱՆԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Կուրթան*.—Գտնւում է մի լեռնաձև բարձրաւանդակի վրայ. արևմտեան կողմից հոսելով Պալըղ-չայը և Գարգարայ-ջուրը՝ միանում են արևելեան կողմում տարածուած Հնէվանի ձորում։ Այսպիսով ձորը շրջապատուած է երեք կողմից ձորերով, որոնց մէջ կան բաւական թւով քարայրեր։ Հնէվանի քարայրերից նշանաւոր է Մատուռը, որ ժայռի մէջ փորուած և միայն մի կողմից պատով պատած մի փոքրիկ աղօթատեղի է։ Դռան մօտ կայ հայերէն եղծուած արձանագրութիւն։ Սրանից դէպի արևմտահարաւ ուրիշ այրերի մէջ նշանաւոր է ճըգնաւորի այրը, որի մօտ, ժայռի մէջ մի կամարակապ խորշ կայ, յատկապէս իբր աղօթատեղի բացուած։ Մատուռից դէպի հիւսիս գտնւում են Թուրփոնդաց այրերը, իսկ նրանից դէպի արևմուտք՝ Սղնախի այրը, ուր ապաստանելիս են եղել գիւղի բնակիչները լեզգիների յարձակումների ժամանակ։ Պալըղ-չայի աջ կողմը, ղոմերի մօտ կան երեք խաչարձան։

Սրանցից մինի վրայ գրուած է.

*Ես Ումիկս շինեցի զմատուռս, կանգնեցի զխաչս, հաստատեցի զքեմս եւ բերի զջուրս յիմ հալալ վաստակոց, հաւր իմոյ Մխիթարայ, որ Պապ կոչի, եւ Խաւութի կնոջ իմ. որ կոչի Տիրամայր. որք կարդաք եւ երկրպագէք, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր։*

Միւս խաչի վրայ.

*Ես անարժան ծառայ Աստուծոյ Պետրոս ուրդի Բռնաւորի նոր շինեցի զկամուրջս բարեխաւսութիւն ինձ. եւ ծնողաց իմոց. որք կարդաք եւ երկրպագէք, յիշեսջիք յաղաւթս:*

Գիւղի հիւսիսային կողմում կայ մի հին գերեզմանատուն, ուր մի գեղեցիկ և մեծ խաչարձանի վրայ կարդացւում է. *Կանգնեցաւ խաչս սուրբ բարեխաւս Վահրամայ ամուսնոյն իւր Ասփէի եւ զաւակաց իւրոց. ամէն:* Սրա մօտ կայ մի հասարակ մատուռ։ Մի հին անշուք եկեղեցի բարձրանում է գիւղի կենտրոնում, ուր այժմ պաշտօն են մատուցանում։

Digitized by Google

Տները, որոնցից միայն մի քանիսն են նոր ձևի, անկանոն կերպով ցրուած են, ունենալով իրենց առաջ բանջարանոցներ, ուր առաւելապէս սխտոր է ցանուած։ Ամբողջ գաւառի սխտորը գրեթէ այս գիւղն է մատակարարում։

Բնակիչները Ղարաբաղից, Երևանից, Ղազախից, Շիրակից և այլ տեղերից են եկած դարիս սկզբում։ Ընդամէնը՝ 31 տուն. 687 ար, 551 իգ. ի միասին՝ 1238 հոգի։

Գիւղի արևմտեան կողմը, գրեթէ կէս վերստ հեռաւորութեան վրայ, Գառդառ-գետի աջ կողմը գտնւում են երկու փոքրիկ մատուռներ, որոնցից մինի վրայ գրուած է. Ջէրոնիմոս, իսկ միւսի մասին աւանդաբար պատմւում է, թէ Կոզմա և Դամիանոս ճգնաւորներն են շինել։ Սրանց մօտ մի գեղեցիկ խաչքարի վրայ կայ հետևեալ արձանագրութիւնը.

*Թուին ՇԼԵ* *). *ի թագաւորութեան Կիւրիկէի նահազատ Սարգսի Դաւթայ Գաւրգիւյն նորոգեցաւ սուրբ զորգս. բարեխաւս հոգւոյ մերոց։*

*Զորագիւղ.*—Այսպէս կոչւում է գիւղը, որովհետև սկզբում եղել է ձորի մէջ, ուր այժմ գտնւում են գիւղի գոմերը։ Ճանապարհների անյարմարութեան և արտերի մեծ մասը ձորից բարձր գտնուելու պատճառով՝ գիւղացիները տեղափոխուել են ձորից վերև, զառիվայրի հիւսիսահայեաց լանջի վրայ։ Առաջից, ձորի միջով անցնում է Պալըխ-չայը։ Ձորում, գետի աջ և ձախ կողմերին, բարձր ժայռերի գագաթներին գտնւում են ամրոցների աւերակներ։ Աւանդութիւնն ասում է, թէ մի թագաւորի որդին ու աղջիկը փախել են այստեղ և բնակութիւն հաստատել իւրաքանչիւրը այս բերդերից մինում։ Ասում են նաև, թէ շղթայով թասեր են կապուած եղել մի բերդից միւսը, քոյր և եղբայր գինի են ածել թասերը և փոխանակել, միմեանց կենաց խմելով։

Գիւղում կայ մի հասարակ եկեղեցի և երկու ուխտատեղի Ս. Գէորգ և Ս. Սարգիս անուններով։ Տներից շատերը գլխատուն են, կիսագետնափոր։ Բնակիչները Դսեղ գիւղից եկած

*) 1086.

գաղթականներ են, հին Զորագիւղից այստեղ վերաբնակուած, ընդամէնը՝ 47 տուն. 226 ար. 192 իգ. իմիասին՝ 418 հոգի։

Դէպի Ճահալի գիւղը կայ մի աւերակ գիւղատեղի *Կուտատ* անունով, համանուն գետակի ափին, ուր կայ մի կիսաւեր մատուռ։

*Ղամուշկուտ*.—Գտնւում է Խաչի-գիւղից դէպի հարաւ. մի լերան լանջի փոքրիկ հարթութեան վրայ։ Փոքրիկ գիւղ է, մի քանի գեղեցիկ տներով և *Ս. Կիրակի* փոքրիկ մատուռով. հողն արքունական է։ Բնակիչները Ճահալից և Մարցից են գաղթած, ընդամէնը՝ 38 տուն. 180 ար. 153 իգ. իմիասին՝ 333 հոգի։

*Ծահալի*.—Զորագետի ձախ կողմումն է գտնւում, լեռների գոգաւորութեան մէջ։ Գիւղացիներն ասում են, թէ այս գիւղի անունը եղել է Ներքին Վահագնի, իսկ սրա արևմտեան կողմում գտնուած աւերակ գիւղատեղին՝ ուր այժմ մնացել է միայն մի գերեզմանատուն, կոչւում է Վերի Վահագնի։ Գիւղում կայ մի փոքրիկ, հասարակ եկեղեցի, մօտը մի հին, մեծ խաչքար, և մի մատուռ սուրբ Սարգիս անունով, ուր ուխտ են գալիս Թագուորները, առանց հարսնացուի, դաւուլ զուռնի առաջնորդութեամբ և հարսնևորների ուղեկցութեամբ։

Տների մեծ մասը գլխատներ են, միայն շատերն ունին նաև մի, կամ միքանի լանոնաւոր սենեակ։ Մի քանի տների առաջ էլ պարտէզներ կան։ Գիւղում կայ երկու խանութ, իսկ ձորում, գետի աջ ափին մի փայտ սղոցելու գործարան։

Գիւղի տեսարանը գեղեցիկ, կլիման էլ մեղմ լինելու պատճառով՝ այստեղ ևս սկսել են ամարանոց գալ։

Բնակիչները գաղթած են այստեղ Ղազախի Նչաջրից, Կարսից, Դսեղից և Օձունից. ընդամէնը՝ 78 տուն են. 381 ար. 326 իգ. ի միասին 707 հոգի։

Նյս գիւղացիները բացի սովորական՝ երկրագործութիւն ու անասնապահութիւն՝ պարապմունքից, Ներսիսեան դպրոցն աւարտած երկու երիտասարդների նախաձեռնութեամբ պարապում են նաև եւրոպական ձևի մեղուապահութեամբ։

Այս և Կուրթան գիւղերի մէջ տեղում, ճանապարհից փոքր

ինչ հեռու գտնւում է մի աւերակ գիւղատեղի, որ Հանի է կոչւում։ Աւանդաբար պատմւում է, թէ այդ տեղի նախկին բնակիչները Անիից են գաղթել այդտեղ։

## ՄՂԱՐԹԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Մղարթ*.— Գտնւում է համանուն լերան ստորոտում, առջեւում տարածւում են ընդարձակ դաշտեր, որ ամենաբերրին են համարւում։ Գիւղում կայ մի փոքրիկ եկեղեցի։ Հողը արքունական է։ Բնակիչները գաղթել են Օձունից. ընդամէնը՝ 40 տուն են, 182 ար. 155 իգ. ի միասին՝ 337 հոգի։

*Յովհաննաձոր կամ Օվանդարա*.— Մի փոքրիկ, աննշան գիւղ է մի քարաժայռի լանջին շինւած, որ երբեմն իբր եայլա էր ծառայում Օձնեցիներին։ Ունին մի փոքրիկ, աննշան եկեղեցի։ Որքան գրաւիչ է ամառը իւր օդով, ջրով և տեսարաններով, նոյնքան անտանելի ձմեռը, իւր ցրտով, բքով և անանցանելի ճանապարհներով։ Բնակիչները 26 տուն են. 160 ար. 124 իգ. ի միասին՝ 284 հոգի։

Յովհաննաձորից փոքր ինչ հեռու, Կողէս յունաբնակ գիւղի հիւսիսային կողմը, գիւղից մօտ 40 սաժէն հեռու, մի փոքրիկ ձորակի մէջ, հայկական մի հին գերեզմանատուն կայ, ուր գտնւում է ի միջի այլոց և Գրիգոր եպիսկոպոս Տուտէ— որդու հօր՝ *Տուտէ իշխանի դամբարանը*։ Այս իշխանի սերունդը յայտնի չէ թէ որ ժամանակից ի վեր իշխել է այս կողմերում և ունեցել է սեպհական կալուածներ, յայտնի է միայն, որ Տուտէ իշխանի միւս որդին՝ Տուտիկ իշխանը մեծ համարումն է վայելել ամբողջ Լօռում, և նրա անուամբ կոչւել են թէ Կողէսի մօտի վտակը և թէ նրա շրջակայքը՝ Տուտկաջուր։ Այժմ այս կալուածքը պատկանում է Լօռիս Մելիքեանին, իսկ Կողէսը Թագաւորական է։ Այս իշխանական ցեղի մասին, բացի վերոյիշեալ կցկտուր տեղեկութիւնը, ուրիշ ոչինչ յայտնի չէ։ Տուտէ իշխանի տոհմական դամբարանը ներկայացնում է $3^1/_2$ արշ. երկարութեան, $1^1/_2$ արշ. լայնութեան և $2^1/_2$ արշ. բարձրութեան մի կամարակապ դետնայարկ, մի փոքրիկ դռնով արևմտեան կողմը։ Սա այժմ տեղ

տեղ և մանաւանդ դռան կողմը, քանդուած է և բաց։ Այս գետնայարկի գլխին, արևելեան կողմը, սրբատաշ քարերից մի պատուանդան է շինուած, մօտ երկու սաժէն երկարութեան, $1^1/_2$ արշ. լայնութեան և 2 արշ. բարձրութեան։ Սրա վրայ քառակուսի քարէ պատուանդանների վրայ կանգնած են երեք խաչքարեր, որոնցից միջինը աւելի մեծ և նրբաքանդակ է։ Պատուանդանի վրայ կայ հետևեալ տապանագիրը.

Կամաւն բարերարին Աստուծոյ ես Տուտիկս և մայրն իմ Թամար և ամուսինն իմ Դինկայ կանգնեցաք զեւրորդութիւնն վասն Սասնայի և Քամիթարայ և Նորադինին, որք անհետ կորեան ի ձեռս անաւրինաց և սուգ մեծ և անմխիթար թողին մեզ. որք երկրպագէք յիշեցէք զմեզ և զծնաւղս մեր թուին ՈՂ-ին *)։

*Բօլագիրան.*—Մի փոքրիկ գիւղ է Համանուն կայարանի մօտ, ուր նշանաւոր է միայն քարաշէն, փայտածածկ եկեղեցին։ Բնակիչներն ընդամէնը՝ 27 տուն են. 151 ար. 127 իգ. ի միասին 278 հոգի։

*Հագուի.*—Մի փոքրիկ գիւղ է, Աքորիից 6 վերստ հեռու, քարափտափի վրայ։ Ունի մի հին քարաշէն, սադաշէն մատուռ, որ այժմ իբր ծխական եկեղեցի է ծառայում։ Բնակիչները 24 տուն են՝ 108 ար. 94 իգ. ի միասին՝ 202 հոգի։

*Ամոճ.*—Օձունից հազիւ մի վերստ հեռաւորութեամբ լէպի արևմտահիւսիս, մի լանջի վրայ, երեք կողմից անտառապատ լեռներով պատած։ Պատկանում է Կոմս Լօռիս Մելիքեանին և ազնուական Բաշբէօիւկ-Մելիքեաններին։ Ունի մի փոքրիկ, հասարակ եկեղեցի, ուր անհրաժեշտ դէպքերում միայն քահանայագործում է Օձունի քահանաներից մինը։ Մաքուր ջրի աղբիւրը գիւղից փոքր ինչ հեռու է գտնւում, իսկ գիւղի միջով հոսող աղբիւրը կեղտոտ է։ Գիւղի դիրքը և նրա առաջ բացւող տեսարանը շատ գեղեցիկ են, օդը զովարար, անտառը շատ մօտիկ, այնպէս որ մի լաւ ամարանոցի յարմարութիւնները ունի։ Կան նաև մի քանի գեղեցիկ, փոքրի շատէ յարմարաւոր տներ, որ վարձով են տրւում ամարանոց եկողներին։

*) 1241.

Գիւղում ոչ մի խանութ չկայ, բնակիչները բոլորն էլ հայեր են, ընդամէնը՝ 11 տուն. 60 ար. 51 իգ. ի միասին 111 հոգի։

Գիւղի հիւսիսային կողմում, մի փոքրիկ բլրակի վրայ կայ մի ուխտատեղի Ս. Յակոբ անունով։

Ամոճից մինչև Սանահին կայարանը նորերս շինուած է սայլի ճանապարհ։

*Նոր կամ Ներքին Ուզունլար կամ Ղաչաղան.*—Ծաթերից չորս վերստ հեռու, նոյն դաշտավայրի վրայ, ձորի ափին։ Ունին մի փոքրիկ, քարաշէն եկեղեցի։ Գիւղի մէջ աղբիւր չկայ, գեղջկուհիները մեծ նեղութիւններով ջուր են կրում մօտակայ ձորում գտնուած միակ աղբիւրից։ Հողն արքունական է։ Բնակիչներն ընդամէնը՝ 37 տուն. 181 ար. 162 իգ. ի միասին՝ 343 հոգի։

Գիւղից դէպի արևմուտք, Զորագետի ձախ ափին, մի բարձր լեռան վրայ կայ մի քարաշէն բուրգ, ուր առաջները շատ անգամ շրջակայ գիւղերի բնակիչները պաշտպանուել են ասպատակութիւններից։

*Իգահատ կամ Այգեհատ.*—Գտնւում է Յձունք Հարթութեան հարաւային մասում, ձորի ափին։ Գիւղը իւր անունն ստացել է այն հանգամանքից, որ այստեղ այգիները հատնում են, այսինքն նրանից հարաւ այլ ևս այգիներ չկան։ Գիւղի մէջ կայ մի հասարակ եկեղեցի. տներից շատերը մի կամ երկյարկանի են, բաւական մաքուր և գեղեցիկ շինուած, որոնցից շատերի առաջ կան պարտէզներ։

Բնակիչներն բոլորն էլ Ճահվերդեան տոհմից են, ազնուականներ, ուստի և գիւղն Սրգուլի և Ամոճի պէս հասարակական բացառիկ դիրք ունի։ Նա չունի ո՛չ տանուտէր և ոչ գիւղական դատաւոր, այլ անմիջապէս ենթարկւում է գաւառապետին և հաշտարար դատաւորին։ Բնակիչների թիւը ընդամէնը՝ 40 տուն է, 127 ար. 167 իգ. ի միասին 364 հոգի։

Հողերը պատկանում են իրենց գիւղացիներին, որոնք կամ անձամբ և կամ վարձկան մշակների ձեռքով են մշակում։

Գիւղացիները ջրի շատ նեղութիւն են կրում, որովհետև միայն մի աղբիւր կայ, այն էլ գիւղից դուրս, մի քիչ հեռու։

*Իգատակ աւերակ.*—Ցաքաջան դետակի ձորում կան քանից աւելի աւերակ գիւղատեղեր, որոնցից մինի՝ Իգատակի՝ աւերակ եկեղեցու վրայ կայ մի արձանագրութիւն [1]։

Գիւղատեղերից մի քանի վերստ հեռու, անտառապատ բլրի վրայ, կան երկու գերեզման, որոնցից մինի կործանուած պատուանդանի վրայ կայ մի եղծուած տապանագիր։

*Արդուի.*—Տարածւում է Ձէկաղբիւր, Տոտկաջուր (Տուտիկ իշխանի ջուր) լեռների փեշերի վրայ, հիւսիսային կողմում բարձրանում են Ծնկոյա-գլուխ, Միլի-ակ գագաթները, հարաւային կողմում Հողոմսի գագաթը, որի առաջ գտնւում է համանուն աւերակ գիւղատեղին [2]։ Արևելեան կողմը Օձունի հարթ տարածութիւնն է։

Աւանդութեան ասելով սա երբեմն քաղաք է եղել, և յիրաւի, երեք աւերակ եկեղեցիներ, վեց գերեզմանատուն, երեք ձիթհանք, բազմաթիւ տների հետքեր հաստատում են այդ աւանդութիւնը։ Գիւղը բաժանւում է 3 թաղի՝ Վիշապաձոր, Տայինանց թաղ և Քալանթարեան թաղ։ Այժմեան տների մեծագոյն մասը գեղեցիկ են, կղմինտրածածկ կտուրով և պարտէզներով շրջապատուած։

Գիւղը պատկանում է Լօրիս-Մելիքեաններին և ազնուական Քալանթարեաններին։ Բնակիչները 18 տուն են, որոնցից 8 միայն Քալանթարեաններից, 93 ար. 81 իգ. ի միասին՝ 174 հոգի։

Այս գիւղը ևս, որպէս ազնուականների բնակավայր, չունի ո՛չ տանուտէր և ոչ գիւղական դատարան։

Վիշապաձորի մօտ գտնւում է Օհան Օձնեցու վանքը [3]։

## ՈՒԶՈՒՆԼԱՐԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Օձուն կամ Ուզունլար.* Սա գտնւում է երկաթուղու Սանահին կայարանի դրեթէ հանդէպ, ձորի աջ, արևմտեան ափին տարածւող բարձրաւանդակի վրայ։ Գիւղի արևմտեան

[1]) Տես արձանագրութիւնների բաժնում։

[2]) Աւանդութեան ասելով գիւղը այդ անունը ստացել է այդտեղ բնակւող Հողոմսի քաջ կնոջ անունից։

[3]) Օհան Օձնեցու վանքի և Վիշապաձորի մասին տես Նշանաւոր վանքերի բաժնում։

ծայրում բարձրանում է Օհան Օձնեցու շինած գեղեցիկ, քարաշէն եկեղեցին, որի հիւսիսային կողմը առանձնակի կանգնած է մի հրաշալի մահարձան, որ աւանդաբար վերագրւում է Սմբատ Թագաւորին [1]:

Եկեղեցու շուրջը կայ մի ընդարձակ գերեզմանատուն, գեղեցիկ խաչքարերով: Մի ուրիշ գերեզմանատուն ևս ընկած է գիւղի արևելահիւսիսային ծայրը:

Գիւղի արևելեան ծայրում, ձորի գլխին եղել է մի ամրոց, որի միակ եկեղեցու աւերակներն են մնացել այժմ, որովհետև գիւղացիները բոլոր քարերը քանդել և տարել են: Այս եկեղեցին այժմ կոչւում է Տաղկեվանք, և ծաղիկ հիւանդութիւն ունեցողների համար ուխտատեղի է: Սրան կից ուխտատեղին կայ յայտնի է ս. Կիրակի անունով:

Գիւղի փողոցներից մի քանիսը լայն են և կանոնաւոր, միւսները՝ նեղ և ծուռնումուռ:

Տների մեծ մասը դեռ ևս հին ձևի են, կիսադետնափոր, միւսները՝ նոր ձևի, կղմինտրներով ծածկուած կտուրներով. մի երկու տուն էլ երկյարկանի: Մի քանիսի առաջ պարտէզներ կան, միւսների՝ լոկ միայն մի քանի ծառեր տնկած:

Հինգ խանութ, մի քանի դարբնի, պայտառի, ներկարարի արհեստանոց ցրուած են գիւղի զանազան կողմերում:

Գիւղը վայելում է այն սառնորակ և քաղցրահամ աղբիւրի ջուրը, որ բերել է Ձաքարէ սպասալարի իշխան Պանպարին, նրա մօտ հիւանդանոց շինելով, ուր օդի և ջրի մաքրութիւնից շատ հիւանդներ առողջացել են, ուստի և ջուրը կոչուել է կենդանաբար, իսկ այժմ կնդանարար:

Գիւղում կայ ռուսաց երկդասեան դպրոց, որը սակայն դեռ ևս դպրոցական շէնք չունի:

Բնակիչները բնիկներ և մի քանի տուն Գիւլիստանից Մելիք Փրիդոնի հետ գաղթած ղարաբաղցիներ են. ընդամէնը 318 տուն. 1686 ար. 1379 իգ. միասին՝ 3065 հոգի:

---

[1]) Թէ վանքի և թէ մահարձանի նկարագրութիւնը տես «Նշանաւոր վանքեր»-ի բաժնում:

## ՀԱՂԲԱՏԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Հաղբատ*. Գտնւում է Դեբեդ գետի աջ ափին, մի գառիվայրի վրայ, որի արեւելեան և հարաւային կողմերում բարձրանում են Տէրունական և Սուրբ Լուսի անտառապատ լեռներն ու մի քանի ժայռոտ բլուրներ, իսկ արեւմուտքից և հիւսիսից ահագին ժայռոտ ձորն անմատչելի է դարձնում նրան։ Կլիման բարեխառն է, ջուրը յստակ և սառն, այնպէս որ իբր հիւանդի ամարանոց կարող է դառնալ, եթէ կառքի ճանապարհ շինուի մինչև երկաթուղու կայարանը։ Գիւղը վերին աստիճանի տխուր տպաւորութիւն է թողնում, որովհետև տների մեծագոյն մասը հին ձևի են, կիսագետնափոր, փողոցներն անկանոն, բնակիչներն աղքատ և հարկերի տակ ճնշուած, որովհետև գիւղի հողերը ոչ թէ արքունական են, այլ պատկանում են իշխան Բարատովին, որ բերքի 1/5 ինքն է վերցնում։ Այսպիսի ծանր տուրքի են ենթարկուած այն գիւղերը, որոնք մի որև է իշխանական տան են պատկանում։

Գիւղը ծխական եկեղեցի չունի, այլ օգտւում է իրեն մօտ գտնուած Հաղբատի հռչակաւոր վանքից, պահելով միայն մի ծխական քահանայ, որ ապրում է գիւղում։

Շրջակայ Հաղբատաձորն ու Բերդաձորը լի են խաղողի և մրգատու ծառերի այգիներով։

Բնակիչները քաջ և լաւ հրացանաձիգներ են. նոյն իսկ կանայք գիտեն հրացան արձակել։ Ընդամէնը 80 տուն են. 407 ար. 321 իգ. ի միասին՝ 728 հոգի։

*Սանահին*.—Մի փոքր գիւղ է համանուն հռչակաւոր վանքի մօտ։ Հողի մեծագոյն մասը պատկանում է Արղութեան Երկայնաբազուկ տոհմին և մի եօթերորդը՝ վանքին։ Գիւղում բնակւում են Արղութեան տոհմից մի քանի գիւղացի դերդաստաններ։ Տների մեծագոյն մասը հին ձևի են, փողոցներն անկանոն, կեղտոտ։ Ծխական եկեղեցի չունին, այլ օգտւում են վանքից, պահելով իրենց մօտ մի ծխական քահանայ։ Ընդհանրապէս կլիման, հիւանդի ջուրը, տեղի դիրքը և մաքուր օդը բնակիչներին շատ լաւ կազմուածք են շնորհել և սրանք,

Digitized by Google

մանաւանդ կանայք, յայտնի են ամբողջ գաւառում որպէս գեղեցիկներ։ Սրանք նաև քաջ և լաւ հրացանաձիգներ են. նոյն իսկ կանայք գիտեն հրացան արձակել և սրանցից մինը, Թամազանց մայրը, հրացանն ուսին միայնակ պահպանել է իրենց անասունները եայլայում։

Բացի Արղութեան Երկայնաբազուկ տոհմի նշանաւոր մարդկանցից, գիւղը տուել է նաև մի ականաւոր հնախոյզ—պատմաբան—Աղէքսանդր Երիցեան։

Բնակիչները բնիկներ են. 80 տուն. 435 ար. 380 իգ. ի միասին՝ 815 հոգի։

*Արօրի*.—Գտնւում է Լալվար լեռան արևելակողմը, առջևից անցնում է Դեբեդ գետը։ Գիւղում կայ մի փոքրիկ, սագաշէն եկեղեցի. որ առաջ մատուռ է եղել։ Սրա հարաւային կողմում կայ մի հացատնից և խօթր սենեակներից բաղկացած մի տան աւերակ, որ յայտնի է «խօթն աղբօր տուն» անունով։ Գիւղացիները պատմում են, թէ այդ տեղ բնակուել են խօթն եղբայրներ, որոնք այնքան հարուստ են եղել, որ բազմաթիւ կովերն ու ոչխարները կթել են տուել Լալվար լեռան վրայ և այնտեղից խողովակներով գիւղը բերել։ Գիւղի հարաւ—արևելեան կողմում, հազիւ չորս վերստ հեռու, ձորում, կայ մի հին, սրբատաշ քարով շինուած, գեղեցիկ վանք։

Արօրի գիւղը կալուածք է կոմս Լօրիս-Մելիքեաններին։

Բնակիչները գաղթել են Ղազախի կողմերից. ընդամէնը՝ 51 տուն են. 321 ար. 303 իգ. միասին՝ 694 հոգի։

*Ոլնակ*.—Սանահնի և Հաղբատի մէջ, առաջնից հազիւ երեք վերստ հեռաւորութեամբ, երկու անտառապատ լեռների առաջ, ձորից փոքր ինչ բարձր։ Պատկանում է Արղութեաններին, Լօրիս-Մելիքեաններին և մասամբ Սանահնի վանքին։ Գիւղն ունի մի քարաշէն, փոքրիկ և անշուք եկեղեցի, որ կառուցել է իշխ. Քալի Արղութեանը։

Գիւղի հարաւ-արևմտեան ծայրում գտնւում է մի աղբիւր, որ շինել է Թիֆլիսի կուսանաց անապատի միաբան բարեկրօն կոյս Մանի Լօրիս-Մելիքեան, որի պատկերը, շինութեան վե-

Digitized by Google

քաքերեալ արձանագրութեամբ, փակցրած է աղբիւրի կամարակալ ճակատին։

Այլ եւս աղբիւրը չի վազում։

Բնակիչները 26 տուն են. 175 ար. 132 իգ. ընդամէնը՝ 307 հոգի։

## ԴՍԵՂԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ.

*Դիրք.* —Ընկնում է այն բարձրաւանդակի վրայ, որ տարածւում է Դեբեդ գետի երկու մեծ ճիւղերի միախառնման աջ կողմը։ Երեք կողմից պատած է խոր ձորերով, իսկ հարաւային կողմում բարձրանում է Տղրկածովի գլուխ, Սարի գլուխ և Բերթաղ բլրակների շարքը։ Առաջին բլուրի վրայ կայ մի փոքրիկ լճակ, տզրուկներով (սիւլուկ) լի, որի պատճառով և լիճը Տզրկածով, իսկ բլուրը՝ Տզրկածովի գլուխ է կոչւում, իսկ վերջինի վրայ երևում են հին բերդի հետքեր։ Գիւղի արևելեան կողմում բարձրանում է մի ուրիշ բլրակ, Դիտ անունով [1])։

Գիւղում կան մի քանի լայն, բայց ոչ մի կանոնաւոր փողոց. տների մեծ մասը հին-ձևի, գլխատներ են, իսկ փոքր մասը՝ նոր ձևի, կղմինտրածածկ կտուրներով։ Գիւղի հիւսիսային կողմում գտնւում է եկեղեցին, որ բաւական լաւ շէնք է, մեծ մասը նորոգած։ Զանգակատան մասը հին է, և սրա վրայ դեռ ևս մնում է Մամիկոնեան տոհմի դրոշանիշը, երկգլխեան արծիւ՝ ճանկերում զառն բռնած։ Գիւղի գրեթէ կենտրոնում գտնւում է մի հին գերեզմանատուն, ուր բազմաթիւ տապանաքարերի մէջ նշանաւոր է մի կոթող և մի խաչաձևան։ Կոթողը քառանկիւնի է, 2 սաժէն բարձրութեամբ, չորս երեսն էլ քանդակներով զարդարուած, որի պատուանդանի վրայ հազիւ հազ կարդացւում է. *Ես Վահրամ զաւտար շինար քանիկ թողի վկայ ուզնայն Գագկայ խորիշան ով խափանէ յմը նայրապետաց Նզովեցի Տէր Աստուած ողորմի մխիթարչին:*

Խաչարձանը կանգնած է երեք մեծ քարից կազմած պատ-

---

[1]) Սա թերևս դիտանոց եղած լինի, որից և ստացած իւր անունը։



**Могильный памятникъ въ Дсегѣ.** **Մահարձան Դսեղում.** ***Monument funéraire à Dsegh.***

Digitized by Google

ուանդանի վրայ, և ճակատին ունի մի առանձին քար, որ փոքր ինչ խոնարհեցրած է, թերևս անձրևից պահպանելու համար։ Այս քարի վրայ քանդակուած է Փրկիչը նստած դիրքով, աջ ձեռքը բարձրացրած, իսկ ձախ ձեռին բռնած մագաղաթ՝ վրան գրած. «*Ես եմ լոյս աշխարհի*», շուրջը այլ պատկերներ։ Խաչքարի վրայ քանդակուած է Յիսուսը՝ խաչած։ Խաչի գլխին գրած է. «*Սա է թագաւոր հրէից*», աջ կողմից կայ մի աջ և մի աղաւնի, շուրջը՝ «*Աջ տեառն եւ հոգի Աստուծոյ*»։ Նպա խաչեալ Յիսուսի մի ձեռից մինչև միւսը՝ խաչի վրայ գրուած է. «*Ձեռք, որ զերկինս արարին՝ տարածեցան ի խաչիս։*» Խաչի մի կողմը կանգնած են Յովհաննէս և Նիկոդիմոս, միւս կողմն Աստուածածին և Յովսէփ, ձեռին կտաւ, խաչի ներքև գլխին «Ադամի»։ Իսկ պատուանդանի վրայ կայ հետևեալ արձանագրութիւնը.

*Ի թվ. ՉԼ. Ողորմութեամբ Աստուծոյ, ես Տէրունս որդի Խալըլին իմ աղբերացովս կանգնեցի զխէչս յանուն Գրիգորոյ որ զուր եւ դառն մահուամբ ի Քրիստոս փոխեցաւ որ է պարծանաց եւ զմարդոյ եղբայր մեր որք երկրպագէք յաղաւթս յիշեցէք*։ Պատուանդանի ձախ երեսին՝ *Վարհամ յիշեցէք* [1])։

Գիւղացիները այս երկու գերեզմանները համարում են քոյր և եղբօր, մինին Աստուածածին, միւսին Լուսաւորիչ անուանելով [2])։

Գիւղի մէջ և շրջակայքում յաճախ հնութիւններ են գտնում։ Այսպէս մի գիւղացի տան տեղ փորելու ժամանակ բացեց մի ընդարձակ չատակ, կամրով ներկած պիւններով սայայատակած։ Սրա մի կողմը կար մի փոքրիկ տաշտաձև, քարէ աւազան, իսկ մէջ տեղը մի սիւն, դծերով չորս մաս բաժանուած և իւրաքանչիւր մասում նկատելի էր մի կնիք և մի տառ։ Գիւղացիներն այդ տեղին «Թագաւորի աղջկայ բաղնիս» են անուանում [3])։

---

[1]) Նոր Դար. 1887. № 136.

[2]) Այս աւանդութիւնը առաջ կբերենք Աւանդութիւնների բաժնում.

[3]) Անդ.

Բնակիչները բնիկներ են և յայտնի են գաւառում որպէս քաջ մարդիկ։ Այստեղից է բանաստեղծ Յովհաննէս Թումանեանը։ Ընդամէնը 110 տուն են. 541 ար. 450 իգ. ի միասին՝ 991 հոգի։

Գիւղի մօտ գտնւում է Ս. Գրիգորի և Քառասնից վանքերը, ինչպէս և Սիրուն խաչը[1])։

*Մարց.*—Գտնւում է մի բլրակի վրայ, որի արևմտեան կողմից տարածւում է Բաբաջանայ ձորակը՝ Բաբաջանայ ջրով. արևելքից արևմուտք էլ մի ուրիշ ձորակ է ձգւում մի բարակ առուակով։ Հարաւ-արևմտեան կողմում բարձրանում է Սոթի լեառը, ուր կայ մի գիւղատեղի, մի փոքրիկ, աւերակ մատուռ, շուրջը գերեզմաններով պատած։ Հարաւ-արևելեան կողմում ձգւում է Ճգնաւորի-Թալա բարձրաւանդակը, ուր կայ «Ճգնաւորի խաչ» ուխտատեղին։ Հեռու, արևելեան կողմում երևում է Չաթինդաղը. Հիւսիսային կողմում ձորակ է, մի առուակով։

Տներից շատերը գետնափոր են, գլխատուն, և միայն միքանիսը նոր ձևի։

Բնակիչները գաղթականներ են Ճամշադնից և Ջրաբերդից։ Ընդամէնը՝ 50 տուն են. 245 ար. 209 իգ. ի միասին 454 հոգի։ Այստեղի կանայք շալ են գործում, մինչդեռ միւս գիւղերում չեն գործում։ Սրանք բաւականաչափ անփոփոխ պահպանել են իրենց մայրենի բարբառը. դպրոց երբէք չեն ունեցել։

Մարց գիւղից փոքրինչ բարձր գտնւում է մի հանդստաբան, ուր մի խաչքարի վրայ կարդացւում է.

*Թուին ՉԼԴ. Կանգնեցաւ Խաչս ի նեղ եւ ի դառն ժամանակս Թաթարաց ի Թագաւորութեան Դիմետրի որդւոյ Դաւթի ի հայրապետութեան տէր Յովհաննէսի Թոռն Դաւրեանց. ես Թամայ քահանայ եւ եղբայրն իմ Տիրացու կանգնեցաք զխաչս ամենափրկիչ, յիշատակ հաւր մերոյ Գրիգորի քահանային եւ մաւր մերոյ Թիւքանոյշային եւ քուերց մերոց Տերանց Տիրամաքին եւ Տիրոցին. եւ փեսայից մերոց անպատճառ քահանայից Խաչատուրին*

[1]) Տես վանքերի բաժնում։

*եւ Մարգարին. ով ապուշտածակէրք, որք նրկրպագէք զհան-գուցեալքս յիշեցէք ի Քրիստոս։*

*Լոռուտ.*—Մարցից հինգ վերստ հեռաւորութեամբ, լեռան լանջին. ունին մի փոքրիկ եկեղեցի. Օհան Օձնեցու վանքի կալուածք է համարւում։ Բնակիչներն ընդամէնը 107 տուն են. 671 ար. 537 իգ. ի միասին՝ 1205 հոգի։ Բոլորն էլ 1860 թուին են գաղթել այստեղ Ղազախի Ղալաչայ գիւղից։

*Անխզար.*—Այս փոքրիկ գիւղը իւր անունն ստացել է իւր մօտ գտնուած ուխտատեղիի անունից, որ մի հասարակ մատուռ է և կոչւում է Անիզօրավար։ Գիւղում կայ մի փոքրիկ, հասարակ եկեղեցի։ Բնակիչները՝ 18 տուն են. 101 ար. 69 իգ. ի միասին՝ 170 հոգի։

*Աթան.*—Լոռուտից 4 վերստ. ունին մի փոքրիկ, հնաշէն եկեղեցի։ Այս գիւղը ևս Օձունի վանքին է պատկանում։ Բնակիչները Հաղբատից են եկել, մի քանիսն էլ Ձիրախի գաւառից. ընդամէնը՝ 18 տուն են. 116 ար. 97 իգ. ի միասին՝ 213 հոգի։

*Խաչի գիւղ.*—Գտնւում է Ալերեքսի գետի երկու ափին, համանուն ձորի մէջ։ Գիւղն իւր անունն ստացել է այն բարձըր խաչ-քարից, որ գտնւում է գիւղի արևելեան կողմում։ Այստեղ կայ մի փոքրիկ, նոր շինուած եկեղեցի, մի քանի քարաշէն, գեղեցիկ տներ, իսկ միւսները՝ գլխատներ են։ Բնակիչները գաղթած են Մարց գիւղից. ընդամէնը՝ 43 տուն են. 258 ար. 225 իգ. ի միասին՝ 473 հոգի։ Հողը արքունական է։

*Քարինջ.*—Սա իւր անունը հաւանականօրէն ստացել է շուրջը գտնուած ահագին քարաժայռերից և քարակոյտերից. տեղաւորուած է մի բլրի վրայ. ունի մի քարաշէն փոքրիկ եկեղեցի։ Բնակիչները գաղթել են Մարց գիւղից, որից այս գիւղը բաժանւում է մի ձորով և հազիւ երեք վերստ հեռու լինի։ Ընդամէնը՝ 40 տուն են. 226 ար. 187 իգ. ի միասին՝ 413 հոգի։

*Ծաթեր.*—Մի փոքրիկ գիւղ է, Մղարթից վեց վերստ հեռաւորութեամբ, ձորի ափին։ Ունին մի փոքրիկ, փայտաշէնկ եկեղեցի, որին հարաւային կողմից կից է մի փոքրիկ խոր

րան, պատարագամատոյց սեղանով։ Սա մի առանձին ուխտատեղի է համարւում։ Բնակիչները ընդամէնը՝ 25 տուն են. 146 ար. 106 իգ. ի միասին՝ 225 հոգի.

*Սաղիբաղի.*—Մի փոքրիկ գիւղ է Դսեղից 3 վերստ հեռու, ունի մի քարաշէն, գեղեցիկ եկեղեցի. բնակիչները Ծաթեր գիւղից են եկել. ընդամէնը՝ 19 տուն են. 132 ար. 121 իգ. ի միասին 253 հոգի։

## ԳԻՒԼԱՔԱՐԱԿԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Գիւլաքարակ.*—Ընկած է այն ընդարձակ հովտի մէջ, ուր տեղաւորուած են նաև Վարդաբլուր, Հոբարձի և Գեառ-գեառ գիւղերը։

Այստեղ կան մի քանի կանոնաւոր փողոցներ, տների մեծ մասը նոր ձևի են, եկեղեցին բաւական գեղեցիկ է, կճաղակապ և չորս սիւների վրայ հաստատուած։ Գիւղի հարաւային կողմում բարձրանում է Բզովդալ կամ Դուալ լեառը, որ բաժանում է Լօռին Փամբակից։ Այս լերան մի ճիւղի ստորոտում կայ մի աւերակ գիւղատեղի, որտեղից մի անցք տանում է դէպի Բզովդալ և կոչւում է Որմակայ դուռ։ Այստեղ հարց է ծագում, թէ արդեօք այդ լերան հին հայկական անունը Որմակ չէ՞ եղել [1])։

Սրա, ինչպէս և վերոյիշեալ և Կուրթան գիւղերի բնակիչները գաղթել են Փամբակի գաւառից 1818 թուին։ Ընդամէնը՝ 118 տուն են. 635 ար. 546 իգ. իմիասին 1181 հոգի։

*Վարդաբլուր.*—Տարածուած է Գառ-գառ գետի աջ ափին, ս. Սարգիս սարի հիւսիս-արևմտեան լանջի վրայ։ Կենտրոնում գտնւում է սրբատաշ քարից նոր շինուած սաղաշէն եկեղեցին, որի մօտ սփռուած է հին գերեզմանատունը խաչքարերով զարդարուած։ Սրա մօտ գտնւում է մի մատուռ, ս. Խաչ անունով, ուր ուխտ է գնում միմիայն իգական սեռը։

Կանոնաւոր փողոցներ չկան, տների մեծ մասը հին ձևի՝ գլխատներ են։ Բնակիչները ընիկներ և մի քանի տուն գաղ-

[1]) Արձագանք 1895. № 5.

թականներ են Մշից և Փամբակից: Ընդամէնը՝ 130 տուն. 563 ար. 505 իգ. խմիասին՝ 1068 հոգի:

Բացի սովորական պարապմունքից, այս գիւղացիները գիտեն նաև անիւներ շինել, փայտ ողոցել և բրտութիւն անել: Շնորհիւ մօտակայ կալուածատէր Խան-Աղեանի և ճեմարանաւարտ քահանայի գիւղացիները առել են երկրագործական եւրոպական գործիքներ:

Վարդաբլուրից դէպի արևելք *Կետեւան* կալուածքում, որ հին գիւղատեղի է եղել, գտնւում է կալուածատէր Գէորգ Խան-Աղեանի գեղեցիկ և եւրոպական ճաշակով կահաւորուած տունը, որի առաջ տարածւում է ընդարձակ պարտէզը: Կալուածատէրը շերամ էլ է սկսել պահել, որ այս գաւառում առաջին և դրեթէ յաջող փորձն է: Մեղուապահութիւնը նոր, եւրոպական ձևով է: Կալուածատիրոջ որդին՝ Լևոնը՝ յայտնի է իւր հնարած ջուր բարձրացնելու մեքենայով և «Երկրագործական գործիքներ» խորագիրը կրող աշխատասիրութիւնով:

*Ս. Սարգիս* ուխտատեղի.—Գտնւում է Կուրթան և Վարդաբլուր գիւղերի միջև, համանուն լեռան գագաթին: Սա մի փոքրիկ, հասարակ մատուռ է, մի գաւիթով: Այս տարի Վարդաբլուրի քահանայ Տէր Եղիա Զոհրաբեանի ջանքով վերանորոգուած է գաւիթը: Ս. Ջալալեանի առելով 1828 թուին այս մատուռը վերանորոգելիս՝ սեղանի տակը գտել էին Ս. Սարգսի մասը՝ արծաթի պահարանի մէջ և կրկին դրել նոյն սեղանի հիմքում: Այստեղ տարէնը երկու անգամ, Վարդավառին և Ս. Սարգսի տօնին, ահագին բազմութիւն ուխտ է գալիս: Արդիւնքը պատկանում է Թիֆլիսի Ներսիսեան դպրոցին

Լեռան երեք կողմը ժայռոտ է, իսկ հարաւային կողմում ձգւում է մի պարիսպ, ութ կիսաւեր աշտարակներով: Այստեղ, Ս. Սարգսից դէպի արևմուտք կայ $18^1/_2$ արշ. երկարութեան, $4^1/_2$ ար. լայ. և այս չափ էլ բարձրութեան սրբատաշ քարերով մի շէնք, առանց պատուհանների, և նոյն իսկ անդուռն, եթէ արևմտեան պատի մէջի քանդուած բացուածքը դուռ չլինի: Աւանդաբար ասում է, թէ սա շտեմարան է եղել, թէև կան կարծողներ, որ եկեղեցի լինի:

Digitized by Google

Սրա հարաւային պատի վրայ դրսից կայ հետեւեալ արձանագրութիւնը.

ՆՂԹ թուականութեանս Հայոց ես Կորիկէ թագաւոր սահմցի ըհասոյթս վանուցն մեղաց թողութեան և արևշատութեան իմոյ ընդ ձեռամբ Աշոտ մարծպանին։

Հիւսիսային կողմի ժայռերի մէջ կան փոքրիկ քարայրեր։

*Հոբարձի*.—Սադիբագիւից մի վերստ հեռու, մի փոքրիկ գիւղ է, ունի մի քարաշէն, փայտածածկ եկեղեցի։ Բնակիչները 50 տուն են. 240 ար. 205 իգ. իմիասին՝ 445 հոգի։

*Գեառ-գեառ Հայոց*.—Բաւական կանոնաւոր փողոցներով և նոր ձևի տներով գիւղ է, մի ժայռոտ բլրի ստորոտում։ Ունի մի քարաշէն, անգմբէթ եկեղեցի, որ այժմ վերանորոգութեան է կարօտում։ Գիւղից փոքր ինչ հեռու ղտրնւում է բազմաթիւ, սառն աղբիւրներով հարուստ, անտառ։ Տեղական բերքերից գովուած է կարտոֆիլը և մասամբ ցորենը։

Բնակիչները բացի սովորական պարապմունքներից, պարապում են նաև անիւներ և ամէն տեսակի սայլեր շինելով և սայլապանութեամբ։ Ընդամէնը՝ 140 տուն են. 700 ար. 620 իգ. իմիասին՝ 1320 հոգի։

## ՋԱԼԱԼ-ՕՂԼԻԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Ջալալ-օղլի*.—Յայտնի չէ, թէ երբ և ով է հիմնել այս գիւղը, միայն ձորի գլխին մի խաչ կայ, վրան գրած. «կանգնեցաւ խաչս 'ի Ջալալայ իշխանէն», որից հաւանականօրէն կարելի է ենթադրել, որ այդ իշխանի որդու բնակավայրն է եղած այս։

Ջալալ-օղլին գտնւում է Դեբեդայ-գետի անդնդախոր ձորակի աջ ափին տարածուող այն ահագին հարթութեան վրայ, որ գնում հասնում է մինչև Հնէվանի ձորը։ Այս հարթութեան արևմտեան կողմը 6—7 վերստ հեռաւորութեան վրայ երևւում է Դուալի կիսամերկ, բայց գեղեցիկ շղթան, որից մի քանի ճիւղեր զանազան ուղղութեամբ ձգուելով դէպի Ջալալ-օղլին կազմում են անտառապատ բլուրներ և գեղեցիկ հովիտներ։ Սրանց մէջ բղխող ականակիտ առուները միանում են բնութեան

և տեսարանի գեղեցկութեան հետ, զբօսասէր մարդկանց դէպի իրենց ձգելու։ Այսպիսի են Մատուռի ձորը, Որան-Լորին՝ Դագեվանանց աղբիւրի անմահական ջրով, Տէր Ուհանանց գոմերի ձորն՝ իւր գետակով, Կոնդի-լանջը, Բայաթյարա՝ դաշտն իւր ջրվէժով, Լոռու բերդի առաջը, բերդի երկու կողմի ձորերը և այլն։ Երկրորդական բարձրութիւնները Դուալի առաջով կիսաշրջան կազմելով դէպի հարաւ՝ տեղի են տալիս մի մեծ, գեղեցիկ, անտառապատ բլրի։ Սրան հայերը Զալակաղնուտ են ասում, իսկ ռուսները՝ Արջասար (Медвѣжья гора). Շատ չքնաղ տեսարան է բացւում այս Զալակաղնուտի գագաթից դէպի Դուալը և նրա հովիտը դիտողի առջև [1]։ Գետի ձախ ափից 3—4 վերստ հեռու Լալվար լեառը հարաւից հիւսիս ձգուելով կանգ է առնում Ջալալօղլու առաջ, բաւական տարածութիւն թողնելով մի բլրի և ծաղկաւէտ հովտի համար, որ հիւսիսից եզրափակւում է Արպագլուխ բարձրութիւններով, որ Լոռու բերդի արևելեան ձորով Դեբեդին է խառնւում. իւր այս գեղեցիկ տեսարանների հետ բարեխառն կլիմայ ունենալով, Ջալալ-օղլին կարող է լաւ ամարանոց դառնալ, եթէ որ կառքի ճանապարհ շինեն մինչև Սանահնի կայարանը, ինչպէս մտադիր են։ Գիւղը բաժանուած է հայկական և ռուսական մասերի, իսկ առաջինը՝ երկու թաղի՝ վերին և ներքին։ Բաւական կանոնաւոր և լայն փողոցներ կտրուելով ծուռն ու մուռ անցքերով, միանում են այն տեղում, ուր նորերս շինուած է քաղաքային այգին։ Վերի թաղում, քարափի գլխին՝ բարձրանում է ս. Աստուածածնի սրբատաշ քարից շինուած եկեղեցին, իսկ գիւղի մէջ տեղում տեղաւորուած է ռուսաց զինուորական եկեղեցին։

Տները նոր ձևի են, մի քանիսն էլ երկյարկանի, պարտէզներով զարդարուած։ Բոլորի կտուրները կարմիր կղմինտրներով ծածկուած լինելով ամբողջ գիւղը կարմիր է երևում և ռուսները երբեմն «Կարմիր քաղաք» են անուանում նրան։ Գիւղում կան բաւականաչափ խանութներ, արհեստաւորների կրպակներ և մանաւանդ գինետներ։

1) Ագապեան. Թիֆլիսից Ջալալ-օղլի. Նոր-Դար՝ 1892 № 108.

Այստեղ են բնակւում Լօռու ոստիկանական շրջանի ոստիկանապետը և քննիչը. ամառը այստեղ են տեղափոխւում Ջալալօղլից գաւառապետը, հաշտարար դատաւորը, իրենց հիմնարկութիւններով։ Այստեղ կայ փօստատուն, հեռագրատուն և դեղատուն։

Բնակիչները գլխաւորապէս պարապւում են առևտրով, արհեստներով, անասնապահութեամբ և մասամբ երկրագործութեամբ։ Ընդամէնը 255 տուն են, 890 ար. 796 իգ. ի միասին՝ 1686 հոգի։

Ջալալօղլուց դէպի Եղիտանք յունական գիւղը տանող ճանապարհի երկու կողմում, վերջին գիւղից կէս վերստ հեռու կայ մի մեծ հանգստարան, ուր կան բաւական թւով խաչարձաններ։ Սրանց տապանագրերը մեծ մասամբ եղծուած են, միայն մինի վրայ կարդացւում է, «*Գրիգոր ամիրայ Մամիկոնեան*»[1])։

## ԵԿԱՏԵՐԻՆԵՆՖԵԼԴԻ ՈՍՏ. ՇՐՋԱՆ

### ՔՎԷՇԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Բոլնիս—Խաչէն.*—Տարածւում է Բոլնիս-դետակի ձախ կողմը, մօտ ½ վերստ հեռու, Խաչենայ քերծ քարաժայռի ստորոտում, մի հովտի մէջ։ Փողոցներն անկանոն են, տներից շատերը նոր ձևի, շատերը նոյն իսկ երկյարկանի։ Գիւղում կայ մի հասարակ, փայտածածկ եկեղեցի և երեք կիսաւեր մատուռներ, որոնցից մինի անունն է Ս. Աստուածածին, միւսինը՝ Ս. Ճգնաւոր, իսկ երրորդը, որ գտնւում է գիւղի միակ աղբիւրի մօտ և սաստիկ փոքր է՝ անուն չունի։ Մի եկեղեցու աւերակ էլ կայ գիւղի կենտրոնում։ Ծխական եկեղեցու մօտ կայ պետական միդասեան դպրոց։

Բնակիչները Մելիք Աբով Մելիք-Բեկլարեանի առաջնորդութեամբ եկած խաչէնցիներ են, ուստի և գիւղը իրենց բնակավայրի անունով Բոլնիս-Խաչէն են կոչել։ Սրանք պահել են իրենց բարբառը, սովորութիւնները, միայն զերծ չեն մնացել տեղական-վրացական ազդեցութիւնից, այսպէս՝ կանայք բո-

[1]) Արձագանք. 1895 № 14.

Digitized by Google

լորն էլ փրացնակ են հագնում և գլուխ կապում, լեզուի մէջ պատահում են վրաց խօսքեր, գործիքները, սայլը վրացականի նման են։ Բայց վերջին ժամանակներս օրանք աւելի ենթարկուել են մօտակայ Եկատերինէնֆելդ գերմանական գաղութի ազդեցութեան և սկսել են նրանց նման տներ շինել, այգեպանութեամբ և գինեգործութեամբ պարապել, ֆուրգոններ պահել և այլն։

Ընդամէնը՝ 108 տուն են. 360 ար. 307 իգ. իմիասին՝ 667 հոգի։

Գիւղի միայն նստուածքն է արքունական, իսկ շրջակայ հօղերը կալուածատիրական են. գլխաւոր բերքը՝ խաղողն է, որից տարեկան ստացւում է 50,000 թունգուց աւելի գինի։

Գիւղի շրջականերում կան Սիօն և Ծուղրուգաշէն վրաց վանքերը *), երկու վերստ հեռու՝ մի փոքրիկ եկեղեցի, սուրբ *Նամակատար* անունով, որին ամէն տարի համբարձման օրը գիւղացիները ուխտ են գնում, մատաղներ անում, և իրենց այգիների և արտերի համար կարկտից ու մկից պաշտպանութիւն հայցում։

Երեք վերստ հեռու, բլրի ստորոտում, գտնւում է սրբատաշ մի եկեղեցի, որ տեղացիներից *Նախշուն վանք* է կոչւում։

Այստեղ նշանաւոր է նաև *Մելիք-Աբովի արխը*, որ անցնում է գիւղի առաջից, սկիզբն առնելով մի վերստ հեռու Ջանշեանների կալուածքից և թափւում Մաշաւեր գետը Գոչըլու կամ Հայերէն՝ Ճապալա թրքաբնակ գիւղի մօտ, ոռոգելով ինչպէս խաչենցիների, այնպէս և շրջակայ թուրքերի և վրացիների այգիները։

Այս գիւղից է մեր մանկավարժական ասպարէզում յայտնի պ. Ղազարոս Աղայեանը։

*Փ. Բոլնիս* կամ Խաչի-Սախլը. — Մի փոքրիկ գիւղ է, տարածուած մի քանի բլուրների լանջին, և նշանաւոր է նրանով, որ սրբամօտ գտնւում է շինութեամբ փոքր, բայց հռչակով մեծ, Ս. Գէորգ ուխտատեղին։ Սա մի բարձր բլրի լանջին կառուցուած փոքրիկ, անսիւն և անխորան մատուռ է, մի փոքրիկ կաթուղի-

*) Տես Նշ. վանքերի բաժնում։

կէով։ Երկարութիւնն է 10 արշ. լայն. 6 արշ. իսկ բարձր. մօտ 3 սաժէն։ Արեւելեան պատին կից, դրսից կանգնեցրած է մի խաչ, ուր ուխտ են գալիս այն ուխտաւորները, որոնք թէեւ ցանկանում են, բայց չեն կարողանում բարձրանալ մօտակայ Եալլի-բաբա լեռան գագաթը Ս. Գէորգ ուխտատեղին համբուրելու։

Մատուռը արտաքուստ ոպխտակացրած է։ Մօտը երկու շարքով շինուած են 38 հատ սենեակներ, ուխտաւորների համար։ Սրանք շինել են իրենք ուխտաւորները եւ նուիրել մատուռին։ Մատուռը պահպանում են երկու պահապաններ եւ Բոլնիս-Խաչէնի քահանան։ Ամէն տարի, նոյեմբերի 10-ին անչափ բազմութիւն ուխտ է գալիս այստեղ։ Արդիւնքը առաջ պատկանում էր Թիֆլիսի Ներսիսեան դպրոցին, իսկ այժմ Էջմիածնի ճեմարանին։

Ս. Գէորգ մատուռի լերան ստորոտում կայ մի աւերակ եկեղեցի, իսկ գիւղի մէջ մի փոքրիկ, կղմինտրածածկ, նորակառոյց վրաց եկեղեցի։ Բնակիչները վիրախօս հայեր եւ վրացիներ են, ընդամէնը՝ 30 տուն, 106 ար. 97 իգ. իմխառին՝ 203 հոգի. որից հայերը միայն 3 տուն են, 9 ար. 8 ար. ի միասին՝ 17 հոգի։ Տանուտէրը հայ է, որ խօսում է հայերէն, վրացերէն, թուրքերէն, ռուսերէն եւ գերմաներէն։

*Քվէշ.*—Ընդարձակ դաշտի մէջ բարձրանում է մի բոլորակ բլուր, որի վրայ եղել է մի փոքրիկ բերդ, մէջը Ս. Սարգիս անուն մի մատուռ։ Սրանք այժմ բոլորովին աւեր են։ Այժմեան գիւղը տեղաւորուած է այդ բլրի լանջին. այստեղ էլ հայերը ունին մի հին, քարաշէն եկեղեցի, Ս. Աստուածածնի անունով։ Սրա դրան առաջ կայ մի խաչ քար, որի վրայ գրուած է. *Խաչս կանգնեցաւ Թ. ՊՁԳ* *)։ Առաջներն այստեղ բաւականաչափ հայեր են եղել, միայն օդի եւ ջրի վատութեան պատճառով մի մասը մեռել է, միւսը գաղթել Բոլնիս գիւղը։ Գիւղս պատկանում է վրացի Օրբելեան եւ Ղափլանով իշխաններին։ Բնակիչները վրացի եւ վիրախօս հայեր են. 28 տուն. 101 ար. 99 իգ. որից միայն 2 տուն հայեր են, 6 ար. 5 իգ. իմխասին 11 հոգի։

*) 1434

*Տաքախմեըլա կամ Գոքուրէտի*.—Գտնւում է մի բլրի լանջին, որի ստորոտով հոսում է Մաշաւիր գետը։ Սրա ձորում կան մի քանի այրեր, որոնցից մինի առաջ մի պատ է քաշած և մի պատուհանի տեղ թողած։ Ինչպէս ասում են, այս այրերը երբեմն իբր բնակարան են ծառայել։ Գիւղում կայ մի հայոց և մի վրաց հասարակ եկեղեցի։ Բոլոր տները կիսագետնափոր են, հին ձևի։ Գիւղը պատկանում է իշխան Դաւիթ Քոբուլովին, որի բաւական գեղեցիկ տունը գտնւում է գիւղի ծայրում և յատկացրուած է կառավարչին։ Գիւղացիները դըժգոհութիւն էին յայտնում կառավարչից, որ մի դեսեատին վարելահողի համար բերքի մի քառորդը վերցնելուց զատ, երեք երեք ռուբլի էլ փող է առնում։ Բնակիչները վիրախօս հայեր և վրացիներ են. ընդամէնը՝ 130 տուն. 167 ար. 154 իգ. իմիասին՝ 321 հոգի։

Գոքուրէտի գիւղի հանդէպ, Մաշաւեր գետի ձախ կողմում ընկնում է Ախալշէնի գիւղատեղին, ուր կան մի հայոց և մի վրաց աւեր եկեղեցի։ Սրանից փոքր ինչ հեռու գտնւում է Չաւդամ գիւղատեղին, մի հայոց եկեղեցիով։ Իսկ գետի աջ կողմում, մի բլրի վրայ բարձրանում է Դաւիթ Սագարեջօ անունով վրաց աւերակ եկեղեցին, որի ներքև գտնւում է մի գիւղատեղի, աղբիւր և ջրի առու։

*Փոքր Ռատեւան*.—Գտնւում է Մեծ Ռատեւան կամ Եկատերինէնֆելդ գաղութից երկու վերստ հեռու, Ճապալ գետի ձախ ափին։ Այստեղ կայ մի հոյակապ, քարաշէն եկեղեցի, որ կառուցել է նախկին կալուածատէր պ. Փիթոյեանը։ Այժմ գիւղը պատկանում է պ. Ա. Մանթաշեանին։ Բնակիչները վիրախօս հայեր և վրացիներ են. ընդամէնը՝ 30 տուն. 95 ար. 78 իգ. իմիասին՝ 173 հոգի՝ որից հայերը 8 տուն. 30 ար. 25 իգ. իմիասին 55 հոգի են։

*Կիանէթ*.—Մի փոքրիկ գիւղ է, մի բլրի վրայ տեղաւորուած։ Ունի տաշած քարից շինուած մի եկեղեցի Ս. Գրիգոր անունով։ Բնակիչները Հաղբատից գաղթած հայեր են։ 19 տուն. 60 ար. 59 իգ. իմիասին՝ 119 հոգի։

Գիւղս կալուածք է իշխան Բարաթովի։

## ԳՈՒՄԱՆԻՍԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Մեծ-Դումանիս*.—Ընկնում է Մաշաւեր գետի ձախ կողմի բարձրաւանդակի վրայ, ունի մի հայոց, փայտածածկ անշուք եկեղեցի, ուր կայ կենաց փայտի մասունք, և մի վրաց եկեղեցի, որ Հայոց Նախկին Թեկենամ կամ Ս. Սարգիս եկեղեցին է եղել: Տները կիսագետնափոր են և միայն չորսը նոր ձևի: Օդը և ջուրը սքանչելի են: Բնակիչները վիրախօս Հայեր և վրացիներ են. ընդամէնը՝ 42 տուն. 203 ար. 181 իգ. իմիասին՝ 384 հոգի. որից Հայերը 166 ար. 125 իգ. իմիասին՝ 288 հոգի են: Հայերի մի մասը գաղթել է Ղարաբաղից Աղա-Մահմատ խանի արշաւանքի ժամանակ, իսկ միւս մասը՝ Ջաւախքից: Առաջինների սերունդից մի քանիսը գիտեն Հայերէն: Գիւղն այժմ պատկանում է Ա. Մանթաշեանին:

*Փ. Դումանիս*.—Հռչակաւոր Համանուն ամրոցի մօտ, մի հարթութեան վրայ իռուած փոքրիկ, աննշան գիւղ է: Բնակիչները վիրախօս Հայեր են. 15 տուն. 55 ար. 39 իգ. իմիասին՝ 94 հոգի:

*Գոլինջուկ*.—Գտնւում է մի բարձրաւանդակի վրայ, որի հիւսիսային և արևմտեան կողմը խոր ձորեր են, որոնց միջով հոսում է Մաշաւեր գետը: Հարաւային կողմը բարձրանում են անտառապատ, անանուն լեռներ, որոնք ձորի հետ միասին բաւական գեղեցիկ տեսք են պարգևում գիւղին: Այստեղ կայ կոփածոյ քարերից շինած, անսիւն, թաղակապ մի եկեղեցի, մի փոքրիկ գմբէթ-զանգակատնով: Սրա շուրջը կայ մի աւհագին գերեզմանատուն: Գիւղում կան մի քանի կանոնաւոր փողոց, բայց ոչ մի նոր ձևի տուն, այլ բոլորն էլ կիսագետնափոր, բաղկացած մի սենեակից, մի ղաւթից և մի գոմից: Սենեակի պատի մէջ տեղը կայ մի օճախ, որի երկու կողմը լայն տախտեր են դրուած, իսկ կտրում մի փոքրիկ պատուհան է բացւում. դաւիթը փայտածածկ է լինում, ուր սովորաբար գրտնւում են հացի շտեմարանը, գինի մրգելու *չանը* (տակառ): Գոմում շատ անգամ լինում է և մի բաժանմունք «օդա», ձմեռը մարդկանց բնակութեան յատկացրած: Գիւղը պատկա-

Digitized by Google

նում է Ս. Մանթաշեանին։ Բնակիչնե՛րը ընիկ են, վիրախօս հայեր. ընդամէնը՝ 38 տուն. 162 ար. 125 իգ. իմիասին՝ 287 հոգի։ Սրանց, շրջակայ վիրախօս գիւղերի հետ միասին, հովւում է այս գիւղացի մի քահանայ։

*Վարդիսուբան.*—Մաշաւեր գետի ձախ ափին բարձրացող բարձրաւանդակի վրայ է գտնւում։ Տները կիսագետնափոր են և միայն երկուսը նոր ձևի. կայ հայոց մի փոքրիկ, քարաշէն, անշուք եկեղեցի։ Բնակիչները վիրախօս հայեր և վրացիներ են։ Ընդամէնը՝ 25 տուն. 89 ար. 73 էգ. իմիասին՝ 162 հոգի. որից հայերը 18 տուն են. 71 ար. 52 իգ. իմիասին՝ 123 հոգի։

Գիւղից հազիւ քառորդ վերստ հեռու, նոր բացած ճանապարհի մէջ և նրա շուրջը կան բաւական թւով դերեզմաններ, վեց քարատախտակներից բաղկացած։ Ոսկորները դեռ ևս լիովին չեն փթել և բրոնզեայ կամ այլ իրեր, կաւէ ամաններ չկան, չնայելով որ ճանապարհի մէջ գտնւածները լացուած են։

## II. ԹՐԻԱԼԷԹԻ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ

### ԱՐՍՄԼՈՒԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Տաշքենտ կամ Չիֆտ-քիլիսա եւ կամ Ջինիսա.*— Ունին մի նորաշէն, փայտածածկ եկեղեցի։ Բնակիչները Էրզրումից են գաղթած 1830 թուին Կարապետ եպիսկոպոսի առաջնորդութեամբ։ Ընդամէնը՝ 23 տուն են. 122 ար. 105 իգ. ի միասին՝ 227 հոգի։

*Աշխալա*—Փռւած է ձորակի մէջ և ունի սրբատաշ քարերից շինած մի եկեղեցի, փայտածածկ և առաստաղը նըկարներով զարդարուած։ Բնակիչները գաղթականներ են Էրզրումից։ Ընդամէնը՝ 130 տուն են. 619 ար. 546 իգ. ի միասին՝ 1165 հոգի։

### ՆԱՐԴԻՎԱՆԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Նարդիվան.*—Կայ մի սրբատաշ քարերից շինած թաղակապ, պարսպապատ եկեղեցի։ Բնակիչները Էրզրումից են

գաղթել. ընդամէնը՝ 165 տուն են. 331 ար. 322 իգ. իմիասին 653 հոգի։

*Ղուշչի*.—Խրամ գետի հանդէպ, գեղեցիկ դիրքով մի փոքրիկ գիւղ է, որի քարաշէն, գեղեցիկ եկեղեցին, իր զանգակատնով և պարսպով, ինչպէս և Խրամի վրայ ձգուած թաղակապ կամուրջը շինել են սոյն գիւղացի Մեհրաբեանները։ Բացի վերոյիշեալ եկեղեցուց, այստեղ կայ նաև մի ուրիշ փոքրիկ, քարաշէն եկեղեցի։ Բնակիչները նոյնպէս Էրզրումից են գաղթած. ընդամէնը 40 տուն են. 201 ար. 209 իգ. ի միասին՝ 410 հոգի։

*Այազմա*.—Այազմա բառը յունարէն նշանակում է օրհնուած ջուր, և այս գիւղը այս անունն ստացել է այն աղբիւրից, որ բղխում է արևմտեան կողմը գտնուած փոքրիկ մատուռի յատակից և իբր սուրբ պաշտւում է հայերից և շրջակայ յոյներից։ Այս մատուռն այժմ ծառայում է գիւղացիներին իբր ծխական եկեղեցի և վարդավառին բազմաթիւ ուխտաւորներ է ունենում շրջակայ հայերից և յոյներից։ Գիւղը շատ գեղեցիկ դիրք ունի։

Բնակիչները Էրզրումի գաւառից են գաղթած. ընդամէնը 35 տուն են. 170 ար. 160 իգ. ի միասին 330 հոգի։

*Ղզըլ-քիլիսա*.—Ունին մի քարաշէն, թաղակապ եկեղեցի։ Գիւղի մօտ է *Վամիքամօր* կոչուած ձորակը, ուր կայ մի աւերակ մատուռ, ուր ուխտ են գալիս Համբարձման տօնին։ Այստեղ բղխում են բազմաթիւ աղբիւրներ, որոնք միանալով մի վտակ են կազմում և թափւում Խրամի մէջ։ Բնակիչները Էրզրումի գիւղերից են. ընդամէնը՝ 80 տուն են. 356 ար. 320 իգ. ի միասին՝ 676 հոգի։

*Ոզնի կամ Ցոնիա*.—Մի բազմաղբիւր գիւղ է, որի ջրերը միանալով թափւում են Խրամի մէջ։ Ունի մի թաղակապ, պարսպապատ եկեղեցի։ Բնակիչներն Էրզրումի գաւառից են գաղթել. ընդամէնը 50 տուն են. 233 ար. 220 իգ. ի միասին՝ 555 հոգի։

*Բուռնաշէթ*.—Ունին մի թաղակապ եկեղեցի, որի դրան ճակատին կայ յունարէն արձանագրութիւն։ Բնակիչները Էր-

գրումի գաղթականներ են. ընդամէնը 31 տուն են. 155 ար. 127 իգ. ի միասին՝ 282 հոգի։

*Տաշբաշի.*—Գտնւում է մի թերակղզիաձև բարձրաւանդակի վրայ, որի երեք կողմի խոր ձորերով անցնում է Խրամ գետը։ Ունին մի քարաշէն, թաղակապ եկեղեցի։ Մի քիչ հեռու, բլրի վրայ կայ մի հին, խաչաձև եկեղեցի, շուրջը հին գերեզմանատուն։ Եկեղեցու վրայ կայ վրաց խուցուրի տառերով արձանագրութիւն. բնակիչներըը՝ 40 տուն են. 202 ար. 198 իգ. ի միասին՝ 400 հոգի։

*Տամալա.*—Հայ բոշաների մի փոքրիկ, աննշան գիւղ է. եկեղեցի էլ չունին։ Բնակիչները միմիայն հայ բոշաներ են, ընդամէնը՝ 12 տուն են. 67 ար. 40 իգ. ի միասին 107 հոգի։

*Դարաքէօյ* (Ձորագիւղ).—Ունի մի սրբատաշ քարերից շինուած, թաղակապ եկեղեցի. բնակիչները՝ 70 տուն են. 300 ար. 290 իգ. ի միասին՝ 590 հոգի։

*Ղապուր.*—Այստեղ նշանաւորը քարաշէն, փայտածածկ եկեղեցին է, որի առաստաղը պարսկական ճաշակով գեղանկարուած է։ Բնակիչները՝ 32 տուն են. 163 ար. 137 իգ. ի միասին՝ 300 հոգի։

*Խաչի գիւղ.*—Ունի մի քարաշէն և փայտածածկ եկեղեցի և մի քարաշէն մատուռ՝ ուխտատեղի։ Բնակիչները 60 տուն են. 240 ար. 246 իգ. ի միասին 500 հոգի։

## ՃՈՃԿԱՆԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ.

*Ճոճկան.*—Շնող գիւղի մօտ. կալուածք Լօրիս Մելիքեանի և վրացի իշխ. Լևան Մելիքովի. ունի մի եկեղեցի։ Բնակիչները՝ 70 տուն են. 392 ար. 277 իգ. ի միասին՝ 669 հոգի։

Սրա մօտ, հազիւ 2—3 վերստ հեռու, դէպի արևմուտք, անտառի մէջ գտնւում է «*Վարդան Նահատակի*» մատուռը, որ պարսպապատ է եղել, միայն այժմ կիսաւեր է։

Մօտը գտնւում է մի փոքրիկ լճակ, որ մօտ չորս սաժէն խորութիւն և 50 սաժէն շրջապատ ունի։ Ջուրը քարաժայ-

Digitized by Google

ռերից Թափուելով՝ դեղեցիկ ջրվէժ է կազմում։ Այստեղ ամէն տարի Զատկին, մասամբ էլ Վարդանանց տօնին ուխտ են գնալիս շրջակայ գիւղերից։

Այստեղից մի քանի վերստ հեռու դէպի հարաւ բարձրանում է մի բարձր ժայռ, որ տեղացիներից կոչւում է Լանկ-Թամուրի քար։ Աւանդաբար պատմում են, թէ Լանկթամուրը դէպի Ախտալա արշաւելիս՝ մի քանի օր այստեղ բանակ է դրել։

*Չանախչի*.—Կոմս Լօրիս-Մելիքեանների կալուածքն է, խիտ անտառով պատած. ունի մի փայտածածկ եկեղեցի և մի քանի կիսաւեր, աննշան մատուռներ։ Բնակիչները 36 տուն են. 168 ար. 141 իգ. ի միասին՝ 308 հոգի։

*Ծոխմէլ*.—Մի փոքրիկ գիւղ է, Չանախչից 4 վերստ հեռու։ Ունի մի փոքրիկ, քարաշէն եկեղեցի բլրի վրայ։ Բնակիչները՝ 13 տուն են. 70 ար. 51 իգ. ի միասին՝ 121 հոգի։

*Բերդաձոր*.—Մի փոքրիկ գիւղ է, անտառապատ. հին աւերակներից երեւում է, որ բաւական ընդարձակ է եղած։ Այստեղ կայ մի «Բարձրեալ» անունով խաչքար, որ 11 արշին բարձրութիւն ունի [1]։ Բնակիչները 12 տուն են, 78 ար. 66 իգ. իմիասին՝ 144 հոգի։

*Գիւլլիբաղ*.—Փոքրիկ գիւղ է, մի անշուք եկեղեցիով։ Գիւղի աջ կողմից հոսում է Բանուշ գետակը, որին գիւղից մի վերստ ներքեւ խառնւում է Տոփալ-ջուր կոչուած վտակը. սրա ափին գտնւում է Տոփի գիւղատեղու աւերակները, մի փոքրիկ, քարաշէն եկեղեցիով։ Բնակիչները 11 տուն են. 51 ար. 40 իգ. ի միասին՝ 91 հոգի։

## ՇՆՈՂԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Շնող*.—Գտնւում է երկաթուղու Ախտալա կայարանից դէպի արեւելք, մօտ հինգ վերստ հեռու, խոր ձորի գլխին, Դուգուլթ, Հին Ղարաքեօթուկ, Մեծ և փոքր Գեօզդաշ և Չեկա-

[1]) Ջալալ. Ճան. Ա. եր. 52.

տար լեռների փեշերից կազմուած գոգաձև տարածութեան վերայ։ Գիւղը բաղկացած է երկու մասից. Բերդատեղից, ուր երբեմն գտնւում էր Կայծոն կամ Ամանակ ամրոցը և Նորաշէնից։ Այս երկու մասերը բաժանւում են միմեանցից մի ձորով, որ ձգւում է արևելքից՝ արեւմուտք և որի միջով հոսում է մի փոքրիկ առուակ։ Կայծոն բերդատեղին երեք կողմից պատած է խոր ձորերով, որոնց միջով հոսում են Ճնողաջուր, Գերեղ և մի անանուն վտակ։ Նորաշէնը բերդի հանդէպ է, հարաւային սարալանջում, և աւելի ցածր դիրք ունի։ Երկու թաղումն էլ կան մի մի սաղաշէն, սրբատաշ քարից շինուած եկեղեցի։ Տըների մեծ մասը գլխատուն է, մնացածը նոր ձևի կղմինտրածածկ բնակարաններ։ Բոլոր ձորերը պատած են այգիներով։

Բնակիչները բնիկներ են, մի քանի տուն էլ Ղարաբաղից գաղթականներ։ Ընդամէնը՝ 270 տուն են. 1150 ար. 1067 իգ. և միասին՝ 2217 հոգի։ Բացի սովորական պարապմունքներից, այս գիւղացիները պարապում են նաև ծխախոտի մշակութեամբ։ Ճրջակայ գիւղացիները սրանց կոչում են Բեխօ և Չօքօս, այստեղացի այն երկու գաւառագիտունների անունով, որոնք իմաստունի հռչակով ամենամեծ յիմարներն են եղել [1]։

Ճինողի շրջակայքում կան հետևեալ ուշադրութեան արժանի տեղերը. ա). *Բովեր*.—գտնւում է Ճնողից դէպի հարաւ, մօտ չորս վերստ հեռու, Սեղուի վանքից դէպի արևելք։ Սա մի հին գիւղատեղի է, ուր կայ մի եկեղեցի և բաւական ընդարձակ գերեզմանատուն։ Այստեղ կան շատ այրեր, որոնք փորուած են երկաթ հանելու համար։ Չէնց այժմ էլ նկատելի է երկաթափայլի (желѣзный блескъ) հանք. Երկաթաջրի մի աղբիւր էլ բաւական առատութեամբ բղխում է։ Նկատելի են նաև երկաթ հալելու տեղերը՝ բովերը, որի պատճառով և հաւանականօրէն՝ գիւղն էլ կոչուել է Բովեր։

Սրանից բաւական ցածր գտնւում է մի կիսաւեր մատուռ, որ կոչւում է *Շինու Սարկաւագի մատուռ* և իր շուրջն ունի գերեզմանատուն։

---

[1]) Տես ժողովրդական առակների բաժնում.

բ). *Մանաստև.*—Ձնողից մօտ 4 վերստ հեռու, դէպի հարաւ, Յովերից արեւելք, Զեկատար լերան ստորոտում, ձորի մէջ։ Սաղաշէն, սրբատաշ քարերից շինած մի եկեղեցի է, որի շուրջը կան խցերի տեղեր և գերեզմաններ։

Սրանից դէպի հիւսիս, հազիւ երեք վերստ հեռու գտնւում է *Թեղուտի* եկեղեցին, որ նոյնպէս սաղաշէն է և կիսաւեր։ Սրա շուրջը կայ և գերեզմանատուն։

գ). *Ս. Սարգիս եւ Ս. Նշան* մատուռներ, որ գտնւում են Ձնողի հանդէպ, լեռան լանջին, միմեանցից մօտ քսան սաժէն հեռաւորութեամբ։ Ս. Նշանը պարապապատ է և կիսաւեր, իսկ Ս. Սարգիսը դեռ ևս կանգուն է, ուր և երբեմն պատարագ է մատուցւում։

*Արճէշ.*—Գտնւում է Ձնողից երկու վերստ հեռու, դէպի արեւելք, Կոզմանայ լերան լանջին։ Գիւղում կայ մի եկեղեցի, բնակիչները 60 տուն են. 270 ար. 251 իգ. իմիասին՝ 522 հոգի։ Այս գիւղի սահմանում, Կոզմանայ լերան մօտ, գտնւում են երկաթաքարեր և սրանց հալելու հին բովեր (քուրաներ)։

*Ճալա կամ Աչկաձոր կամ Լկաձոր.*—Գտնւում է Ճոճկանից փոքր ինչ հեռու, ձորալանջի վրայ։ Սա մօտ ժամանակներս է հիմնուել մի հին գիւղատեղում։ Բնակիչները գաղթել են մօտակայ Ճալի գիւղից, որ պատկանում է Թուրք Եղիգարով կալուածատէրին։ Ընդամէնը՝ 13 տուն են. 80 ար. 51 իգ. իմիասին՝ 331 հոգի։

*Ախքեօրփու.*—Գտնւում է համանուն կամ Ճապալ վտակի ափին, որ իջնում է Լալվար լեռան ստորոտից։ Այս վտակը հանքային նիւթեր պարունակելով այնքան առողջարար չէ, բայց պարգևում է բնակիչներին կարմրախայտ ձկներ։ Գիւղը շրջապատուած է անտառներով և շատ մաքուր օդ ունի։ Գիւղում կայ մի անշուք, քարաշէն եկեղեցի։ Բնակիչները շատ քաջ են և աշխատասէր, ընդամէնը՝ 60 տուն են, 165 ար. 175 իգ. իմիասին՝ 340 հոգի։

Այս գիւղից հազիւ չորս վերստ հեռաւորութեամբ. Լալվար լերան գրեթէ ստորոտում, մի անտառապատ խոր ձորի մէջ, գտնւում է մի գեղեցիկ եկեղեցի, չորս սրբատաշ քարերից շի-

նած սիւներով, որոնց վրայ բարձրանում է կաթուղիկէն, նրբաքանդակ նկարներով եզրափակուած պատուհաններով։ Նոյնպիսի քանդակներ զարդարում են նաև դռների և միւս լուսամուտների շուրջը։ Սեղանի երկու կողմը կան մի մի խորան, որոնցից ձախակողմեանի մէջ մի անցք հանում է տանիքը։ Արևմտեան դռան առաջ բարձրանում է մի թաղակապ գաւիթ։ Հիւսիսային կողմը, փոքր ինչ հեռու կան երկու փոքրիկ մատուռների աւերակներ։ Ամբողջը պատած է եղել պարսպով, որի մէջ կայ նաև մի հանգստարան։

Թէ եկեղեցու և թէ մատուռների վրայ չկայ արձանագրութիւն։

*Խաշորնի*,—Տարածւում է մի անտառապատ լեռնակողի վրայ և պատկանում է վրացի իշխան Լևան Մելիքովին։ Բնակիչները հայեր են և յոյներ. Հայերը գիւղի մէջ եկեղեցի չունին, այլ օգտւում են գիւղից փոքր ինչ հեռու գտնուած գիւղատեղու հին եկեղեցուց, իսկ յոյները՝ ունին։ Այս գիւղատեղու եկեղեցու արևմտեան դրան վերև կայ հետևեալ թուականը՝ Թվ. ՋԱ [1])։ Բնակիչներից հայերը 30 տուն են. 101 ար. 82 իգ. խմիասին՝ 183 հոգի։

*Ղուղրօ*. Մի փոքրիկ, աննշան գիւղ է Աղքեօրփու մօտ 2 տուն հայ բնակիչներով. 15 ար. 9 իգ. խմիասին 24 հոգի։

*Դարալաս*. Ճոլավէրից 19 վերստ հեռու, փոքրիկ, աննշան գիւղ, առանց եկեղեցու. բնակիչները 5 տուն են, 30 ար. 19 իգ. խմիասին՝ 49 հոգի։

---

[1]) 1452.

Digitized by Google

# ԱՅԼԱԶԳԻՆԵՐԻ ԳԻՒՂԵՐ

Բօրչալուի գաւառում բացի հայաբնակ գիւղերից, կան նաև թիւրքաբնակ, վրացաբնակ, յունաբնակ և ռուսաբնակ գիւղեր և երկու գերմանական գաղութներ։ Թուրքաբնակ, վրացաբնակ և յունաբնակ գիւղերը գրեթէ ոչնչով չեն տարբերւում հայաբնակներից. միևնոյն ծուռն ու մուռ, անկանոն, կեղտոտ փողոցները, միևնոյն կիսագետնափոր կամ եղակի նոր ձևի տները, միևնոյն «շինամէջը»—գիւղական հրապարակը։ Այնինչ ռուսաբնակ գիւղերը և մանաւանդ գերմանական գաղութները բոլորովին տարբերւում են։ Այս պատճառով և՛ դանց առնելով նկարագրել վերոյիշեալ թուրք, վրացի և յոյն ժողովրդի բնակած գիւղերը, ուր մանաւանդ չկան մի առանձին ուշադրութեան արժանի հնութիւն, մի ճարտարապետական, նշանաւոր շէնք, բացի վանքերից, որ նկարագրել ենք վանքերի բաժնում, մենք բաւականանում ենք միայն յիշատակելով այդ ազգերի մեծ գիւղերի անունները և անցնում ենք նկարագրելու ռուսաբնակ տիպական գիւղը և գերմանական գաղութը։

Թիւրքաբնակ գիւղերն ընդհանրապէս բռնում են գաւառի ամենալաւ, հարթ և արգաւանդ մասը—Բօրչալուի հարթութիւնը. բայց չնայելով սրան, ամենակեղտոտ և ամենաողորմելիներն են։ Ամենամեծ գիւղը Սարվանն է, 329 տուն բնակչով, 1283 ար. 921 իգ. ի միասին՝ 2204 հոգի։ Ապա Գեառուրարխը՝ 270 տուն. 1010 ար. 760 իգ. միասին՝ 1770 հոգի։ Ղըզըլ-Աջլօն՝ 274 տուն. 1069 ար. 767 իգ. ի միասին՝ 1836 հոգի։ Սադախլօն՝ 191 տուն. 745 ար. 535 իգ. ի միասին՝ 1280 հոգի։ Ֆախրալուն՝ 170 տուն. 663 ար. 476 իգ. ի միասին՝ 1139 հոգի։ Սարչալուն՝ 161 տուն. 628 ար. 451 իգ. ի միասին՝ 1079 հոգի։ Բոլնիս-Քափանակչին՝ 169 տուն. 833 ար. 570 իգ. ի միասին՝ 1403 հոգի։ Արըխլուն՝ 137 տուն. 524 ար. 384 իգ. ի միասին՝ 808 հոգի։ Ղաչաղանը 110 տուն. 456 ար. 328 իգ. ի միասին՝ 784 հոգի։ Ղոսալուն՝ 78 տուն, 371 ար. 266 իգ. ի միասին՝ 637 հոգի, և այլն։

*Հայաբնակ* գիւղերից նշանաւոր են Մեծ Գոմարէտը 130 տուն. 445 ար. 442 իգ. ի միասին՝ 887 հոգի։ Կալամշան՝ 50 տուն. 169 ար. 155 իգ. ի միասին՝ 324 հոգի։ Միջան՝ 40 տուն. 141 ար. 131 իգ. ի միասին՝ 272 հոգի։

*Յունաբնակ* գիւղերից Ալավէրտին, որի բնակիչները Գիւմիշխանէից են գաղթած և որոնցից շատերը մաս ունին համանուն պղնձահանքում, իւր մաքրութեամբ և քաղաքակրթութեամբ բարձր է կանգնած միւս բոլոր յունական գիւղերից։ Միւս գիւղերից առանձին ուշադրութեան արժանի են Ծալկայի յունաբնակ գիւղերը, որոնց բնակիչներից շատերը յունարէն չգիտեն և խօսում են թուրքերէն և հայերէն։ Կարելի է ենթադրել, որ դրանք յոյներ չլինին, քանի որ դրանց տիպը տեղական հայ ժողովրդի տիպից առանձնապէս չի տարբերւում և ընտանեկան բառերի մէջ յունարէնի հետքեր բոլորովին չկան, այլ բիւզանդական տիրապետութեան միջոցին յունադաւանութիւն ընդունած կարնեցի հայեր։ Սակայն այս խնդիրը կարօտ է լուրջ ուսումնասիրութեան։

Յունաբնակ ամենամեծ գիւղերն են՝ Բեշտաշէն 201 տուն. 785 ար. 761 իգ. ի միասին՝ 1546 հոգի։ Բարմակսըզ, 140 տուն. 479 ար. 456 իգ. ի միասին՝ 935 հոգի։ Օպրետ 105 տուն. 486 ար. 436 իգ. ի միասին 122 հոգի։

*Ռուսաց* գիւղերից Պրիվոլնօյի, Ռուսաց Գեռգեռի. Նոր Ալէքսանդրովկի, Նովօ-Պօկրովկայի, Ռուսաց Ջալալ-Օղլու բնակիչները օրդոդոքս են, Վօրօնցովկի, Նովօ-Միխայելովկի՝ մալական, իսկ Բաշքեչուտի, Արմաշէնի, Ռուսաց Ղարաքիլիսի՝ դուխոբոր։

Ընդհանրապէս կարելի է ասել, որ այս երեք դաւանութեան պատկանող միևնոյն ազգի գիւղերը միմեանցից գրեթէ ոչնչով չեն տարբերւում. միևնոյն երկար, լայն ու կանոնաւոր փողոցը կամ փողոցներն են, որոնց երկու կողմում բարձրանում են մի, երբեմն էլ, երկյարկանի, սպիտակացրած, կղմինտրածածկ տները, իրենց փոքր պատուհաններով և պատշգամբներով և ընդարձակ գաւիթներով, ուր գտնւում են ախոռը, յարդանոցը, բաղանիսը, և ուր բարձրանում են խոտի,

հնձած հացահատիկների ահագին դէզերը: Օրթոդոքս ռուսների ամենանշանաւոր գիւղը՝ *Պրիվոլնին*՝ գտնւում է Ջալալ-օղլից դէպի հիւսիս, Վօրօնցովկից դէպի արևելք, Դեբեդ գետի համանուն վտակից փոքր ինչ հեռու: Գիւղը, որ բաղկացած է մի գլխաւոր, երկայն և լայն փողոցից, ձգւում է մի հարթութեան վրայ և շրջապատուած է բլրակներով: Գիւղի կենտրոնում բացւում է մի բաւական ընդարձակ հրապարակ, որի մէջ տեղը բարձրանում է բաւական գեղեցիկ եկեղեցին: Փողոցի երկու կողմում գտնւում են կղմինտրածածկ, մի և երկյարկանի, սպիտակացրած տները, իրենց ընդարձակ դաւիթներով:

Գիւղում կայ պետական միդասեան դպրոց, ինչպէս նաև երկու խանութ: Բնակիչները օրթոդոքս ռուսներ են, 200 տուն, 779 ար. 783 իգ. իմիասին՝ 1562 հոգի: Բացի սովորական պարապմունքից՝ սրանք պարապում են սայլապանութեամբ և սայլեր ու մանաւանդ անիւներ շինելով: Տեղական բերքերից գովուած է կարտոֆիլը, որ գլխաւորապէս վաճառւում է Թիֆլիսում:

*Մալականների* ամենանշանաւոր գիւղը *Վօրօնցովկան* է, որ տարածւում է Ջալալ-օղլուց դէպի հիւսիս, Ջամբաղչի խճուղու երկու կողմում, մօտ երեք վերստ երկարութեամբ: Մի և երկյարկանի, սպիտակ, կղմինտրածածկ տները, ներկած պատշգամբներով և ընդարձակ դաւիթներով բաւական գեղեցիկ տեսք են տալիս: Գրեթէ կենտրոնում գտնւում է մալականների աղօթատունը, որ սովորական տներից ոչնչով չի տարբերւում: Մի քիչ հեռու գտնւում է պետական երկդասեան դպրոցը: Բնակիչները 300 տուն են. 1296 ար. 1256 իգ. ի միասին՝ 2555 հոգի: Սովորական պարապմունքից զատ այս գիւղացիները պարապում են նաև մեղուապահութեամբ և սայլապանութեամբ, սայլեր, անիւներ շինելով: Գիւղացիները 14000 դեսեատին հող են գնել շրջակայ կալուածատէրերից:

*Դուխոբորների* ամենանշանաւոր գիւղը Բաշքեչուտն է, Մաշաւեր գետի վրայ, միանգամայն նման միւս ռուսաբնակ գիւղերին, միայն սրանց տները միմեանցից շատ չեն տարբերւում, որովհետև բնակիչներն էլ տնտեսական կողմից միմ ան-

Digitized by Google

ցից շատ չեն զանազանւում, սրանց մէջ ոչ սաստիկ աղքատ և ոչ սաստիկ հարուստներ կան։ Բնակիչները վերաբնակուել են այստեղ Ախալքալաքի գաւառից, ընդամէնը՝ 50 տուն են. 264 ար 229 իգ. ի միասին՝ 486 հոգի։ Բացի սովորական պարապմունքից՝ զոխորուրներին պարապում են նաև բռնակրութեամբ։

*Գերմանական գաղութները* երկուս են՝ Եկատերինենֆելդ և Ալէքսանդրսհիլֆ։

*Եկատերինենֆելդ կամ Մեծ Ռատեւանը* տեղաւորուած է Մաշաւեր գետի ձախ ափին, փոքր ինչ բարձր, ս. Գէորգ լեռան հանդէպ, մի հարթութեան վրայ։ Սրա հարաւային կողմում ձգւում է քարքարոտ և մերկ բլրակների մի շարք, որի վրայ կայ մի հինաւուրց մատուռ Ծաղկեվանք անունով և մօտը մի գիւղատեղի։ Մի քանի տարի առաջ այստեղ մի հայ բոկոել էր ճգնել և տասն և չորս օր ինքնակամ քաղցած մնալով՝ մեռել. յետոյ շրջակայ գիւղերի հայերը լսել էին այդ մասին, եկել թաղել էին նրան եկեղեցու գաւթում, սուրբ համարելով նրան։ Մինչև այժմ էլ շրջակայ գիւղերից ուխտ են գալիս այստեղ թէ հայեր և թէ վրացիներ։ Թէ տեղացի գերմանացիները և թէ հայերը կրկնեցին ինձ այն աւանդութիւնը, որ երբեմն ծերունիները պատմել էին Ս. եպ. Ջալալեանին, իբր թէ այստեղ պահւում էր մի շատ զօրաւոր խաչ (ըստ Ջալալեանի ս. Վարվառայ կուսի մասունքը), և իբր երբ ծաղիկ հիւանդութիւնը սաստիկ տարածւում է Իմերէթում, տեղական իշխան Դադեանը խնդրում է Հերակլ թագաւորից այս խաչը, կատորածին վերջ դնելու հաւատով, և սա ուղարկում է, նախապէս հինգ տուն ստրուկ պատանդ վերցնելով։ Սակայն պարսից պատերազմների պատճառով խաչը չի վերադարձւում և պատանդները մնում են այստեղ։

Այժմեան գաղութը սկզբում բաղկացած է եղել միայն երկու երկար փողոցներից, սակայն երբ 1826 թուին պարսիկները թալանեցին գիւղը և շատերին գերի վարեցին, սրանք հինգ զուգընթաց փողոցների վրայ տեղաւորուեցին, և փողոցների ծայրերին էլ պատնէշներ քաշեցին, միմեանց պաշտպանելու նպատակով։ Գիւղի կենտրոնում, փոքրիկ հրապարակի վրայ

*բարձրանում է գոթական ոճով շինուած եկեղեցին, որի մօտ գտնւում է պետական միդասեան դպրոցը, դեղատունը, բժշկանոցը, կառավարութիւնը և մի մեծ ագբիւր։*

*Տները երկյարկանի են և իւրաքանչիւրն ունի առանձին, ընդարձակ գաւիթ։ Թէ փողոցների երկու կողմում և թէ գաւիթներում տնկուած են ծառեր։ Գաղութի միջով անցնում են երկու ջրանցք, որ բերել են գաղութի հաշւով։ Գաղութում կան իւղ պատրաստելու, չորս և օղի քաշելու մի գործարան, բաւականաչափ խանութներ, բայց ոչ փոստատուն։*

*Բնակիչները Վիւրտեմբուրգից 1818 թուին գաղթած գերմանացիներ են, որ նախ բնակուել են Ճամքորի մօտ և ապա մի տարուց յետոյ այստեղ տեղափոխուել, որովհետև այնտեղի օդը անտանելի է եղել։ Սրանք դեռ ևս պահպանում են իրենց ներքին ինքնուրոյն կառավարութիւնը, ունին մի* շուլց*, իւր երկու օգնականներով և մի դրագրով, որ վարում է գաղութի բոլոր գործերը։ Թրեթէ բոլորը գիտեն գերմաներէն գրել կարդալ, բոլորն էլ խօսում են թուրքերէն և մասամբ ռուսերէն և հայերէն։ Ընդամէնը 226 տուն են, 779 ար. 838 իգ. խմբասին՝ 1617 հոգի։ Քառասուն տուն էլ ժամանակաւոր բնակութներ կան։ Գլխաւորապէս պարապում են գինեգործութեամբ և ունին շատ ընդարձակ այգիներ, մասամբ էլ երկրագործութեամբ, որ հայերից են սովորել։*

*Այստեղ են բնակւում այս ոստիկանական շրջանի ոստիկանը, հաշտարար դատաւորը, 10 հոգուց բաղկացած պահապանների խումբը։*

# ՆՇԱՆԱՒՈՐ ՎԱՆՔԵՐ

Ա· ՀԱՅՈՑ



թէ հաշուելու լինենք Բորչալուի գաւառի Հայոց բոլոր նշանաւոր վանքերը, կը տեսնենք՝ որ ընդամէնը տասն են։ Սրանցից մի քանիսի, մանաւանդ Սանահնի և Հաղբատի, կատարած կրօնական-հասարակական դերը չափազանց նշանաւոր է, ուստի և կարևոր ենք համարում այդ մասին առանձնապէս խօսել, վանքերը նկարագրելուց յետոյ։ Սրանք ժամանակագրական կարգով այսպէս են դասաւորւում.

1. Օձունի Խաչգունդ — հիմնել է 735 թ. Օհան Օձնեցին։
2. Սրդուի Օհան Օձնեցու. — աւանդաբար՝ Ը. դարում, Օհ. Օձնեցին։
3. Հոռոմայրի Ս. Նշան. — աւանդաբար՝ Ը. դ. Վասիլ յոյն իշխանը։
4. Սանահնի. — 967 թ. Խոսրովանոյշ թագուհին։
5. Հաղբատի — 967 թ. նոյնպէս Խոսրովանոյշ թագուհին։
6 Քոբայրի — 1155 թ. Կիւրեկէ Բ. դուստր Մարիամը։
7. Բարձրաքաշ Ս Գրիգորի — 1205 և 1221 թ. Մամիկոնեան Մարզպանը։
8. Քառասնից մանկանց — 1241 թուին ոմն Դաւիթ։
9. Խորակերտի. — 1252 թ. Ստեփանոս իշխանը։
10. Սեդուի. — անյայտ։

Նկարագրենք սրանք միառմի այս, ժամանակագրական կարգով։ Եւ որպէսզի ստէպ չընդհատենք նկարագրութիւնը բազմաթիւ արձանագրութիւններն առաջ բերելով և կամ մեր նկարագրութիւններով չդժուարացնենք պատմաբանին արձանագրութիւններից նիւթեր քաղելու, մենք բոլոր արձանագրութիւնները, իւրաքանչիւր վանքինը առանձնապէս, բայց ժամանակագրական կարգով, կըտանք առանձին՝ Արձանագրութիւնների բաժնում, իսկ այստեղ, հարկաւոր դէպքում միայն, առաջ կըբերենք նրանց բովանդակութիւնը և երբեմն, եթէ անհրաժեշտ է, արձանագրութիւնը նոյնութեամբ։

# ՕՀԱՆ ՕՁՆԵՑՈՒ ՎԱՆՔԸ

Սա գտնւում է Արդուի գիւղի հիւսիս-արևմտեան կողմը, մօտ երկու վերստ հեռու, մի փոքրիկ բլրակի վրայ։ Հին վանքը սրբատաշ քարերով շինուած մի շէնք է եղել, բայց այժմ բոլորովին քանդուած է և միայն սեղանի կամարն է մնում։ Սրան կից, Եղիզբար և Գաբրիէլ Քալանթարեանները շինել են հասարակ, անտաշ քարով, կամարակապ, մի փոքրիկ շէնք, որի հիւսիսային կողմում կայ մի փոքրիկ խորան, ուր գտնւում է Օհան Օձնեցու գերեզմանը։ Սա մի քարէ սարկոֆագ է, հասարակ, սև քարէ կափարիչով ծածկուած։ Երբ մի քանի տարի առաջ կամեցել են ծածկել այն ծակը, որ գիւղացիները բացել էին գերեզմանի մէջ *խնոթուն* [1]) հանելով՝ մի մարմարոնեայ փոքրիկ խաչ էր դուրս եկել։ Վերան գրուած էր. *Ի յիշատակ է Գնննեցի Մըշի Սարգսին սբ· խաչս շինեցաւ*։

Եկեղեցու մօտ կայ մի հասարակ, փոքրիկ զանգակատուն, որի արևմտեան կողմը մի տապանաքարի վրայ գրուած է.

*Այս է տապան մէլիքայ Ամիրջանի որդի Պաւղոս պարոն տէր սուրբ Յոհանայ ծառայ.*

Իսկ դիմացի խաչքարի վրայ. *Խաչէման եպիսկոպոսին ՌՃԼԴ* [2])։

Եկեղեցու շուրջն ընդարձակ գերեզմանատուն է, ուր մի խաչքարի վրայ կարդացւում է.

*Ս. Խաչս բարեխաւս է պ. Մելքոն Կեսարացոյ. Նահատակեցաւ ի Քրիստոս Թ. ՌԼԱ.*։ Մի ուրիշ խաչքարի վրայ կարդացւում է. «*Թվականս ՋԿԷ* [3])։

Եկեղեցու շուրջը պարիսպ է քաշուած և մէջը ծառեր տնկուած։ Կան նաև մի քանի սենեակներ, մի պահապանի բնակութեան յատկացուած։ Վանքից փոքր ինչ ներքև, ձայրի

[1]) Գիւղացիները գերեզմանի կողքից հող հանելով ջրի մէջ են անում և խմում կամ ցաւած տեղի վրայ քսում։ Այս հողը կոչւում է խնօրուն։

[2]) 1685

[3]) 1518.



**Церковь въ с. Узунларъ. Խաչգոնտ եկ. Օձունում: Eglise à Ouzounlar.**

մէջ նկատուում է երկու քարաշէկատ, որ յայտնի է Ցձապորտ անունով, որտեղից և կաթիլ կաթիլ երկաթաջուր է հոսում [1]): Նրա մօտ փոքրիկ առուակը մի գեղեցիկ ջրվէժ է գոյացնում։

Վանքից փոքր ինչ բարձր, ձէկ Ըղբիւր լերան գագաթին մին փոքրիկ այր կայ, որի մասին ասում են, թէ Ցհան Օձնե-ցին նախ այստեղ է ճգնել Օձունից վերադառնալուց յետոյ։

## ԽԱՉԳԱՆԴ ԵԿԵՂԵՑԻ

Սա գտնուում է Օձուն կամ Ուզունլար գիւղում, նրա արևմտեան կողմը։ Շինել է Յոհաննէս Իմաստասէր կաթողիկոսը 735 թուին։ Եկեղեցին շինուած է կարմիր, սրբատաշ քարից, 40 արշին երկարութեան, 17 արշ. լայնութեան, և մօտ 3½ արշ. բարձրութեան է։ Մի մեծ և երկու փոքր, խորանների վրայ բարձրացած, գմբէթներ բաւական գեղեցիկ տեսք են տալիս։ Երեք կողմից պատող կամարակապ, գեղեցիկ գաւիթն այժմ կիսաւեր է։ Ներքուստ երկու ամբողջական և ութը կիսասիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ, որոնցից միջին չորսը միանալով մի մանեկաձև շրջանակով՝ կրում են իրենց վրայ չորս պատուհանաւոր գմբէթը։ Սեղանը բոլորակաձեւ է, խաչկալով զարդարուած, որա երկու կողմում կան մի մի խորան, որոնց վերև կան գաղտնի պատուհաններ։

Եկեղեցին լուսաւորուում է վեց պատուհաններով, ունի երեք կամարակապ դուռ, գեղեցիկ քանդակներով եզրափակուած։

Եկեղեցին, ինչպէս երևում է ձախակողմեան սեղանի վրայ եղած արձանագրութիւնից, վերանորոգել են Զաքարիա և Բաղդասար Արովեանները 1888 թուին, ի յիշատակ իրենց ծնողների։

Եկեղեցու սրբութիւնների մէջ նշանաւոր է ս. Յակովբայ մասունքը՝ արծաթեայ խաչի մէջ ամփոփուած։

Եկեղեցու շուրջը պատող գերեզմանատան մէջ նշանաւոր է ա) Ցհան Օձնեցու ծնողների խաչքարերը, որոնց առաջ դեռ մինչև այժմ էլ գիւղացիները մոմեր են վառում և բ).

[1]) Տես այս մասին Աւանդութիւնների և հաւատքի բաժնում։

Digitized by Google

Խաչգունդ քաՀանայի շիրիմը։ Եկեղեցու արևելեան պատի մօտ է թաղուած Սիմէօն եպիսկոպոսը (1801), որ գնել է Մարցայ կալուածքը այս եկեղեցու անունով, և Վարդան եպիսկոպոսը։ Իսկ հիւսիսային կողմում կանգնած է Սըմ-բատ Բագրատունի թագաւորի մահարձանը։ Ութ արշին լայնութեան և $5^1/_2$ արշին բարձրութեան եօթն աստիճանաւոր պատուանդանի վրայ բարձրանում են քառանկիւնի երեք սիւն, կրելով երկու գեղեցիկ ռոմանական կամար, որոնց մէջ կանգնած են 3 արշին բարձրութեան և $^1/_2$ արշին լայնութեան քառանկիւնի, միակտուր, սնաձև կոթող, զարդարուած գեղեցիկ և նուրբ քանդակներով [1])։

## ՅՈՌՈՄԱՑՐԻ Ս. ՆՇԱՆ

Գտնւում է Օձունից դէպի արևելա-հարաւ, հազիւ երկու վերստ հեռու, գրեթէ ուղղահայեաց, ապառաժոտ ձորի լան-ջին, Դեբեդ գետի ձախ կողմը։ Այստեղ կան բաւականաչափ մեծ և փոքր այրեր, որոնցից մի քանիսը միմեանց հետ հաղորդակցւում են նեղ 'անցքերով։ Այրերից մի քանիսի մէջ գտնւում են կիրով պատած հորեր՝ հացահատիկներ պահելու։ Ձորի գլխից մի ոլորապտոյտ նեղ ճանապարհ իջնում է մինչև մի նեղ դարատափ, ուր գտնւում են երեք միմեանց կից մատուռներ, մի մի փոքրիկ, նեղ և երկար պատուհանով։ Առաջին մատուռի վրայ բարձրանում է մի սիւնազարդ գմբէթ։ Այս մատուռից արևմուտք մի փոքրիկ դուռ կայ, որի երկու կողմը բարձրանում են մի մի գեղեցիկ խաչքար. այս դուռը բացւում է մի փոքրիկ այրի մէջ։ Հարաւային կողմից մի ու-րիշ դուռ բացւում է երկրորդ մատուռի մէջ։ Երրորդ մատուռը մուտք չունի ոչ առաջին և ոչ երկրորդ մատուռի մէջ, թէև վերջիններիս կից է, այլ մի այրի միջով հաղորդակցւում է մի փոքրիկ, փայտածածկ դաւթի հետ, ուր կան գերեզմանաքա-րեր՝ առանց տապանագրերի։

Այս մատուռներից փոքր ինչ հիւսիս կայ մի ուրիշ, ձե-

[1]) Գիւղացիները քերում են այս սիւնը և փոշին ածում մկնատամի վրայ, որպէսզի լաւանայ, այս պատճառով էլ քանդակները եղծուած են։



*Могильный памятникъ царя Смбата I.* — ***Մահարձան Սմբատ Ա.*** **(914)** — *Monument funér. du roi Sembat I.*

Digitized by Google

ղունը բոլորովին քանդուած եկեղեցի, որի արեւմտեան պատը ժայռն է կազմում։

Մի քիչ էլ ներքեւ մի բլրակ է բարձրանում, որի արեւելեան կողմը քարաժայռ է, միւս կողմերն էլ սաստիկ թեք են, այնպէս որ շատ դժուար է նրա վրայ բարձրանալ. սրա գագաթին նկատելի են պարսպի եւ մի փոքրիկ մատուռի աւերակներ։ Տեղացիները սրան *Կուլէթ* են կոչում, իսկ Ս. Ջալալեան ասում է, թէ սա մի ժամանակ ազատել է այստեղի բնակիչներին Լեկզիների յարձակումից [1])։

Այս այրերից մինի մէջ կաթկաթում է սառն ջուր եւ հաւաքւում մի աւազանի մէջ։ Այրը կոչւում է *Թնղոզ*, եւ աւանդութեան ասելով, ջուրը Յհան Օձնեցու հրամանով է սկսել կաթկաթել։

Այս այրերից բարձր, դաշտի վրայ կան սրբատաշ քարերով շինուած երկու փոքրիկ մատուռներ, որ արդէն կիսաւեր են։ Ժողովուրդը սրանց Հոռոմէլ անունն է տալիս եւ պատմում է, երբ յունաց Վասիլ զօրապետը ճգնել է այդտեղ [2])։

Աւանդութեան ասելով ս. Նշանի վանքը հիմնուած է VIII դարում, յունաց Վասիլ իշխանի ձեռքով, որ Հայոց վրայ պատերազմելու է եկել, բայց սաստիկ հիւանդացել է եւ միմիայն Օհան Օձնեցու աղօթքով բժշկուել։

Այս հրաշքից յետոյ Վասիլ իշխանը այլ եւս չէ կամեցել հայերին կոտորել, արձակել է իւր զօրքերը, շինել այս վանքը եւ սկսել այդտեղ ճգնել. եւ հէնց այս պատճառով էլ վանքը կոչուել է Հոռոմայր [3])։ Յետոյ մի առ ժամանակ այստեղ պահուել է սուրբ Նշանը (Խաչափայտի մասը), որի պատճառով եւ վերակոչուել է ս. Նշան։

Աւելի ուշ, 1187 թուին, ամիր սպասալար Զաքարէն եւ Իւանէն շինել են այժմեան եկեղեցիները, ինչպէս երեւում է ս. Նշանի վրայ եղած արձանագրութիւնից։

---

[1]) Ճանապարհորդութիւն Ս. հատոր, եր. 93.

[2]) Ամբողջ աւանդութիւնը տես Աւանդութիւնների բաժնում, Օհան Օձնեցու աւանդութեան մէջ.

[3]) Մանրամասնութիւնները տես աւանդութեան մասում, Օհան Օձնեցու աւանդութեան մէջ.

Իսկ 1201 թուին այս վանքի Պետրոս վանահայրը մի օձնեցի ինձնէ կոյր մանկան աչքերը բժշկել է ս. Նշանը դընելով նրա աչքերի վրայ [1]։

1833 թուին այստեղի ալրերից մինում մի մարմին է գտնուել, որին ժողովուրդը սխալ է եկել իբր Յհան Օձնեցու նշխարներ։ Սիմէօն արքեպիսկոպոսի կարգադրութեամբ այս մարմինը տեղափոխել են սուրբ Էջմիածին և ամփոփել սուրբ Գայիանէի վանքում [2]։

## ՍԱՆԱՀՆԻ ՎԱՆՔ

Սանահնի հռչակաւոր վանքը բարձրանում է այն փոքրիկ, թերակղզիաձև բարձրաւանդակի վրայ, որ ընկնում է 60° 20′ արևելեան երկարութեան և 41°6′ հիւսիսային լայնութեան տակ և որ ծովի մակերևոյթից երեք հազար ոտնաչափ բարձրութիւն ունի։

Այս թերակղզին հարաւային կողմից կպչելով անտառապատ լեռներին, առանձնանում է արևելեան կողմից Ս. Աստուածածնի, արևմտեանից՝ Սևորդեաց կամ, ինչպէս այժմ է կոչւում, Սաղու ձորի և հիւսիսայինից՝ Զորագետի կամ Դեբեդ գետի ձորերով։

Այս բարձրաւանդակի գրեթէ կենտրոնում շինուած է վանքը, որին երեք կողմից պատում է փոքրիկ, համանուն գիւղը։

Այստեղից նայողի առջև մի հիաշալի տեսարան է բացւում. հիւսիս արևելեան կողմում բարձրանում է Լալվար կամ Գինդղար լեառը, փոքր ինչ հիւսիս՝ Կոշա-բերդ երկու գագաթները, Ալավերդի պղնձահանքը, հիւսիս արևմտեան կողմից Աթուիկ կոչուած բարձրաւանդակը, հարաւ-արևմտեան կողմից Սանահնի անտառապատ լեռները, իսկ արևելեան կողմից Հաղբատ գիւղն ու վանքը, Որնակ գիւղի դաշտը, Նորավանք կոչուած դաշտավայրը՝ Ս. Կարապետի մատուռով, որոնցից Սանահինն բաժանւում է միայն Աստուածածնայ ձորով և այլն։

---

[1] Վարդ. Բարձ եր 129.

[2] Երիցեան, Ամենայն հայոց կաթողիկոսութիւնը և Կովկասեան հայք ԺԹ. դարում. հատոր Բ. եր. 221. նաև Акты Археографической Комисiи т. п.

Երջ. Ա. Երիցեանի 1871 թուին Սանահնի շուրջը կատարած պեղումները ցոյց են տալիս, որ հին կռապաշտական ժամանակներում այստեղ բնակութիւն է եղել. միևնոյն ժամանակ դարևոր աւանդութիւնն ասում է, թէ առաքեալներն այստեղ խաչ են կանգնել, ուր յետոյ Ս. Լուսաւորիչն եկեղեցի է շինել. և որովհետև առաքեալների և Ս. Լուսաւորչի ժամանակ խաչ կամ եկեղեցի կանգնում էին սովորաբար մեհեանների տեղերում, ուստի կարելի է ենթադրել, որ այժմեան Սանահնի տեղը ոչ միայն քրիստոնէութեան, այլ և կռապաշտութեան ժամանակ սրբավայր է համարուել։ Ապա Ռոմանոս Ա. կայսեր (911–945) հալածանքից փախած հայ կրօնաւորները կառուցել են այստեղ Ս. Աստուածածնի եկեղեցին և միաբանութիւն հաստատել։ Յետոյ արդէն Աշոտ Ողորմածի կին Խոսրովանոյշ թագուհին հիմն է դրել այժմեան վանքերին իւր երկու որդիների, Սմբատի և Գուրգէնի հոգու փրկութեան համար 967 թուին, ինչպէս երևում է Ս. Բարսեղի կանոնագրի յիշատակարանից, որ Ս. Ջալալեանն արտագրել է Քիւթիւկ կոչուած մատեանից, որ հետևեալն է.

«Եւ անարժանս ի կրօնաւորաց փցուն գրիչս Սիմէօն ի թուականութեան հայոց ՆԻԸ-ին (972) ի նորաշէն վանքս կոչեալ Սանահին, հրամանաւ հօր իմոյ Յովհաննիսի, որ էր վանիս շինութեան ամք վեց [1]), զոր շինեաց բարեպաշտ թագուհին Խոսրովանոյշ՝ ամուսին Աշոտայ հայոց Շահնշահի, որդի Սմբատայ Բագրատունւոյ հայոց թագաւորի...

Պէտք է ասել, որ մեր մատենագիրներից Մինաս համթերցին Սանահնի շինութեան թուականը 961, իսկ Սամուէլ Անեցին 957 է դնում, սակայն մենք աւելի ճիշտ ենք համարում այս յիշատակագրինը, որ ժամանակակից և նոյն իսկ սոյն վանքումն է եղել։

Սանահնի վանքը բաղկացած է մի քանի եկեղեցիներից և գաւիթներից, որոնք միաժամանակ չեն շինուած։ Ամենից առաջ կառուցուած է Ս. Գրիգորի փոքրիկ եկեղեցին, ապա Ս.

---

[1]) 972—6=966—967։ Ս. Ջալալեան Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայս. Մ. Ա. եր. 42.

Աստուածածինը, (մօտ 930), յետոյ Ամենափրկիչը (967), Մագիստրոսի ճեմարանը, Մատենադարանը (1063), գաւիթը (1181), նախագաւիթը (ԺԴ դար.) իսկ զանգակատունը, Ս. Յարութեան, Ս. Յակոբի, ինչպէս և բլուրների վրայ գտնուած Ս. Սարգսի և Ս. Կարապետի եկեղեցիների թուականները յայտնի չեն։

Այժմ անցնենք այս մասերի նկարագրութեան.

## Ս. ԳՐԻԳՈՐԻ ԵԿԵՂԵՑԻՆ

Այս եկեղեցին բարձրանում է այն տեղում, ուր աւանդութեան ասելով ս. առաքեալները խաչ են տնկել և ուր յետոյ ս. Գրիգոր Լուսաւորիչը եկեղեցի է հիմնել։ Յայտնի չէ թէ այժմեան շէնքը որ ժամանակի և ում գործն է։

Սա գտնւում է ս. Աստուածածին եկեղեցուց արևելք, ուղիղ նրա հանդէպը և Նշխարախուցի գաւթին կից։

Ամբողջ շէնքը կառուցուած է կոփածոյ քարից, արտաքուստ կլոր է, չորս ներսանկուածքով և ութ կիսասներով զարդարուած։ Ներքուստ բաժանուած է խաչաձիր, կիսաբոլոր խորաններից, որոնցից միմիայն արևելեանի մէջ կայ խորհրդանոց, իսկ արևմտեան կողմը բացւում է միակ դուռը։ Խորանների բոլորակաձև կամարների վրայ բարձրանում է կաթուղիկէն, երկու կլոր պատուանդաններով։ Երեք խորանների միջից էլ մի մի փոքրիկ, նեղ պատուհան են բացւում։ Դուռն արտաքուստ եզրափակուած է կամարով և նշխերով։

Կաթուղիկէի խաչն այժմ ընկած է, սեղանը քանդուած. Ներքուստ սուաղուած է եղել, բայց այժմ միայն կաթուղիկէի սուաղն է մնում։

Եկեղեցու տրամագծի երկարութիւնն է 2 սաժէն, 12 վերշոկ. կամարների բարձրութիւնն է 5 արշ. 9 վեր. կամարների միջի տարածութիւնը 2 արշ. 9 վ. կաթուղիկէի բարձրութիւնն է $8^1/_2$ արշ.։ Դռան բարձրութիւնն է 2 արշ. 10 վ. լայն. 1 արշ. 7 վ.։

Այս եկեղեցու դռան ձախ կողմը կանգնացրած է մի գեղեցիկ խաչքար։

Digitized by Google

Այս տարի Վեհափառ կաթուղիկոսի առանձին խնամքով այս վանքում վերանորոգութիւններ են կատարւում և այս եկեղեցու տանիքն ու կաթուղիկէի քանդուածները վերանորոգուած են և կաթուղիկէի ծայրին խաչ կանգնեցրած։

## Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս եկեղեցին, ինչպէս երևում է թէ ձևից և թէ ճարտարապետութիւնից, աւելի հին է, քան Ամենափրկիչ եկեղեցին, որի մէջ նոյն իսկ բացւում է սրա լուսամուտներից մինը։ Կարծւում է, թէ սա կառուցել են Քաղքեդոնի ժողովն չընդունելու պատճառով Ռոմանոս կայսրից հալածուած Հայ վարդապետները։ Պարզ և նախնական ոճով շինուած մի շէնք է սա, որի քարերն այնքան էլ մաքուր և սրբատաշ չեն։ Չորս համաչափ, երկական սաժէն լայնութիւն ունեցող կամարներ յանկելով պատերի վրայ՝ միանում են մի մանեկաձև գօտիով, կրելու իրենց վրայ չորս երկար և նեղ լուսամուտներով զարդարուած կաթուղիկէն։ Կամարների տակ բացւում են մի մի երկար և նեղ պատուհան, իսկ միմեանց յանկելու տեղերում քանդակուած են չորս աւետարանիչների կենդանակերպները։

Եկեղեցու չորս անկիւններում շինուած են չորս խորշեր, որոնցից սեղանի ձախակողմեանի մուտքի առջև երկու միակտուր սիւների վրայ դրուած է այս եկեղեցու քարից շինուած փոքրիկ կաղապարը։ Վերջերքս սպիտակացրել են այս կաղապարը և մէջը ս. Աստուածածնի պատկերը դրել։

Սեղանը զարդարուած է փայտէ քանդակազարդ խաչկալով, դռների վրայ կայ ս. Թադէոսի և Բարդուղիմէոսի, իսկ սեղանին՝ ս. Աստուածածնի պատկերը. թէ խաչկալը և թէ պատկերները նուիրել են իշ. Արղութեանները։

Եկեղեցին երկու մուտք ունի, մինը հիւսիսային կողմից դէպի բակը, միւսը արևմտեան՝ որ բացւում է գաւթի մէջ։

Եկեղեցու երկարութիւնն է 15 ար. 12 վ. լայն. 12 ար. 3. վ. բարձ. 19 ար.։ Իւրաքանչիւր խորանի երկ. 3 ար. 6 վ. լայն. 1 ար. 9 վ. բարձ. 5 արշ.։ Դռների բարձրութիւնը՝ 3 արշ. 6 վ. լայն. 1 ար. 7 վ.։

Այս տարի այս եկեղեցու տանիքը նորոգել են։

## ՆԱԽԱԳԱՒԻԹ

Սա մի ընդարձակ, կամարակապ սրահ է, որի մէջ բացւում է թէ ս. Աստուածածին եկեղեցու և թէ Ամենափրկչի գաւթի դուռը. արևելեան կողմից էլ սրան խառնւում է Գ. Մագիստրոսի կամարակապ ճեմարանը, որ տարածւում է ս. Աստուածածնի և Ամենափրկիչ եկեղեցիների միջև։

Այս նախագաւիթը աւելի ուշ (ժԳ. դարում) է շինուած քան ս. Աստուածածին եկեղեցին, որին իբր գաւիթ է ծառայում, ինչպէս երևում է նախագաւթի հիւսիսային պատի վերայ եղած արձանագրութիւնից։

Ամբողջ նախագաւթի երկարութիւնն է 23 արշ. լայն. 19 ար. բարձ. 9½ արշ.։ Այս տարածութիւնը երկու շարք սիւներով բաժանուած է երեք մասի, որոնցից իւրաքանչիւրը առանձնապէս ունի կամարակապ ձեղուն։ Իւրաքանչիւր շարքում կանգնած են երեք ամբողջ և երկու կիսասներ։ Սիւներից մի քանիսի բները գլանաձև, մի քանիսինն էլ ութանկիւնանի են, հաստատուած քառակուսի պատուանդանների վրայ և կրում են միքանիսը քանդակազարդ, միւսները անքանդակ վերնախարիսխներ։ Իւրաքանչիւր կամարի լայնութիւնն է 3 արշ. 3 վ. իսկ բարձր. 4 արշ. 3 վ.։

Նախագաւթի արևելեան, Ս. Աստուածածնի դռան աջ կողմը, մի ահագին պատուանդանի վրայ բարձրանում է կարմիր, միակտուր քարից շինուած մի գեղեցկաքանդակ խաչ այսպիսի արձանագրութեամբ՝

Ես Դաւիթ իշխանաց իշխան կանգնեցի զսուրբ նշան զերեզմանի հաւր իմոյ Գրիգորի, որք երկրպագէք յաղաւթս յիշէք։

Նախագաւթի արևմտեան պատը, վեց գեղեցիկ կիսաբաց կամարներ է կազմում, որոնց վրայ երեք նեղ և երկար պատուհաններ են բացւում։ Այս կամարներն այժմ մի քանիսն ամբողջովին, մի քանիսն էլ կիսով չափ ծածկուած են։ Այս ծայրիններում, երեսը դէպի դուրս ուղղուած կանգնեցրած են մի մի հրաշալի, գեղեցկաքանդակ կարմիր խաչքարեր, որոնցից հարաւայինի վրայ, նախագաւթի միջից կարդացւում է.

Digitized by Google



*Крестъ въ Санаинъ.* Սարգսի խաչը Սանահնում. *Croix à Sanahine*

Digitized by Google

*'Ի ՈԿԴ *) թուին կանգնեցաւ խաչս յիշատակ Սարգսի որդւոյ Սմբատայ թոռն Համազասպեանց, որ մեռաւ 'ի պատերազմի եւ թաղեցաւ ի դուռն Աստուածածնի եւ որդի նորա Սմբատ եւ ամուսին Աղուտ ետուն ի Մըղարտն Զաքարեանց հայրենիքն ամենայն շահու զենով յԱստուածածին եւ Խ. ապավար հող ով զայն հանէ յԱստուածածնէս դ. սր. ժողովոցն նզովեսցի յԱստոծոյ։ Ես հայր եւ վարդապետ Գրիգոր, Վարդան եւ ամեն միաբանքս տուաք զամեն եկեղեցիս բառանից տաւնին զերկու եկեղեցին Սմբատայ եւ Սարգսի։ Ով խափանէ զվերոգրեալ նզովսն առցին։*

Երկրորդ խաչքարի միայն առաջին երեսի վրայ կայ հետեւեալ բառերը։

*Նշանդ Աստուծոյ աւգնեա Քրդի Խորիշահի...*

Նախագաւթի ամբողջ յատակը պատած է մեծ և փոքր տապանաքարերով, որոնց միայն մի քանիսի վրայ կան տապանագրեր։ Դրանք ցոյց են տալիս, որ այստեղ ամփոփուած են վանքի բարերար իշխանները, վանահայրերը և վերջին ժամանակներս իշխան Արղութեան Երկայնաբազուկ տոհմից մի քանի անդամները։

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ԵԿԵՂԵՑԻ

Այս Բագրատունեաց Աշոտ Ողորմած թագաւորի և նրա կին՝ Խոսրովանուշի ձեռակերտն է, շինուած 967 թուին և վերանորոգուած 1184 թուին, Յովհաննէս եպիսկոպոսի հոգատարութեամբ և Գրիգոր Տուտէորդի վարդապետի օգնութեամբ, ինչպէս երևում է եկեղեցու արևմտեան դրան ճակատին եղած արձանագրութիւնից։

Ամբողջ եկեղեցին շինուած է սրբատաշ քարով, անսիւն է և գմբէթաւոր։ Պահպանելով նախնական, բազիլիկային ձևը, չորս խորանների վրայով բոլորում են չորս կիսաբոլոր կամարներ, որոնց վրայ բարձրանում է ահագին գմբէթը՝ միմիայն չորս լուսամուտներով զարդարուած։ Ուրիշ ութ պատուհաններ ևս լուսաւորում են եկեղեցին։ Բոլոր խորաններն էլ երկյարկա-

*) 1215.

նի են, բոլորի մէջ էլ կան պատարագամատոյց սեղաններ, այնպէս որ այս եկեղեցին իննը սեղան ունի, մինը աւագ սեղանինը, ութը խորաններինը։ Երկրորդ յարկի խորանները բարձրանալու համար մի մի նեղ անցք են թողնուած շարժական սանդուխտ դնելու։

Սեղանին կից, ձախակողմեան խորանի մէջ կան երկու գաղտնի պահարան և մուտք դէպի սեղանը, իսկ աջակողմեանի խսկականի դուռը քարով պատած է և միայն սեղանի կողմից մի դուռ է բացուած։ Այստեղ այժմ պահւում են եկեղեցու սրբութիւնները։

Եկեղեցին ունի երկու դուռը, մէկ հարաւային կողմից, որ այժմ փակուած է, միւսը՝ արևմտեան, որ բացւում է գաւթի մէջ։ Այս դուռը շատ գեղեցիկ է. եզրափակող նշխարին կից ձգւում են երկու միմեանց միացած կիսասներ, կրելով մի բոլորակ կամար։ Սրանց կողքին միևնոյն ահազին քարից կերտուած երեք, մէկը միւսից աւելի բարձր կիսասիւներ տալիս են համակեդրոն երեք կամարներ, որոնցից ամենաբարձրի մէջ տեղում ցցուած է մի կենդանու գլուխ։

Դրան բարձրութիւնն է 3 արշ. $5^{1}/_{2}$ վ. լայնութիւնը՝ 2 արշ. $1^{1}/_{2}$ վ.։

Եկեղեցու արտաքին, արևելեան ճակատը զարդարուած է ինը գեղեցիկ, կիսասիւների վրայ յանկած կամարներով, որոնցից մէջտեղինը աւելի մեծ է և պատում է սեղանի վրայ բացուող բաւական մեծ պատուհանը։ Սրա վերև քանդակուած են երկու քղանցքաւոր հանդերձով և սրածայր գլխարկով մարդ՝ ձեռքերին այս եկեղեցու կաղապարը բռնած։ Փոքր ինչ վերև արձանագրուած է.

*Կիւրիկէ թագաւոր եւ Սմբատ թագաւոր։*

Միւս պատերին ևս կան մի քանի սիւնազարդ կամարներ։

Այս տարի կտուրի քարերն փոխել են և կաթուղիկէն իւղաներկով ներկել։

Եկեղեցու երկարութիւնն է 29 արշ. լայն. 18 արշ. բարձր. 32 արշ.։ Կամարների բարձրութիւնն է 17 արշ. իսկ միջի տարածութիւնը՝ 9 արշ. 6 վ.։ Բեմի բարձրութիւնն է 1

Digitized by Google

արշ. 12 վ.։ Ներքին խորանների երկարութիւնն է 7 արշ. 5 վ. լայն. 2 արշ. 5 վ. բարձր. 5 արշ. 4. վ.։ Վերին խորանների երկար. 5 արշ. $10^1/_2$ վ. լայն՝ 2 արշ. վ. $6^1/_2$ վ. բարձր. 4 արշ. 12 վ.։

## ԳԱՒԻԹ

Ամենափրկիչ եկեղեցու արեւմտեան կողմում գտնւում է գաւիթը, որ կից է նաեւ նախագաւթին եւ բացւում է նրա մէջ։ Սա Ամենափրկիչ եկեղեցուց բաւական ուշ է շինուած, փրկչական 1181 թուին, Յովհաննէս առաջնորդի ձեռքով։ Այցելուն հիացմամբ կանգ է առնում հաստ եւ գեղեցիկ չորս սիւների առաջ, որոնց վերայ յանկւում են բոլորակաձեւ կամարներ, կրելով իրենց վրայ գմբէթը, որի ծայրի լայն բացուածքից լոյսը առատութեամբ ներս է թափանցում, իսկ հոսած անձրեւը հաւաքւում յատկապէս այդ նպատակով յատակին դրուած քարէ աւազանի մէջ։

Սիւներից իւրաքանչիւրը բաղկացած է երեք ահագին քարերից. պատուանդանը ներկայացնում է մի քառակուսի սալ, վերան մի գունտ, 1 արշ. 7 վ. տրամագծով, բունը միակտուր, $2^1/_2$ արշ. բարձրութեան եւ 1 արշ. 1 վ. տրամագծով գլան է, վերնախարիսխը նման եւ համաչափ պատուանդանին, միայն հակառակ, նախ գունդը եւ ապա սալն է դրուած։ Սալերի վրայ քանդակուած են ահագին մեխեր։ Այս սիւները շինել են Կիւրիկէ թագաւորի երեք դուստրները եւ թագուհու հօրաքոյրը, ինչպէս երեւում է հէնց իրենց սիւների վրայ գտնուող արձանագրութիւնից։

Հարաւային եւ հիւսիսային պատերի մէջ կան մի մի երկար ու նեղ եւ երկական կլոր պատուհաններ, ինչպէս եւ մի մի դուռն, որոնցից հարաւայինը ծածկուած է, իսկ հիւսիսայինը, որ բացւում է նախագաւթի մէջ, բաւական գեղեցիկ է։

Գաւթի յատակը ծածկուած է ութսունի չափ ահագին տապանաքարերով, որոնցից նշանաւոր է այս գաւիթը կառուցող Յովհաննէս առաջնորդինը՝ եկեղեցու դրան առաջ եւ Մովսէս Զաքարեան Երկայնաբազուկ Արղութեանինը, որ Պոստանը

նուաճող զօրավարներից է և որի արձանը կանգնեցրած է Թեմիր-խան-Շուրայում։

Այս տաճարի սրա կտուրը վերանորոգել են մասամբ իւր հին, մասամբ էլ Աղէքսանդրապօլից բերած քարերով։

## ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ՃԵՄԱՐԱՆ

Ամենափրկչի և Ս. Աստուածածնի եկեղեցիներին կից, ութական քառանկիւնի սիւների վրայ բոլորում են ութ ռոմանական կամարներ, յառաջացնելով 16 արշ. երկ. $3^1/_2$ արշ. լայն. և $6^1/_2$ արշ. բարձր. մի սրահ։ Սիւները դրուած լինելով գետնից մի արշինաչափ բարձր պատի վրայ, սիւների միջի տարածութիւնները մի մի նստարան են ներկայացնում։ Սրահը արևմտեան կողմից բաց է և խառնւում է նախագաւթին, իսկ արևելեան կողմում կանգնած են մի մեծ և կողքերին մի մի փոքր խաչքար։ Միջի խաչքարի վրայ արձանագրութիւն չկայ, իսկ միւս երկուսի վրայ կարդացւում է.

*Ս. Խաչս բարեխաւս այր ծորկուն թվ... որդի Դաւթի զաւրավարին.*

Միւսի վրայ.

*Սբ. Նշանդ տէրունական Տէր Սարգսի լեր քաւարան. թվին ԾԵ**) (?)

Այս սրահի յատակը ծածկուած է տապանաքարերով, որոնցից միայն մինի վրայ կայ «Վարդան սարկաւագ» տապանագիրը։

Աւանդութեան ասելով Գրիգոր Մագիստրոսը այս սրահումն է ուսուցել իւր աշակերտներին, ուստի և այս շէնքը նրա անունով կոչւում է Մագիստրոսի ճեմարան։

## ԱՐՔԱՅԱԿԵՆ ԴԱՄԲԱՐԱՆ

Ս. Աստուածածին եկեղեցու արևմտեան կողմը, պատին կից, երկու կամարակապ սրահներ են եղել, որոնք 1836 թուին Յարութիւն եպիսկոպոս Տէր Բարսեղեանը քանդել և քարերն աղբիւրի շինութեան վրայ է գործ դրել։ Այս սրահ-

*) 606 Փրկչ. (?) Թերևս ՇԵ—1056.

Digitized by Google

ներից մինի տակ հանգչում է Կիւրիկեան թագաւորութեան հիմնադիր Գուրգէնի, իսկ միւսի տակ նրա որդու՝ Դաւիթ Անհողին թագաւորի նշխարները։ Առաջնի վրայ կայ միակտուր, եռանկիւնաձև մի ահագին տապանաքար՝ այս տապանագրով.

*Այս է հանգիստ Գուրգէնայ որդւոյ Աշոտոյ Ողորմածին:*

Միւսի հետքն անգամ չի երևում։

Սրանց շուրջը կան նաև ուրիշ գերեզմանաքարեր, որոնցից մինի վրայ կարդացւում է. *Այս է հանգիստ Ներսէս փիլիսոփայի:*

## ՋԱՆԳԱԿԱՏՈՒՆ

Ս. Աստուածածնի եկեղեցու հիւսիսային պատին կից բարձրանում է կոփածոյ քարերով շինուած զանգակատունը։ Սա մի քառանկիւնի շէնք է, փոքրիկ, սիւնազարդ կաթուղիկէով։

Գլխաւոր մուտքը գտնւում է արևմտեան կողմում. երկու սիւների վրայ բոլորում են արաբական կամարներ, որոնց երկու կողմում քանդակուած են մի մի բազէ. մի ուրիշ քառանկիւնի շրջանակ պարփակում է դուռը, որ այժմ քարով ծածկուած է։ Դրան վերև մի խաչաձև բացուածք կայ, որի մէջ դրուած է մի կարմիր քարէ գեղեցկաքանդակ խաչ։ Սրա երկու կողմում և վերևը, նոյնպէս պատի մէջ դրուած են մի մի դեղնագոյն քարէ քանդակակերտ խաչ։ Երկու մեծ և մի փոքրը պատուհան աններդաշնակ կերպով բացւում են և տգեղացնում ընդհանուր տեսքը։ Միւս կողմերին ևս կան մի մի հասարակ դուռ և մի քանի պատուհան։

Զանգակատան մէջ քարէ, 18 աստիճանաւոր սանդուղով բարձրանում են մի սրահ, ուր կայ երեք խորան։ Սրանցից իւրաքանչիւրն ունի մի փոքրիկ և նեղ լուսամուտ։

Այս սրահից նայնպիսի քարէ 13 աստիճանաւոր սանդուխտ բարձրացնում է մի ուրիշ մեծ սրահ, որից չորս կողմը բացւող պատուհանները մի գեղանկար տեսարան են պարզում գիտողի

Digitized by Google

առջև։ Կաթուղիկէն յենուած է վեց սիւների վրայ, որոնցից իւրաքանչիւրը բաղկացած է չորս կիսասիւներից։

Զանգակատան բարձրութիւնն է 28 արշին, իսկ երկարութիւնն ու լայնութիւնը տասական արշին։

## ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ ԿԱՄ ՆՇԽԱՐԱՏՈՒՆ

Ս. Աստուածածնի եկեղեցու մօտ, նրան իւր փոքրիկ գաւթով կից գտնւում է մի հրաշալի շէնք, որի նշանակութիւնն և ումնից շինուիլը որոշող արձանագրութիւնը թէև այժմ անհետացած է, սակայն ընդօրինակութիւնը պահպանուել է Ս. Ջալալեանի աշխատութեան մէջ։ Սրանից երևում է, որ այս շէնքը շինել է Գուրգէն արքայի դուստր Հրանուշ թագուհին 1063 փրկ. թուին և յատկացրել է նշխարներ և մասունքներ պահելու։

Շէնքը քառակուսի է, անսիւն և գմբէթաւոր։ Իւրաքանչիւր կողմի երկարութիւնն է 12 արշ. 12 վերշոկ, իսկ բարձրութիւնը՝ 16 արշ. 8 վեր.։ Մի մի հրաշագեղ կիսասիւներ բարձրանում են իւրաքանչիւր պատի մէջ տեղում, որոնց վրայ պատերի անկիւններով անցնելով բոլորւում են արաբական կամարներ, կրելով իրենց վրայ գմբէթը։ Վերջինս ոչ թէ կոնաձև է, այլ վեց կարգ միմեանց վրայ յենուած կանոնաւոր ութանկիւնանիների, որոնք հետզհետէ փոքրանալով մի բաւական մեծ անցք են թողնում լոյսի համար։ Մի փոքրիկ, նեղ և երկար պատուհան էլ կայ արևելեան պատում։ Բոլոր պատերի մէջ կան մեծ և փոքր, գեղեցիկ նշխերով եզրափակուած կամարակապ դարակներ, որոնցից մինը ծխնելոյզ ունենալով ծառայել է իբր վառարան։

Շատ նշանաւոր են կիսասիւները, որոնք բոլորն էլ ձևով միմեանցից տարբերւում են։ Սրանցից մինի բունը ներկայացնում է մի միակտուր կիսագլան 2 արշ. բարձրութեան, վերան երեքական բարակ և մէջտեղը մի հաստ, զանազան նշխերով ծածկուած սիւներ կերտուած, որոնք կամարներով միանում են միմեանց հետ։ Վերնախարիսխը քառանկիւնի է,



**Мон. Санаинъ.** ***Սանահին. Աշխարհախուց եւ Ս. Լուսաւորիչ.*** ***Mon. de Sanahine.***

Digitized by Google

նոյնպէս նշխերով ծածկուած։ Մնացած իւիքը նոյնպիսի կի-սագլաններ են, որոնց առաջի մասում մի մի կիսասիւն է կեր-տուած, զանազան, միմեանցից տարբեր նշխերով զարդարուած։ Միեւնոյն ժամանակ սրանց վերնախարիսխներն էլ տարբերւում են միմեանցից. մինի վրայ երկու, միմեանց փաթաթուած օձեր են կերտուած, միւսը հնդանկիւն է, իւրաքանչիւր երեսին մի խաչ քանդակուած, վերեւն էլ մի խաչ կանգնեցրած։

Մյուսկ դուռը, որ բացւում է գաւթի մէջ՝ սիւնազարդ է, արաբական կամարներով։

## ՓՈՔՐԻԿ ԳԱՒԻԹ

Նշխալատան առաջ կայ սրբատաշ քարերից շինուած մի փոքրիկ գաւիթ. սրա արեւմտեան կողմը բոլորովին բաց է, հարաւայինը ներկայացնում է երկու կամարակապ անցք, կող-քերին մի մի պատուհան, արեւելեան կողմը պատած է պա-տով, որի մէջ կանգնած են եղել երկու խաչարձան, որոնցից այժմ միայն մինն է կանգուն և կրում է հետեւեալ արձա-նագրութիւնը.

*Ի ՈԺ թուին *) ի թագաւորութեան վրաց Գէորգեայ կանգնեցաւ սր. Ամենափրկիչս ի բարեխօսութիւն հաւա-տացելոց:*

Գաւթի յատակը ծածկուած է տապանաքարերով, որոն-ցից մինի վրայ գրուած է.

*Ճգնաւորն պատրոն Նրջիան է, քոյր պատրոնացն Զա-քարէի եւ Իւանէի։*

Գաւթի երկարութիւնն է 14 արշ. 7 վերշ. լայն. 3 արշ. 13 վ. բարձրութիւնը 6 արշ. 3 վերշ.։

## Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ

Սպասալարների դամբարանից դէպի արեւելք, Գրիգոր Տու-տէորդու դամբարանի մօտ գտնւում է սբ. Յարութեան եկեղե-ցին, որ սրբատաշ քարից շինուած, առանց գմբէթի մի շէնք է, 6 արշ. 3 վ. երկ. և $4^1/_2$ արշ. լայնութեան։ Մի դեղեցկա-

*) 1161 Փրկ

քանդակ դուռ բացւում է արևելեան կողմում։ Ներքուստ եկեղեցին մի միջնորմով բաժանւում է երկու փոքրիկ պատարագամատոյց խորաններ, որոնցից իւրաքանչիւրն ունի մի փոքրիկ, նեղ և երկար պատուհան։

## Ս. ՅԱԿՈԲ ԵԿԵՂԵՑՈՒ ԱՒԵՐԱԿՆԵՐԸ

Սպասալարների գամբարանից դէպի արևելք, փոքր ինչ հեռու գտնւում են ս. Յակոբ եկեղեցու աւերակները, որոնք ցոյց են տալիս, որ սրբատաշ քարից շինուած բաւական ընդարձակ է եղել։

## Ս. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻՆ

Անտաշ՝ հասարակ քարից շինուած այս փոքրիկ, կամարակապ և անգմբէթ եկեղեցին կանգնած է Ամենափրկիչ եկեղեցու հարաւ-արևմտեան կողմը ցցուած ապառաժոտ բլրի գագաթին։ Սա ունի մի պատարագամատոյց սեղան, բարձրում մի փոքրիկ, նեղ և երկար պատուհան։

## Ս. ԿԱՐԱՊԵՏ ԵԿԵՂԵՑԻՆ

Սա էլ գտնւում է գիւղի արևելեան կողմում բարձրացող փոքրիկ բլրակի վրայ և սրբատաշ քարերով շինուած մի կամարակապ, անսիւն շէնք է. ունի մի դուռն արևմտեան և մի ուրիշը՝ հիւսիսային կողմից դէպի պատարագամատոյց սեղանը։ Եկեղեցին կիսաւեր է, սակայն տօնի օրը, երբ շրջակայ գիւղերից բաւական ուխտաւորներ են գալիս՝ պատարագ է մատուցւում։

## ԳՐԻԳՈՐ ՏՈՒՏԷՈՐԴՈՒ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Սա գտնւում է ս. Յարութիւն եկեղեցու հիւսիսային կողմում։ Երեք արշին, 5 վ. բարձրութեան, 4 արշ. երկարութեան և 3 արշ լայնութեան մի սպառանդան է, կողքերը կամարակապ սիւներով զարդարուած։ Սրա վրայ բարձրանում է 3 արշ. 2 վ. բարձր. և 1 արշ. 7 վ. լայնութեան միակտուր կար-



*Гробница Г. Тутеворди* *Շիրիմ Գ. Տուտէորդու* *Tombeau de G. Toutevordi*

Digitized by Google

**միր քարից, հրաշալի քանդակներով եզրափակուած խաչը, որի ետեւում գրուած է.**

*Ցամի յորում եղեւ կատարումն արքային Վրաց Գուրգէնի ես Գրիգոր վարդապետ որդի Տուտայ Խաչենեցի որ բնակեալ ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնիս կանգնեցի զխաչս ի վերայ հանգստարանի իմոյ ակնունելով ելից կենցաղոյս, եւ այր անկեալ դնիմ առ ոտս քո նշանդ Աստուծոյ եւ աղաչեմ անցորդքդ շրթամբ զի ի մեծի երեւման քո լինիցիս բարեխօս անարժան ծառայիս Քսի: Եւ որք երկրպագէք յիշեցէք ի Յս. Քս. կանգնեցաւ ի հայրապետութեան Յովհաննէսի, յորում ամի նորոգեցաւ կաթուղիկէն սա ի թուին ՈԼԴ *): զՄխիթար կազմիչս յիշեցէք ի Քրիստոս:*

## ՍՊԱՍԱԼԱՐՆԵՐԻ ԴԱՄԲԱՐԱՆԸ

**Սա գտնւում է Ամենափրկիչ եկեղեցուց դէպի արեւելք, վանքի պարսպից դուրս, հազիւ 18 սաժէն հեռաւորութեան վրայ։**

**Սա բաղկացած է մի երկար և կամարաձև, կողքերին մի մի կլոր և գմբէթաւոր փոքրիկ մատուռներից։ Սրանց երեքի տակը, չորսական կիսասիւների վրայ բոլորում են չորս կամարներ, հովանաւորելով Զաքարէ սպասալարի, իւր հօր՝ Սարգսի և պապի եղբայր Վահրամի գերեզմանները։ Միակտուր, ահագին տափարակ տապանաքարերի գլխներին բարձրանում են նոյնպէս ահագին, միակտուր և գեղեցիկ քանդակներով շրջապատուած մի մի խաչքար։ Սրանցից երկուսը այլեւս չկան, իսկ երրորդի վրայ գրուած է.**

*Նշան Աստուծոյ բարեխաւս լեր ամիր Սպասալար Հայոց եւ Վրաց Սարգսին:*

**Խաչքարի ստորին մասում գրուած է.**

*Ի ՈԼԶ թուին **) կատարեցաւ ի Քս. Մեծն Սար-*

---

*) 1185 Փրկ.

**) 1187 Փրկ.

*զիս, որդի Զաքարէի, Թոռն Աւագ Սարգսի. որդիքս Զաքարէ եւ Իվանէ կանգնեցաք զխաչս, յիշեցէք:*

Այս գամբարանին կից, բայց նրանից փոքր ինչ բարձր, անսիւն, կամարակապ մի շէնք է շինուած, մի երկար ու նեղ և մի կլոր պատուհաններով, ուր թաղուած են Արղութեան Երկայնաբազուկ տոհմի անդամներից 14 հոգի։ Սրա մլակ, արևմտեան կողմի սիւնազարդ և կամարակապ դրան վրայ քանդակուած է մի խաչ, կողքերին մի մի աղաւնի, իսկ շուրջը՝ հետևեալ արձանագրութիւնը.

*Զաքարէ եւ Իվանէ որդիք մեծին Սարգսի շինեցաք զհանգստարանս. յիշեցէք ի Քս. ի թվին Հայոց ՈԼԸ *)։*

## ՈՒՍՈՒՑԻՉ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅԻ ԴԱՄԲԱՐԱՆԸ

Հաղբատի առաջնորդ Յովհաննէս եպիսկոպոսի ուսուցիչ Յովհաննէս քահանայի դամբարանը գտնւում է ս. Յարութիւն եկեղեցուց դէպի արևելք, փոքր ինչ հեռու։ Սա կարմիր քարէ քերուրաքանդակ մի խաչքար է, կանգնեցրած մի բարձր պատուանդանի վրայ։ Գիւղացիները սրան «Ուսուցիչ» են անուանում։

Խաչքարի յետևը արձանագրուած է.

*Ես Տէր Յովհաննէս առաջնորդ Հաղբատայ կանգնեցի զխաչս ի հանգստարանի ուսուցանողին իմոյ Յովհաննէս քահանայի, որք երկրպագէք յիշեցէք ի Քրիստոս:*

## ԱՂԲԻՒՐՆԵՐԸ

Վանքից դուրս, գիւղի հարաւ—արևմտեան ծայրին գտնւում է կամարակապ աղբիւրը, որ շինել են տուել Զաքարէ և Իւանէ սպասալարները։ Այս ջրի մի մասը բերուած է վանքի գաւիթը, որի վրայ շինուած կամարակապ շէնքի ճակատին արձանագրուած է ջուրը բերողի անունը, որ հետևեալն է.

*) 1189 Փրկ.

1835 *թ. Յարութիւն արքեպիսկոպոս շինեաց զաղբիւրս այս յորդառոս, ով վայելողք այս ջրոյս յիշեցէք զսա առ Տէր Յիսուս. սա էր տոհմէն Տէր Բարսեղեանց եւ սահմանէն Տաւուշայ. անտի Սանահին յաջորդեաց. արդեամբ իւրով զայս յօրինեաց:*

## ՍԱՆԱՀՆԻ ՍՐԲՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Վանքում կան հետեւեալ սրբութիւնները, որոնք պահւում են Ս. Նշան եկեղեցու խորանում։ Տարուայ ընթացքում այս սրբութիւններից մի քանիսը և մանաւանդ Ս. Նշանը վանահայրը ման է ածում գիւղերը և նուէրներ հաւաքում։

*Ս. Նշան մասը*, ամփոփուած մի ականակուռ խաչի մէջ, և դրուած մի աւետարանաձև արծաթեայ պահարանում, որի փականները զարդարուած են ոսկեջրած պատկերներով։ Այս պահարանը, ինչպէս երևում է վրայի գրութիւնից, շինել է տուել Բարսեղ արքեպիսկոպոսը 1566 թուին։ Նոյն պահարանում պահւում է նաև *Ղուկաս աւետարանչի ծնօտի մասը*։

*Ս. Լուսաւորչի աջը*. արծաթեայ է, ոսկեջրած. ներկայացնում է մի բազուկ, բութ և մատնեմատը միասին ծալած, այնպէս՝ ինչպէս սովորաբար բռնում են հոգևորականները խաղաղութիւն տալիս։ Բազուկը զարդարուած է ակնազարդ ապարանջաններով, մատնեմատը՝ մի մատանիով։ Շինուած է 1685 թուին յիշատակ Թամարի որդի Մանուչարին։

*Ս. Օհան Օձնեցու աջը*. արծաթեայ, ոսկեջրած ակներով և մի մատանիով զարդարուած։ «Յիշատակ է Պօղոս եպիսկոպոսին, ի վայելչութիւն սբ. Օհան Օձնեցուն։ Շինուած է 1685 թ. ի թագաւորութեան շահ Սուլէյմանին և հայրապետութեան Տեառն Եղիազարին և խանութեան Լօռու Թահմազ ղուլի խանին և իւր Աղայ Շահ-Մուրատ բէկին. սուրբ Օհանաթէմ Աբազին և Շահ գալուն. շինեցաւ ձեռամբն ուստայ Յովասափին և Սարգսին։ Աստուած պահէ աշխատողին Ամէն»։

*Ս. Աստուածածնի մազը եւ զգեստի կտորը*, ամփո-

փուած են մի ականակուռ խաչի մէջ և դրուած աւետարանաձև, արծաթեայ և ոսկեզօծ պահարանում, որի վրայ գըրուած յիշատակարանից երևում է, որ «Սանահնեցի Երկայնաբազուկ Արղութեան արքեպիսկոպոսն յետ աւերման աշխարհին վրաց ի Պարսիկ Աղա-Մահմէտ խանէն, 1795 թուին երկրպագութեան է եկել Սանահնի և Հաղբատի վանքերին, տեսել է նրանց ամայութիւնը, մղկտացել է նրանց վրայ և շինել է տուել այս պահարանը, նրանց մէջ ամփոփել վերոյիշեալ սրբութիւննեըր և նուիրել Սանահնի վանքին։

*Թովմա առաքեալի մատանը*. դրուած է մի արծաթեայ ոսկեջրած խաչի մէջ, իսկ խաչը պահւում է մի աւետարանաձև արծաթեայ, ոսկեջրած պահարանում, որի վրայ նկարուած են՝ Պօղոս և Պետրոս առաքեալները, բարձրում հրեշտակներ՝ ամպերով պատած։ Այս պահարանի մէջ առանձին ապակեածածկի տակ դրուած են նաև մի քանի քարեր. ապակիներից մինի վրայ գրուած է. Սրբազան սբ. գերեզմանի վիմիցն է, որ մըշտապէս բիրէ զլոյս իւր հաւատացելոց». միւսի վրայ. «Համբարձման տեղի քարիցն է, որ համբարձաւ Տէրն մեր»։ «Մասունքը» յիշատակ է աւագ, քահանայ Տէր Ղազարին Սահառունեաց, ի դուռն Սանահնայ սրբոյ վանից. յառաջնորդութեան Առաքել արքեպիսկոպոսին 1817 ամի։

*Թոմա առաքեալի ականջը*. սա ապառաժ կոչուած ոսկըրն է, բամբակի մէջ փաթաթուած և դրուած աւետարանաձև, ակնազարդ արծաթեայ պահարանի մէջ, որ ծածկւում է ոսկեջրած երկփեղկեան դռնակով։ Սրա վրայ նկարուած է Թովմաս առաքեալ, ձեռին մի թուղթ, արաբերէն գրութեամբ։

## ՍԱՆԱՀՆԻ ՎԱՆՔՆ ՈՒՆԻ

1) Վարելահող և անտառ՝ 549 դեսիատին 270 ք. ս.
2) Արօտատեղի՝ 127 դեսիատին, 140 սաժէն։
3) Մի ջրաղաց երեք քարանի.
4) Մի այգի, մի դեսիատին մեծութեան։

Վանքը պահպանում են մի եպիսկոպոս և մի վարդապետ։



*Санаинскій стар. мостъ(XIII ст.) Սանահնի կամուրջը. Նանէի շինած. (XIII դ.) Vieux pont (XIIIs.) à Sanahine.*

Digitized by Google

## ՍԱՆԱՀՆԻ ԿԱՄՈՒՐՋԸ

Ճարտարապետական տեսակէտից առանձին ուշադրութեան արժանի այս կամուրջը ձգւում է Աւորդեաց ձորում Դեբեդ գետի վրայ։ Սա կառուցել է, ինչպէս տեսանք,[1] Կիւրիկեան Աբաս Բ. (1234) թագաւորի կին և Զաքարէ ու Իւանէ սպասալարների քոյր Նանան, ի յիշատակ իւր վաղամեռիկ ամուսնուն։ Կամուրջը շինուած է տաշած քարից, և բաղկացած է մի մեծ կամարից, որի մի ծայրը հանգչում է ժայռի, իսկ միւսը՝ հաստատուն պատուանդանի վրայ. և դէպի հարաւ իջնում է աստիճաններով։ Կամուրջի երկու կողմում ձգւում են քարէ պատնէշ, զարդարուած առիւծի չորս արձաններով։ Կամուրջի ցածր մասում կանգնած է մի խաչքար, որ կրում է վերոյիշեալ պատմական տեղեկութիւնը բովանդակող մի արձանագրութիւն։

Կամուրջի երկարութիւնն է 28 սաժէն, իսկ լայնութիւնը, 5 արշին 3 վերշոկ, կամարի բարձրութիւնը ջրի մակերևոյթից մինչև 20 արշին։

Չնայելով որ մօտ եօթ դար է անցել հիմնարկութեան օրից, այնուամենայնիւ բոլորովին կանգուն է այս հոյակապ շէնքը։ Այս կամուրջի մօտ Թիֆլիս-Կարսեան երկաթուղու մի տախտակամած է շինուած, ուր երկաթուղին մի քանի րոպէ կանգ է առնում։ Այստեղից մի սաստիկ քարքարոտ և ոլորապտոյտ ճանապարհ ահռելի ժայռերի կրծքով բարձրանում է դէպի Սանահնի վանքը, որ հազիւ հինգ վերստ հեռու լինի։ Այժմ Վեհափառ կաթուղիկոսի հոգատարութեամբ այս ճանապարհը հարթւում է, որով և շատ մեծ դիւրութիւն է ընծայւում թէ ուխտաւորներին և թէ Սանահին ամարանոց գնացողներին[2]։

---

[1]) Տես եր. 316

[2]) Սանահնի, ինչպէս և Հաղբատի շուրջը գտնուած այրերի մասին կը խօսենք յետոյ, բոլոր այրերի հետ միասին։

Digitized by Google

# ՀԱՂԲԱՏ

*Սանահնին մրցակից և նրան թէ իւր ճարտարապետու-թեամբ և թէ իւր կրօնական, հասարակական գործունէու-թեամբ գերազանցող այս հռչակաւոր վանքը բարձրանում է համանուն գիւղի մօտ, Սանահնից արևելք, հազիւ 5 վերստ հե-ռու մի եռանկիւնաձև հարթութեան վրայ, որի հարաւային կողմից ձգւում է Սեղիկի ձորը, համանուն վտակով, արևմտեան կողմից Կայենոյ և Գերեզի ձորերը, իրենց յորդառատ ջրերով, հիւսիսային կողմից այս հարթութիւնը մօտ չորս վերստ շա-րունակուելով՝ ընդհատւում է Խրմա-ձորով, իսկ արև՛լեան կող-մում միանում Տէրունական և Ս. Լուսի անտառապատ լեռներին։*

*Վանքը շրջապատուած է հաստ պարսպով, որ ունեցել է վեց ամուր, բայց այժմ կիսաւեր աշտարակներ։*

*Վանքի շինութիւնն սկսուած է 967 թուին, Խոսրովա-նոյշ թագուհու հրամանով, ինչպէս վկայում է Սամուէլ Անե-ցին[1], և թէպէտ Հաղպատի Աւագ Ս. Նշան եկեղեցու հիւսի-սային պատի վրայ եղած հետևեալ արձանագրութիւնը՝ «Ի թուին Հայոց ՆԽ ես Սիմէօն հայր և Տիրանուն երէց շինե-ցաք զեկեղեցիս փրկութեան Սմբատայ և Գուրգենայ», ցոյց է տալիս, իբր թէ եկեղեցին շինուած է 991 թուին, սակայն կարելի է ենթադրել, որ կամ եկեղեցու շինութիւնը, որ սկ-սուած է եղել 967 թուին աւարտուել է 991-ին և կամ նախ մի ուրիշ եկեղեցի է շինուել և ապա այդ։*

*Հաղբատի վանքը բաղկացած է հետևեալ մասերից. Աւագ սուրբ Նշան (967 թ). Ժամատուն (1185 թ), Ս. Գրիգոր, Աստուածածին, Համազասպ (1257 թ.), Նշխարախուց կամ Մա-տենադարան (1260-ական թ). Զանգակատուն (1245 թ.), Սեղանատուն, Կուսանաց անապատ (1279 թ.) Ջրաշէն (1195 թ.) Ս. Կիրակի (1188 թ.) և այլն, որոնք մի առ մի սկսենք նկարագրել[2]։*

---

[1]) Ս. Անեցի. եր 100.

[2]) Հաղբատ բառը ըստ Բագրաձէի (Кавказъ въ древнихъ памятникахъ христіанства եր, 32) այս պէս է բացատրւում. հաղ-



*Мон. Ахпатъ.* Հաղբատի Ս. Նշան. *Mon. de Haghbate.*

Digitized by Google

## Ս. ՆՇԱՆ

Այս հրաշալի եկեղեցին հիմնարկել է Աշոտ Ողորմած թագաւորի ամուսին Խոսրովանոյշ թագուհին 967 թուին։ Նրա որդիները՝ Սմբատ Հայոց և Գուրգէն՝ Գուգարաց թագաւորները շարունակել են շինութիւնն և աւարտել 991 թուին, առաջին վանահայր Սիմէօնի ժամանակ։ Վանքը կառուցուած է սրբատաշ քարից, ներքուստ անսիւն է. չորս գեղեցիկ, պատերին կից կիսասիւների վրայ բոլորում են չորս ռոմանական կամարներ, որոնք միանալով մի մանեկաձև շրջանակով՝ կրում են իրենց վրայ չորս երկար և նեղ լուսամուտներով զարդարուած մի գեղեցիկ կաթուղիկէ։ Եկեղեցու չորս անկիւնում գտնւում են միմեանց վրայ շինուած երկական խորաններ, որոնցից մինի մէջ մկրտութեան աւազան կայ։ Արևմտեան, աջկողմի, վերին խորանից մի քարէ սանդուխտ բարձրացնում է մի ուրիշ փոքրիկ խորան, պատարագամատոյց սեղանով և երկու կլոր պատուհանով, որոնցից մինը նայում է եկեղեցու մէջ, իսկ միւսը՝ դուրս։

Աւագ սեղանը $1^{3}/_{4}$ սրշին բարձրութիւն ունի և գեղեցիկ կամարով ու փայտեայ խաչկալով զարդարուած է։ Սրա ներքնածածկի վրայ նկարուած է Հայր Աստծու պատկերը՝ մի ձեռքում երկրագունդը, իսկ միւսում՝ խաչաձև գայիսոնը բռնած։ Սրա ներքև մեծ տառերով գրուած է. *Արարիչ երկնի եւ երկրի եւ ... ընկալ ... ի հաճոյս ...*

Պատերի վրայ կան այժմ դրէթէ բոլորովին եղծուած պատկերներ, որոնցից մինի մասին 1884 թուի մի այցելու ասում է. „Տաճարի հիւսիսային պատի վրայ ներսից, ձախակողմեան դասի հանդէպ նկարուած է դեղով մի պատկեր, որ ներկայացնում է մի մանկամարդ գեղեցկագէմ թագուհի, թագը գլխին, կարմիր շրջազգեստը իջնում է մինչև մուճակները. կուրծքն ըստ երևոյթին ոսկեթել ասեղնագործածով և ձեռքերը ուղղած

---

բատ—հաղբ-ապատ, պատ, այսինքն հաղբից—որոգայթից պատուած, պաշտպանուած, կամ ըստ Երզնկեանի (Հնախօսական Տեղագրութիւն Հաղբատայ եր. 1.) հաղբ-ատ (ող)—ատող որոգայթներն աշխարհի։

դէպի սեղանը, նրա վերև նոյնպէս նկարներ են, մաշուած և հազիւ հետքերն են երևում. Թագուհու պատկերից դէպի արևելք դրէթէ պատի մեծ մասը ծածկուած է արձանագրութիւններով, որոնք այժմ կիսամաշ լինելով, դժուար են կարդացւում և որոնց մասին Ջալալեանցն ոչ մի յիշատակութիւն չէ անում *)։

Իւրաքանչիւր պատում բացուած մի մի փոքրիկ պատուհանը բաւականաչափ լոյս չփռելու պատճառով վերջերքս հարաւային պատում մի մարդաչափ պատուհան էլ են բաց արել։

Երկու գեղեցիկ, կամարակապ դռներ բացւում են արևմտեանը՝ մի մեծ, իսկ հիւսիսայինը՝ փոքր գաւթի մէջ։

Արտաքուստ եկեղեցու տեսքը շատ գեղեցիկ է, ամբողջովին սրբատաշ, կտուրը և կաթուղիկէն լոռբինով (քարէ տախտակ) ծածկուած։ Արևելեան պատը ունի երկու կամարակապ ներսանկուածներ, մէջ տեղում մի նեղ և երկար պատուհանով, իսկ սրա վերև, մի միակտուր խորափոր քարի վրայ խնամքով դուրս փորուած Աշոտ Ողորմածի որդի՝ Սմբատի և Գուրգէնի մարդաչափ պատկերները. (րելիէֆ)։ Սմբատ Թագաւորի գլխին դրուած է սրածայր թագ, չորեքփեղկեան եզերքները պատուական ակներով զարդարուած. իսկ Գուրգէնի գլուխը պատատած է ազնիւ ապարօշ (շալ) և վարսակալ դրուած։ Երկուսի հանդերձն էլ լայնաձև, երկար վերարկու են, որ թիկունքից մինչև ոտներն են իջնում։

Փառաւոր, երկար մօրուքով, միմեանց դէմ կանգնած, սրանք բռնած են իրենց ձեռքերով այս եկեղեցու կաղապարը (modèle)։

Այս արձանի տակ թէև կայ արձանագրութիւն, բայց եղծուած լինելով անընթեռնելի է։

Եկեղեցու երկարութիւնն է 20 արշին, լայնութիւնը՝ նոյնքան, իսկ բարձրութիւնը՝ մօտ 66 արշին։ Այս եկեղեցու կաթուղիկէն սաստիկ երկրաշարժից քանդուել և նորոգուել է Մուկ իշխանաց իշխանի որդի Հոնաւորի ծախքով, 1016 թուին։ Բացի սրանից եկեղեցին վերանորոգուել է 1651 թ. Թիֆլիսեցի խոջա Բեբուդի և ապա 1611 թուին Մահտեսի Աղիզի օժանդակութիւնով։

*) Արձագանք 1884 № 43.

## ԱՒԱԳ ԳԱՒԻԹ ԿԱՄ ԺԱՄԱՏՈՒՆ.

Ս. Նշանի արևմտեան դռան առաջ կայ մի գաւիթ։ Սա սկզբներում շատ փոքր է եղել, և կառուցել է Կիւրիկէ թագաւորի Մարիամ դուստրը 1185 թուին իւր հօր, մայր Թամարի և քոյր Ռուսուդնայի և իւր գերեզմանների վրայ իբրև մի աղօթատուն, որպէսզի աղօթողներն իրենց աղօթքներում յիշեն և իրենց։ ԺԱ. դարում Կիւրիկէ թագաւորի շնորհիւ Հաղպատը դարձաւ եպիսկոպոսանիստ աթոռ, և Յովհաննէս եպիսկոպոս Խաչէնեցին՝ Զաքարէ և Իւանէ սպասալարների հրամանով, նստաւ Հաղբատի եպիսկոպոսական աթոռը Թամարի և նրա որդի Գէորգի թագաւորութեանց ժամանակ քանդեց այս փոքրիկ գաւիթը և շինեց այժմեան մեծ և գեղեցիկ շինուածքը, ինչպէս որ պատմում է Կիրակոս Գանձակեցին, կամ ինչպէս հաստատում են արևելեան պատի վերայ եղած արձանագրութիւնը։ [1])

Գաւթի ընդհանուր տեսքը խաչանման է, քսան և երկու արշին երկարութեան և 42 արշ. լայնութեան, փոքրիկ գմբէթով։ Ձեղունը վեց կիսասիւների և երկու սիւների վրայ բոլորուող կամարների վրայ է հաստատուած, որի մէջտեղում բացւում է մի կլոր անցք. իսկ սրա վրայ բարձրանում է վեց սիւներով զարդարուած փոքրիկ կաթուղիկէն։ Սրա ներքև, յատակի վրայ կայ մի քարէ, քառակուսի աւազան, ուր առաջները կատարել են ջրօրհնեաց հանդէսը։ Աջակողմեան դասում կայ և մի ուրիշ աւազան, ուր կատարում են մկրտութեան խորհուրդը։

Առանձին ուշադրութեան արժանի են այս երկու սիւնը և սրանց վերայ բոլորող կամարները։ Սիւները 2 $^1/_2$ արշին բարձրութեան միակտուր քարեր են, հաստ պատուանդանի վրայ հաստատուած և գեղեցկաքանդակ խոյակով զարդարուած, իսկ կամարները աղեղնաձև են և կարմիր ու կապոյտ քարերով այնպէս շինուած, որ սրեղակի ճառագայթներից հալածուող ամպերի կոյտի նմանութիւն են տալիս։ [2])

[1]) Երզնկեան. Հնախօսական տեղագր. Հաղբատայ. եր. 21.
[2]) Երզնկեան. յ. գ.

Ամբողջական սիւներից դէպի արեւմտեան պատը կամարներ են ձգւում և ցած ձեղունով ծածկւում գաւթի այս մասը։

Գաւթի արեւելեան կողմի երկու անկիւններում կան մի մի հատ մէկ և մի մի հատ էլ երկյարկանի խորաններ, պատարագամատոյց սեղաններով, բացի սրանցից աջակողմեան խորանների առջև կայ մի ուրիշ խորան ևս, դրան մօտ մի հրաշալի խաչ քանդակուած։ Սոյնպիսի մի խորան էլ կայ ձախ կողմում, միայն դուռը չկայ և պատի երեսը պատած է երեք գեղեցկաքանդակ խաչքարերով, որոնց վերև արձանագրուած է, որ Կիւրիկէ Թագաւորի դուստր Մարիամը շինել է այս գաւիթը։ Իսկ այս խաչքարերի առաջ կան տապանաքարեր Մարիամի, Թամար Թագուհու, Ռուսուգանի, սրանց մօտ՝ Կիւրիկէ Թագաւորի, Դաւիթ Թագաւորի, և այլն։

Գաւթի հիւսիսային և հարաւային պատերի մէջ կան երկական կիսաբոլոր, իսկ արեւմտեան պատի մէջ՝ երկու նեղ և երկար պատուհան։

Հիւսիսային, հարաւային և արեւմտեան պատերի մէջ կան կամարակապ, սիւնազարդ դռներ, որոնցից առաջին երկուսը քարով պատած են։

Գաւթում եղած տապաններից նշանաւորներն են.

Հիւսիսային կողմում՝

Աբաս Թագաւոր։ Սա Մծնաբերդի տիրողն էր, Բագրատունեաց ազգից. Աշոտ Ողորմածի Գուրգէն որդու Դաւիթ Անհողի որդի Կիւրիկէ Թագաւորի որդին։

2) Կիւրիկէ Թագաւոր, Դաւիթ Անհողի որդին։

3) Սրա քոյր Ռուսուգան։

4) Թամար Թագուհի, Կիւրիկէ Թագաւորի կինը։

5) Մարիամ, Ռուսուգան և Բաւրինայ, Կիւրիկէ Թագաւորի աղջիկները։

6) Դաւիթ. Աբաս Թագաւորի հարազատ եղբայրը։

Հարաւային կողմում.

1) Աբաս Թագաւոր.

2) Կիւրիկէ Թագաւոր.

Գաւթի մէջտեղում.

3) Գրիգոր ամիրայ.

4) Քուրդ ամիրայ.

5) Այս է հանգիստ Աթաբէկ Սադունին։

6) Վասակ.

7) Փուրդուխան.

8) Չամգա. 9) Թայիկ. 10) Կաւթել. 11) Նուսթի, 12) Դոլ. 13) Գաւիթ. 14) Խորոլիկ. 15) Խուաս-Հասան. 16) Ռուսուգան և 17) Սաանայ։ Սրանք բոլորն էլ Բագրատունեաց տոհմից էին։

Գաւթի զանազան կողմերում կան նաև հետևեալ տապանագրերը, առանց թուականների.

1. Տէր Գրիգորիս. 2. Տէր Գրիգորիսի եղբայրն է. 3. Փիլիպոս արքեպիսկոպոս Անչեցի. 4. Սմբատ որդի Ուքանայ. 5. Այս է հանգիստ Մաթունին, 6) Նանա. 7. Աբլ-Հասան. 8. Թէթվասան. 9. Այս է հանգիստ Մինաս վարդապետին. ՌՃ թվին։ 10. Սմբատ որդի Գարբանիէլի. 11. Զաքարէի և Իվանէի քուեր որդին Յովհաննէս եպիսկոպոս տեղոյս, շինողն Կայան բերդի, 12. Մայր Յովհաննէս եպիսկոպոսի և քոյր Զաքարիայի և Իվանէի Նեզաւփ. 13. Սևադայ և 14. Սենեքերիմ թոռն աւագ Սենեքերիմայ. եղբարք Խաթունին տիկնոջ Հասանայ յազգէն Գիսումեանց *)։

## Ս. ԳՐԻԳՈՐ

Ս. Նշան եկեղեցու աւագ գաւթին հարաւային պատով կից գտնւում է Ս. Գրիգոր անուն սրբատաշ, սագաշէն եկեղեցին, որ հիմնուած է 1005 և վերանորոգուած 1211 թուին, Տէր Յովհաննէս Խաչենեցու ձեռքով։

Եկեղեցու չորս անկիւններում գտնուող խորանների վերայ բոլորում են ռոմանական կամարներ, որոնց վրայ հանգչում է թաղակապ ձեղունը։ Առաջի դասի խորանները մի մի հատ են, իսկ յետի դասինը՝ երեքական, միմեանց վերայ շինուած, բոլորն

*) Աւագ Սենեքերիմը Սիւնեաց վերջին թագաւորն էր, վախճ. 1104 թ.

էլ ունին պատարագամատոյց սեղաններ, այնպէս որ աւագ սեղանի հետ՝ այս եկեղեցում ինը պատարագելու սեղան կայ։

Միակ, արեւմտեան դուռը սիւնազարդ է, արաբական կրկնակ կամարով, վերեւը մի երկար եւ նեղ պատուհանով։

## Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

Ս. Նշան եկեղեցու եւ Համազասպի հանդէպ կանգնած է մի փոքրիկ, սրբատաշ քարերով շինուած եկեղեցի։ Այս կառուցել է Գեսումեանց ազգից Խաթուն տիկինը, որ Գատի, Տաուշի, Գարդմանի, Տէրունականի եւ այլ գաւառների տէր Զաքարէի կինն էր, իւր երկու եղբայրների մահուան յիշատակի համար, Յովհաննէս եպիսկոպոսի առաջնորդութեան ժամանակ։

Եկեղեցին քառանկիւնի մի շէնք է, անսիւն։ Չորս կիսասիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ, որոնց վրայ բարձրանում է չորս պատուհանաւոր կաթուղիկէն։ Եկեղեցին ունի միայն մի պատարագամատոյց սեղան։ Մի մի նեղ եւ երկար պատուհան բացւում են իւրաքանչիւր պատի մէջ։ Միակ, արեւմտեան դուռը սիւնազարդ է եւ քանդակներով եզրափակուած։

## ՀԱՄԱԶԱՍՊ

Այս շէնքը կառուցել է 1257 թուին Համազասպ կոչուած Տէր Յովհաննէս արքեպիսկոպոսը, որի անունով եւ շէնքը Համազասպ է կոչւում։ Որոշապէս յայտնի չէ, թէ սա ինչ է եղել։ Դռան վրայի արձանագրութեան մէջ ասուած է, թէ . . . շինեցաւ «մեծափառ տունս Աստուծոյ»։ Կիրակոս Գանձակեցին էլ գրում է, թէ Համազասպը «շինեաց եկեղեցի հրաշալի, եւ տեղի ուր զանգակն կախեն, եւ ժամատուն մի մեծ եւ սքանչելի» (էջ 36), սակայն սա եկեղեցու նմանութիւն չունի, իբր գաւիթ էլ կից չէ մի որեւ է եկեղեցու։ Ուստի եւ կարծում են, թէ սա խորհրդարան պիտի լինի, միայն յայտնի չէ, թէ տեղական իշխանների, թէ վանական միաբանութեան համար։

Ամբողջ շէնքը սրբատաշ քարերից է շինուած, երկարու-

Digitized by Google

թիւնն է 39 արշին, նոյնքան էլ լայնութիւնը, իսկ բարձրութիւնը 49 արշին։ Պատերի հաստութիւնը 8 ոտնաչափ։

Չորս ամբողջական և ութ կիսասիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ։ Չորս սիւների կամարները միանում են մի մանեկաձև շրջանակով, որի վրայ բարձրանում է ութ անկիւնանի մի գմբէթ, ծայրին լոյսի համար մի մեծ բացուածք։ Գմբէթի ութ կողմերից իւրաքանչիւրը կամարակապ քանդակ ունի, մէջ տեղը մի մի վարդ քանդակուած։ Կիսասիւների կամարները միանում են կամարակապ ձեղունով։

Ամբողջական սիւներն այսպէս են՝ ութանկիւնանի քարէ պատուանդանի վրայ կլորաձև ներքնախարիսխ է դրուած, որի վրայ բարձրանում է $2^1/_2$ արշին բարձրութեան միակտուր, գլանաձև քարէ բունը, կրելով իւր վրայ ներքնախարիսխի նման կլոր և ապա քառակուսի վերնախարիսխ։

Երեք պատերի մէջ բացուած են մի մի նեղ և երկար, իսկ արևմտեանի մէջ մի կլորակ (rosace) պատուհան, որի ներքև մի կամարակապ դուռն։

Յայտնի չէ թէ երբ և ում ձեռքով այս շէնքի արևելեան պատի մէջ տեղը քանդուած է և չորս աստիճանաւոր սանդուղ շինուած, որով բարձրանում են մի փոքրիկ, առանձին կամարակապ ձեղունով սեղան, ուր կան երկու խորհրդանոց և մի վէմ քար։

Համագասպի մէջ կան մի քանի տապանաքարեր, հետևեալ տապանագրերով.

*Այս է հանգիստ Ամիր Սարգսի՝ Խմոտ եղբօր որդւոյն։*

*Այս է հանգիստ Խուկաշին՝ Դիլզար ասաց եղբօր որդւոյն։*

*Ջնասաղին ՇՂԴ* (1145). մնացածը եղծուած է։

## ՊՈՂՈՏԱՁԵԻ ԳԱՒԻԹ

Ս. Նշան եկեղեցու և Համագասպ կոչուած շէնքի միջև կայ մի պողոտաձև գաւիթ, որ Ս. Նշանի հիւսիսային և արևելեան կողմերը պատելով գալիս է մինչև միաբանների սենեակները։ Այս գաւիթը հիւսիսից սիւնապատ որմերով, աղեղնաձև

կամարներով բարձրանալով մինչև Ս. Նշանի հիւսիսային պատուհանը և ապա ցածրանալով միանում է այս կաթուղիկէ եկեղեցու հաստատուն որմերին։ Այս պղոտաձև գաւթի ամբողջ յատակը ծածկուած է գերեզմանաքարերով։ Գաւթի հիւսիսային կողմում գտնւում է Մուկն իշխանաց իշխանի որդի Հոնաւոր իշխանի գերեզմանը, որի վրայ կայ կամարակապ ծածք, իսկ նրա վրայ, գաւթից դուրս, մի փոքրիկ մատուռ, որպէսզի պատարագիչ քահանան այս մատրան սեղանի առաջ կանգնած միջոցին, ոտը ուղակի այս շիրմի վրայ լինի։

Գաւթի մէջ, այս Հոնաւոր իշխանի գերեզմանի վրայ կանգնած է մի գեղեցիկ խաչքար, որի շուրջը գրուած է.

*Ես Հոնաւոր որդի Մկան իշխանաց իշխանի անժամանակ եղի ի կենաց եւ ի սուգ մեծ թողի ծնաւղաց իմոց. արդ որք կարդայք, զիս յաղաւթս յիշեսջիք: Ի թուին Հայոց ՆԾԲ.* (1003)։

Սրա մօտ մի կարմիր քերուրաքանդակ խաչքարի վրայ գրուած է.

*Քրիստոս ողորմի Վաչէի յիւրում գալստեան. Թ. ՈԾ*։ (1201)։

Այս խաչքարերի առաջ գտնւում են նշանաւոր իշխանների գերեզմաններ, անտապանագիր ահագին քարերով ծածկուած։ Յովհաննէս արքեպիսկոպոսի եղբօր որդի՝ Թիթվասան իշխանի լայնանիստ տապանաքարի վրայ, պատին կից կանգնած է մի մեծ խաչքար, որ կրում է այն միևնոյն արձանագրութիւնը, ինչ որ կայ Ամենափրկիչ խաչի յետևի կողմում։

## ԵՐԵՔ ԽՈՐԱՆ

Համազասպի հիւսիսային կողմը միմեանց կից շինուած են երեք լժաղակապ խորան, մի մի պատարագամատոյց սեղանով. մի մի փոքրիկ, նեղ ու երկար պատուհանով, և մի մի դռնով, գեղեցիկ քանդակներով եզրափակուած։ Խորանների վրայ կանգնեցրած են մի մի հրաշագեղ խաչքար, որոնցից առաջինի վրայ քանդակուած է Աստուածածինը՝ գրկում Յիսուս, և հրեշտակը խնկարկում է նրան։ Սրա յետևը գրուած է.



Крестъ въ Ахпат-
скомъ мон.

Ամենափրկիչ խաչը
Հաղբատում.

Croix à Haghbate.

Digitized by Google

Ի թուին Հայոց ՈԿ (1211), անուամբն Աստուծոյ ես Նասմադինս որդի Սմբատայ՝ թոռն Ուքանայ եւ որդիք իմ Սմբատ եւ Վահրամ յուսացաք ի սուրբ Նշանն Հաղբատայ եւ եդաք ի տեղւոջ աստ զգերեզմանս մեր եւ զոր թագաւորաց թագաւորն Գէորգի եւ դուստրն նորա Թամար վասն եաս ծառայութեան զՏոփի սիգելով մեզ էին տուեալ եւ որ անդ զԱրեւունքն շինական եւ զԿեչեւնուտի այգին վասըն Զաքարիայի Շահնշահին եւ Իւանէի արեւշատութեան եւ մեր մեղաց թողութեան։ Եւ Տէր Յոհաննէս եւ միաբանքս եսուն մեզ գ՚ժողւոյ Գալստեան պատարագն, եւ զայն աւրն որ մեզ տուած է, ի մեր արդեանց սեղան դնեն. ով խափանէ մեր մեղսացն տէր է. եւ որ կատարէ, աւրհնին յԱստուծոյ։

*Երկրորդ խորանի խաչաքարը չկայ, ուստի և յայտնի չէ, թէ ով է կանգնել, միայն դրան ճակատաքարի վրայ գրուած է.*

Սուրբ Յարութիւն աւգնեա ապաւինելոյս ի քեզ Բարսղի։

*Երրորդ խորանի վրայ կանգնեցրած խաչը ներկայացնում է Աստուածածինը բռնած Յիսուսին գրկում։ Սրա էլ յետևի երեսում գրուած է.*

Ի թուին Հայոց ՈԿԹ (1220) յառաջնորդութեան տեառն Յովհաննիսի սուրբ ուխտին Հաղբատայ ես Քուրդս որդի Սմբատայ՝ եղբայր Տեառն Բարսղի շինեցի զեկեղեցիս եւ զպարիսպս ի վերայ հանգստարանի իմոյ վասն փրկութեան հոգւոյ իմոյ եւ ոչ ժամանեցի կատարել, զի կոչեաց զիս Տէր. եւ մեք Սմբատ եւ Ուքան որդիք նորա կանգնեցաք զխաչս եւ աւրհնեցաք զեկեղեցիս, որք երկրպագէք յաղաւթս ձեր յիշեցէք զմեզ եւ զծնողս մեր։

*Այս խորանների առաջ 14 դերեզման կայ վերոյիշեալ իշխանների տոհմից։*

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ԽԱՉ

*Ս. Նշան եկեղեցու հիւսիսային դրան առաջ, դաւթում, չորս արշին բարձրութեան մի քառանկիւնի պատուանդանի վրայ կանգնացրած է կարմիր քարից մի չափազանց գեղեցիկ խաչքար, որի վրայ քանդակուած է Քրիստոս խաչուած. խաչի ներքև կանգնած են Աստուածածինը և Մարիամ Մագդաղենացին և ուրիշ երկու կին, որ չոքած՝ նայում են Յիսուսին։ Փրկչական խաչը և պատկերները շրջապատուած են կամարով, իսկ խաչի վրայ նկարուած է ամպ՝ Յիսուսի մերկութիւնը ծածկելու։*

Կամարի շուրջը աջ և ձախ կողմում քանդակուած են առաքեալներ, որ ձեռքերը վերև բարձրացրած՝ ապշած նայում են խաչուած Յիսուսին։ Խաչելութեան պատկերի վերև երևում են երկու սերովբէն'րի պատկերներ, որոնք սկիհը ձեռքերին գալիս են ժողովելու Փրկչի բևեռած ձեռներից և ոտներից հոսող արիւնը։ Իսկ սրանից բարձր՝ կապուտակ երկնքի վրայ աջ կողմում արեգակը, ձախում՝ լուսինը, երկուսն էլ խաւարած։ Փառահեղ խաչը կանգնած է երկրագնդի վրայ, ուր կայ նա'և Ադամի գլուխը։ Երկրագնդի շուրջը փորագրուած է. Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զօրութեանց, և սրա մօտ. Սուրբ Աստուած, սուրբ եւ հզաւր, սուրբ եւ անմահ՝ որ խաչեցար, ողորմեա Տէր Յովհաննիսի սացողի սմա։

Իսկ խաչի վերև փորագրուած է՝ *«Սա է թագաւոր Հրէից»* և *«Ձեռք՝ որ զերկինս արարին՝ տարածեցան ի խաչին»*։

Այս միակտուր խաչքարի վրայ դրուած է մի ուրիշ խաչքար, որի վրայ քանդակուած է Քրիստոսի համբարձումը և գրուած է։

*Համբարձաւ Աստուած աւրհնութեամբ եւ տէր մեր ձայնիւ աւրհնութեամբ*, և սրա մօտը, *Փառք Տեառն ի տեղւոջ իւրում*։

Համբարձող Քրիստոսի աջ և ձախ կողմը նկարուած են երկու հրեշտակ, երկու բոցեղէն սուր ձեռքերին, և երկու մարդ՝ սպիտակ հանդերձներով ծածկուած։

Թէ ով է կանգնել այս խաչը երևում է աջ կողմի վրայ եղած հետևեալ արձանագրութիւնից.

*Ի թուին ՉԻԲ* (1273) *յիշխանութեան եւ ի տէրութեան սուրբ ուխտիս աթաբէգ Ամիր սպասալար պարոն Սաթունին՝ ես Տէր Յոհաննէս կանգնեցի զխաչս Ամենափրկիչ աւգնական պարոն Սաթունին եւ յիշատակ հոգւոյ իմոյ*։

Այս Յովհաննէսը ամփոփուած է Ամենափրկչի առաջ և ունի այս տապանագիրը. *«Այս է հանգիստ Տէր Յովհաննիսի թուին ՊԻԴ* (1375).



*Колокольня Ахпатскаго мон.* *Հաղբատի զանգակատունը.* *Clocher du mon. de Haghbate.*

Digitized by Google

## ՆՇԽԱՐԱԽՈՒՑ ԿԱՄ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Սա գտնւում է Ս. Նշան եկեղեցու արեւելեան կողմը եւ նրան կպած է մի փոքրիկ դալիճով։ Կառուցել է Յովհաննէս արքեպիսկոպոս Խաչենեցին։

Սա մի անսիւն շէնք է. իւրաքանչիւր պատին կից բարձրանում են երկական գեղեցիկ կիսասիւներ, իրր նեցուկ այն ռոմանական կամարներին, որոնց վրայ բարձրանում է քառանկիւնի մի շրջանակ, կրելով ութանկիւնանի մի գմբէթ, ծայրը բաց, լոյսը թափանցելու համար։ Սրա հանդէպ, յատակի վրայ մի քարէ փոքրիկ աւազան կայ, որի մէջ հաւաքւում է այդ բացուածքից ներս թափուած անձրեւի ջուրը։

Պատերի մէջ կան հինգ հատ շաւական մեծ, կամարակապ դարակներ, գրքեր դնելու կամ այլ իրեր պահելու համար։

Միակ. արեւմտեան կողմի դուռը շատ պարզ է։ Իսկ սրա առաջ կայ մի տապանաքար հետեւեալ տապանագրով. *Այս է տապանն Ազիզ Մահտեսունի, որ եղեւ պատճառ սուրբ եկեղեցւոյս վերստին նորոգման։*

## ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆ

Ս. Նշանի եւ Համազասպի արեւելեան կողմը, փոքր ինչ հեռու, առանձին կանգնած է զանգակատունը, որ շինել է Համազասպ արքեպիսկոպոսը 1215 թուին։

Սա սրբատաշ քարերով շինուած մի գեղեցիկ շէնք է, քառանկիւնի, 16 արշին երկարութեան եւ նոյնքան լայնութեան։

Զանգակատան իւրաքանչիւր կողմը ուղիղ անկիւնով ներս է ընկած, կրելով իւր վրայ մի գեղաքանդակ կամար։ Իւրաքանչիւր պատի վրայ կայ մի գեղեցիկ, քանդակներով շրջապատուած, երկար եւ նեղ պատուհան։

Գմբէթը հանգչում է եօթ գեղեցիկ, կլոր սիւների վրայ եւ կրում է մի քանի զանգակներ։

Զանգակատունը ներքուստ անսիւն է. արեւելեան կողմը կան երկու խորան պատարագամատոյց սեղաններով։ Սրանց

կողքից մի քարաշէն, նուրբ սանդուխտ բարձրացնում է մի ուրիշ խորան, որի կողքից մի ուրիշ քարէ սանդուխտ հանում է մի սրահ։ Այստեղ չորս ամբողջական և ութ կիսասիւների վրայ բոլորուող կամարների տակ չորս խորաններ կան, նուիրուած չորս Աւետարանիչներին։ Իսկ սրա վրայ բարձրանում է գմբէթը։

Զանգակատունը ունի միայն մի դուռն, արևմտեան կողմից, որ կամարակապ է և սիւնազարդ։

Զանգակատան առաջ կան գերեզմաններ, որոնցից մի քանիսի վրայ կարդացւում է հետևեալ տապանագրերը.

Մի օրօրոցաձև տապանաքարի վրայ. *Արձանս այս վսեմական է Սոփեստոսի Սարկաւագի։*

Կիրակոս Գանձակեցու ասելով սրա մահը պատահել է 1109 թուին։ Սրա մօտ կան ուրիշ երեք օրօրոցաձև գերեզմանաքարեր, առանց տապանագրերի։ Սրանցից մինը Կիրակոս Գանձակեցու ասելով Մխիթար Գոշի աշակերտ Թորոս վարդապետինը պետի լինի։ Զանգակատան դռան հարաւային կողմում գտնւում է Յովհաննէս վարդապետ Երզնկեցու, Պլուզ մականուանածի գերեզմանը, որի վրայ հասարակ փոքրիկ քար է ձգած, վերան փոքրիկ գաւազան և խաչ, վերևում՝ վեղար քանդակուած, առանց մի որևէ տապանագրի։ Եփրեմ կաթուղիկոսը կանգնել է 1824 թուին մի օրօրոցաձև տապանաքար՝ այս տապանագրով.

*Արձան մահու՝ Երզնկացւոյ,*
*Յովհաննէսի՝ ծործորեցւոյ,*
*Սա ժիր մշակ՝ եկեղեցւոյ,*
*Սուրբ վարդապետ՝ Ազգիս մերոյ։*
*Արդ մականուամբ՝ Պլուզ կոչի,*
*Աստ ի Հաղբատ՝ ի կենաց զրաւի,*
*Իսկ ի գալ աստ՝ Տեառն Եփրեմի,*
*Հայոց մեծի՝ Հայրապետի,*
*Վասն հոգւոյն՝ յիշատակի*
*Կանգնէ զտապանս յայսմ ամի։*

*Թիւ մահուան* 1326. *Թիւ նորոգման տապանաքարին* 1824-*ն*։

**Սրա մօտ կայ մի տապանաքար, առանց թուականի, հետեւեալ տապանագրով.** *Հայրն մերոյ հոգեւորի Դաւթայ վարդապետի Քոքայրեցւոյ է տապանս. յիշեա ի Տէր սուրբս։*

**Մի ուրիշ տապանաքարի վրայ.**

*Այս է հանգիստ Պետրոս հայրապետին թ. ՋԽ.* (1491).

**Սրա մօտ.**

*Կիւրակոս եպիսկոպոս տեղոյս. ՌՀԸ* (1609).

**Սրա մօտ՝**

*Այս է հանգիստ կուսակրօն Ղուկաս քահանային. թվին Ռ.* (1551)։

**Զանգակատան հարաւային կողմում.**

*Արժան մահու կրօնաւորի,*
*Աստուածատուր վարդապետի.*
*Տեղեաւ էր սա Շինողեցի.*
*Ի կէսօրեայ իւր հասակի*
*Ցայսմ աշխարհէ առ Տէր փոխի։*
*Ի* 1842 *ամի.*

**Սրա մօտ՝**

*Արժանս այս Պետրոս վարդապետի,*
*Սա յորջորջի Սարգսի որդի.*
*Գիւղեաւ ընիկ Շինողեցի,*
*Ի բազում ամս ջանացի*
*Եւ զիմ տապանս այսր եդի,*
*Եւ որք դիպիք՝ տուք ողորմի։*
1846 *ամի։*

**Փոքր ինչ հեռու, մի հին խաչքարի վրայ.** *ՆՀԲ թուին* (1023) *Ես Մակար ոտ անարժան... կանգնեցի խաչս յաւգնականութիւն հոգւոյ իմոյ։*

**Զանգակատան հարաւային կողմը գտնուող մի գերեզմանաքարի վրայ նկարուած է մի կնոջ պատկեր, բերանը շորով փաթաթած, մազերի հաստ հիւսը աջ ուսի վրայով իջնում է մինչև գօտին. ձեռքին մի որթ բռնած։ Պատկերի շուրջը սեւնազարդ կամար է, վերև գրուած է** *Խոսրովի... տապան,..*

Երևելեան կողմում երկու խաչքար կան, որոնցից մինի վերայ՝

**Թվ. ՊՁԴ.** (1435) *Սուրբ Նշան Տէրունական*

*Դաւիթ քահանայի լեր աւգնական:*

**Միւսի վրայ.**

*Աստուած ողորմի Դաւիթ վարդապետին ՋԾԱ* (1502),

Զանգակատան դռան մօտ է Հաղբատի վերջին առաջնորդ Զաքարիա արքեպիսկոպոս Գուլասպեան Բէհրուտեանցի շիրիմը, որի տապանաքարի վրայ փորագրուած է եպիսկոպոսական թագ, խաչ և գաւազան, և հետևեալ խօսքերը.

*Էին անեղին ժիր պաշտօնակիր.*
*Տէր Զաքարիաս բաքուն անպատիր.*
*Հովիւ քաջակիրթ աշխոյժ եւ ընտիր,*
*Արքեպիսկոպոս Էջմիածնի ծիր:*
*Քարոզ սուրբ տառից անխոնջ անձանձիր*
*Փառաց Արամեանց յար խուզախնդիր.*
*Զարմին Գուլասպեանց վեհ արժանագիր,*
*Տոհմին Բէհրուտեանց ոստ վայելչաղիր:*
*Այլ ահ, եւ աւաղ տունկդ բարեդիր,*
*Զիա՞րդ զօսացար մորշ սաղարթակիր,*
*Իններեակ հնգիւք տիօք ծաղկածէր*
*Ելեր ի կենացս կեանս յանախտակիր:*
*Ցեղնորդք յարգութեամբ ելցեն ի խնդիր,*
*Աւաղ զի յարդեացս յանգէտս կացիր.*
*Ողբով անդադար հեծէ վշտակիր*
*Ծառայ քո Գրիգոր եւ եղբայր կրտսեր.*
*Այլեւ աղեխարշ դառն արտասուալիր,*
*Ընծայէ դրուագս եւ զեղերագիր:*
*Ի* 1835 *ամի Յունիսի* 5 *աւուրն:*

## ՍԵՂԱՆԱՏՈՒՆ (ՉԻԹԱՀԱՆՔ)

Զանգակատան հիւսիսային կողմը գտնւում է սեղանատունը: Սա նոյնպէս սրբատաշ քարերով շինուած մի գեղեցիկ, մեծ շէնք է, 43 արշին երկարութեան և 13 արշին լայ-

Digitized by Google

նութեան։ Ներքուստ երկու գեղեցիկ սիւներով և սրանց վրայ բոլորուող կամարով բաժանւում է երկու մասի, որոնցից իւրաքանչիւրը վեց կիսասիւների վրայ կամարներ տալով վերջանում է նախ քառանկիւնի և ապա ութանկիւնանի բաց գմբէթլուսամուտով. Արևելեան պատի մէջ կայ մի կամարակապ ներսանկուած, ուր մի գեղեցկաքանդակ խաչքար է կանգնեցրած։ Դուռը սիւնազարդ է, կամարակապ և երկու կողքերին ունի մի մի փոքրիկ, նեղ և երկար պատուհան։

Յետին ժամանակներում այս գեղեցիկ շէնքը ձիթահանք են դարձրած եղել, որի քարը մինչև այժմ էլ ընկած մնում է, իսկ այժմ յարդանոց է։

## ՊԱՐԻՍՊ

Հաղբատի վանքը շրջապատուած է մի հաստ, բոլորակաձև պարիսպով, որ ունեցել է վեց աշտարակներ։ Պարսպի երկայնութիւնն է արևելքից արևմուտք մօտ հարիւր արշին, իսկ լայնութիւնը՝ ութսուն և հինգ արշին։ Ունի երկու կամարակապ դուռն, որոնցից փոքրը բացւում է դէպի գիւղը, իսկ մեծը՝ արևելեան կողմը, դէպի աղբիւրը։ Այս պարիսպը յայտնի չէ թէ ով է շինել, միայն ԺԴ դարում Հայոց իշխան Սմբատի որդի Քուրդը ընդարձակել է հիւսիսային կողմից դէպի արևելք, իսկ արևելեան դուռը շինել է Համազասպ եպիսկոպոսը, ինչպէս ցոյց է տալիս պարսպի մէջ եղած փոքրիկ խաչքարի արձանագրութիւնը. *Ի թուին ՈՂԵ* (1246) *յառաջնորդութեան տեառն Համազասպայ շինեցաւ...*

## ԱՂԲԻՒՐՆ

Վանքի պարսպից դուրս, արևելեան կողմը գտնւում է սառնորակ ջրի աղբիւրը, որ սուրբ Լուսի լեռնից խողովակներով գալիս թափւում է հինգ քարէ աւազանների մէջ, որոնց վրայ գեղեցիկ կամարներով քարէ սրահ է շինուած. մօտն էլ մի փոքրիկ լճակ, ուր հաւաքւում է ջուրը՝ պարտէզներին ջուր մատակարարելու։

Այս աղբիւրը շինողը յիշատակուած է որահի կամարի վը-րայ այսպէս. *Ի թուին ՉԷ* (1258) *Հաստատուած կամարա-կապս ի Հայր Յովհաննիսէ ի հալալ ընչից իւրոց, որում ողորմեսցի Քրիստոս՝ տալով հոգւոյ նորա ի լուսեղէն յար-կաց եւ յանմահական ջրոյն. Ամէն:*

Աղբիւրից երկու վերստ հեռու, դէպի սուրբ Լուսի լեառը գտնւում է աղբիւրի քարաշէն աւազանը, որ շինել է Եփրեմ կաթողիկոսի հետ Հաղբատ եկած Անտոն արքեպիսկոպոսը, ինչ-պէս երեւում է շինուածքի վրայ եղած հետեւեալ արձանագրու-թիւնից.

*Զովացուցէ Տէ՛ր զհոգին*
*Անտոն արքեպիսկոպոսին.*
*Աստի մինչեւ ական տեղին*
*Նոր նորոգեաց արդեամբ անձին.*
*Տեղեաւ էր սա Երեւանցի*
*Բնիկ միաբան Էջմիածնի.*
*'ի* 1827 *ամի:*

Այս ջրից մի փոքրիկ մաս տարուած է վանքի պա-րսպի մէջ:

## ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆ

Աղբիւրից բարձր մինչեւ Կուսանաց անապատը, փոքրիկ հարթ բլրակի վրայ գտնւում է հասարակաց գերեզմանատունը, ուր կան երկու փոքրիկ մատուռների աւերակներ: Արեւմտեան կողմը երկաստիճան բարձր պատուանդանի վրայ կանգնած է մի գեղեցիկ, կապուտակ խաչքար՝ Սուրբ Սարգիս անունով, որի թիկունքին գրուած է՝ *Շնորհիւն Աստուծոյ ես Յակոբ եւ Մարգարէս յաջորդութեան Տեառն Համազասպայ՝ կանգնեցաք զսուրբ Սարգիս բարեխօս մեզ եւ Մխի-թար վարդապետին Քռայրեցւոյ եւ Հայր Բարսեղի եւ ննջեցելոց մերոց: Որք երկրպագէք Քրիստոսընկալ սուրբ նշանիս զմեզ յաղօթս յիշեսջիք ի Տէր. Յիշողքդ աւրհնիք ի Տեառնէ. ի թիւս ՉԴ* *).

*) 1275.



*Дѣвичій мон. въ Ахпатѣ.* *Կուս. մենաստ. Հաղբատում.* *Couvent de femmes à Haghbate.*

Digitized by Google

Այս խաչի առաջ միմեանց կից հինգ գերեզմաններ կան, որոնցից երեքի գերեզմանաքարերը օրօրոցաձև են, առանց տապանագրի։

Բազմաթիւ գերեզմանների վրայ կանգնած են կամ խաչքարեր, կամ օրօրոցաձև և կամ տափարակ գերեզմանաքարեր, որոնցից միայն քչերի վրայ կան տապանագրեր. սրանցից նշանաւոր են՝ *Ի թուին ՈԾԶ* (1207) *կանգնեցաւ նշանս տէրունական ի վերայ հանգստարանի պատուական քահանային Գրիգորոյ, որք երկրպագէք յիշեցէք ի Քրիստոս:*

*Ի թուիս ՈՁ* (1231) *կանգնեցաւ Խաչս ի վերայ հանգստարանի սուրբ քահանայի Յովհաննիսի եւ նորին հարազատի Գրիգորոյ եւ Սողոմոնի եւ այլ ընտանեաց նորին եւ եղբաւր որդեաց Առոմայ եւ Աբրահամու, որք երկրպագէք, յաղաւթս յիշեցէք:*

*'Ի թուիս ՈՂԶ* (1247) *կանգնեցաւ խաչս ի վերայ հանգստարանի անպիտան աբեղայիցս—Անդրէասի, Պաւղոսի եւ Յովսէփայ, որք երկրպագէք յաղաւթս յիշեսջիք։*

## ԿՈՒՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏ

Վանքից դէպի արևելք, մօտ մի վերստ հեռաւորութեամբ, աղբիւրից և գերեզմանատնից բարձր, Տէգունական լեռան բոտորոտում գտնւում է մի փոքրիկ, գեղեցիկ եկեղեցի, որի հիմնադիրը յայտնի չէ, միայն հետևեալ արձանագրութիւնները պահել են վերանորոգողների անունները.

Դռան ճակատակալ քարի վրայ. *Ի թուին ՌՃԻԵ**) *բարեպաշտ ազատ յազգաց Նկուլեանց մեծահամատ Զալի՝ որդի Շահ-Ղուլունի՝ ողորմած ամուսնաւ իւրով վերստին նորոգեաց զտաճար Տիրամօրն:*

Մի գերեզմանաքարի վրայ.

Թուին ՌՃԼ (1681). Այս է տապան Սարգիս վարդապետին՝ ազգաւ Խոցիկեցի եւ Նորոգող սուրբ եկեղեցւոյս.

Այս եկեղեցին, որ Կուսանաց անապատ է եղել, մի գմբէթաւոր, անսիւն շէնք է, մի պատարագամատոյց սեղանով,

*) 1676 Փրկ.

առանց խորանների։ Չորս փոքրիկ և նեղ լուսամուտ, գմբէթի նոյնչափ երկար և նեղ լուսամուտների հետ լոյս են սփռում եկեղեցու մէջ։ Մլակ, արևմտեան դուռը սիւնազարդ է և կամարակապ։

Անապատը շրջապատուած է պարսպով, որի մէջ կան կիսաւեր սենեակներ և մի ցամաքած աղբիւր։

Եկեղեցու դռան մօտ, հարաւային կողմում երեք դամբարան ամփոփում են հաղբատի նշանաւոր արքեպիսկոպոս Յովհաննիսի և Գէորգի նշխարները։ Տապանաքարերը դագաղաձև են, որոնց առաջ կանգնեցրած են մի մի գեղեցկաքանդակ խաչքար.

Սրանց վրայ գրուած է.

*Այս է հանգիստ Տեառն Յովհաննիսի:*

*Այս է հանգիստ Տեառն Գէորգայ:*

Երրորդ խաչքարի վրայ տապանագիր չկայ։

Արևմտեան կողմը կան նոյնպէս երկու մեծ գերեզմանաքար, որոնցից մինի վրայ գրուած է.

Արձանս այս փսեմական՝ է Սոփեսոսի Տէր Ստեփանոսի, կազմեալ ի տէր Յովհաննիսէ քուերորդւոյ իւրոյ ի թւիւ ՈՀԴ (1125), յաղաւթս յիշեցէք վասն Տեառն.

Թէ Տէրունական և թէ Սուրբ-Լուսոյ լեռան գագաթին կան մի մի փոքրիկ մատուռ, որոնց դռների առաջ կան մի մի գերեզման, առանց տապանագրի. աւանդաբար ասում են, թէ սրանք ճգնաւորների տեղեր են, և շատերն ուխտ են գնում այդ տեղերը։

## ՍՈՒՐԲ ԶՕՐԱՎԱՐՔ

Վանքի պարսպից հարաւ, Սեղիկ գետակի մօտ, մի հարթութեան վրայ գտնւում է մի աւերակ եկեղեցի իւր դաւթով, որի դռան վերև գրուած է.

Կամաւ Նախախնամողին Աստուծոյ եւ յառաջնորդութեան Տէր Յովհաննիսի ի թուին Հայոց ՉԻԸ *) ես Բարսեղ Ք․հանայ կանգնեցի զսուրբ Զաւրավարքս, եւ շինեցի զխորանս լուսոյ յանուն սրբոցս մե-

*) 1279 Փրկչ.

ծառ ջանիւ եւ հրամանաւ անձամբ իմով՝ ի փրկութիւն հոգւոյ, եւ յիշատակ մեզ եւ ծնողաց եւ սնուցողացն...

Եկեղեցու մօտ կան մի քանի գերեզմաններ, գեղեցիկ խաչքարերով, և մի գիւղատեղի։

## ՋԻՐԱՇԷՆ ԵԿԵՂԵՑԻ

Վանքի պարսպի հարաւ արևմտեան կողմը, դրսից, գիւղին մօտիկ, մի հարթութեան վրայ, գտնւում է մի սակաշէն, օրօրոցաձև, փոքրիկ մատուռ, անսիւն և միայն մի պատարագամատոյց սեղանով։ Արևմտեան պատի բարձրում քանդակուած է մի խաչ, կողքերին մի մի աղաւնի, վերև մի մի բլիթ կամ վարդ. Ներքևում բացւում է միակ դուռը՝ երկու կողմից սիւնազարդ կամարների մէջ ամփոփուած մի մի գեղանկար խաչերով զարդարուած։ Սրա վերև մի երկար և նեղ պատուհան կայ, որից բարձր քանդակուած է մի բազէ, ճանկերում մի աղաւնի բռնած։

Դռան ճակատի կամարակալ քարի վրայ գրուած է.

'Ի ՈԽԴ *) Ես Սեյամայ նուաստ աղախին Քրիստոսի վերստին շինեցի զսուրբ Աստուածածինս՝ որ խախտեալ էր 'ի հիմանց վասն մեր հայրենի գերեզմանացս. եւ ինձ ետուն երկու պատարագ զԱւետեաց Աստուածածին եւ Մինասայ աւրն ի կենդանութեան իմում Դաւթի. եւ յետ իմ մահուանն՝ ինձ ով խափանէ՝ Յուդայի կցորդ է եւ մեր խղճիս տէր. ամէն.

Եկեղեցու դռան մօտ տասերկու գերեզմանաքար կայ, որոնցից միայն երկուսի վրայ «Դաւիթ» և «Հասան» անունները են փորագրուած։

Աւանդաբար պատմւում է, թէ Հաղբատի վանքի այս կողմի դուռը միաբանութիւնը փակել է տուել, և այս մատուռի մօտ կեցողը «ջիգրու» շինել է տուել այս մատուռը, որպէսզի ստիպուած չլինի վանքի միւս դռնից եկեղեցի գնալու, ուստի և այս պատճառով եկեղեցին կոչուել է Ջիգրաշէն։

## ՍՈՒՐԲ ԿԻՐԱԿԻ

Հաղբատ գիւղի արևմտա-հարաւային կողմում, Ջղացաձորի ճանապարհին կայ մի փոքրիկ մատուռ սուրբ Աստուածածնի

*) 1195 Փկրչ.

*անունով, որ այժմ սուրբ Կիրակի է կոչւում։ Սրա մօտ, մի մեծ պատուանդանի վրայ, բարձրանում է մի գեղեցիկ խաչքար, որի վրայ արձանագրուած է.*

Յանուն Աստուծոյ ես անպիտանս Սարգիս կանգնեցի ի հիմանց զտանար սրբոյ Աստուածածնիս. արդ աղաչեմ զընթերցողսդ եւ զամենեսեանդ՝ որ երկրպագիցէք սրբոյ Աստուածածնիս յիշեսջիք յաղաւթս ձեր զծնողսն իմ, եւ զիս զվերոգրեալսդ անուն. եւ Աստուած զձեզ յիշեսցէ. ամէն. ՈԼԷ թուին*)։

*Եկեղեցու շուրջը կայ մի հին գերեզմանատուն, ուր խաչքարերը կոտրտուած կամ տապալուած են և մնում են նրանց պատուանդանները։*

## ԱՌԱՋԱԴԷՄ ԵԿԵՂԵՑԻ

*Հաղբատ գիւղի հիւսիսային կողմում կայ մի կիսաւեր եկեղեցի, Սուրբ Սիոն անունով։ Ժողովուրդն սրան «Առաջադէմ եկեղեցի է» կոչում և բացատրում է այս անունը նրանով, իբր թէ սա վանքի բոլոր շինութիւններից առաջ, Լուսաւորչի ժամանակ է շինուել։*

*Եկեղեցու շուրջը կան խաչքարեր, որոնցից մի քանիսի վրայ կան հետևեալ արձանագրութիւնները.*

'Ի թուին ՆԾԴ *) ի հայրութեան Սիմէոնի ես Աբանազինէ եւ Փիլաքսոն կանգնեցաք զսուրբ խաչս ի փրկութիւն հոգւոց մերոց եւ ամենայն երկրպագուաց իւրոց եւ յաւգնականութիւն թագաւորին մերոյ Դաւթի։

*Մի ուրիշի վրայ.*

Շնորհաւքն Յիսուսի հրամանաւ Տէր Յովանիսի գրեցաւ եւ գիրս յիշատակի... եղբարց Անդրէի, Դանիէլի, Տիրաննոյ, Գորկայ 'ի հալալ արդեանց մեր շինեցաք զսուրբ Սիոնս բարեխաւս առ Քրիստոս մեզ եւ ծնողաց մերոց. եւ ընծայեցաք ի սմա ԴՃ սպիտակ, ընածէգին հացազոմս ՈՃ... Գանձահանքն.

Մեն մի խաչաւգնէիւ զմեզ յիշել.

*Սրա ներքև.*

Այլ եւ ինն պատարագ մեզ. գ. ի Ծննդեան. գ. Զատկին. սուրբ Խաչին. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ. ով խափանէ դատի ի Տեառնէ։ Ես Տէր Յովհաննէս Զաքանզասակի զիմ էգին այլ ի սուրբ Սիոնս

*) 1188 Փրկչ.

*) 1005 Փրկչ.

տվաք. ով հակառակի կամ խափանել ջանայ. կապած է յԱստուծոյ, եւ մեր մեղացն տէր է։

Հաղբատից արևմուտք, ձորի ճանապարհի վրայ, կայ մի գեղեցիկ խաչքար, հետևեալ արձանագրութեամբ.

Յառաջնորդութեան Տեառն Համազասպայ եպիսկոպոսի Հաղբատայ... ես... կանգնեցի զխաչս. զիս եւ զծնողսն իմ եւ զԳրիգոր յիշեցէք ի Քրիստոս. ի թուին ՉԴ (1255) կանգնեցաւ սուրբ Սարգիս։

Մի ուրիշ խաչքար էլ կանգնած է գիւղից բաւական հեռու, դէպի հիւսիս, Խրամաձորի ճանապարհին և ունի այս արձանագրութիւնը.

Յառաջնորդութեան Տեառն Յոհաննիսի՝ ես Մխիթար սպասաւոր սրբոյս կանգնեցի զխաչս ի բարեխաւսութիւն ինձ եւ ծնողաց իմոց, եւ եղբաւրորդւոյ իմոյ Սարկաւագին. որք երկրպագէք, յաղաւթս յիշեցէք։

## ՀԱՂԲԱՏԱՁՈՐ

Հաղբատ գիւղից դէպի արևմուտք իջնում է փոքր ի շատէ հարթուած մի ճանապարհ, որի վրայ տեղ տեղ խաչքարեր են կանգնած, որոնցից մինը «Կոտրած քէմ» է կոչւում և ունի հետևեալ արձանագրութիւնը.

Ի թուին ՈԾ (1201) ես Թումայ անարժան քահանայ կանգնեցի զխաչս բարեխաւս... ինձ եւ ծնողաց իմոց եւ եղբարց որք երկրպագէք՝ յիշեցէք ի Քրիստոս։

Սրանից ներքև գտնւում է Հաղբատաձորի գերեզմանատունը, ուր բացի մի քանի սրբատաշ խաչքարերից, կայ նաև «Ազաւէի տապան» անունով յայտնի փոքրիկ գերեզմանը *)։

Այս ձորը պատած է այգիներով, որոնցից երկուսը պատկանում է Հաղբատի վանքին։ Իսկ քարաշէն կամուրջից վերև գտնւում է վանքի ջաղացատեղին, ուր կայ մի փոքրիկ մատուռ, և սրա մօտ, դէտի ափին, մի գեղեցիկ խաչ, որի վրայ արձանագրուած է, թէ 1086 թուին Հաղբատի առաջնորդ Տէր Սարգիսը շինել է մի ջրաղաց և տնկել մի այգի։

Բացի սրանից կան նաև մի քանի ուրիշ գեղեցիկ խաչքար, որոնց վրայի արձանագրութիւնները զետեղուած են արձանագրութիւնների բաժնում։

*) Այս մասին տես հնութիւնների բաժնում.

## ՎԱՆՔԻ ՍՐԲՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Հաղբատի վանքում նախկին բազմաթիւ սրբութիւններից մնացել է միայն Ս. Նշանը, որ պահւում է համանուն եկեղեցում ամենայն զգուշութեամբ։ Սա խաչափայտի մասն կրող մի ականակուռ խաչ է, արծաթապատ պահարանի մէջ։ Պահարանի վրայ քանդակուած են Քրիստոսի գերեզմանը և եօթ սրբերի պատկերներ, իսկ յետևի կողմում արձանագրուած է.*

**Յետ աւերման աշխարհին վրաց ի պարսից Աղա Մահմատ խանէն ի թվին Հայոց ՌՄԽԴ հրամանաւ Ռուսաց Կայսրուհւոյն Եկատերինէի ընդ զօրացն նորին եկի ի հայրենի աշխարհն իմ սակս օգնութեան եւ չոգայ ի յերկրպագութիւն վանօրէիցն մերոց Հաղբատու եւ Սանահնու, տեսի զամայութիւնս նոցա եւ զյափշտակութիւն սուրբ Նշանին Հաղբատու. ուստի կազմեցի զպահարանս եւ եդի ի սմա զիմ նշխարհս մասն ի կենաց փայտէն եւ զայլ մասունս սրբոց եւ ընծայեցի Հաղբատու սբ. Նշան վանիցն ի յիշատակ ինձ յելից աստի եւ նախնեացն իմոյ Զաքարիա ամիր Սպասալարին Հայոց եւ Վրաց. նաեւ ծնողացն իմոց Ճիօշ-բէգին եւ պարոն Քեթեւանին. եւ իշխանազնեայ եղբարցն իմոց Մովսէսին, Բէժանին եւ Փարսադանին եւ բարեշաւիղ որդւոց եւ դստերաց նոցին՝ իսկ որք կարդայք յիշեցէք յաղօթս զՍանահնեցի Երկայնաբազուկ Արղութեանց Յովսէփ Արքեպիսկոպոս՝ առաջնորդ Ռուսաց երկրի ամենայն Հայոց ազգին, հիմնադիր երկուց քաղաքացն Նոր-Նախիջեւանու եւ Գրիգորիպօլու յամի Տեառն 1797 եւ թվին Հայոց ՌՄԽԶ. ի Մոսկով. ձեռամբ Դաւթի Ածրեանի։**

*Այս Աւագ Սուրբ Նշանի խաչի մէջ ամփոփուած խաչափայտի մասն այն խաչափայտի մասիցն է, որ ս. Հռիփսիմէն բերեց Հայաստան Տրդատ թագաւորի ժամանակ, և մի առժամանակ Վարագայ լեռան մէջ թաքցնելու պատճառով կոչուեց Վարագայ խաչ* *)*։ Այս խաչի մի մասը վաղուց ի վեր գտնւում էր Բագրատունեան նախարարական տան մէջ և սրբութեամբ պահպանւում էր իբրև Բագրատունեաց տան պաշտպան։ Որդւոց որդի անցնելով այս խաչը՝ ստացաւ Բագրատունի*

*) *Ճառ ս. խաչին Զաքարիայ եպիսկոպոսի Բէհբութեանց, ձեռագիր Գյ. Լբ. և Հաղբատի «Կարմիր Աւետարան»-ի յիշատակարանը։ Յիշ. Երզնկեան Հնախօսական տեղ. Հաղբատայ. եր. 79։ Վերոյիշեալ Կարմիր Աւետարանը այլևս չկայ Հաղբատում։*

Digitized by Google

Աշոտ Ողորմածը, որի բարեպաշտ ամուսին՝ Խոսրովանոյշ Թագուհին 967 թուին կառուցանելով Հաղբատի վանքը, ընծայեց նրան այս տոհմական աւանդը, որի անունով և եկեղեցին կոչուեց Աւագ սուրբ Նշան։

## ՀԱՂԲԱՏԻ ՎԱՆՔՆ ՈՒՆԻ

1) Յիսուն և մի դեսեատին վարելահող։

2). 1500 դ. արօտատեղի և անտառ։ Կալուածատէր Բարաթով վրացին տիրապետած լինելով այս հողը, վանքը յետ է պահանջում դատաստանական կարգով։

3). Երկու այգի։

Վանքը պահպանում է մի վարդապետ։

## ՔՈԲԱՅՐ

Այս, ճարտարապետական տեսակէտից շատ նշանաւոր մենաստանը գտնւում է Քոբերաձորում, որ տարածւում է Դեբեդ գետի ձախ ափին, Իգահատ գիւղից ներքև։ Լոռու բարձրաւանդակի լանջը տեղ տեղ դարատափեր կազմելով իջնում է մինչև Դեբեդ գետի ափը, որին մօտիկ և նրան ուղղահայեաց ձգւում է Քոբէրի բաւականին խոր ձորը, որի մէջ կան մի քանի արհեստական անմատչելի քարայրեր։ Սրանցից մինի միջից, գրեթէ տասն սաժէն բարձրութիւնից վայր է գլորւում մի յստակ վտակ, գեղեցիկ ջրվէժ կազմելով։ Ահա այս ջրվէժի մօտ, սաղարթախիտ ծառերով պատած մի փոքրիկ, պարսպապատ հարթութեան վրայ կանգնած են սրբատաշ, հրաշալի և մեծ եղեղեցին, իւր գաւթով, երկու փոքրիկ մատուռներ, մի զանգակատուն և մի ընդարձակ շինութիւն։

Մեծ եկեղեցին սրբատաշ քարով է շինուած. 4 սաժ. 5 վեր երկ. 5 արշ. 6 վերշ. լայն. և 7 արշ. 5 վեր. բարձ. ունի։ Այժմ միայն մնացել են արևելեան պատը և եկեղեցու ու գաւթի միջնորմը, որոնք զարդարուած են գեղեցիկ կամար-

Digitized by Google

ներով, խաչքարերով, ծաղկանկար պատուհաններով։ Եկեղեցին ներքուստ անսիւն է եղել. Հիւսիսային կողմում կայ մի խորան, իսկ հարաւայինում՝ ոչ։ Սեղանը բոլորակաձև է, երկու սրբատնով և երեք նեղ և երկար պատուհանով։ Եկեղեցու մէջ կան մեծ մեծ տապանաքարեր. Հարաւային կողմում բացւում է մի դուռն գաւթի մէջ, որ կամարակապ է և արևելեան ու հարաւային կողմերում ունի երկական կամարակապ բացուածքներ՝ երկու կեղծ և երեք ամբողջական ութանիստ սիւների վրայ բոլորուած։ Յատակի վրայ կան գերեզմանաքարեր. Գաւթին կից կայ մի կամարակապ, փոքրիկ խորան, պատարագամատոյց սեղանով. այս շէնքը դեռ ևս կանգուն է, և պատերի վրայ կրում է վրաց մեսրովբեան տառերով գրուած մի արձանագրութիւն։ Իսկ եկեղեցու արևելեան կողմում կան երկու, միմեանց կից, մինը կիսաւեր, իսկ միւսը կանգուն, փոքրիկ. թաղակապ մատուռներ, պատարագամատոյց սեղաններով։ Սրանց վրայ կայ մի քանի հայերէն, եղծուած արձանագրութիւններ, որոնցից կարելի եղաւ կարդալ հետևեալը.

† Քս ած յիշեա զՄարիամ եւ զԹուսուգան ի գալստեան քում.

ՈԲ *) ես Մարիամ դուստր Կիւրիկէի թագաւորի յազգէ Բագրատունի շինեցի զսուրբ կաթուղիկէս աւգնութեամբ քեռ իմո Թուսուգանա յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց եւ հաւրաքեր մերո Թուսուգանա եւ եղբաւր մերո Աբասա որք երկրպագէք Քրիստոսի ի սուրբ քաւարանիս յիշեսջիք ի Քրիստոս զի վասն նեղութեան տեղւոյս շատ աշխատե(ցաք).

Զանգակատունը բարձրանում է գաւթից փոքր ինչ հարաւ արևելք, ձորի անմիջապէս լանջին։ Սա մի քառանկիւնի, կամարակապ շէնք է, բոլորակաձև սեղանով և երկու մեծ սրբատնով. ունի երեք պատուհան և մի դուռն, որի աջ կողմում վրաց մեսրովբեան տառերով երկու ընդարձակ արձանագրութիւն կայ։ Զանգակատան մէջ կան մի քանի գերեզմանաքարեր և գինու կարասներ։ Այս շէնքի վրայ բարձրանում էր ութ գեղեցիկ սիւներ, կրելով ռոմանական կամարների վրայ մի գմբէթ, որտեղից երբեմն կախուած են եղել զանգակներ։ Ինչպէս լսեցի, այս գմբէթը մօտ ժամանակներս փուլ է եկել։

*) 1153 Փրկչ.

*Զանգակատան վրայ եղած արձանագրութիւններից մինի իմաստն այն է, թէ Ճաճնշահի որդին, ադխտանտների պետը, Գիորգի անունով ճգնաւորը, Ամօջի սուրբ Ճուշանի օգնութեամբ շինութիւններ և վերանորոգութիւններ է արել. իսկ երկրորդի մէջ ասուած է, որ* 1295 *թուին... Ես անարժան Մխարգրձելս, որդի Ճաճնշահի, ադխտանտների պետ, և իմ ամուսինս Վանանէն, դուստր աթաբէկ և ամիր սպասալար Սաթունի, մենք արժանի համարուեցանք կառուցանելու այս զանգակատունը և այս դամբարանը, որ մերն է, չափազանց դժուարին հանգամանքների մէջ...* [1])

*Զանգակատան մօտ գտնւում է սրբատաշ քարից շինուած մի ընդարձակ շէնք, որ յայտնի չէ, թէ ինչ՛ է եղել։ Սա* 17 *արշ. երկ.* 12 *արշ. լայն. և մօտ* 7 *արշ. բարձրութիւն ունի։ Երկու կողմում չորսական կիսասիւների վրայ բոլորում են պատին կից կիսակամարներ, որոնց մէջ բացւում են երեք մեծ և երեք փոքր և նեղ պատուհաններ։*

*Հիւսիսային պատի մէջ բացւում է մի մեծ, լայն դուռն, որի երկու կողմը ներքուստ կայ մի կամարակապ և մի քառանկիւնի խորշ։ Այսպիսի մի խորշ էլ հարաւային պատի մէջ կայ։ Ձեղունը քանդուած է։ Այս սրահի մէջ ծառեր են բուսած։*

*Քոբայրի եկեղեցու մասին կան հետևեալ տեղեկութիւնները.*

*Այս վանքը, ինչպէս երևում է մատուռի վրայի վերոյիշեալ արձանագրութիւնից, շինել է Կիւրիկէ Բ. Թագաւորի դուստր Մարիամը* 1153 *թուին։*

*Զաքարէ սպասալարի որդի Ճաճնշահը լժաղուել է Քոբայրում։* [2])

*Այստեղից է եղել Դաւիթ Քոբայրեցի* [3]) *մատենագիրը ԺԲ. դարում, որ մի քանի աստուածաբանական մեկնութիւններ ունի։*

*Այստեղ ճգնում էին ԺԲ. դարում Խորասու և Մարիամ Թագաւորազն կանայք, որոնց զգուշական խրատներ է գրում Հաղբատից Յովհաննէս սարկաւագ կոչուած վարդապետը։* [4])

---

[1]) Brosset: Voyage archéologique. Sixième rapport p. 138.
[2]) Կիր. Գանձ. Մոսկուա 237.
[3]) Անդ. եր. 99.
[4]) Վարդան Բարձր. եր. 122.



Digitized by Google

Քոբայրից ցածր դէպի հարաւ կայ մի փոքրիկ մատուռ, առանց մի որևէ արձանագրութեան։ Տեղացիները պատմում են, թէ մի ոմն Չիթախեան այս ձորով անցնելիս սպանուել է և թաղուել այս մատուռի մօտ, որի պատճառով և մատուռը մինչև այժմ էլ կոչում են Չիթախանց եկեղեցի։ Իսկ Քոբայրից բարձր, դէպի Իգահատ, գտնւում է մի ուրիշ, հասարակ, անխորան մատուռ, որի դռան կամարակալ քարի վրայ կայ մի եղծուած արձանագրութիւն, որից կարդացւում է *ի թուին ՈՀԲ.*

Շուրջը կան գերեզմաններ, որոնցից մի քանիսի վրայ բաւական լաւ քանդակուած խաչքարեր են կանգնած։ Ժողովու[րդը] այս մատուռին *Գողոթ* է ասում։

Այստեղից էլ փոքր ինչ բարձր գտնւում է մի քերու[...] քանդակ, հիանալի խաչքար, որի վրայ քանդակուած է Ա[ս]տուածածնի և շուրջը առաքեալների պատկերները։ Սրա վ[րայ]... [...]յի եղած արձանագրութիւնից կարդացւում է միայն հետևեա[լը]

*Առաջնորդն... բարեխաւս լեր Պռօշին... ողո[...] թեամբ պարոն Գուրգէնայ կազնեցաք սուրբ խաչս...*

## ԲԱՐՁՐԱՔԱՑ Ս. ԳՐԻԳՈՐ

Սա գտնւում է Դսեղ գիւղից հիւսիս-արևելք, Ս. Գրիգորի ձորի լանջին։ Այս ձորը ծառազարդ է և դնալով միախառնւում է Դեբեդի ձորին։ Վանքը կառուցուած է 1221 թուին, Վրաց Թամար թագուհու որդի Գէորգու թագաւորութեան և Աթաբէգ Իւանէի և նրա որդիների Աւագի և Շահնշահի իշխանութեան ժամանակ Մամիկոնեան ազգից Համազասպի թոռ և Սարգսի որդի Մարծպանի ձեռքով, երբ գերեզմանատեղի Մամիկոնեան տոհմին [1]), որ ԺԱ դարից բնակութիւն էր հաստատել սրա շրջականներում։

Վանքը բաղկացած է երեք, միմեանց կից եկեղեցիներից, երեքն էլ հոյակապ, սրբատաշ, ազնիւ քարից շինուած։ Սրանցից հարաւայինը, որ կոչւում է Ս. Գրիգոր, ամենից մեծն է և

[1]) Տ. Վանքի հարաւային պատի արձանագրութիւնը։



*Мон. св. Григорія.* *Բարձրաքաշ ս. Գրիգոր.* *Mon. de S. Grégoire.*

Digitized by Google

իւր արեւելեան ճակատին կրում է Մամիկոնեան տոհմանիշը՝ երկգլխանի թեւատարած արծիւ, ճիրանների մէջ գառը բռնած [1]։ Եկեղեցին 26 մետր երկարութիւն ունի եւ նոյն չափ լայնութիւն։ Չորս սիւների եւ ութ կիսասիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ, որոնց վրայ յանկած ձեղունն ու կաթուղիկէն այժմ քանդուած են։ Աւանդութեան ասելով այս կաթուղիկէն այնքան բարձր է եղել, որ նրա խնձորը դաշտից երեւացել է։ Սիւները ութանկիւնանի են, իսկ կիսասիւները բաղկացած են երեքական, կիսաբոլոր, միացած սիւներից. գեղեցիկ պատուանդանով ու գեղաքանդակ խարիսխով։

Արեւելեան կողմում կիսաբոլոր, կամարակապ շրջանի մէջ գտնւում է սեղանը, որի երկու կողմում կան մի մի խաչաձեւ եւ երկյարկանի խորան, պատարագամատոյց սեղաններով։ Հարաւային կողմում բացւում է մի կամարակապ մեծ պատուհան, իսկ արեւմտեանում մի մեծ, կամարակապ դուռն, զարդարուած ատաղձիչ, կարմիր քարերով։

Հիւսիսային կողմում մի ուրիշ դուռ բացւում է Ս. Աստուածածնի եկեղեցու մէջ։ Սա եւս կիսաւեր է, ձեղունը բոլորովին քանդուած։ Սա միայն երկու ամբողջական, ութանկիւնի սիւներ ունի, միւսները կիսասիւներ են։ Մեծ կամարները ռոմանական են. փոքրերը արաբական։ Սեղանը բոլորակաձեւ է, կողքերին երկյարկանի մի մի խորան։ Արեւմտեան պատի մէջ ունի մի դուռն։ Երրորդ եկեղեցին, որ ս. Յարութիւն է կոչւում, անսիւն է, փոքր եւ հասարակ քարից շինած 1205 թ. (ՈԾԴ). Յովհաննէս վարդապետի եւ սրա եղբայր Սարգսի բարեխօսութեամբ. «յիշխանութեան մեծին Մարծպանայ եւ զաւակաց նորա։»

Այս եկեղեցին եւս ունի մի սեղան եւ երկու խորան։ Ձեղունը քանդուած է։ Յատակին ընկած է սոյն եկեղեցու քարէ կաղապարը, որ յայտնի չէ, թէ ուր է դրուած եղել։ Արեւմտեան կողմում եւս ունի մի դուռն։

Երեք եկեղեցիների մէջ եւս բուսած են ահագին, բարձր ծառեր։

---

[1]) Նոյնը կայ եւ Դսեղի եկեղեցու պատի վրայ։

Եկեղեցիների շուրջը կան միաբանների խցեր, մի ձիթհանք, իսկ ձորում տների հետքեր և այգու տեղեր։ Մի սառն, յորդ աղբիւր կարկաչում է եկեղեցիների մօտ։ Երևում է, որ լայն, սալայատակ ճանապարհ էլ եղել է, մինչդեռ այժմեանը մի նեղ կածան է։

Աւանդութեան ասելով այստեղի միաբանութիւնը շատ մեծ է եղել. այնպէս որ մի անգամ կալի ժամանակ մի վարդապետ ընկնում է մարագը և յարդի մէջ խեղդուած մնում։ Վարդապետների շատութիւնից նրա բացակայութիւնը չի նըկատւում մինչև ձմեռ, երբ յարդը տանելով գտնում են նրա դիակը։

Ս. Գրիգորի ձորափին, փոքր ինչ հեռու ընդարձակ գերեզմանատնից, կանգնած է մի հրաշազեղ խաչարձան, որին ժողովուրդը Ս ի ր ո ւ ն խաչ է կոչում։ Սա չորս արշին բարձրութեան և արշին ու կէս լայնութեան կարմիր քարէ մի խաչ է, եզրափակուած գեղեցիկ նշխերով, և ամրացած երեք աստիճանաւոր պատուանդանի վրայ։ Սա կրում է հետևեալ արձանագրութիւնը։

*Ցիշխանութեանն Մամիկոնեան եւ որդւոյ նորա Վարդանայ եւ Հայրադեղս որդի Թէրիս կանգնեցի սր. տէրունականս յիշատակ ինձ եւ Ալան բէկին ու ծնողաց մերոց. որք երկրպագէք յիշեցէք ի Քրիստոս:*

## ՔԱՌԱՍՆԻՑ ՄԱՆԿԱՆՑ ՎԱՆՔ

Գտնւում է Դսեղ գիւղի հիւսիս արևմտեան կողմը, մօտ կէս վերստ հեռու, ձորի մէջ։ Շինուած է կարմիր, սրբատաշ քարից, փոքր է, այժմ կիսաւեր, գմբէթն ամբողջովին քանդուած։ Վանքի շուրջը նկատւում է գիւղատեղի, հարաւային կողմը կայ հանգստարան գեղեցկաքանդակ խաչքարերով։ Մի քիչ հեռու բղխում է մի սառնորակ աղբիւր։



*Мон. С. Григорія.* *Բարձրաքաշ Ս. Գրիգոր.* *Mon. de S. Grégoire*

Digitized by Google

## ԽՈՐԱԿԵՐՏ ՎԱՆՔ

Գտնւում է Աղ-քէօրփիի հարաւ-արևելեան կողմը, մի անտառապատ բլրի վրայ, գիւղից մօտ երեք վերստ հեռու։ Գիւղացիները նրան Խոջիկ են անուանում։

Այս վանքի շինութեան և թուականի մասին եկեղեցու դռան վրայի արձանագրութիւնը հետևեալն է պատմում։

*Թւին ՉԱ ի հայրապետութեան Տ. Կոստանդեայ, արհի եպիսկոպոսութեան Համազասպայ եւ յաշխարհակալութեան եւ զաւրավարութեան... ի թագաւորութեան Դաւթի եւ Ստեփաննոս որդի Յովհաննայ գնեցի զԽորակերտ եւ զիւր զեղն, զայգին որ ի Տղեր վանիցս յաւիտեան ի կա սպիտակ սուլտանին եւ շինեցի զսա ի հիմանէ սկսեալ յուսովն անմահին Աստուծոյ լինել ինձ եւ եղբարց իմոց եւ որդոց արծան կենդանի եւ անդի գերեզմանի մինչեւ գայ Քրիստոս եւ առնէ ողորմութիւն ինձ եւ իմոցն ի փառս իւր. արդ որք խափանել ջանան զիմ տուածըն յեկեղեցւոյս եւ կամ զտեղի հանել յազգէ իմմէ, խափանեսցին եւ անկցին. ի... քրիստոնէութենէն։*

Վանքը բաղկացած է մի եկեղեցուց և մի գաւթից, երկուսն էլ գեղեցիկ գմբէթներով զարդարուած, երկուսն էլ սրբատաշ քարով շինուած։ Եկեղեցին ունի 18 արշին երկարութիւն, 11 արշին լայնութիւն. ներքուստ անսիւն է, և միայն կիսասիւներն են պահպանում չորս կամարները, որոնց վերայ հանգչում է երեսուն բարակ սիւների վրայ հաստատուած գեղեցիկ կաթուղիկէն։

Եկեղեցու չորս անկիւնում կան մի մի խորան։

Եկեղեցու երկու դռնից արևմտեանը կամարակապ է և բացւում է գաւթի մէջ։ Սա 6 ար. երկարութիւն ունի, նոյնքան էլ լայնութիւն։ Ութ կիսասիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ, կրելով իրենց վրայ մի փոքրիկ կաթուղիկէ։ Մի քանի լուսամուտներ աղօտ լոյս են սփռում գաւթի և եկեղեցու մէջ։

Եկեղեցու հիւսիսային պատի վրայ արտաքուստ կայ հետեւեալ արձանագրութիւնը,

Սոտուած ողորմի Վելի որդիս... Պայլի պարոն ձաննազարին և իւր կողակից Թուսուղանին, որ այս ս. եկեղեցիս և իւր ծնողաց անդարձուլն և իւր որդի պարոն Կորկին շինեցին»։

Սրա ներքեւ.

Թվ. ՌՃԾ*) յիշեցէք ուստայ ձաննազարին։

Հաւանական է, որ սրանք վերանորոգած լինին եկեղեցին և ոչ շինած։ Թէ եկեղեցին և թէ գաւիթը բաւական խախտուած են և տանիքի վրայ աճողին ծառեր բուսած։ Եկեղեցու մօտ. արեւելեան կողմը կայ մի ուրիշ եկեղեցի, որ բոլորովին աւերուած է։

Վանքը պարսպապատ է եղել, որի հետքերն և ընդարձակ սրբատաշ քարից շինուած կիսաքանդ մուտքն են մնում այժմ։

Պարսպի մէջ կան խցերի աւերակներ և բաւական թուով գերեզմանաքարեր, նկարներով զարդարուած. սրանց մէջ մի քարէ պատուանդանի վրայ բարձրանում է մի գեղաքանդակ խաչքար, Փրկչի պատկերով, որի վրայ գրուած է. *Սուրբ Նըշան Տէրունեան*։

Վանքի մօտ, պարսպից դուրս երեւում են շինութիւնների աւերակներ։ Գուցէ սա եղած լինի Խորակերտ կամ Խոռակերտ քաղաքը, որի անունով էլ վանքն է կոչւում և որը ժառանգեց Աշոտ Ողորմածի որդի՝ Գուրգէնը կամ Կիւրիկէն։

## ՍԵԴՈՒԻ Ս. ՆՇԱՆ

Գտնւում է Աքորի և Հաղուէ գիւղերի միջև, առաջնից մօտ չորս վերստ հեռու, Սեդուի ձորի լանջին, մի փոքրիկ հարթութեան վրայ։ Քսան արշին երկարութեան և 10 արշ. լայնութեան և մօտ 18 արշին բարձրութեան թաղակապ, մի գեղեցիկ շէնք է, անսիւն և միայն կիսասիւների վրայ հաստատուած, առանց գմբէթի։ Արեւելեան կողմը կայ երեք միմեանց կից, իսկ արեւմտեան կողմը մի երկար՝ և կողքերին

*) 1710.

երկու կլոր պատուհաններ։ Հիւսիսային կողմը մի մատրաձև խորան, իսկ հարաւային կողմը երկու ամբողջական և երկու կիսասիւների վրայ հաստատուած գմբէթաւոր գաւիթը։

Վանքը շրջապատուած է հաստ պարսպով, որի մէջ կան խցերի աւերակներ։ Ոչ մի տեղ ոչ մի արձանագրութիւն չկայ։

Համբարձման տօնին ահագին բազմութիւն ուխտ է գալիս այստեղ։

Սրանից կէս վերստ հեռու, դէպի հարաւ, մի ժայռոտ բլրի վրայ կայ մի բարձր շէնք, որի առաստաղը քանդուելով՝ կիսով չափ լցուել է մէջը։ Սրա մասին ոմանք ասում են, թէ զանգակատուն է, ոմանք էլ՝ թէ բերդ է։

---

## Բ. ՎՐԱՑ ՎԱՆՔԵՐ

Այս գաւառում վրացիներն էլ ունին թէ ճարտարապետութեամբ և թէ պատմական անցեալով նշանաւոր վանքեր, որոնց մէջ իր ճարտարապետութեամբ գերազանցում է բոլորին Ախտալայի ս. Աստուածածնի վանքը, իսկ պատմական անցեալով Բոլնիսի Սիօնը, որ երկար ժամանակ առաջնորդանիստ է եղել։ Այս վանքերն էլ ժամանակագրական կարգով այսպէս են դասաւորւում.

| | |
|---|---|
| 1. Ախտալայի | հիմնուել է V և ապա XII դ. Իւանէ աթաբէկի ձեռքով։ |
| 2. Սիօն | V. դարում, Փարսման թագաւորի կամ Արչիլ թագաւորի որդի Միհրդատի կին Սագդուխտի ձեռքով։ |
| 3. Ծուղրուղաշէն. | XV դ. Արսէնի որդի Ասլանի ձեռքով։ |
| 4. Երկու անյայտ մենաստաններ. | XV. դարում. |
| 5. Հնեվանք. | անյայտ. |

Սկսենք նկարագրել այս կարգով.

## ԱԽՏԱԼԱՅԻ ՄԱՐԻԱՄ ԱՆԱՅԻ ՎԱՆՔ

Այս հուշակաւոր և ճարտարարուեստ վանքը գտնւում է Ախտալա կայարանից հազիւ $1^1/_2$ վերստ հեռաւորութեամբ, դէպի արևմուտք, անտառապատ ժայռերով պատած մի թերակղզիաձև բլրակի գոգում. պղնձի և այլ հանքերով հարուստ Լալվար լեռան լանջին:

Այս վանքի մասին կան հետևեալ պատմական տեղեկութիւնները: Կիրակոս Գանձակեցին ասում է. «Վախճանեցաւ և Իւանէ [1]), եղբայրն Զաքարէի և թաղեցաւ ի Պղնձահանքն, ի դուռն եկեղեցւոյն՝ զոր շինեաց ինքն, առեալ ի Հայոց վրացի վանս արար: [2])

Ստեփաննոս Օրբելեան [3]) պատմում է, թէ այս վանքում պահւում էր Ս. Նշանի խաչը, որ Իւանէ Աթաբէկը ընծայ էր ստացել Վասակ իշխանից: Բայց յետոյ 1216 թուին Տէր Սարգսի խնդրով վերադարձուեց Նորավանքի ուխտին:

Նաև նոյն մատենագրից յայտնի է, որ դեռ Իւանէի կենդանութեան ժամանակ այստեղ ծինմծղաւրութիւն (առաջնորդութիւն) էր հաստատուած և «Տիրամ ծղճարն Պղնձահանիցն» մասնակցում էր այն ժողովին, որ որոշեց, թէ վերոյիշեալ Ս. Նշան խաչը պատկանում է Լիպարիտ Օրբելեանին: Վարդան Բարձրբերդցին և Կիրակոս Գանձ. պատմում են, որ 1250 թուին մեռաւ Աւագն, որդին Իւանէի և թաղեցաւ ի Պղնձահանքն ընդ հօր իւրում: [4])

Վրաց մատենագիրներից Թագաժառանգ Վախուշտն ասում է. Հաղբատից ցած գտնւում է Ճոճկանի հովիտը, Լալվար լերան ստորոտում… աւելի ցած և դէպի հիւսիս է Ագարակի եկեղեցին, որ Գուրգասլանը [5]) դարձրեց եպիսկոպոսարան, իսկ յետոյ դարձաւ Սոմխէթի արքեպիսկոպոսարան, որի իրաւասութիւնը տարածւում էր Խունանի, Գարդաբանի և Բեր-

---

[1]) 1229. թուին.
[2]) Կիր. Գան. Մոսկ եր. 130
[3]) Ստ. Օրբ. ա. հ. եր. 97.
[4]) Վարդ. Բարձ. եր. 148. Նաև Կիր. Գանձ. Վեն. 180.
[5]) 446—499 թ.

ղուջի վրայ։ Նրա կաթուղիկէն շատ ճարտարապետական ձևով է շինուած և այժմ կոչւում է Ախտալա։ [1])

Իսկ տեղական մի աւանդութիւն այս եկեղեցու շինութիւնը վերագրում է Հերակլ կայսրին VII դարում, Պարսից դէմ արշաւած միջոցին։

Այս բոլոր տեղեկութիւններից կարելի է եզրակացնել, որ Ախտալի պղնձահանքում հին ժամանակից, V դարից, կանգնած է եղել եկեղեցի, որի մօտ հետզհետէ շինուել են միւս եկեղեցիները, և ի վերջոյ Ս. Աստուածածին մայր եկեղեցին, հաւանականօրէն Իւանէի ժամանակ և սրա ջանքով, երբ Թամար թագուհու յաղթական թագաւորութեան միջոցին ճարտարապետութիւնը դարձեալ սկսել էր ծաղկել։

Եկեղեցին շինուած է սրբատաշ քարով, 13 ս. երկ. 10 ս. լայն. և 10 ս. բարձրութեան, գմբէթը չհաշուած։

Չորս ամբողջական և վից կիսասիւների վրայ յենած ռոմանական կամարներն այլ ևս չեն կրում նախկին կաթուղիկէն, որ քանդուել է դարուս սկզբում կամ երկրաշարժից և կամ Օմար խանի զինուորներից։ Այլ սրա տեղը շինուած է փայտեայ կիսաբոլոր գմբէթ, թիթեղով ծածկուած։ Իսկ կտուրը, որ հին ժամանակ լորփինով - քարէ բարակ տախտակ—էր ծածկուած, Մ. Ս. Վօրօնցովի կարգադրութեամբ վերանորոգուած է և կապտագոյն կղմինտրով պատած։

Սեղանի երկու կողմը կայ մի մի խորան, որոնց մէջ կան ահագին մեծութեան տապանաքարեր. որանցից աջակողմեան խորանի մէջ գտնուածի վրայ Մեսրոպեան հայոց հին և խոշոր երկաթագրով գրուած է [2]). *զՄովսէս քահանայս յիշեսջիք յաղաւթս ձեր:*

Արևելեան պատի մէջ բացւում են հինգ պատուհան, որոնցից երեքը սեղանի վրայ, իսկ երկուսը՝ խորանների մէջ։ Երկական լուսամուտներ էլ բացւում են հարաւային և հիւսիսային պատերի մէջ։

---

[1]) Description géographique de la Géorgie, par le tsarévitch Wakhoucht. trad. par M. Brosset p. 143.

[2]) Լումայ. 1900 Գ. Ա. եր. 244.

Երեք դռնից երկուսն այժմ փակ են, իսկ արեւմտեանի առաջ շինուած է երեք սիւների վրայ հանգչող կամարակապ սրահ, բիւզանդական ոճով, որի իւրաքանչիւր հարաւային մասում կամարը կրում է տարբեր զարդարանքներ, իսկ հարաւային մասում կայ մի խորան։ Այստեղ մի աւազանաձև մուտք է բացւում դէպի մի ստորերկրեայ անցք, որ այժմ կալնուած է։

Երջ Աղ. Երեցեանի կարծիքով, այս խորանի մէջ պէտք է թաղուած լինին եկեղեցու հիմնադիր Իւանէ աթաբէկն ու իւր որդի՝ Աւագը։

Սրահի և եկեղեցու մէջ այժմ կան այդ տեղի կալուածատէր իշխան Մելիքովների գերեզմանները։ Խորանների վերայ շինուած գաղտնի պահարանների մէջ Օմար խանի արշաւանքի ժամանակ թաքնուել են Ախտալայի թշուառ բնակիչները, սակայն նրանց հետ թաքնուած երեխաների լաց ու կոծը յայտնել են անողորմ թշնամիներին նրանց ապաստանարանի տեղը և բոլորը զոհ գնացել նրանց կատաղութեան։ [1])

Պատերը ծածկուած են գեղեցիկ, իւղանկար պատկերներով, որոնք մեծ մասամբ այժմ փչացած են կաթիլքից։

Այս պատկերներից ամենանշանաւորն է սեղանի վերև նըկարուած Աստուածածինը, մանկիկ Յիսուսը գրկում։ Ներկերի գոյները դեռ ևս հիացուցիչ են, միայն Ս. Կուսի դէմքն ու կուրծքը բծերով ծածկուած են։ Այս և սրան կից պատկերներն ու նուրբ ճարտարապետութիւնը հիացրել են «Грузія и Арменія» գրքի հեղինակ Մուրավեօվին, որ այցելել է այս վանքը 1846 թուին և «Памятники византійской архитектуры въ Грузіи и Арменіи» աշխատութեան հեղինակ Գրիմմին, որ Վրաց քրիստոնէական ճարտարապետութեան ‧սմենալաւ գործերից մինն է համարում այս։ [2])

Եկեղեցու հիւսիսային կողմում, պատուհաններից ներքև, շինուած է մի փոքրիկ, հասարակ մատուռ, որ հաւանականօրէն վերջին ժամանակի գործ է։

Վանքից հիւսիս-արեւմուտք և հիւսիս-արեւելք գտնւում

---

[1]) Кавказская Старина 1872 № 1. ст. 23.

[2]) Іосселіани. յէշ. Кавк. Старина. 1872 г. № 1 ст. 23.

են Ս. Երրորդութեան, ս. Դիմիտրէի, Իւանէի, Բարսեղի և Գէորգայ սրբատաշ, գեղեցիկ մատուռները։ Այս վերջինիս վերայ Ս. Երիցեան նկատել է վրաց Մեսրոպեան տառերով գրուած մի երկար արձանագրութիւն, որ պ. Տոկաշվիլիի թարգմանութեամբ տպուեց Сборникъ матеріаловъ для описанія мѣстностей и племенъ Кавказа հրատարակութեան XXIX գրքի մէջ, և որի իմաստն այն է, թէ ծինամծղվար Պետրոսը շինել է այդ մատուռը սուրբ առաքեալների անունով և որոշել է, որ առաքեալների ՝տօնին պատարագ մատուցանեն իւր հոգու փրկութեան համար։ Թէև˝թուականը չէ գրուած, սակայն, Պ. Տոկաշվիլին քննելով արձանագրութիւնը կարծում է, թէ գրուա՞ պէտի՞ լինի 1242—1250 թուականների միջոցում։

Վանքի շրջապատը միայն հիւսիսային կողմից ամրացած է բարձր պատով, և երկու բարձր աշտարակներով, որոնց մէջ բացուող լայն դարպասը՝ վանքի միակ մուտքն է կազմում, որովհետև միւս երեք կողմերը ժայռոտ եզրերով իջնում են խոր ձորերի մէջ։

Վանքի մէջ այժմ կան մի ռուս վարդապետ, մի յոյն քահանայ և 12 սարկաւագներ, որոնք շարունակ ժողովարարութեան են գնում, որովհետև վանքը առանձին կալուած և որոշ եկամուտ չունի։

Վանքից փոքր ինչ հեռու, դէպի հիւսիս-արևմուտք, անտառապատ լեռան վրայ գտնւում են Նախկին Օխտալա գիւղի աւերակները։

Իսկ սարալանջի վրայ կայ մի փոքրիկ բերդի և սրա հանդէպ մի փոքրիկ եկեղեցու աւերակներ։ Եկեղեցու հարաւային դրան առաջ մի հրաշակերտ, ահագին խաչարձանի վրայ կարդացւում է.

*Ի թվիս ՈՂԴ *) կանգնեցաւ սուրբ տէրունական. յարեւշատութիւն Աւագին. եւ ծինամծղաւրութեան Պետրէի. եւ հայրապետութեան Համզասպա. ես Յակոբ երեց կանգնեցի զխաչս ի հանգստարանի մերոյ. զիս եւ զամուսին իմ յաղաւթս յիշեցէք:*

*) 1245.

# ՍԻՕՆ

Գտնւում է Բոլնիս-խաչէնից դէպի արևելք, հազիւ կէս վերստ հեռու։ Երկարութիւնն է 10 սաժէն, լայնութիւնը՝ 5 սաժէն, և բարձրութիւնը՝ մօտ 6 սաժէն։ Եկեղեցին երկու կարգ հնգական, խաչաձև սիւներով բաժանւում է երեք մասի, որոնք ռոմանական կամարներով միանալով պահում են իրենց վրայ թաղակապ ձեղունը։ Սեղանի երկու կողմը կայ մի մի խորան, միայն երևում է, որ հիւսիսայինը յետոյ է կառուցուած, իսկ հարաւայինը ոչ թէ սեղանին, այլ հարաւային պատին է կից և ունի միայն մի դուռն այդ հարաւային պատի մէջ։ Թէ հիւսիսային և թէ հարաւային կողմերում կան մի մի կամարակապ նախագաւիթ, որոնց միջից մի մի դուռն բացւում է եկեղեցու մէջ։ Մի ուրիշ դուռ էլ բացւում է արևմտեան կողմը։ Մի քանի նեղ և երկան պատուհաններ ոչ այնքան առատ լոյս են սփռում եկեղեցու մէջ։

Սրա արևմտեան կողմը, փոքր ինչ հեռու, բարձրանում է զանգակատունը, որ մի քառանկիւնի շէնք է, գլուխը կամարակապ։ Երևում է, որ մէջը մի քանի սենեակներ կան։ Սրա վրայի արձանագրութիւնից երևում է, որ զանգակատունը կառուցել է Բոլնիսի եպիսկոպոս Նիկողայոսը, Մուխրանի տէր Բագրատ Գ. որդին ԺԸ դարում։ Սրան կից բոլորում է պարիսպը։ Սրա շուրջը, մօտակայ բլրի լանջին կան 12 փոքրիկ, կիսաւեր մատուռներ։ Եկեղեցին բոլորովին անխնամ է թողնուած։

Վախուշտի ասելով Բոլնիսի Սիօնը մեծ տաճար է եղել, առանց գմբէթի և շինուել է V. դարի սկզբում վրաց Փարսման (408 410) թագաւորի հրամանով։ Իսկ տարեգիրների ցուցմունքով՝ նա գմբէթ է ունեցել և շինուել է Արչիլ թագաւորի (410—434) որդի Միհրդատի կին և Թանի էրիստաւ Բարզաբադի դուստր Սաղուխտի կամքով։

Վախտանգ Գուրգասլանը (446—499) Սիօնը դարձրել է եպիսկոպոսանիստ, իսկ Մարիամ թագուհին (Վախտանգ Ե-ի կինը) վերանորոգել է։ Բրոսսէն կարծում է, թէ այս եկեղեցին շատ հին չպէտք է լինի և նրա շինութեան թուականը

ԺԱ դարից չպէտք է անցնի։ Այնուամենայնիւ Բոլնիսի եպիսկոպոսը կառավարում էր ամբողջ վրացական Սոմխէթը։

Յայտնի չէ, թէ երբ է Սիօնը բարձի թողի առնուել՝ մենք գիտենք միայն որ ԺԸ. դարում Թիֆլիսի միտրապոլիտն անուանւում էր Թիֆլիս-Բոլնիսեան և Բոլնիսի հողերը նրա անմիջական կառավարութեան էին ենթարկւում [1]։

## ԾՈՒՂՐՈՒՂԱՇԷՆ

Երկու Բոլնիսների մէջ, անտառապատ բլրի լանջի վրայ բարձրանում է վերոյիշեալ եկեղեցին, որ 15 արշ. երկարութիւն, 10 արշ. լայնութիւն և մօտ 7 սաժէն բարձրութիւն ունի և շինուած է կարմիր, տաշած քարից։ Երկու ամբողջական և չորս կիսասիւների վրայ բոլորում են արաբական կամարներ, կրելով իրենց վրայ տասն պատուհանով զարդարուած գլանաձև, բարձր կաթուղիկէն։ Սեղանի երկու կողմը կան մի մի երկյարկանի խորաններ, կլոր պատուհաններով։ Սեղանի մէջ տեղը մի մեծ և կողքերին մի մի փոքր, նեղ և երկար պատուհան կան։ Հիւսիսային և հարաւային կողմերում ևս կան մի մի նոյն երկարութեան խորաններ, որոնցից հարաւայինը արդէն քանդուած է։ Հարաւային և արևմտեան կողմը կան մի մի դուռն, շատ գեղեցիկ քանդակներով զարդարուած։ Արևմտեանի վերև մի խաչ է քանդակուած, կողքերին մի մի քանդակազարդ պատուհան։

Արևելեան ճակատը երկու ներսանկուած ունի։ Թէ դռների և թէ պատուհանների շուրջը պատող քանդակները միանգամայն հիանալի են։

Վանքը պարսպապատ է, մի մեծ, գեղեցիկ քանդակներով զարդարուած դռնով։ Պարսպի մէջ կան խցերի տեղեր և գերեզմաններ։ Այժմ բոլորովին անխնամ է թողնուած։

Արևմտեան պատի վրայ վրացերէն մի արձանագրութիւն կայ, որի իմաստը հետևեալն է. Թագաւորաց մեծ թագաւոր

---

[1]) Vachouscht, յիշ. գիրքը եր. 145,
[2]) Баградзе. յիշ՝ գիրքը եր. 162.

Գէորգի Թագաւորութեան միջոցին, ես, Արսէնի որդի Ասլանս սկսեցի իմ կալուածքիս մէջ այս եկեղեցաս շէնքը իւր գմբէթով 'ի փառս Աստուծոյ։ Բրոսսէն կարծում է, թէ այս արձանագրութեան մէջ յիշուած Գէորգ Թագաւորը ԺԵ· դարի Գէորգ Փառահեղը պէտի լինի։ [1])

## ԱՆՑԱՑՑ ՄՆԱՑՈՐԴՆԵՐ

Գոբուրէտի գիւղից մօտ մի վերստ հեռու, Սաթլխէ անտառապատ լերան լանջին, մի փոքրիկ հարթութեան վրայ բարձրանում է կոփածոյ քարերից շինուած մի շատ գեղեցիկ եկեղեցի։ Սրա երկարութիւնն է 20 արշ· լայնութիւնը 8 արշ· և բարձրութիւնը՝ մօտ 7 սաժէն։ Ձեղունը և հարաւային պատը բոլորովին քանդուած են։

Արևմտեան կողմում կայ գեղեցիկ նշխերով եզրափակուած և կամարակապ դուռն, որի վերև կայ շղթայով մի քարից կապած առիւծի ռըլիէֆ պատկեր։ Փոքր ինչ բարձր 5 արշին երկարութեան մի քերուբաքանդակ, հրաշալի խաչ, շրջանակով. սրա երկու կողմը մի մի կամարակապ և նշխերով եզրափակուած, քառորդ արշին լայնութեան և 2 արշին երկարութեան պատուհան, որոնցից ձախի տակ կայ մի քահանայի, գիրքը ձեռին, և մի երեխայի ռըլիէֆ պատկեր, իսկ աջ պատուհանի տակ ձեռները վերև պարզած մի երեխայի ռըլիէֆ պատկեր։

Հիւսիսային կողմը ևս կայ մի դուռն, կամարակապ և շատ գեղեցիկ նաշխերով եզրափակուած, վերևը մի կլոր պատուհան։

Այս դռան մօտից, հիւսիսային պատին կից կայ մի խորան։

Ներքուստ եկեղեցին անսիւն է, սեղանը բոլորակաձև և ձախ կողմը մի արշ· լայնութեան և մի սաժէն երկարութեան խորան ունի։ Սեղանի շուրջը պատին նկարուած են 12 առաքեալների պատկերները, որոնց վերև կայ մի նեղ և երկար պատուհան։

[1]) Кавказъ въ древнихъ памятникахъ Христіанства ст. Баградзе. с. 43. въ Запискахъ Общ. любителей Кавказской археологіи. Кн. I.

Եկեղեցին պարսպապատ է, աշտարակներով ամրացած. պարսպին կից կայ մի ընդարձակ, կիսաւեր դահլիճ, և խցեր։ Եկեղեցու շուրջը կան գերեզմաններ։

Թէ եկեղեցու և թէ գերեզմանների վրայ գիր չկայ, ուստի և յայտնի չէ թէ ումնից և երբ է կառուցուել, միայն եկեղեցու յատակագծից երևում է, որ վրաց պիտի լինի և ժողովուրդից Սամէքա, Երրորդութիւն, է կոչւում։

Պարսպից դուրս կան տնատեղեր, ձորի մէջ հոսում է Սաթխէ վտակը, որ թափւում է Մաշաւեր գետակի մէջ։

Այս մենաստանից մօտ երեք վերստ հեռու, նոյն անտառի մէջ, մի փոքրիկ հարթութեան վրայ կայ մի ուրիշ վանք, որ պարսպապատ է։ Եկեղեցին առաջնից փոքր է, 18 արշ. երկ. 7 արշ. լայնութեան և մօտ 6$^1/_2$ ս. բարձրութեան։ Ձեղունը բոլորովին քանդուած է։ Զօրական կիսասիւնների վրայ բոլորում են ռոմանական կիսակամարներ, որոնցից իւրաքանչիւրի մէջ բացւում է մի մի երկար և նեղ պատուհան։ Սեղանը բոլորակաձև է, մէջ տեղում մի նեղ և երկար պատուհան, իսկ կողքերին մի արշ. լայնութեան և 2 արշ. երկարութեան մի մի փոքրիկ խորան, մի մի կլոր պատուհանով։ Հիւսիսային պատին կից կայ մի փոքրիկ խորան, որ մի դռնով միանում է եկեղեցու հետ։ Հարաւային կողմում մի դաւիթ կայ, կամարակապ և դուռը շատ գեղեցիկ քանդակներով զարդարուած։

Արևմտեան կողմը ևս կայ մի հասարակ դուռն, որի վերև եղած խուցուրի արձանագրութիւնից երևում է, որ գոնէ գաւիթը շինել է Յովհան Մանգլիշի (Մանգլիսի եպիսկոպոսը) Գէորգ Փառահեղի ժամանակ (XV դ.)։

## Հ Ն Է Վ Ա Ն Ք

Ճարտարապետական տեսակէտից այս, բաւական նշանաւոր վանքն բարձրանում է Կուրթանի ձորում, Պալըղ-չայ գետի աջ կողմում, մի եռանկիւնաձև բարձրութեան վրայ։ Շինուած է կարմիր, սրբատաշ քարից։ Գլխաւոր եկեղեցին խաչաձև է, անսիւն, ռոմանական կամարներով և գլանաձև կամարակապերով։ Ունի մի սեղան և երկու խորան։ Արևմտեան կողմին կից բարձրանում է սիւնազարդ գաւիթը, երեք փոքրիկ գմբէթով, որոնք այժմ բոլորովին քանդուած են։ Գաւթի հարաւային, կամարակապ դռան վերև կայ վրաց խուցուրի տառերով մի արձանագրութիւն, որ չկարողացայ ընդօրինակել։

Սրա արևմտեան, արևելեան և հարաւային կողմերում կան նաև մի մի ընդարձակ շէնք, որ յայտնի չէ, թէ ինչ են եղել։ Հանդիպակաց ժայռերի մէջ կան բաւական թուով այրեր։

Գրականութեան մէջ այս վանքի մասին տեղեկութիւններ չկարողացայ գտնել, գուցէ բոլորովին չկան։ Հայ ժողովուրդը Հնէվան անելով բացատրում է իբր Յունաց վանք։

# ԲՈՐՉԱԼՈՒԻ ԳԱՒԱՌ

## Ե. ԼԱԼԱՅԵԱՆՑ

### *ԱԶԳԱԲՆԱԿՈՒԹԻՒՆ* [1])



Բորչալուի գաւառի բոլոր բնակիչների թիւն է ըստ 1886 թուի աշխարհագրութեան. 13529. ծուխ. 56180 արական 45667. իգական ընդամենը՝ 101,847 հոգի։

*Ըստ ազգութեան*

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Հայեր. | 4218 | ծ. | 20673 | ար | 17159 | իգ. | 37732. |
| Թուրքեր. | 4929 | « | 19144 | « | 13893 | « | 33037. |
| Յոյներ. | 2636 | « | 10021 | « | 8965 | « | 18986. |
| Ռուսներ. | 846 | « | 3095 | « | 2929 | « | 6024. |
| Վրացիներ. | 560 | « | 2304 | « | 1845 | « | 4149. |
| Գերմանացիներ. | 272 | « | 766 | « | 812 | « | 1578. |
| Քրդեր. | 41 | « | 127 | « | 40 | « | 167. |
| Զան. ազգեր. | 26 | « | 50 | « | 25 | « | 75. |

Հայերի մի մասը բնիկներ են համարւում, միւսը գաղթականներ։ Բնիկների մեծամասնութիւնը հայախօս է, մնացածը վիրախօս. բոլորն էլ լուսաւորչական։ Գաղթականներն առանց բացառութեան հայախօս են, միայն մեծագոյն մասը լուսաւորչական, իսկ փոքրագոյնը՝ կաթոլիկ։

Հայախօս բնիկների մասին մենք կը խօսենք որքան կարելի է մանրամասնաբար, իսկ վիրախօսների և գաղթականների մասին բաւականանում ենք միայն մի քանի պատմական տեղեկութիւններ տալով, որովհետև նրանց մասին ազգագրական տեղեկութիւններ հաւաքած ենք, կամ կը հաւաքենք իրենց բուն հայրենիքում [2])։

Հայախօս բնիկներ համարւում են.

---

[1]) Տես Ազգագրական հանդէս գիրք Է և Ը։

[2]) Ղարաբաղցիների մասին տես իմ «Վարանդա» և «Գանձակի գաւառ», իսկ Ջաւախեցիների մասին իմ «Ջաւախք» աշխատութիւնները։



Digitized by Google

ա. Օձնեցիք, որ բացի Օձուն գիւղից, բնակում եմ նաև Մղարթ, Հագուի, Ցովհաննաձոր, Ագարակ, Ճահայի գիւղերում։

բ. Արդուեցիք։

գ. Հաղբատեցիք, որ վերաբնակուել են նաև Աթան և Կիանէթ գիւղերում։

դ. Սանահնեցիք և Որնակեցիք։

ե. Դսեղեցիք, որ հիմնել են Ձորագիւղը։

զ. Ճնողեցիք և

է. Վարդաբլրեցիք։

Այս բնիկները բաժանւում են երկու դասակարգի՝ ազնուական-ներ և գիւղայիներ։

Ազնուականներից Արղութեան իշխանական տոհմը ապրում է Սանահնում, միւսներն Արդուի, Իգահատ և Ամոճ գիւղերում։ Սրանք իրենց բնակած գիւղերի և նրանց շրջակայ հողերի սեպհականատէր են համարւում։ Իբրև ազնուականներ՝ սրանք ազատ են գիւղացիների վճարած տուրքերից և կրած կոռ ու բեկեարից, չունին գիւղական տանուտէր և ոչ գիւղական դատարան, այլ ուղղակի ենթարկւում են գաւառապետին և հաշտարար դատաւորին։

Արդուինում երկու ազնուական տոհմ կայ 11 գերդաստանից բաղկացած—Լօռու-Մելիքեան և Քալանթարեան. այս երկու տոհմն էլ յառաջացել են մի գերդաստանից, որ յայտնի չէ, թէ որքան ժամանակ կառավարել է Լօռու. բնակիչներին իբր մելիք։ Այս տոհմից է Կարսի հերոս՝ կոմս Միքայել Լօրիս-Մելիքեանը, որի որդին այժմ էլ ահագին հողեր և անտառներ ունի Արդուի շրջականերում

Այս միևնոյն մելիքական տանից Ամերխանը քալանթարութիւն է ստացել, բնակուել է Լօռու բերդում և տիրել է Ղարադաշի ստորոտից մինչև Դեբեդ և Խրամ գետերի խառնարանը, որի սերունդն վերակոչուել է Քալանթարեան։

Իգահատի ազնուականները միայն մի տոհմ են կազմում՝ Ճահվերդեան և բաղկացած են 60 գերդաստանից։ Սրանց նախահայրը ուրացել է քրիստոնէութիւնը և յայտնի չէ պարսից որ շահից ազնուականութիւն և Իգահատ գիւղն է ստացել, ուստիև ժողովուրդը նրան Ճահվերդի — շահի տուած—է կոչել։ Միառ ժամանակից յետոյ երբ պարսից ազդեցութիւնը թուլացել է այս կողմերում, սրանք նորից վերադարձել են հայ եկեղեցու գիրկը, պահպանելով իրենց կալուածներն ու ազնուականութիւնը։

Բանաւոր մի ուրիշ աղբիւր սրանց մասին այլ կերպ է պատմում.—իբր սրանց նախահայրը մի մեծ և հարուստ տուն է կազմել Բջնի գիւղում (Երևանի գաւառում) ուր շատ անգամ Երևանի խանը

հիւր է եկել։ Ահա մի անգամ էլ, երբ այդ խանը հիւր գալով սրբապղծել է նրա գերդաստանական պատիւը, առեւանգելով նրա աղջկան, սա, Ճահվերդին, սպանել է խանին և փախել ապաստանուել Լօռու անմատչելի քարայրերում, և վերջը վրաց Գէորգի Թագաւորից այդ քաջութեան համար ազնուականութիւն և Իգահատ գիւղն ստացել։

Ամոճի ազնուականներն էլ մի տոհմից են սերած և այժմ ինն գերդաստանի բաժանուած։ Սրանց մասին ևս աւանդաբար պատմւում է, թէ ազնուականութիւն և այդ գիւղն ստացել են իրենց մի աղջիկը խանին կնութեան տալով։

Ընդհանրապէս կարելի է ասել, որ այս ազնուականները, մանաւանդ հին սերունդը, բարձրահասակ, յաղթանդամ և գեղեցիկ են։

Գիւղացի բնիկները, ինչպէս երևում է նրանց բարբառի մէջ եղած փոքրիկ տարբերութիւններից, մի ժողովրդի սերունդներ չեն, այսպէս օրինակ միայն Օձուն, Մղարթ, Ջագուլի, Արդուլի, Իգահատ, Ամոճ և Յովաննաձոր գիւղերի բարբառը միևնոյնն է, այս էլ այն պատճառով, որ այս գիւղերից մի քանիսը, ինչպէս տեսանք, Օձունից են գաղթել, իսկ միւսները, ինչպէս Իգահատը, Արդուլին և Ամոճը մօտ լինելով Օձունին՝ միապաղաղուել են։ Այն ինչ Խնձորուտը փոքր ինչ տարբերւում է. Ճնողի և Ջաղբատի բարբառը փոքր ինչ նման է Ղազախի բարբառին, Սանահնի և Որնա՝ բարբառը միևնոյնը լինելով՝ տարբերւում է Ջաղբատի բարբառից։

Տարբերութիւններ նկատւում են նաև բնակիչների կազմուածքի, սովորութիւնների և հագուստի մէջ։

Ընդհանրապէս բոլորն էլ կոպիտ են, դանդաղկոտ, բայց աշխատասէր։

Վիրախօս բնիկները բնակւում են հետևեալ գիւղերում Գորնջուկ, Բալիճ, Վարդիսուբան, Բոսլէվ, Փ. Ռատևան, Ջալոամ, Տաբախմելա կամ Գոբուրէտի, Քվէշ, Փ. Բոլնիս, Մեծ Դումանիս [1]) Փ. Դումանիս։

Այս վիրախօս հայերը պահպանել են իրենց հայկական տիպը, բոլորովին մոռացել հայերէն լեզուն, գիտեն միայն հետևեալ խօսքերը՝ խաչ, նշխարհ, սրբութիւն, սրբադրամ, Աւետարան, կրքակալ, օրհնեա տէր և մեղայ Աստծու։ Ջաւատարիմ մնալով լուսաւորչական կրօնին, սրանք նրա ծիսական մասը բոլորովին փոխել են և ընդունել վրացականը, այսպէս օր. մկրտութեան, պսակի և թաղման ծէ-

[1]) Մեծ Դումանիս գիւղում կան նաև Ջաւախքից և Ղարաբաղից եկած գաղթականներ. վերջիններս, այսինքն Ղարաբաղից եկածները, փոքր ինչ գիտեն հայերէն։

սերբ միանգամայն նման են վրացականին։ Շատ անգամ մեռելը առանց քահանայի են թաղում և ապա, մի առ ժամանակից յետոյ հրաւիրում քահանային թաղման կարգը կատարելու։ Շատ հազիւ են յաճախում եկեղեցի, այն էլ ժամասացութեան աւարտին, որ Աւետարանը համբուրեն և դուրս գան։ Ժամասացութիւնը, ի հարկէ, հայերէն է կատարւում, միայն երբ քահանան ցանկանում է քարոզել, ստիպուած վրացերէն է խօսում։ Հայերէն աղօթքներից միայն տէրունականը գիտեն, այն էլ մի քանի ծերունիներ, թէև միւսները վրացերէն էլ ոչ մի աղօթք չգիտեն։ Ահա այդ ծերունիների գիտեցած հայր մերը.

«Ցանուն հօ և որդօ և վուգունի սրբի»։

Հայր մերի սուրբ եղեցի անուն քու եղիցի սաց մե հանապա զոր թու մես, այս օր. զի քո արքայութեն, զօրութեն փառս սաւիտենի։

Գրեթէ բոլոր սովորութիւնները, բոլոր գործիքները, տների ձևը, հանդերձների տարազը միանգամայն վրացական են։ Ազգանունները վերջացնում են շվիլի — վրացական վերջաւորութեամբ և հայկական անունների հետ պատահում են նաև վրացականներ, ինչպէս՝ Շիօ, Իվանէ, Իօրդանէ, Աղտոգմէլ (Յարութիւն), Իօպ (Յոբ), Իլիկօ, Թալիկօ, Թեկլէ, Բաբալէ, Մակա և այլն։

Իրենք իրենց հայ են համարում և ծերունիները հաստատում են, որ իրենց ծնողները հայերէն գիտեցել են։

Գաղթականները գլխաւորապէս եկել են հետևեալ տեղերից.

ա. Ղարաբաղից․

բ. Շամշատնից.

գ. Ալաշկերտից.

դ. Կարինից.

ե. Փամբակից և

զ. Ղազախից.

Սրանցից՝

Ղարաբաղի գաղթականները գլխաւորապէս տեղաւորուած են Բոլնիս-Խաչէնում և մասամբ Օձունում, Շնողում և Շահալիում։ Բոլնիսի բնակիչները դեռ մինչև այժմ էլ պահպանել են իրենց տիպը, գաւառաբարբառը, և իրենց առանձնայատուկ սովորութիւնները, թէև որոշ չափով ենթարկուել են վրաց ազդեցութեան, օր. կանանց հանդերձները, տների ձևը, գործիքները, սայլը և այլն վրացական են։ Օձունի, Շնողի և Շահալիի ղարաբաղցիները միանգամայն ենթարկուել են բնիկների ազդեցութեան, որովհետև շատ սակաւաթիւ են եղել և կորցրել են ինչպէս սովորութիւնների, այնպէս և բարբառի առանձնայատկութիւնները։

Digitized by Google

Սրանք գաղթել են 1795 թ. մինչև 1799 թուականը Վրաստան, որտեղից սրանց առաջնորդ Մելիք Ջանհազարեան Մելիք Ջումշուտն ու Մելիք-Բէկլարեան Մելիք Ֆրիտոնը գնացել են Պետերբուրգ և դիմել Պաւլ I կայսեր, և նրանից ստացել Մելիք-Ջումշուտը Ջնողը, Լոռու և Բորչալուի հարթութիւնների մի մասը, Մելիք-Ֆրիտոնը Օձունը և Մելիք- Աբովը՝ Բոլնիսը։ Ապա սրանք իրենց ժողովուրդներով գաղթել են այս տեղերը, սակայն երկար չեն մնացել. Մելիք Ջահնազարեան Մելիք Ջումշուտը 1805 թ. ծախել է Լոռին Վրաստանի լեռնային մասի կառավարիչ կոմս Մուսին-Պուշկինին 6000 րուբլով և իւր հպատակների հետ վերադարձել Ղարաբաղ, իսկ Մելիք Աբովի և Մելիք Ֆրիտոնի մահից յետոյ սրանց ժառանգները ռուսաց կառավարութիւնից այդ գիւղերի սեպհականատէր չճանաչուելով՝ ստիպուած են եղել թողնել և հպատակների մեծ մասի հետ վերադառնալ Գիւլիստան [1]։

**Շամշադնի գաղթականները** վերաբնակուած են Մ. Շուլավէրում։ Սրանք գաղթել են Շամշադնի Կողխ. Քամանդար, Մրէջուր, Ղարամուրադ, Աղբուլաղ, Մելիք Ջադա, Մարմլու և Ջիլոզ գիւղերից Մխիթար քալանթարի առաջնորդութեամբ մօտաւորապէս 1800 թուին։ Գաղթելու առիթը եղել է այն, որ Ջաւադ-խանը կամեցել է իւր հարեմը տանել Մխիթար քալանթարի դուստր Գիւլնազարին (ըստ այլոց Ազիզին)։ Սրանք նախ եկել են Թիֆլիս, Հերակլ թագաւորից բնակութեան տեղ ստացել Թիֆլիսի Հաւլաբար թաղում և մի առ ժամանակ մնացել այդտեղ։ Սակայն դարբին Պապը խորհուրդ է տուել Մխիթար քալանթարին, որ իւր ժողովրդով հեռանայ մի որևէ գիւղ, որպէս զի նրա մելիքական իրաւունքները պահպանուեն, ապա թէ ոչ քաղաքում կարճ միջոցում կը կորցնեն իրանց բոլոր արտօնութիւնները։ Մխիթար քալանթարը լսել է այս Պապի խորհուրդը և կրկին դիմելով Հերակլ թագաւորին, բնակութեան համար տեղ ստացել Շուլավէրը, ուր և տեղափոխուել է։ Մի կարճ միջոցից այստեղ է եկել և Մելիք Սարգիսը Ջակամից, բերելով իւր հետ իւր ժողովուրդը։ Սրանք բնակւում են առանձին առանձին թաղերում, պահպանելով ինչպէս իրենց գիւղերի անունները, այնպէս և՝ բարբառը։

**Ալաշկերտի գաղթականները** վերաբնակուած են Ջահնազար, Մեծ և Փոքր Ղարաքիլիսա, Շիշթափա և Սարչապետ գիւղերը։ Սրանք բո-

---

[1]) Տես՝ իմ «Գանձակի գաւառը», Ա. հատոր. Րաֆֆի «Խամսայի Մելիքութիւններ»։

յորն էլ կաթոլիկ են, և մինչև այժմ էլ պահպանել են իրենց թէ բարբառը և թէ սովորութիւնները։ Սրանք 1820 թուին Ալաշկերտից գաղթել են Շիրակի Ղփի Ղարաքիլիսա, Թափադոլլակ, Քաւթարլու, Ջոռոմ և այլ գիւղեր, ուտեղից 1822 թուին վերաբնակուել են Բորչալուի վերոյիշեալ գիւղերը։

**Կարնոյ գաղթականները** վերաբնակած են Ծալկայի Ջինիս, Աշխալա, Նարդիվան, Ղուշչի, Ոյազմա, Ղըզըլ-Քիլիսա, Ոգնի կամ Ցոնիա, Բուռնաշէթ, Տաշբաշի գիւղերում։ Սրանք 1830 թուին Կարապետ եպիսկոպոսի առաջնորդութեամբ եկել են Անդրկովկաս, և նոյն, էրզրումի փաշայութիւնից գաղթած յոյների հետ վերաբնակուել վերոյիշեալ գիւղերում։ Սրանք սովորութիւններով և բարբառով բոլորովին չեն տարբերւում Ջաւախքում վերաբնակուած նոյն գաղթականներից։

**Թուրքերը** գաղթել են այստեղ Շահ-Աբասի ժամանակ (1605 թուին) և նրա հրամանով և իրենց ցեղական Բորչալու անունը տուել այն հարթութեան, ուր տեղ բնակութիւն են հաստատել [1]։

**Յոյների** մի մասը, որ բնակւում է Ըլավէրդի և Եաղդամ գիւղերում, Գիւմիշխանէից (Անատոլիա) են եկած, միւս մասը, որ բնակութիւն է հաստատել Ծալկայի գիւղերում, Կարնոյ շրջակայքից 1830 թ. եկած գաղթականներ են։

**Ռուսներից օրդոդոքսները** գլխաւոր ապէս Նիկողայոսեան գնդի պաշտօնաթող զինուորներից են յառաջացած, թէև կան նաև միքանի գաղթականներ Փոքր-Ռուսաստանի զանազան նահանգներից եկած։

**Մալականները** գաղթել են այստեղ 1846 թուին, Մեծ Ռուսաստանի զանազան տեղերից կրօնական հալածանքների պատճառով. իսկ Նոր-Միխայելովկայի բնակիչները Նոր-Պոկրովկայի օրդոդոքսներ էին, որ մալականների աղանդն ընդունելով՝ հեռացան Նոր-Պոկրովկայից և հիմնեցին այս նոր գիւղը մօտաւորապէս 15 տարի սրանից առաջ։

**Դուխոբորները** գաղթել են Ախալքալաքի գաւառից 1850 թուին, այնտեղի կլիմայի սաստկութեան պատճառով։ Իսկ այստեղ նրանք գաղթել էին 1840 թուին Տամբովի նահանգից, Կալմիկովների առաջնորդութեամբ։

**Գերմանացիները** գաղթել են այստեղ 1818 թուին Վիւրտեմբերգեան թագաւորութիւնից առանձնապէս հրաւիրուելով Երմոլով կառավարչապետից որպէսզի տեղական ժողովուրդներին աշխատասիրութեան օրինակ լինին և սովորեցնեն բնիկներին երկրագործութեան և գինեգործութեան լաւագոյն ձևերը։ Սակայն սրանց ազդեցութիւնը

---

[1]) Wachoucht, Description géographique de la Géorgie. trad. par Brosset. p. 141

շատ թոյլ է եղել շրջապատող ժողովուրդների վրայ և միակ նկատելին այն է, որ Բոլնիս-Խաչենցիք սովորելով սրանցից խաղողի վազի մշակութիւնը նրանցից աւելի են կատարելագործել և այս օր, իրենք գերմանացի գաղթականներն էլ խոստովանում են, որ Բոլնիսեցիների այգիները շատ աւելի լաւ են մշակում, քան իրենցը։

Գերմանական գաղթավայրերից առաջինը՝ Եկատերինէնֆելդը՝ հիմնուած է գաղթած տարին, 1818 թուին, իսկ Ալէքսանդրոսհիլֆը՝ 1857 թուին, նոյն գաղթականների Թիֆլիսի գաւառի Ելիսավէտտալ գաղութի բնակիչներից։

**Հայ բօշաները** նոյնպէս Երզրումի գաղթականներ են, հայերի հետ գաղթած։ Թափառական կեանք վարելուց յոգնած, սրանք սրանից մի երեսուն տարի առաջ բնակութիւն հաստատեցին Տամալախարաբա աւերակում և կազմեցին մի փոքրիկ գիւղ։

**Վրացիները** բնիկներ են։

**Քրդերը** զանազան ժամանակներում հովուութեան պաշտօնով եկած վերաբնակած են զանազան գիւղերում։

Նե. կայացնելով Բորչալուի ազգաբնակութեան ներկայ պատկերը, կարևոր ենք համարում անցողաբար յիշել նաև այն գաղթականութիւնները, որ տեղի են ունեցել այստեղից դէպի հարևան երկիրները, փոքր ինչ աւելի պարզ պատկերացնելու Բորչալուի ազգաբնակչական շարժումները.—

Թաթարաց արշաւանքներից յետոյ, երբ Բորչալուի գաւառն էլ արիւնով ներկուեց, Լօռի քաղաքը վրաց Աղէքսանդրի (Գէորգու որդու) կողմից տրուեց Սիւնեաց տէր Պելգինէ Օրբէլեան իշխանին, որովհետև նրա փեսան էր։ Այս պատճառով տեղական հայ բնակիչներն ամենայն կողմից սկսեցին գաղթել նրա, Պելգինի, որպէս հայ իշխանի երկրները։ Աղէքսանդր թագաւորը վախենալով, թէ մի գուցէ Պելգինի մօտ գաղթեն նաև վրաց քաղաքների ու գիւղերի, ինչպէս և Ճամշուլդէ քաղաքի հայերը. մանաւանդ որ միմիայն այս վերջինում 20,000 չափ հայեր կային, Ամնադին անունով մի կաշառուած հայի ձեռքով 1438 թուին թունաւորեց Պելգինին։ Սակայն այսպիսով գաղթականութեան առաջը չկարողացաւ առնել։ Հետևեալ տարին նա հրաժարուեց հարկ վճարել պարսից Ջահնշահին, ուստի և սա անհամար զօրքով մտաւ Գուգարք, ահագին բազմութիւն գերի տարաւ և առաւ Ճամշուլդէ քաղաքը։ Բայց դեռ քաղաք չմտած 1664 մարդու գլուխ կտրել տուեց և նրանցով քաղաքի հանդէպ մի ամբարտակ կանգնեց. վաթսուն եկեղեցականների և իշխանների քաղաքի դռան առաջ մորթել տուեց, իսկ քաղաքի մէջ 3000 հոգի զանազան տանջանքներով

սպանել տուեց և 9400 հոգի գերի տարաւ, բացի նրանցից, որոնց քաղաքից դուրս գտնելով՝ արդէն տարել էին [1]։

Այս ծանր հարուածից հազիւ սթափուել էր Գուգարքը, երբ 1605 թուին տեղի ունեցաւ հայերի գաղթը դէպի Սպահան Շահ-Աբասի հրամանով և շատ լոռեցիներ ևս չկարողացան խուսափել այս ընդհանուր չարիքից։

Այնուհետև թէև տեղի չունեցան մեծ, աշխարհաւեր կոտորածներ կամ գաղթականութիւններ, սակայն շարունակ կամ պարսիկները կամ օսմանցիները կամ լեռնական ափխազներն ու աւարացիները յանկարծակի յարձակումներով քանդել, աւերել են Բորչալուի գաւառը, բնակիչներին սրի անցկացրել և գերել. յիշենք այսպիսի արշաւանքներից մի քանիսը.—

1712 թուին Ալի Սուլթանը, որ տիրում էր Ղախի, Ճարի և Զաքաթալայի նահանգներին, պարսից պետութեան դէմ ապստամբելով ասպատակեց «զբոլոր երկիրն Գուգարաց» և այնուհետև ամենայն տարի յարձակւում, կողոպտում և գերի էին տանում [2]։

1719 թուին լեզգիների մի խումբ Սուրխայի առաջնորդութեամբ Գուգարքով անցաւ Վրաստան և ասպատակեց ու գերեց Սոմխէթի և Թմանեաց գաւառները [3]։

Նոյն թուին Կովկասի լեռնական լեկզիները «իբրև անձրևի տարափ» թափուեցան Հայաստանի և մասնաւորապէս մեր գաւառի վրայ։ Լոռեցիներից շատերը ապաստանեցան Ողէկի այրում, և երբ լեկզիները չկարողացան մօտենալ նրանց, սրա մերձակայքից հաւաքեցին փեթակներ և այրի առաջ վառեցին։ Ծուխը և զայրացած մեղուները դռան ծակերից ներս մտան այրը և խեղդեցին և կծոտեցին խեղճ ապաստանուածներին. ոմանք էլ ուշաթափ վայր ընկան։ Այս ժամանակ լեզգիները սանդուղ դնելով մտան այրը, ուշաթափուածներին սպանեցին, իսկ կենդանի մնացածներին բոլոր ունեցածներով գերեցին, և հէնց հիմայ էլ այդ այրը, լի է մարդկանց ոսկորներով [4]։

Մինչև այժմ էլ ժողովրդի յիշողութեան մէջ մնացել է այս սոսկալի անցքի պատմութիւնը. միայն ոմանք պատմում են, թէ ծխով են առել այրը, ոմանք էլ ասում են, թէ մօտակայ ջրաղացի ջրաղացպանին մահուան երկիւղով ստիպել են խնդրել ապաստանուածներին բանալ այրի դուռը գիշեր ժամանակ և իրեն ներս առնել, և երբ նրանք բացել են, լեզգիներն էլ ներս են խուժել և սկսել կոտորել։

---

[1]) Չամչեան. Պատմ. Հայոց. Գ. Հ. եր. 470—472

[2]) Դիւան Հայ. Պատ. Դ. գ. եր. 722.

[3]) Դիւան Հայ. պատմ. Դ. գ. եր. 723,

[4]) Դիւան Հայոց պատմ. Գ. Դ. եր. 717.



*Группа ахпатскихъ жителей*

*Հաղբատցիներ*

*Groupe d'habitants de Haghbath*

Digitized by Google

1785 Թուի օգոստոսին Աւարացիների Օմար խանը մտաւ Բորչալուի գաւառը, առաւ Ախտալան, Թալանեց և քանդեց արծաթի և ոսկու գործարանները և հրաշալի եկեղեցին, գերեց մինչև 860 հոգի առաւելապէս այստեղի գործարաններում աշխատող յոյներից, և սպանեց մինչև 640 հոգի երկու սեռից։

Ապա ուղևորուելով դէպի Լօռի, նա բանակեց Ուզունլարի մօտ, և զօրքեր ուղարկելով այրեց Թալանեց Լօռու շրջակայ գիւղերը։ Հերակլ Թագաւորը, որ քայլ առ քայլ հետևում էր նրան, առանց համարձակելու նրա վրայ յարձակուիլ, որովհետև քիչ զօրք ունէր, այս ժամանակ գտնւում էր Աղջա-Ղալայի մօտ։ Այստեղից նա 70 որսորդ ուղարկեց Լօռի բերդն ամրապնդելու։ Օմար խանը Ուզունլարից անցաւ դէպի Լօռի, յարձակուեց նրա վրայ և ընդդիմութեան հանդիպելով անցաւ դէպի Ախալքալաք [1])։

1787 Թուին Շուշու Իբրահիմ-խանի գրգռմամբ Բորչալուի գաւառից մօտ 3000 հոգի Թուրքեր գաղթեցին Ղարաբաղ։ Վրաց Հերակլ Թագաւորը նրանց յետ դարձնելու համար գնաց Գանձակի վրայ և վերջերը՝ Իբրահիմ խանի խոստման համաձայն, կամենում էր Մելիք Մէջլումին և Մելիք Աբովին շղթայած Շուշի ուղարկել, որպէսզի դրանց փոխարէն Իբրահիմ խանը վերադարձնէ այդ 3000 բնակիչներին, սակայն այս բոլոր ջանքերը ապարդիւն անցան [2])։

---

[1]) Бутковъ. Матеріалы для Новой исторіи Кавказа II ч. 181—182.
[2]) Դիւան Հայ. Պատմ Ը. եր. 11. Րաֆֆի Խամսայի մելիք. եր. 115.

# ԲՆԱԿԱՐԱՆ

Մեր ուսումնասիրած վայրի, բուն Լոռու տիպական տունը գլխատունն է, որ յատուկ է նաև ամբողջ Ղարաբաղին։ Սակայն այժմ այլ ևս ոչ ոք այս ձևի տուն չէ շինում, միայն եղածները փոքրիկ վերանորոգութիւններով պահւում են, և կամ սրանց մօտ նոր ձևի սենեակներ շինելով. սրանց գործ են ածում իբր խոհանոց և մառան։

Այժմեան, նոր շինուող տները բաղկանում են քարաշէն 2—3 սենեակներից, բաւական մեծ պատուհաններով, առջևում փոքրիկ պատշգամբ։ Կտուրը մեծ մասամբ կղմինտրածածք է լինում։ Շատ քիչ տների մօտ կայ առանձին խոհանոց, այլ այս նպատակով մեծ մասամբ գործ են ածում հին գլխատունը կամ մի անկիւն, մի քանի փայտերով ծածկած։ Պատահում են նաև երկյարկանի տներ, միայն սակաւ, և այն էլ առաւելապէս Ճուլավէր և Ջալալ օղլի աւաններում։

Հին ձևի տները կիսագետնափոր են, անկանոն կերպով դասաւորուած, միայն բոլորի սրահները եւ նրա մէջ բացւող գլխատան դուռը անշուշտ դէպի արեւելք են դարձած.— մի մնացորդ էլ զրադաշտական կրօնի ազդեցութեան։ Տները շինում են իրենք տանուտէրերը, երբեմն մի երկու վարպետ վարձելով և բարեկամներին օգնութեան հրաւիրելով։

Հին ձևի տները բաղկանում են հետևեալ մասերից՝ սրահ, գլխատուն, միջատուն, թոնրատուն և գոմ։

Սրահը տարածւում է գլխատան առաջ և լինում է նրա երկարութեան և 2—3 արշին լայնութեան։ Երկու կողմում ձգւում են պատեր, երրորդը գլխատան պատն է, իսկ չորրորդ կողմը բոլորովին բաց է և միայն մի քանի սիւներ ունի, որ պահպանում են հարթ կտուրը։ Սրահի մի պատի մէջ լինում է մի բուխարի, կողքերին երբեմն մի մի դարակ։ Շատ անգամ այստեղ դրուած է լինում մի լայն, հասարակ մահճակալ։ Տաք եղանակներին տնեցիք մեծ մասամբ այստեղ են անցկացնում, գիշերներն էլ այդտեղ քնում։

Գլխատունը գլխաւոր սենեակն է, որ միաժամանակ ծառայում է թէ իբր ընդունարան սեղանատուն, ննջարան, և թէ իբր խոհանոց և մառան։ Սա լինում է կամ քառակուսի և կամ քառանկիւ-

Digitized by Google

նի, 2—3 սաժէն բարձրութեան։ Ինքնատիպ և ուշադրութեան արժանին այս սենեակի **սողումաքաշ** կոչուած ծածկն է։

**Սողումաքաշ** ծածկը լինում է քառակուսի սենեակի վրայ և բաղկացած է քառանկիւնի տաշուած գերաններից, որոնցից առաջին չորսը, որ կոչւում են ռահորմի (թերևս առորմն) յանկում են ամէն մինը մի պատի և սրան կից բարձրացող երկու սիւների վրայ, միւսները, որ ընդհանրապէս մայարասի են կոչւում, յենուելով ռահորմների և միմեանց վրայ, աստիճանաբար մօտենում են միմեանց և կոնաձև բարձրանալով՝ մէջտեղում մի բացուածք թողնում, որ ծառայում է իբր միակ լուսամուտ։ Արտաքուստ ծածկուած է նախ ջարջուով [1]) և. ապա հողով ու մոխրով։

**Սուրմաքաշ** ծածկը լինում է քառանկիւնի սենեակների վրայ և յանկում է պատերի և սրանցից երկու արշին հեռու կանգնեցրած չորս սիւների վրայ։ Նախ պատերի և սիւների վրայ ձգուած գերանների վրայ մարդակներ դարսելով այս մասը հարթ ծածկում են, ապա մնացած մասը միմեանց վրայ քառանկիւնի գերաններ շարելով հետզհետէ նեղացնում են և մէջտեղից պատուհան, հերթիկ, թողնում։

Գլխատան մէջ տեղում **կտուրի** (հերթիկ) տակ գտնւում է **օրթօջաղը** (մ'ջին վառարանը)—փոքր ինչ փոսացած տեղում մի եռոտանի (կասկարէնք) կամ առաւելապէս՝ նրան փոխարինող երկու քար է դրուած։ Պատերից մինում մի ներս անկուածք կայ, յատկապէս ծալքի համար շինուած. այստեղ սովորաբար դարսուած է լինում մաֆրաշը, թաղիքները, գորգերը (խալիչա), ձնձերը (կապերտ), տեղաշորը, բարձերը և այլն, և այս բոլորը ծածկուած են մի ձունձով։

Միւս պատի մէջ գտնւում է **թէրէքը**, երեքից հինգ երկար տախտակներ միմեանցից կէս արշին բարձրութեամբ երկարացրած են, որոնց վրայ շարուած են մեծ և փոքր **պղինձներ** (կաթսաներ), **թասեր, մաթլաբաներ, սինիներ, նալբաքիներ, թաւաներ, բադիաներ, փլաւ քամիչ, կթիչ, թեփշիներ, խոնչաներ**։— Դէրէկի կողքին քարշ է արած **գդալմանը**՝ մէջը գդալներ անած. թէրէքի տակը շարուած են կճուճներ։

**Երրորդ** պատի մօտ դրուած է փայտէ շտեմարանը—ամբար, ուր սովորաբար պահւում է ցորեն։ Սրա մօտ, դէպի դուռը, շարուած են փայտէ և պղնձէ ջրի **կժեր, փարչեր, ղարղարայ ցոլչայ, գիւգիւմ** և այլն։ Դռան միւս կողմում ընկած է **կեռը, թաթակիշը, շամփուրները, կացինը**, պատից կախուած է **ակիշը**, անկիւնում դրուած է **ճրագթա-**

---

[1]) Ջարջուն լինում է կամ հին փչացած խոտ, կամ մանգաղով հնձած արտերում մնացած ծղօտ, որ յետոյ գերանդիով հնձում են, կամ կտաւատի ծղօտները, որ չեն կալսում և որը կոչւում է բէլմ և կամ ճահճային մի տեսակ խոտ որ կոչւում է ռիլ։

քը վերան երկաթէ և թիթեղէ ճրագներ։ Չորրորդ կողմում շարուած են **քթոցներ** ալիւրով լի, **կոթեր**՝ հացահատիկներով, իւղով, պանրով լի, **բարձափէտեր**[1]) որոնց վրայ դնում են բարձը՝ պառկելիս։

**Միջնատունը** կից է գլխատանը, որի մէջ բացւում է սրա միակ դուռը. սա մի փոքրիկ սենեակ է, հարթ կտուրով, շատ անգամ առանց պատուհանի, միայն միքանիսի մէջ կտրում կամ պատի մէջ թողնուած մի ծակից լոյսը թափանցում է ներս։ Այս սենեակը երբեմն ծառայում է նորապսակների համար իբր ննջարան և շատ անգամ իբր մթերանոց։

**Թոնրատունը**, որ շատ անգամ գլխատնից փոքր ինչ հեռու և նրանից առանձնացած է լինում, **տիւրմաքաշ** մի շէնք է, մի մեծ հերդիկով։ Գրեթէ մէջ տեղում թաղուած է թոնիրը, մի քանիսի մէջ կայ նաև փուռ։ Այստեղ դրուած են լինում **տաշտը**, մաղը, **հացի զանդուկը** (արկղը), **սեղանատախտակը**, **գրդնակը**, **ռափաթէն**, **ալիւրի քթոցները** և այլն։

Տանը կից է գոմը, որ երբեմն ոչ թէ մէկ, այլ երկու, երեք հատ է լինում, նայած գերդաստանի ունեցած անասունների թուին։ Պատահում է, որ գոմի մի ծայրում օդա է լինում, ինչպէս այս սովորական է Ծալկայում և Ջաւախքում—Կարնոյ գաղթականների մէջ—սակայն սա բացառութիւն է, շրջակայ անտառների շնորհիւ այս ժողովուրդը ստիպուած չէ անասունների հետ ապրել, նրանց տաքութիւնից օգտուելու համար։

Տան առաջ կամ կողքին տարածւում է կալը, որ թեղի ժամանակ արձակած փոշիով լցնում է ամբողջ տունը և մարդկանց թոքերը։ Սրա կողքին բարձրանում է խոտի դէզերը, իսկ մի քիչ հեռու՝ անասունների աղբի կոյտը, որ իւր գարշահոտութեամբ ապականում է օդը։ Սակայն փոքր ի շատէ յառաջադիմած գիւղերում, ինչպէս օր. Ուզունլարում, Դսեղում, այս կոյտերը երկար չեն մնում, այլ ձմեռւանը՝ գարունը, իսկ ամրանը՝ աշնանը սայլերով կրում են վարելահողերը պարարտացնելու։ Կալի մօտ գտնւում է նաև յարդանոցը, որ սովորաբար գետնափոր է լինում, կալից ցածր, որպէս զի հեշտութեամբ կարելի լինի յարդը կալից նրա կտրովի ներս ածել։

Տան առաջ լինում են մի բանի գետնափոր հորեր, ցորեն, գարի, հաճար պահելու։

Մի քանի տների մօտ լինում են նաև հաւանոցներ, սակայն ընդհանրապէս հաւերին գոմերումն են պահում և առանձին հաւանոցներ չեն շինում։

Մի քանի տների մօտ էլ պատահում են շների բներ։

---

[1]) Այստեղ յիշուած բոլոր իրերը կընկարագրուեն իրենց տեղերում։

## ԶԳԵՍՏ ԵՒ ԶԱՐԴ

Կանանց. — Այս գաւառի կանացի առանձնայատուկ հանդերձը արդէն վերանալու վրայ է և միմիայն պառաւների վրայ կարելի է նըկատել, այն էլ ոչ բոլորի։ Այժմ մեծ մասամբ վրացնակ են հագնում, վրաց տարազով գլուխ կապում։ Իսկ Ջալալ-օղլում և Ճուլավէրում ե-րևում են եւրոպական հանդերձ և եւրոպական գլխարկ։

Նախկին, տեղական հանդերձն էլ մի առանձին տարազ չի ներ-կայացնում. սա մի խառնուրդ է Ղարաբաղի և վրացական տարազնե-րի։ Ուրեմն հաւանական է, որ կամ այս տեղի տարազն էլ նման է եղել Ղարաբաղի տարազին և ենթարկուել է վրացականի ազդեցու-թեան և կամ՝ Ղարաբաղի գաղթականները մտցնելով իրենց տարազը սրանց մէջ, բոլորովին արտաքսել են տեղականը։

Կանայք հագնում են ճապիկ, որ իջնում է մինչև ծնկները և երկար թևեր ունի. կարում են հասարակ կտաւից։

Ճապընկերը կարում են ճիլա կոչուած կտորից, որ հաստ, բամ-բակեայ կտոր է։ Սա խոնջանով հանդուստում է առջևից, ոչ մի բացուածք չունի. իջնում է մինչև կրնկները, այնպէս որ փոքր ինչ երևում է, այս պատճառով էլ ծնկից ներքև հարուստները՝ կարմիր թաւիշ, իսկ միջակները կարմիր ճիլաբէկի (դարձեալ բամբակեայ բա-րակ կտոր) են քաշում, և ծայրում կլապիտոն կարում։

Այս սովորական երկար շապկի և վարտիկի (շապընկերի) վրայ հագնում են արխալուղ, որ կարում են գունաւոր չթից և ամբողջովին բամբա-կում։ Սա գրկելով ամբողջ իրանը՝ նաւուճով սեղմւում է, մէջքին, չափ-րաստով կոճկւում կրծքին և լայն բղանցքներով իջնում մինչև ծրնկ-ները։ Ունի մինչև դաստակը հասնող թևեր, որ հետզհետէ նեղանա-լով դաստակի մօտ կոճկւում են։ Երկու կողքերին կան մի մի գրպան։

Արխալուղի վրայից հագնում են յուբկա։ Սա կարում են բամբա-զիայից։ Յուբկան բաղկացած է երկու մասից՝ վերևի, որ գրկում է ամ-բողջ իրանը, անթև է և կուրծքը չափրաստով կոճկւում՝ սեղմելով մէջքը, ներքևի մասը շրջազգեստ է, կարած վերևի մասի հետ, միայն առջևից, աջ կողմից, փոքր ինչ բաց է թողնուած, որ հագնելուց յե-տոյ կոճկւում է ձախ կողմում մի չափրաստով։ Այս մասը արխալու-ղից երկար է և իջնում է կրունկներից մի քիչ (1/4 արշին) վերև։

Digitized by Google

Օրա երկու կողմում, արխալուղի գրպանների հանդէպ, բացուածքներ կան, որպէս զի այդտեղից կարելի լինի ձեռքը տանել գրպանը։

**Իւբկայի** վրայից հագնում են **դեյրա**, որին պառաւները **լեճին** կամ **մրնթանա** են կոչում։ Սա միանգամայն նման է իւբկին, միայն թևերով է, կուրծքը նոյնպէս չափրաստով կոճկւում է, մէջքը նաւուճով սեղմւում, ներքևի մասը առջևից մի քիչ բացւում է և ձախ կողմում կոճկւում։ Արխալուղի գրպանի հանդէպ բացուածքներ ունի։ Սովորաբար կարում են սև կտորից։

Մէջքին կապում են **գօտի** — մի քանի արշին երկարութեան և քառորդ արշին լայնութեան սև կտոր, որ մի քանի անգամ չանքսին ծալելով կապում են և ծայրերը նորատիները կախ ձգում առջևից իսկ պառաւները ամրացնում կողքերին։

Հանդիսաւոր օրերին, ձմեռ թէ ամառ, մանաւանդ Ընող գիւղում, դէյրի վրայից հագնում են **ֆաքիպա**, որ Ղարաբաղցոց **ֆիւրֆն** է. կարւում է մուգ կարմիր կամ սև թաւիշից, իջնում է ծնկներից մի քիչ ցածր. մէջքին նաւուճով սեղմւում է, կուրծքը եռանկիւնաձև բացուած է։ Թևքերը ձեռքից ¼ արշին երկար է, հետզհետէ նեղանում է և ապա կիսաբոլոր վերջանում։ Արմունկից քիչ բարձր մի փոքրիկ բացուածք կայ, որտեղից դուրս են հանում ձեռքը և թևքի մնացած մասը կամ քաշ ձգում, կամ ուսին ձգում։ Քաթիփի բոլոր եզրերը և մանաւանդ կուրծքը և օձիքը, ինչպէս և թևերի ծայրերը զարդարուած են ազուէսի մորթու մօտ մի վերշոկ լայնութեան մորթով։

**Տղամարդկանց** հանդերձը բոլորովին նման է միւս գաւառների, մանաւանդ Գանձակի, հանդերձներին, ուստի և խուսափելով կրկնութիւնից՝ առաջարկում եմ կարդալ այդ մասին իմ «Գանձակի գաւառ» աշխատութեան մէջ։

## ԳԼԽԻ ՅԱՐԴԱՐԱՆՔ

**Կանայք** մազերը սանրելուց յետոյ երկու կամ մի քանի հիւս են շինում, իսկ ականջի մօտի մազերը ոլորելով այտերի վերայով անցկացնում, որպէսզի լաչակը կապելուց յետոյ փոքր ինչ երևայ։ Սա կոչւում է **նաւլ**. սրա վրայ՝ ց կապում են **ցակալաչակը**. սա եռանկիւնաձև, սպիտակ կամ կարմիր կտոր է, որ ձգելով գլխին, անց են կացնում կզակի տակով և ծայրերը գնդասեղով ամրացնում գագաթին կամ ուղղակի կապ ձգում։

Սրա վրայ դնում են **զաւուրնեյլան**, ըստ Ընողցոց **միջնակոպի**։ Սա մօտ մի վերշոկ լայնութեան և իւրաքանչիւրի գագաթի շրջապատի մեծութեան կարտօն է. վերան մի որ և է շոր քաշած։ Գաւուրնեյ-

լայի վրայ նոյն լայնութեան և երկարութեան թաւշեայ մի սև կտոր են կապում, որ կոչւում է ճակտի աղլուխ։ Նորատիներինը շատ անգամ մետաքսեայ թելով կամ կլապիտոնով ասեղնագործած է լինում։ Գաւուրճելլու մէջ դնում են կոպի.— սա կարում են այսպէս. վերցնում են կիսալուսնաձև մետաքսեայ կամ այլ կտոր, մէջը բամբակ դընում և կողքերը միացնելով կարում, միանգամայն աշխատելով, որ ծայրերը աւելի բարակ լինեն քան մէջ տեղը։

Պառաւներից մի քանիսը գաւուրճելլու և կոպի փոխարէն մի աղլուխ նախ եռանկիւնաձև և ապա մի վերշոկ լայնութեան ծալում են և ճակատի վրայով անցկացնելով ծոծրակի վրայ հանգուստում։

Գաւուրճելլու վրայ ձգում են իբր «գլխի փոթաթան» մի շալ, որի ձախ ծայրը կզակի տակով անց են կացնում այնպէս՝ որ ամբողջ կզակի հետ բերանն էլ ծածկի և ապա այն ծայրը ձգում են նոյն շալի աջ ծայրի վրայ և վերջինս յետ ծալելով նորից անց են կացնում գլխի վրայով և գլխի ձախ կողմում ամրացնում, անցկացնելով շալի տակ։ Այս շալով, ուրեմն, բերանը ծածկուած է մնում։

Ոմանք էլ այս շալի վրայ մի ուրիշ շալ են առնում, որի ծայրերը կախ ընկած են թողնում։

**Ագանելիք.**— Ոտներին հագնում են գուլպա, որ իրենք են գործում և մաշիկ (.քոշ), որ գնում են գիւղում աշխատող մաշկակարներից·

**Կտածումն.**— Այս վայրենական սովորութեան մնացորդները դեռ ևս պահպանւում են այս գաւառում ևս։ Գլխաւորապէս Նորատի աղջիկները, ցանկանալով աւելացնել իրենց գեղեցկութիւնը, ճակատին, այտերին, թևին, կրծքին խալեր են շինում այսպէս. վերոյիշեալ տեղերը երկար տրորելուց յետոյ լեղակի մէջ թաթախած թելն ասեղով անց են կացնում կաշու միջով. լեղակը թորուելով կապտագոյն բիծ է թողնում, որ բաւական երկար ժամանակ մնում է։

Նախնական յարդարանքի մնացորդներից արժանի է յիշել նաև այն, որ աղջիկները յուլունքներ և մանաւանդ մեխակներ են շարում թելին և կապում վզերից, որ թէ գեղեցիկ լինին և թէ իրենցից անուշահոտութիւն բուրէ։

Նաև մազերը փափկացնելու նպատակով գլուխները լուանում են քացախով կամ մածնով և երբեմն մեխակաջրով։

---

Digitized by Google

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՀԱՐՍԱՆԻՔԻ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ [1])

*Հաւատի*.—Միւս հայաբնակ գաւառների նման այս գաւառի հայերն էլ սրանից մի-երկու տասնեակ տարի առաջ աւելի փոքր հասակում էին ամուսնացնում իրենց զաւակներին. բաւական էր, որ աղջիկը 9—10, իսկ տղան՝ 12—13 տարեկան դառնար, որ նրանց «հոգատար» ծնողները՝ առանց նոյն իսկ նրանց համաձայնութիւնն առնելու՝ նշանէին ու պսակէին նրանց: Պատահում էր, որ խեղճ աղջիկներն ամուսնութեան մասին գաղափար անգամ չէին ունենում. այսպէս ձահալեցի Եղիսաբէթը, որ պսակուելիս տաս տարեկան է եղել, հարսանիքի օրը փախել թոնրում պահ է մտել:

Այսպէս վաղ պսակելու նպաստում են այն հանգամանքը, որ աղջկայ ծնողները աղքատ լինելով, աշխատում են կարելույն չափ շուտ ազատուել մի «ուտող բերանից», քանի որ իրենք անասուններ, հող շատ չունենալով, կարօտ չեն նրա աշխատանքին, իսկ հարուստ գերդաստանները, աշխատող ձեռքերի կարիք զգալով՝ կարելույն չափ շուտ են ամուսնացնում իրենց տղաներին:

---

[1]) Որպէսզի հնարաւորութիւն ունենայի ոչ թէ մի գիւղի, այլ Լօռու բոլոր բնիկ ժողովուրդների հարսանեկան սովորութիւնները նկարագրելու, խնդրեցի մի քանի անձերի կամ ամբողջովին նկարագրել իրենց գիւղի հարսանիքը և կամ իմ նկարագրութիւնը կարդալով նշանակել նման և տարբեր կէտերը. այս անձնաւորութիւնները, որոնց և յայտնում եմ իմ խորին շնորհակալութիւնը, հետևեալներն են. Օձուն գիւղից՝ պ. Գ. Խարազեան. Ագարակից՝ պ. Բ. Տէր-Սահակեան. Վարդաբլուրից՝ արժ. Ե. Զոհրաբեան. Ճնողից՝ պ. Բ. Մկրտումեան. Դսեղից՝ պ. Ս. Մամիկոնեան, իսկ Հաղբատի վերաբերութեամբ ի նկատի եմ ունեցել արժ. Գ. Երզնկեանի «Ազգագրական հանդէսի» Գ գրքի մէջ նկարագրած հարսանիքը:

Digitized by Google

Այժմ ևս այս տխուր երևոյթը շարունակւում է, թէպէտ և եկեղեցական օրէնքով արգելուած է։ Օրինազանց քահանան օրինաւորում է իւր արարմունքը մատեանում ամուսնացողներին պահանջուած տարինները նշանակելով։ Այնպէս որ՝ եթէ մինը կամենայ այս մատեաններով դիտողութիւններ անել, մեծ սրխալմունքների մէջ կընկնի։ Նոյն իսկ այն դէպքում, երբ կեղծելու ոչ մի կարևորութիւն չկայ, տարինները մօտաւորապէս և ոչ ճիշտ են նշանակւում, որովհետև գիւղացիները չըգիտեն ոչ իրենց և ոչ իրենց զաւակների տարինները, յիշում են միայն նրանց ծննդեան կամ մանկութեան ժամանակը, կապելով մի ուևէ նշանաւոր անցքի հետ. օր. ասում են խոլերի տարուայ տղան է, Ռուսը որ Ղարսն առաւ՝ հըլը ծիծ կուտէր և այլն։

Այժմ շնորհիւ այն հանգամանքի, որ նահապետական գերդաստանը քայքայւում է և կազմւում են փոքրիկ ընտանիքներ, այնպէս որ զինուոր գնացածի ընտանիքը չի շարունակում այլևս ապրել ահագին գերդաստանի մէջ, ուր ամենայն հոգատարութիւն և հսկողութիւն անպակաս են. նաև շնորհիւ այն բանի, որ հետզհետէ բարոյականութիւնն ընկնում է, զգուշանում են զինուորական ծառայութիւնից ազատուելուց առաջ ամուսնանալ, ուրեմն և այժմ սկսել են ամուսնանալ միայն 21—25 տարեկան հասակում։

Սրա ազդեցութեամբ և՝ աղջիկները փոքր ինչ ուշ են ամուսնանում, 13—15 տարեկան հասակում։ 18—20 տարեկան աղջիկը արդէն «տանը մնացած», «քացախած», «անբաղդ» և ծնողների համար նախատինք են համարւում և մեծ հոգս պատճառում։

Իսկ զինուորական ծառայութեան չենթարկուող, մի հատիկ կամ արատաւոր երիտասարդները շարունակում են առաջուայ նման վաղ՝ 16—18 տարեկան հասակում ամուսնանալ։

*Ամուսնացողների հասակի համեմատութիւնը.*—Ընդհանրապէս կարելի է ասել, որ ամուսնացող զոյգերի տղամարդոց հասակը բարձր է լինում կանանց հասակից, առաւելապէս 5—15 տարի։ Շատ հազիւ է պատահում, որ մի աղջիկ ա-

մուսնանայ այլի մարդու հետ, որքան էլ վերջինս փոքրահասակ լինի. հազիւ է պատահում նաև, որ այրի կինը չամուսնացած ամուսին գտնի, որքան էլ վերջինս մեծ հասակ ունենայ։

*Ամուսնացողների և նրանց ծնողների համաձայնութիւնը.* —Ընդհանրապէս մայրերն են հարսնացուն ընտրում, բայց երբեմն էլ տան ազապ աղջիկներն և փոքր հարսները մեծ դեր են խաղում այս խնդրում, ընտրելով իրենց ընկերուհիների միջից և միջնորդ հանդիսանալով տղի և աղջկայ մէջ։ Նկատւում է, որ հետզհետէ նշանակութիւն է տրւում տղայի և մասամբ աղջկայ կամքին, մանաւանդ երբ սրանք համեմատաբար աւելի մեծ հասակ են ունենում, մինչդեռ առաջներն ամուսնացողների կողմից անամօթութիւն կը համարուէր միջամտել այս խնդրում։ Առաւելապէս մայրը, հօր համաձայնութեամբ վճռում էին և հէնց այժմ էլ մեծ մասամբ որոշում են ամուսնացողի ապագան, ընտրելով մի այնպիսի կողակից, որ համապատասխանէր իրենց վիճակին,—«հալալ կաթնակեր»—լինէր։ Այս վերջի կէտին գիւղացիները շատ մեծ նշանակութիւն են տալիս և նրանց մէջ տարածուած է այս առածը՝ թէ «Մօրը տես՝ աղջկան առ, ղրաղը (եզրը) տես՝ կտաւն առ»։

*Օրօրոցախազ.*—Դեռ մինչև այժմ էլ մնում է այն սովորութիւնը, որ երկու յղի կանայք միմեանց շատ սիրելով և միմեանց հետ բարեկամական կապով կապուելու յուսով միմեանց խօսք են տալիս, որ, այլասեռ երեխաներ ունենալիս՝ միմեանց տան. և երբ ունենում են՝ խազում են օրօրոցների լծերը (միջնափայտ), իբր նշան, որ երեխաներն արդէն նշանադրուած են։ Այնուհետև այս երկու գերդաստանները միմեանց հետ խնամիական յարաբերութիւններ են ունենում, որոշ տօներին միմեաց ընծաներ ուղարկում, հիւր գնում, իսկ երեխաները միմեանց հետ խաղալով մեծանում են, մինչև 6—7 տարեկան հասակը, երբ աշխատում են աղջկան աւելի հեռու պահել տղից, որպէս նրա «հարսնացուն», որովհետև գիւղական սովորութեամբ արգելւում է յայտնի կերպով հարսնացուին տեսնել, նրա հետ խօսել, այդ թոյլ է տրւում միայն աղջկայ հօրից ծածուկ, գիշերը, մօր ներկայութեամբ։

Digitized by Google

Օրօրոցախազի նշանադրութիւնը կատարւում է նաև այն դէպքում, երբ մինի որդիները սովորաբար չեն ապրում, յուսալով որ նշանածի բաղդը կարող է ապրեցնել երեխային՝ շուտով նշանում են նրան։

*Աղջիկ փախցնել*.—Այս վաղեմի սովորութիւնը տեղի է ունենում երբ գլխաւորապէս աղջկայ ծնողները համաձայն չեն լինում տալու իրենց աղջիկը նրա վրայ սիրահարուած երիտասարդին և երբ վերջինիս ծնողները չեն կամենում առնել նրա սիրած աղջիկը։ Առաջին դէպքում սիրահարուած երիտասարդը հաւաքելով իւր ընկերներին փախցնում է աղջկան։ Ընկերներից մինը մի յարմար տեղ գտնելով աղջկան, բռնում է նրա ճկոյթ մատը, կռճիկները ծալում և հուփ տալիս, աղջիկը ցաւից ստիպուած վազում է երիտասարդի հետևից, մինչև որոշեալ տեղը, ուր թաք կացած ձիաւոր սիրահարը առնում է նրան ձիու վրայ և չափ ընկնում։ Երբ այս մասին լսում են աղջկայ ծնողները, ձիաւորւում, սար ու ձոր ընկնում, որոնում են և եթէ գտնում են՝ սաստիկ կռւում են, աղջիկը յետ առնում տանում տուն, իսկ եթէ ոչ, տղան միքանի օր աղջկան բայլաներում, կամ բարեկամի մօտ պահելուց և առևանգելուց յետոյ ուղարկում է հօրը տունը։ Ոստիկանութիւնը միջամտում է և հարցնում աղջկան, թէ ինքնակա՞մ է փախել։ Աղջիկը ի նըկատ առնելով, որ այդպիսի նախատինքի ենթարկուելուց յետոյ այլևս չի կարող յուսալ մի լաւ ամուսին ունենալու՝ դրական պատասխան է տալիս։ Եթէ ուրիշի հետ նշանադրուած է լինում, փեսացուն և նրա կողմնակիցներն էլ միջամտում են, երկար ժամանակ կռւում և վերջ ի վերջոյ որոշում, որ երկու—նշանուած և փախցնող—փեսացուների կողմից երեքական մարդ քահանայի առաջնորդութեամբ ներկայանան աղջկան և առաջարկեն վերցնել այն փեսացուի թաշկինակը, որին սիրում է։ Շատ յաճախ փախցնողի թաշկինակն են ընտրում, որովհետև հակառակ դէպքում փախցնողը աքսորի է դատապարտւում, և այսպիսով խեղճ աղջիկը իւր սէրը զոհ է բերում մարդասիրութեան, ազատելով այն երիտասարդին, որ իւր համար կեանքը վտանգի էր ենթարկել։ Երկրորդ դէպքում, այսինքն

երբ տղայի ծնողները չեն համաձայնում առնել տղայի ուզած աղջկան, սա մի գեղեցիկ օր գնում, աղջկայ ձեռքը բռնում տանում է իրենց կամ մի մօտիկ ազգականի տուն։ Ծնողները մի քիչ բարկանալուց յետոյ համաձայնում են և կամ, ծայրայեղ դէպքում, աղջիկը տալիս են տղայի ձեռը և տանից դուրս անում.—Նա էլ սկսում է առանձին ապրել, նոր տուն տեղ լինել։

*Աղջիկ ուզել.*—Երբ տղայի ծնողներն որոշում են, թէ ում աղջիկն են ուզելու, դեռ կողմնակի կերպով աշխատում են իմանալ թէ արդեօք կըտա՞ն. ապա մի օր տղայի հայրը, կամ հօրեղբայրը, կամ մօրեղբայրը, և կամ մի ուրիշ ազգական կամ մօտիկ անձնաւորութիւն գնում են աղջկայ տունը և գերդաստանի մեծից, օրինակ պապից, մեծ հօրեղբօրից և կամ հօրից խնդրում աղջկայ ձեռքը.

«Եկել եմ քո օջախից մի բուռը հող տանելու» ասում է սովորաբար խնամախօսը։

Աղջկայ տէրը որքան էլ տրամադիր լինի նրանց խնդիրը կատարելու, այնուամենայնիւ իսկոյն և եթ խօսք չի տալիս։

«Լաւ կլնի, դու որ ուզում ես՝ մենք ինչ պիտի ասենք, ամա մի ժամանակ տու մեր տանեցոց հետ խօսինք. մենք էլ պէտք է խորհուրդ անենք։»

Իսկ եթէ կամենում են մերժել, հէնց առաջին անգամին ասում են.

Ձեր կորուստը մեր տանը չի։

Կամ՝

Դեռ մեր աղջկայ ժամանակը հասել չի, քե մատաղ. մե մատն երեխայ ա, նրան ի՞նց նշանենք։

Եւ կամ՝

Դեռ շատ պակաս ու պռատ ունի մեր աղջիկը։

Վերջապէս երբ վերջնական պատասխանը լսելու համար խնամախօսները կրկին անգամ գնում են աղջկայ տունը, տանում են իրենց հետ օղի, մի մատանի, մի բաղդատի կամ փուշի, և երբ աղջկայ տէրը տալիս է իր համաձայնութիւնը՝ նրանք իսկոյն հանում են իրենց գրպաններից օղին և նոր

բարեկամութեան մասին բարեմաղթութիւններ անելով խմում, ապա հարսնացուին առաջ են բերում և տալիս սովորաբար մի բաղդադի կամ շալովի և երբեմն՝ նաև մատանի։ Այս առաջին նշանը տեղական բարբառով կոչւում է բ ե լ գ ե ա հ։

Եթէ աղջիկը տարբեր գիւղից են ուզում, աղջկայ ծնողներն իրենց համաձայնութիւնը տալուց առաջ կամ նոյն իսկ յետոյ մարդիկ են ուղարկում «*փեսի տունը տեսնելու*»։ Սրանք, որ սովորաբար աղջկայ մօտիկ ազգական տղամարդկանցից են լինում, նախապէս իմացնում են գնալու օրը և ապա գնում։ Այստեղ ամենայն ուշադրութեամբ նայում են տանը, տեղին, հաշւում անասունները, հարցուփորձ անում նրանց կարողութեան մասին, լաւ հիւրասիրւում և վերադարձին կամ հաստատում իրենց տուած խօսքը և կամ մերժում։

*Նշանադրութիւն*.—Բելգեահը տալուց յետոյ երկու խնամիների համաձայնութեամբ որոշւում է նշանադրութեան օրը։ Նոյն երեկոյին տղայի տէրը հրաւիրում է իւր մօտիկ ազգականներին և ծանօթներին, և նրանց հետ միասին գնում աղջկայ տունը՝ տանելով նշանը—հարսնացուի համար մի մետաքսեայ թաշկինակ և մի ուրէ զարդ՝ մատանի, խաչ, ապարանջան, գինտեր և այլն։ Բացի սրանից ջահիլ տղաների շալակը տուած ուղարկում են մի ամբողջ գառան կամ ոչխարի *խաշլամայ*, 6—12 բոխչայ թխուածք, այսինքն գաթայ, նազուք, մի քանի ափսէ հալուայ, կարմիր ձուեր, չոր միրգ, 1—2 թունգի օղի, 5—10 թունգի գինի և հարսնացուի տան ատագ անդամների համար ստնամաններ։

Հարսնացուի տէրը ուրախ դիմաւորում է խնամիներին, ներս հրաւիրում և իւր օղիից մի մի բաժակ խմացնում։ Ապա թէյ են մատուցանում և ընթրիք տալիս։ Առատութեամբ բաշխւում է օղին և գինին, որ խմում են «Աստուած շնորհաւոր անէ, բաղդաւոր ըլին, մի բարձի ծերանան» բարեմաղթութիւններով։ Ընթրիքից յետոյ մեծ սկուտեղների վրայ դըրած մատուցանում են փեսացուի տանից բերուած ուտելեղէններն ու խմելիքը. քահանան, որ «վերի գլխում»—ամենապատուաւոր տեղում—նստած է լինում, վերցնում է դրա մի մասը հանդիսական-

*ներին տալիս՝ ուտելու, իսկ մնացածը ուղարկում տնեցիներին, «Աստուած շնորհաւոր անէ, շէն ու հաստատ մնայ խնամին» բարեմաղթելով։ Ամենքը կրկնում են քահանայի խօսքերը։ Յետոյ քահանան հրամայում է առաջ բերել հարսնացուն։ Մի հասակաւոր կնոջ թևը բռնած, գուգուած, զարդարուած, երեսը բաց յառաջ է գալիս օրուայ հերոսուհին և կանգնում քահանայի կողքին։ Իսկոյն վերջինս հրամայում է փեսացուին, որ լուռ ու մունջ, աննկատելի կերպով սեղանակցում է, գալ կանգնել հարսնացուի կողքին։ Ապա քահանան վերցնում է նշանը խնամու ձեռից, տալիս փեսացուին, առաջարկելով մատուցանել հարսնացուին, և դառնալով վերջինիս՝ նրան հասկանալի լեզուով բացատրում է, որ այդ օրը նա միանում է այդ տղայի հետ և այսուհետև նրանք անբաժանելի են և միայն մահր կարող է նրանց բաժանել։ Եւ եթէ այս միութեան նա յօժար է, թող վերցնէ նշանը։ Հարսնացուն վերցնում է նշանը—մատանին կամ մի որևէ զարդ—իսկոյն բոլորը բղաւում են. «Աստուած շնորհաւոր անէ»։*

*Յետոյ քահանան վերցնում է մետաքսեայ թաշկինակը և իւր ձեռքով ձգում հարսնացուի գլխին ու սկսում իւր օրհնանքն ու պահպանիչը։ Երկու ամոլները ձեռք ձեռքի տուած լուռ կանգնում են։ Պահպանիչից յետոյ փեսացուն գնում նստում է իւր տեղը, իսկ հարսնացուն մնում է կանգնած, առնելով ձեռքը մի ափսէ կամ մի փոքրիկ մատուցարան։ Իսկոյն փեսացուի կողմից եկողները «վեր են գալիս երես տեսնուկը»—այսինքն դրամ են ձգում այդ ափսէի մէջ (50 կ. մինչև 5 ր.)։ Հարսնացուի կողմից հրաւիրուածները, քահանան և տանուտէրը պարտաւոր չեն այդ նուէրն անելու։ Վերջապէս քահանան վերցնում է ափսէն հարսնացուի ձեռքից, համարում դրամը և տալիս հարսնացուի հօրը, որ մի ընծայ, սովորաբար արծաթեայ գօտի, առնի աղջկայ համար։ Սրանից յետոյ արդէն ցրւում են։*

*Միքանի գիւղերում, ինչպէս օր. Վարդաբլուրում, համեմատաբար աւելի նահապետական տներում հարսնացուն առաջ է գալիս և տաք ջրով լուանում փեսացուի կողմից եկողների ոտները և իւրաքանչիւրին մի զոյգ գուլպայ ընծայ տալիս։*

Սրանք էլ փոխադարձաբար մի բուբլի քսանական կոպէկ են նուիրում նրան։ Սակայն այս նուէրի քսանական կոպէկներն են մնում հարսնացուին իբր գուլպաների գին, իսկ մնացածը տլւում է նրա հօրը, որպէսզի օժիտին վերաբերեալ մի որևէ բան, յաճախ գօտի, գնէ։

Առաջներում նշանադրութեան ժամանակ փեսացուն ներկայ չէր լինում, այլ միայն յաջորդ օրը, երեկոյեան, աներոջից ծածուկ, ներս էր ընկնում խնամոնց տուն, ուր զոքանչը հիւրասիրում էր և ցոյց տալիս հարսնացուին։ Այժմ սաստիկ արագութեամբ բարքերն ու սովորութիւնները փոխւում են և ես տեսայ, թէ ինչպէս մի օձնեցի նշանուած զոյգ մի մի ձի նստած ուխտ էին գնում Ս. Սարգիս, միմեանց հետ խօսելով, ծիծաղելով։ Եւ սրանց ծնողները հեռուից հետևում էին անտրտունջ, մինչդեռ առաջները թոյլ չէր տրւում, որ մինչև անգամ փեսացուն օրը ցերեկով հարսնացուի տան մօտով անցնի։

*Այրիի նշանադրութիւնը.*—Այրի կինը եթէ որդիներ չունի, սովորաբար վերադառնում է հօրանց տուն և ամուսնանում, իսկ եթէ որդիներ ունի, մնում է սկեսրանց տանը և չի ամուսնանում, թէև կան և այնպիսիներ, որոնք ամուսնանում են, թողնելով իրենց երեխաներին սկեսրանց մօտ։ Ընդհանրապէս այրի կանայք ամուսնանում են այրի մարդկանց հետ, և սրանց նշանադրութեան ու պսակադրութեան հանդէսները շատ պարզ են լինում։ Այրի տղամարդը մի պառաւի միջնորդութեամբ հաճեցնում է այրի կնոջը իւր հետ ամուսնանալու, ապա միքանի մարդ է ուղարկում նախ սրա սկեսրանց և ապա հօրանց մօտ և նրանցից խնդրում այրի կնոջ ձեռքը։ Շատ անգամ սկեսրանք պահանջում են փեսացուից այնքան գլխագին, որքան իրենք վճարել են և այս դէպքում սեպհականացնելով այս գումարը, թոյլ են տալիս հարսին տանելու իւր հետ հօրանց տանից բերածը, հակառակ դէպքում խլում են նրանից նրա բոլոր ունեցածը և մի ձեռք հանդերձով ճանապարհ ձգում։

Սովորաբար այրի տղամարդիկ կրկին ամուսնանում են, եթէ որդիք չունին՝ սերունդ ունենալու յուսով, իսկ եթէ ու-

նին՝ որքերին խնամող ունենալու հոգատարութեամբ։ Շատ անգամ այրի տղամարդիկ աշխատում են շատ շուտ, 2—3 շաբաթից յետոյ ամուսնանալ, որովհետև աւելի երկար սպասողը աւելի դժուարութեամբ է հարս գտնում, քանի որ հազիւ է պատահում, որ բարոյական կեանք վարէին։

Այրիները նշանադրուելիս փոխանակում են իրենց գոտիները կամ միմեանց մի-մի նուէր տալիս։

Պսակը շատ պարզ, առանց դաւուլ-զուռնի է կատարւում եկեղեցում կամ տանը։ Պսակւող կինը հագնում է պսակւող տղամարդի մեռած կնոջ հանդերձը, որով կենդանացած են համարում նախկին ամուսինը։ Նմանապէս այրի կնոջ մեռած ամուսնու շորերից հագցնում են թագւորին, որպէս զի վերականգնեն ննջեցեալ ամուսնու յիշատակը. դժբաղդ ծնողները արցունք թափելով համբուրում են թագւորին և նրան որդի կոչում, սա էլ նրանց իբր հոգևոր հայր է ընդունում։

*Տարէք—բէրէք* կամ փեսափայ և հարսնափայ։ Սովորաբար ½—3 տարի նշանուած են մնում և այս ժամանակամիջոցում հետևեալ նշանաւոր տօներում խնամիները միմեանց ընծաներ են ուղարկում, որ տեղական բարբառով *տարէք—բէրէք* է կոչւում, որովհետև թէ տանում են և թէ նրա փոխարէնը ստանում—բերում են։ Այսպէս՝

*Բարեկենդանին.*—Հարսնացուի տանից ուղարկւում է փեսացուին փեսափայ՝ գաթայ, նազուկ, եփած հաւ, հալուայ, դրամի և ծխախոտի քսակներ, տոլաղներ, գուլպաներ, և այլն։ Սրա փոխարէն փեսացուի տանից ուղարկւում է հարսնացուին՝ *հարսնփայ մէջունքին*՝ մի զոյգ կօշիկ, գլխի շոր, հայելի, դրչահատ, չոր մրգեր և այլն։

*Ծաղկազարդին.*—Փեսացուի տանից ուղարկւում է հարսնացուին մի ոսկեզօծ, նաշխած *կլնպտար*, այսինքն մի մեծ, արհեստական ծաղիկներով զարդարուած մոմ, վերան մի մետաքսեայ թաշկինակ կապած։ Բացի սրանից՝ տան աւագ անդամների համար ոտնամաններ կամ թաշկինակներ, գաթայ հալուայ, օղի և այլն։

Ծաղկազարդին բոլոր նշանուած աղջիկները իրենց մայրե-

Digitized by Google

րի առաջնորդութեամբ անպատճառ գնում են եկեղեցի, ուր միասին կանգնում են մի որոշ տեղ, մի մոմակալի առաջ։ Փամասացութեան միջոցին նշանուած աղջիկները վառում են իրենց ուղարկուած մոմը (կլեպտարը) և ձեռներին բռնում մինչև «Փառք ի բարձունս» ասելը, ինչպէս Վարդաբլուրում, կամ հէնց սկզբից ամրացնում իրենց առաջը դրուած մոմակալում, ինչպէս Օձնում, սրանով և նրանք հրապարակով խոստովանում են թէ յանձն են առել ամուսնական կենակցութեան ծանր լուծը։ Փամասացութիւնն աւարտելիս հարսնացուների մայրերը վերցնում են մոմերի մնացորդները՝ որպէսզի արու թոռ ունենալիս՝ մկրտութեան ժամանակ վառեն։ Այս հարսնաւքայլի դէմ փեսացուի կողմից մի քանի գիւղերում, ինչպէս Օձնում, ոչինչ չի ուղարկւում, իսկ մի քանիսում, ինչպէս, Վարդաբլուրում՝ ուղարկւում է զատկի երեկոյին մոմ, մի արխալուղ, կամ դոշլուղ, գուլպայ, զոյգ թուով կարմիր ձու, գաթայ և այլն։

*Զատկին*.— Փեսացուի տանից ուղարկւում է ներկած ձուեր, եփած հաւեր, մի հատ գառ, և մի շիշ օղի։

*Համբարձմանը*.—Փեսացուի կողմից ուղարկւում է մի գառն, վզին մի շալովի (գլխի փաթաթան) փաթաթած. 15—20 ոչխարի բուրդ (մօտ 1½ փութ), մի գլուխ պանիր (մօտ 10 ֆ.), մի զոյգ կիսակօշիկ հարսնացուի համար, թխուածքներ՝ գաթայ, նազուկ, հալուայ։ Գաթաները լինում են կենտ թուով, [1]) որոնցից մինը խաչաձև է լինում և կոչւում է *Խաչգաթայ*։ Երբ հարսնացուն բոլոր հրաւիրեալներից յետոյ, իւր ընկերուհիների հետ առանձնացած ճաշում, վերջացնում է, աւագ ընկերուհին վերցնում է դանակը և փեսացուի կողմից նուէր է պահանջում խաչ գաթան կտրելու։ Եւ երբ ստանում է 5–20 կ. կտրում է և բաժանում բոլորին։ Այս դրամը տըրւում է հարսնացուին։

Փեսացուն էլ անմասն չի մնում. թէև նրան չեն թողլ տալիս այդ, ինչպէս և միւս բոլոր փայերի օրերում, գալ հարսնացուի տուն և զուարճանալ, բայց և այնպէս՝ նրան բաժին

[1]) Գաթաների թիւը կենտ է լինում, այսինքն՝ կենտ է լինում գաթան, որ ջուխտ (զոյգ) գնան հարսն ու փեսան։

են ուղարկում գաթայ, հաւ, գինի, երբեմն էլ խաչ-գաթայ, որ ընկերների հետ քէֆ անի։

Նշանաւոր ուխտերի ժամանակ, երբ սովորաբար թէ հարսնացուի և թէ փեսացուի գերդաստանները միևնոյն ուխտատեղումն են գտնւում, փեսացուի զոքանչը, քենիները, (խանբաջիները) փեսացուի համար ուղարկում են եփած հաւ, կողակ, պանիր, գաթայ, մեղր ու կարագ միասին շախաղած, և այլն, փեսացուն էլ իւր կողմից ուղարկում է չոր մրգեր, խաղող, տանձ, խնձոր և այլն։ Այստեղ թոյլ է տրւում փեսացուին հիւր լինել զոքանչենց մօտ, միայն պահանջւում է, որ նրա ներկայութեան միջոցին հարսնացուն թագ կացած լինի։ Իսկ հարսնացուին բոլորովին թոյլ չի տրւում այցելել սկեսրանց ընտանիքին։

*Վարդավառին.*—Փեսացուի տանից ուղարկւում է հարսնացուին թարմ մրգեղէններ, իսկ սկեսուրը սարից (եայլից) ուղարկում է գաթայ, *ակդայ*, սեր և այլն։

*Խաչեղբայր կամ կնքաւոր.*—Շատ գաւառների նման այստեղ ևս խաչեղբայրութիւնը տոհմային է, միացած կնքաւորութեան հետ։ Միևնոյն տան մի որոշ կամ մի որևէ անդամը շարունակ կնքաւոր կամ խաչեղբայր է լինում մի ուրիշ տան մէջ ծնուող և ամուսնացող անդամներին։ Երբեմն էլ երկու տուն միմեանց փոխադարձ կնքաւոր, խաչեղբայր են լինում, որպէս զի փոխադարձաբար ծախսելով. միմեանց չպարտաւորացնեն։ Այսպիսի կնքաւորութիւնը կոչւում է *Խաչմեռոն*։

Խաչեղբայրութիւնը սերունդից սերունդ է անցնում և փոխւում է գլխաւորապէս այն դէպքում, երբ խաչեղբօր «ոտը վրայ չի գալիս», այսինքն նրա կնքած երեխաները չեն ապրում։

Խաչեղբայրը շատ մեծ յարգանք է վայելում սանահօրանց տանը, ամէն մի ուրախութեան և տխրութեան սեղանին նա մասնակից է, պատուաւոր տեղն է նստում. սանամայրը 'ի նըշան խորին յարգանքի երբէք հետը չի խօսում և նրան տեսնելիս փախչում թաք է կենում. երբէք խաչեղբօրանց տան դռնից չի անցնում, սրբապղծութիւն համարելով այդ։ Ամեն մի նշանաւոր տօն օր՝ ինչպէս բարեկենդանին, համբարձմանը,

վարդավառին, տարեմտին կնքաւորին ընծաներ է ուղարկւում գաթայ, հալուայ, ներկած ձուեր, գուլպաներ, չոր մրգեղէններ և այլն։ Բացի սրանցից, որ ամէն տարի կրկնւում է, հարսանիքներից մի քանի ամիս յետոյ ուղարկւում են խաչեղբորսեղան կամ «քաւորափայ», որ պարունակւում է իւր մէջ հետևեալները. մի, ամբողջովին խորոված, գառը կամ ոչխար, 5—10 թունգի գինի, 1—2 թունգի օղի, 4—6 բողչայ գաթայ՝ ամէն մի բողչի մէջ մի մի եփած հաւ և մի մի ափսէ հալուայ դրած, տան բոլոր անդամների համար գուլպաներ, ծխախոտի և փողի քսակներ, թաշկինակներ և այլն։ Խաչեղբայրն ստանալով այս «սեղանը», հրաւիրում է իւր ազգականներին և ծանօթներին, քահանային և տանուտիրոջը և մի լաւ քէֆ անում։ Եւ երբ հետևեալ օրը սանահօրանց ամանները յետ է դարձնում, նրանց մէջ դնում է մի գլխի շալ կամ մի հատարակ դէրիացու և կամ մի այլ ընծայ 1—3 ր. արժողութեամբ։ Ընդհանրապէս խաչեղբայրը ծախսում է կնքի միջոցին 1—4 րուբլի, իսկ պսակին[1]) 6—10 ր.։

Բարդեանկտրէք.— Հարսանիքից մի քանի շաբաթ առաջ փեսացուի հայրը քահանայի և մի քանի մօտիկ անձնաւորութիւնների հետ հետևեալ եօթ բողչա (կապոց) նուէրներն առած գնում է հարսնացուի տուն.

ա. Բոխչա. ոտնամաններ հարսնացուի հօր, մօր, հօրեղբայրների, տան հարսների և ուրիշ մօտիկ ազգականների համար։

բ. Բոխչա թէյ, ($^1/_8$—$^1/_4$ Ֆ.), շաքար (4—6Ֆ.), մրգեղէն, հարսնացուի համար հայելի, դանակ, սապոն, մի թոփ ասեղ, մի թոփ գնդասեղ և մի թաշկինակ (յաճախ մետաքսէ)։

գ. Բողչա. խորովու—եփած կամ խորված մի ոչխար կամ այծ։

դ. Բոխչա. Եօթ հատ գաթայ և մի ափսէ հալուայ։

ե. Բոխչա. եօթը գաթայ և մի տապակած հաւ։

է. Եօթը գաթայ, որոնցից մինը կոչւում է խաչգաթայ։

---

[1]) Սափրիչին 20—30 կ. թաղթ կապող ազապներին 20—30 կ. ուսպանգ պարածողներին 40—60 կ. գլուխկապէք՝ 50 կ.—1 ր. քահանային հանդերձօրհնէք. 40—1 ր. կոխ բռնողներին 20—40 կ. ընծայ հարս ու փեսին 1 ր.—3 րուբլի։

Երբ հասնում են հարսնացուի տունը, ուր հրաւիրուած են լինում նաև վերջինիս մօտիկ ազգականներից մի քանիսը, սովորական հարց ու բարևից և ընթրիքից յետոյ քահանայի առաջարկով սկսում են որոշել, թէ ինչ բաժինք է տանելու հարսնացուն, հարսանիքի ժամանակ ինչ մսացու և քանի թունգի խմիչք՝ գինի և օղի պիտի բերէ փեսացուի հայրը և թէ երբ պիտի կատարել հարսանիքը։ Սովորաբար սակարկում են ոչ թէ պսակուողների հայրերը, այլ սրանց ազգականները, որոնք նախապատրաստուած են լինում։ Երկարատև յամառ սակարկութիւնից յետոյ, վերջ ի վերջոյ համաձայնում են, որ փեսացուի կողմից տրուի հարսնացուի կողմին մի խալաթ հարսնացուի մօրը 10—15 ր. արժողութեամբ, այս նուէրը կոչւում է «կաթնիգին», 10—15 ր. դրամ՝ ծախսերի համար։ Այս դրամը մնացորդ է բաշլըղի կամ գլխագնի, այնպէս որ երբ փեսացուն այրի կամ հասակաւոր է լինում, աւելի շատ մինչև 100 ր. են առնում և այն ժամանակ հէնց իրենք էլ «բաշլըղ» են անուանում, 1—2 ոչխար կամ եզ, 1—2 թունգի օղի և 10—20 թունգի գինի, և նորապսակների ներքնակի երեսն ու աստառը, որի մէջ հարսնացուենք պէտք է բուրդ ածեն և կարեն։

Իսկ հարսնացուի կողմից որոշում են տալ իբր օժիտ հանդերձեղէններ, որ մենք կըյիշենք յետոյ:

Երբ այս բոլորը որոշում, վերջացնում են, մի մի բաժակ էլ օղի են խմում, բարեմախտութիւններ անելով և ապա խընդրում հարսին առաջ բերել, որ «տեսնեն»։ Հարսնացուն գալիս համբուրում է բոլորի ձեռքերը և փեսացուի կողմից եկողները հարսնացուին 20—40 —ական կոպէկ նուէր են տալիս, որ կոչւում է «երեստեսնուկ»։ Այս նուէրների փոխարէն հարսնացուն պարտաւորւում է հարսանիքից յետոյ մի մի զոյգ գուլպա կամ պաճիճ նուէր ուղարկել այդ նուիրատուներին։

Աւելի ստորին խաւերում հարսնացուն լուանում է հիւրերի ոտքերը։

*Շորաձևէք.*—Հարսանիքն սկսելուց մի քանի օր առաջ կատարւում է «շորաձևէքը»—փեսացուի տանը հրաւիրում են

Digitized by Google

փեսացուի մօր կողմի ազգականներն ու դրացի կանայք, 10—20 հոգի։ Մի համեստ ճաշով սրանց հիւրասիրելուց յետոյ՝ փեսացուի մայրը բերում է մի բոխչի մէջ կապուած կտորեղէններ և դնում այդ կանանց առաջ։ Իսկոյն բոլորեքեանք խընդրում են բանալ մի կնոջ, որ բարի և նախանձելի անուան տէր է, շատ որդիներ ունի և «մարդը գլխին կենդանի է» և որ կարելու և ձևելու շնորհք ունի, և շատ աղջիկների հետ թերևս և այս հարսնացուին սովորեցրել է կար ու ձև։ Այս կինը բաց է անում բոխչան և մէկ մէկ ցոյց տալով կտորեղէնները՝ դասակարգում է՝ այս փեսացուի շապկացուն, փոխանոցուն, շալուարացուն, արխալուղացուն, այս էլ՝ հարսնացուի շապկացուն (ծնկնաշորը (փոխանը) հերանքն են կարում). արխալուղացուն, իւբկացուն, դերլիացուն, կուրտիկա, գօտին (շորից) կամ քամարը (արծաթից). և այլն։ Ապա գնողներին արևշատութիւն մախթելուց և գովելուց յետոյ, օրհնում է պսակուողներին և մկրատը դնում է մի կտորի վրայ, որ ձևէ, բայց առանց կտրելու՝ ասում է. «Մկրատը չի կտրում»: Իսկոյն բոլոր հանդիսականները կրկնում են. «Մկրատը չի կտրում»։ Փեսացուի մայրը 50 կոպէկից մի բուբլի է դնում մկրատի վրայ. հրաւիրեալներն էլ հետևում են նրան՝ 5—10 կ. նուէր տալով։ Այս բոլորը պատկանում է այդ վարպետ կնոջը, որպէս և գլուխկապէքը և մազայի փողը, որոնց մասին յետոյ կը խօսենք, որովհետև սովորաբար հարսնացուները այդպիսի կանանց մօտ յաճախ գնում են և կար ու ձև սովորում։

Բոլոր շորերը ձևելուց յետոյ, իւրաքանչիւր կին վերցնում է մի բան իրանց տանը կարելու, 'ի հարկէ առանց մի որևէ վարձատրութեան։

*Տաշտադրէք.*—Հարսանիքն սկսելու նախընթաց օրը փեսացուի տունը հրաւիրւում են ազգական և բարեկամ կանայք «տաշտադրէք»-ի։ Նախաճաշում են, որի ընթացքում օղի խմելով հետևեալ բարեմաղթութիւններն են անում.

*Պարոն* ջան[1]), (խօսքը ուղղում են փեսացուի մօրը),

[1]) Սովորաբար՝ պարոն անուանում են հարսները իրենց տալերին, և կանայք իրենց հասակակից, մեծատուն կանանց։

աչքդ լուս, Աստուած ջուխտ ծաղկէդ օջախիդ բաղշի. Աստուած նրանց չար աչքից, չար նիաթից ազատ պահի, ոնց որ էս որդուդ կանանչ ու կարմիրը կապելուն արժանացար, մէւս որդոցդ էլ Աստուած արժանացնի. քու օջախի հացն ու բարին շատ ըլի. քու հացը հայր Աբրահամու հացը դառնայ, որ ոնչ հատնի, ոնչ պակասի. քու տէրը քու գլխիցը անպակաս ըլի. բարով ու խէրով մին տարէն վրայ տղայ թոռան թուշը պաչես։ Աստուած էլ մեր նորահարսի ոտը բարեկի անի հանդի ու հանդաստանի համար. մեր շէնքի ու արար աշխարքի համար. բոլորիս էլ աչքը լուս ըլի։

Ճաշից յետոյ ընտրում են իրենց միջից մինին՝ կերակրներ, հաց եփելու, որին կոչում են քէյվանի և սրան չորս կամ հինգ օգնական։

Անմիջապէս ընտրուած քէյվանին բերում է տաշտը, դընում է կանանց առաջ և պարկով ալիւրը՝ նրա կողքին և հրաւիրում մի բեղմնաւոր և որդու, ամուսնու կսկիծ չտեսած կնոջ՝ առաջինը ալիւրը մաղելու, որպէսզի հարսնացուն էլ նրա պէս բեղմնաւոր լինի և կսկիծ չտեսնի։ Սա վերցնում է մաղը, մի քիչ ալիւր մաղում և բարեմաղթում. «Հանդին պտղաբերութիւն, աշխարհին առատութիւն, հիւանդին առողջութիւն, փեսային ու հարսին բաղդաւորութիւն և երկար կեանք»։ «Աստուած շնորհաւոր անէ», ձայն են տալիս ամէն կողմից, բաղդաւոր ըլեն, արդար հօգու տէր ըլեն»։

Ապա փեսամայրն սկսում է իւր շնորհակալութիւնը յայտնել հիւրերին՝ ասելով. «Իմ ազիզ քվորտենք, ինձ պըրծացրիք (ձեր ներկայութեամբ պատուեցիք ինձ), Աստուած ձեզ պըրծացնի. ոնց որ իմ որդու կանանչ ու կարմիրը պտենք կապել, էնէնց էլ ձերոնցը կապենք խէրով ու բարով։ Տէր Աստուծ ինքը բոլորիդ վերջը բարի անի»։ Յետոյ հրաւիրեալները 5—10 կոպէկ դնելով տաշտի ծայրին իբր նուէր քէյվանուն՝ ցրւում են։

*Հարսանիքի նստելը* (սկսուիլը). – Հարսանիքները առաւելապէս տեղի են ունենում ձմեռը, հոկտեմբերից մինչև փետրուար, մանաւանդ բարեկենդանի օրերին։ Սովորաբար սկսում

են ուրբաթ օրը և աւարտում աղքատները՝ կիրակի, իսկ հարուստները երկուշաբթի կամ երեքշաբթի։

Տունը մաքրելուց և մի *թաղթ* կապելուց յետոյ, երեկոյեան դէմ փեսացուի տան կտուրին հնչել են տալիս զուռնան. իսկոյն բոլոր կողմերից բոբիկ ու տկլոր երեխաները ձեռքերը իրենց շնչով տաքացնելով վազում, շրջապատում են նուագածուներին։ Մի քանի րոպէից ահագին բազմութիւն գալիս հաւաքւում է փեսացուի դռանը. ահա մի եզ կամ կով դուրս են հանում գոմից, ոտները կապում՝ վայր գլորում, մսագործը դանակը խաչաձև քսում է վզին և կանգնում՝ սպասելով նուէրի, որ կտրի. զուռնաչին ոտով արգիլում է նրան, որ մի նուէր էլ ինքը ստանայ։ Փեսացուի մայրը պար է գալիս և մի թաշկինակ նուէր տալիս զուռնաչուն և մի ուրիշը՝ մսացուն մորթողին։ Ապա փեսացուի քոյրն է պար գալիս և մի *ուսպանգ* կապում թագուորի կրծքին.— սա մի կարմիր թաշկինակ է, որի մի ծայրը ամրացնում են ձախ օձիքում, իսկ միւսը՝ գօտու աջ կողմում։ Այս միջոցում մորթում են եզը. իսկոյն ամուրիներից աւագագոյնը կամ թագուորամայրը հէնց առաջին դուրս ցայտած արիւնում թաթախում է մի կտոր կարմիր թել և խնամքով պահում իւր մօտ մինչև նորապսակների առագաստ մտնելու օրը, որպէսզի թագուորը «*կապ*»[1]) չընկնի (չկորցնէ առնական զօրութիւնը)։ Ազապների գլխաւորը այդ հոգատարութիւնով չի բաւականանում, այլ և իւր արիւնոտ մատը խաչաձև քսում է թագուորի ճակատին, որ նա զերծ մնայ փորձանքներից։ Մի քանի գիւղերում էլ քէյվանին մի կողպէք է թաթախում այդ արեան մէջ, կողպում և այդպէս պահում մինչև առագաստի գիշերը, երբ բաց է անում, որպէսզի թագուորը «կապ» չընկնի։

Մինչդեռ եզը մորթողը քերթում, կլսում, միսը տեսակների է բաժանում, գիւղի տղաներն ու աղջիկները պարում են։ Ապա եզի կէսը, բարկակտրէքի ժամանակ խոստացած խմելիքի և այլ իրերի հետ երկու մարդու ձեռքով ուղարկում են հարսնա-

---

[1]) Եթէ «կապ ընկնի» եկեղեցու աւելը տանում դնում են նորապսակների անկողնու տակ։ որ «կապը բացուի»։

ցուի տունը։ Պէտք է ասել, որ շատ անգամ խոստացածից քիչ և վատն են ուղարկում, ուստի և խնամոնք դժգոհ են լինում։

Սրանից յետոյ սկսւում է «Երթը» դէպի քաւորենց տունը։ Թագաւորացուն, ազապների — իւր մակարների հետ — դաւուլ զուռնի և ջահերի (ճաշխալա) առաջնորդութեամբ, «ուռաւ» կանչելով գնում են քաւորենց տունը։ Խաչեղբայրը տանը պատրաստուել, սպասում է, որովհետև նախընթաց օրը փեսացուի տանից երկու հոգի մի շիշ օղի և մի գաւ գինի առած ներկայացել են նրան և սանահօր կողմից խնդրել այդ մասին։ Նոյնպիսի հրաւէր ստացել են նաև վերջինիս ընտանիքը, երկու պատուաւոր կանանց միջոցով։ Երբ «երթը» հասնում է քաւորենց դռանը, կանգ է առնում և ազապները բռնում են պարել, մինչև որ խաչեղբայրը դուրս է գալիս տանից և ներս հրաւիրում բոլորին, նուագածուների հետ միասին։ Երբ ներս են մտնում, խաչեղբայրը համբուրում է թագաւորացուի այտը, իսկ սա նրա ձեռքը, թէկուզ նա հասակով իրենից փոքր լինի։ Անմիջապէս օղի է մատուցւում և բոլորը նստում հաց են ուտում։ Եւ երբ աւարտում են հացկերոյթը՝ նուագածուները նորից են սկսում ածել. առաջ է գալիս խաչեղբօր կինը կամ չափահաս քոյրը և կամ աղջիկը խաչեղբայրական ուսպանգը ձեռին բռնած, և սկսում է պարել. Նախ փեսացուն և ապա ազապները սկսում են «շաբաշ» (պարելու համար դրամական նուէր) տալ պարեկին, իւրաքանչիւրը 10—20 կոպէկ։ Աւարտելով պարը՝ պարեկը տալիս է իւր ըստացած փողերը նուագածուներին և մօտենալով թագաւորացուին, ուսպանգը (կարմիր թաշկինակը) մի քանի անգամ խաչաձև մեկնում է նրա կրծքին, ապա ձգում աջ ուսին և արագութեամբ հեռանում։ Ազապներից մինը կապում է այս ուսպանգը միւս ուսպանգների վրայ «Աստուած շնորհաւոր անէ» ասելով։ Այնուհետև պարում են ուրիշները և ապա խաչեղբայրը թագաւորի և մակարների առաջ կապում է իւր մէջքին մի թուր և բոլորի հետ վերադառնում փեսացուի տունը նոյն կերպ ածելով, պարելով, զռռում-կոչիւնով։

Մինչև սրանց գա՛լը գլխատանը, կամ մաքրած երկայն



Закланіе свадебнаго быка. Հարսանիքի եզը մորթելը. L'abattage du bœuf de noces.

Լս. Մ. Փնունի

Digitized by Google

գոմում սփռոցնիրով ծածկած յատակի վրայ, միմեանց հանդէպ․ աւագութեան կարգով շար ի շար նստած են լինում 50—80 հարսնւոր տղամարդիկ, իրենց գլուխ ունենալով քահանային և տանուտէրին։ Խաչեղբօրը բերող խումբը տեղաւորւում է *թաղտի* վրայ, որ յատկապէս շինուած է թագւորի, խաչեղբօր և ազապների համար։ Թաղտը ժամանակաւորապէս կապւում է գլխատան կամ գոմի մի անկիւնում, վերան նախ թաղիք և ապա գորգ ու մի սփռոց փռած։ Այս սփռոցը պիտի սփռուած մնայ մինչև հարսանիքի աւարտը։ Պատերին էլ կապերտներ (ձունձ) են մեխում։ Երբ խաչեղբայրը և թագւորը ներս են մտնում, թաղտ շինող երիտասարդները պառկում են թաղտի վրայ, մինչև որ խաչեղբայրը մի քանի կոպէկ է նուիրում, անմիջապէս վեր են թռչում և նախ խաչեղբօրը և ապա թագւորին բարձրացնում, նստեցնում թաղտին։

Մի քիչ յետոյ *սաղինները* (սպասաւոր) սփռում են սըփռոցներ, հաց, բողկ, կարտոֆիլ, լոբու կիրկաշ առանց ափսէների ցրւում սփռոցի վրայ․ քահանան օրհնում է սեղանը և մի վայրկեանում ձայն ձուն կտրւում, ատամներն են սկսում գործել։ Մի-մի բաժակ օղիից յետոյ մատուցւում են ծւէնով լոբին (լոբիջուր), յետոյ ձիթով փլաւը։ Տան մեծը սեղան չի նստում, նա շարունակ ման է գալիս, կարգադրութիւններ անում գոռալով․ «Ա՛ տղէրք, ստաքանները (բաժակ) լիքն ածեցէք, մի՛ լաւ ուտացրէք, խմացրէք իմ էլլիզին․ փառք Աստծու, ամեն բան բոլ ա (առատ է), Աստծու տունը շէն, տըղէրք ջան, խնահիլ մէք, կերէք, խմեցէք, քէֆ արէք․ տունը ձերն ա, ինչ պակասութիւն որ կայ՝ ճակատիս ասացէք» և այլն։ Սովորաբար ընտրում են սեղանապետ (թամադայ) և գինու առաջի բաժակը նրա կենացը խմում, բարեմաղթելով լաւ կառավարել իրենց․ ապա նա էլ ընտրում է իրեն օգնական կամ օգնականներ և առաջարկում հետևեալ սովորական կենացները․ 1) Ջուխտ բարեկամի կենացը, 2) Հարսնացուի և փեսացուի կենացը, 3) Խաչեղբօր կենացը, 4) Թագւորի զինւորների—ազապների—կենացը, 5) Նստած բարեկամների կենացը․ 6) Հեռաւոր, այդ ուրախութեանը չմասնակցող բարե-

կամների կենացը. 7) Ամբողջ հասարակութեան կենացը. 8) Մայր աթոռի և բոլոր հոգևորականութեան կենացը. 9) Գիւղի կառավարիչների կենացը. 10) Երկու սեռի սպասաւորների կենացը. 11) Օջախի (գերդաստանի) փեսաների և աղջիկների կենացը և 12) Ննջեցեալների համար ողորմաթաս։ Ճաշկերոյթի ամբողջ ընթացքում (2—3 ժամ) փողհարները փոքր ընդմիջումներով ածում են մեղմ եղանակներ և լաւ ձայն ունեցողները առաւելապէս թուրքերէն երգեր երգում։ Փեսացուի քոյրերը և հարսները փեսայի և քաւորի համար մրգեր—մազա են ուղարկում, և սրանք ընդունելով 10—20 կոպէկ են դնում ափսէի մէջ։

Վերջապէս աւարտւում է ընթրիքը—քահանան կատարում է գոհացողական մաղթանքը, իսկոյն փողհարները դուրս են գալիս և դռան մօտ սկսում ածել «հարկը դուրս անելու» եղանակը և հրաւիրեալները ցրւում են, մնում են միայն երիտասարդները և հարս ու աղջիկները, որոնք աւելի ազատ զգալով իրենց, շարունակում են պարել, ուրախանալ և վերջը մի հասակաւոր կնոջ հետ հարսի «հալաւը», այսինքն հարսի «թագի տակի»—հարսանեաց-հանդերձը փոփոխակի գլխներին դնելով՝ պարելով և երգելով, զուռնի և ջահերի (մաշալա) առաջնորդութեամբ գնում են հարսնացուի տունը։ Մինչ այս՝ նոյն երեկոյին հարսնացուի ընկերուհիները—հասակակից աղջիկներն ու մի տարուայ պսակուած նորահարսերը, մրգեղէններ են տալիս հարսնացուին և զգւում. աւելի մտերիմները վառում են օջախը, ուսով ջուր կրում, տաքացնում, հարսնացուին լողացնում գոմի մի անկիւնում և յետոյ վրան ածում նախօրօք պատրաստուած մեխակաջուրը և ապա հագցնում հօրանց պատրաստած նոր, հարսանեկան շորերը, մազերը սանրում և գլխին ձգում նշանի բաղդադին և աւագութեան կարգով հետը համբուրւում, որովհետև միմեանցից բաժանուելու են։

Այս ժամանակ արդէն գալիս են հարսնացուի հանդերձ բերողները, հանդերձը և հինան, որ վերցրած է լինում մակարների հետ եկող հասակաւոր կինը, փոխ առ փոխ դնում են պար եկող երիտասարդների ու աղջիկների գլխներին և պար

Digitized by Google

անում. ապա՝ հանդերձը յանձնում են հարսնացուի մօրը, իսկ հինան մի աղջկայ, որ կրակի վրայ դնէ և հսկէ վերան, մինչև որ բերող կինը որպէս սկեսրոջ կողմից եկած լիազօր անձն, կըներկէ նախ հարսնացուի և ապա նրա ընկերուհիների ձեռքերը։ Յետոյ արդէն նոյն կերպ վերադառնում են փեսացուի տունը, ուր շարունակում են պարել և ուրախանալ մինչև լոյս։

*Հարսանիքի երկրորդ օրը.*—Անցեալ երեկոյի բոլոր հրաւիրեալները, որոնք այսօր հարս ու թագուորին խալաթ (նուէր) են տալու, արտօնութիւն ունին առանց հրաւիրուելու առաւօտեան գնալ հարսնքատուն, մի մի բաժակ օղի խմել և վերադառնալ, սպասելով երեկոյեան մեծ ընթրիքին։

Այսօր մեծ իրարանցում է տիրում հարսնքատանը.—օջախի վրայ անկանոն շարուած են 3—5 երկընկնանի կաթսաներ, իւրաքանչիւրի մէջ մի բան վիլթվիլթալով եփւում է, քէլվանին և իւր օգնականները իրարանցման մէջ են, բայց գլուխները չեն կորցրած. միքանիսը նախընթաց օրուայ դեռևս կեղտոտ վեր ածած ամաններն են լուանում, միւսները ձաւար կամ բրինձ ընտրում (մաքրում), միս ծեծում, փայտ կրում, կերակրները խառնում, աչքերը տրորում տանը տիրապետած ծխային ծովից և արտասւում։

Միւս կողմում մառանապետը, որ տան փեսան կամ մօտ բարեկամն է լինում, գաւերն ու շշերն է ջրով ողողում և օղի, գինի ածում, մոռացմամբ առաջի օրը չհրաւիրած բարեկամներին ճաշով հիւրասիրում, սրտերն առնում. անուշադիր չէ թողնում նաև սարիցը եկած բռի հովիւներին և տաւարածներին, որոնք նոյնպէս օջախի բարեկամների որդիներն են, նրանց սիրտն էլ պէտք է շահել, ինչպէս և մակարների անթիւ ընկերների բերանն էլ մի բան պիտի ձգել, որովհետև մակարների կռնատակը մտած խծկւում են մառանը մի բան փախցնելու։

Երրորդ կողմում փոքրիկ հոտաղները շրջան են կազմել, շվի են ածում և մէկ մէկ պար դալիս, սրանց հանդէպ, գետնի թաղիքների վրայ սփռած է սփռոցը, որ հարսնառ դնացողները նախաճաշիկ անեն և գնան իրենց «աւարը» բերեն։

Դռանը փչում է զուռնան, ժողովուել են փեսացուի բարեկամ կանայքն ու հարսները, որպէսզի փեսացուն հարսնառ գնալիս իւրաքանչիւրն իւր դեռահասի ձեռքով պար ածէ ու կապէ Թագւորի կրծքին իւր ուսպանդը։ Աւելացրէք այս շրջերի վրայ մանուկների լացն ու գոռոցը, որ իրենց զբաղուած մայրերից ծիծ են պահանջում, երեխաների վխտոցն ու աղմուկը, մեծերի միմեանց հրելով ներս ու դուրս անելը և դուք կստանաք հարսընքատան պատկերը։

*Սափրելու ծէսը*.—Նախաճաշիկից յետոյ Թագւորը, խաչեղբայրը և մակարները նստոտում են *Թախտի* վրայ ոտնակախ և սափրիչը սափրում է խաչեղբօր և ապա Թագւորի երեսը։ Վերջինիս միրուքը սափրելիս թողնում է կիսատ և չի շարունակում, մինչև որ խաչեղբօրից մի նուէր չի ստանում։ Թագւորից թափուած մազերը խնամքով հաւաքում են և այնպիսի տեղ ածում, որ մարդու ոտք չը կոխէ, ապա թէ ոչ Թագւորը կը «կոխուի» (կը կորցնէ առնական զօրութիւնը)։ Սրանից յետոյ մակարներն են սափրւում և 5—10 կ. նուէր տալիս սափրիչին։

*Ուսպանդ պար ածելը*.—Սափրելու ծէսից յետոյ հարս ու կին շրջան են կազմում, Թագւորին կանգնեցնում մի կողմը, մէկ-մէկ պար գալով ձեռքերին խաղացնում են մի-մի ուսպանդ հասարակ կամ *քիշմիր* Թաշկինակ և կապում Թագւորի կրծքին։ Այս ուսպանդների թիւը հասնում է 15—20-ի և հարսանիքից յետոյ բաժանւում Թագւորի ազգական կանանց։

*Հարսնառ գնալ*.—Ուսպանդներով ծանրաբեռնուած Թագւորի, քաւորի, իւր հօր և 15—20 հարսնեւորների հետ դաւուլ զուռնի առաջնորդութեամբ գնում են հարսնացուի տունը՝ «հարսնառ»—հարսը բերելու։ Հասնելով տան դռանը՝ շրջան են կազմում, զուռնան ածում է և մինը պարում։ Դուրս է գալիս տան աւագագոյն անդամը, այր կամ կին, համբուրում խաչեղբօրն ու Թագւորին և ներս հրաւիրում։ Իսկոյն լռում է զուռնան, բոլորը ներս են մտնում և տեղաւորւում. սակայն շուտով դարձեալ հնչում է զուռնան և Թագւորի հեռու բարեկամուհիները բերում իրենց ուսպանդներն են պար ածում և

Digitized by Google

կապում թագուորի կրծքին. սա էլ պարողներին շաբաշ է տալիս։ Ապա բերում են հարսնամօր ընծան թագուորին և խաչեղբօրը – մի սկուտեղի վրայ դրուած գուլպաներ, պաճիճներ, պաճճակապ, քսակներ, թաշկինակներ։ Վերցնելով ընծաները, 30—50 կոպէկ դրամ են դնում մատուցարանի մէջ 'ի տրիտուր և ընծաները յանձնում ազապներին՝ պահելու։ Բայց զուռնաչին առաջ է գալիս և պահանջում է, որ թոյլ տան հանել նրանց հագի գուլպաներն ու նոր ստացածները հագցնել, որովհետև այդ հները արդէն սովորութեան իրաւունքով նուագածուներին պիտի պատկանին։ Թագուորն ու քաւորը կամ հանում տալիս են և կամ միքանի կոպէկ նուիրում։

*Հանդերձ օրհնէք.*—Գալիս է քահանան. հարսնացուի հարսանեկան շորերը մի սկուտեղի մէջ դրած առաջ են բերում և դնում թագուորի և խաչեղբօր առաջ. քահանան օրհնում է և ստանում խաչեղբօրից 60 կ.—1 ր. և միւս հանդիսականներից միքանի կոպէկ։ Ապա խաչեղբայրը վերցնում է հարսնացուի գօտին, իսկ հանդերձը տանում են սենեակի այն մասը, որ կապերտներով առանձնացրել են։ Այստեղ նոյն, հանդերձներ ձևող կինը հագցնում է հարսին, գլուխը կապում և ապա խաչեղբօրը կանչում գօտին կապելու։ Գալիս է սա, մի նուէր *գլուխկապէք*, տալիս այդ կնոջը և կապում գօտին ասելով. «Առջինեկդ տղայ ըլի»։ Ապա երկու կին բռնում են հարսնացուի թևերից և բերում թագուորի կողքին կանգնեցնում։ Մօտենում է աղջկայ հայրն և ձեռք ձեռքի տալով պսակուողներին, օրհնում ասելով. «Ծլէք, ծաղկէք, մի բարձի ծերանաք, որդկերանց ու թոռների տէր ըլէք, դուշմանի սրտով չլէք, չար նիաթից Աստուած հեռու պահէ ձեզ»։ Ապա քահանան է օրհնում և բոլորը ուղևորւում են դէպի եկեղեցի։

*Պսակ.*—Այս հանդիսաւոր գնացքին, որին մասնակցում են ոչ միայն բոլոր հարսնևորները, այլ և գրեթէ բոլոր գիւղացիները իբր հանդիսական, առաջնորդում է դաւուլ-զուռնան. ապա գնում են մակարները, պարեկողներ, գօտեմարտիկներ, յետոյ թագուորն ու թագուհին կողք կողքի, մի թաշկինակի մի ծայրից մինը, միւսից միւսը բռնած. թագուորը ձախ, իսկ

հարսը աջ կողմից։ Թագուհու աջ կողմից գնում է մի հասակաւոր կին՝ հարսնաքուր, նրա կուռը բռնած, իսկ սրա կողքին մի տղամարդ՝ հարսնաղպէր. փեսայի կողքից գնում է խաչեղբայրը՝ Թուրը կողքին կապած [1]), իսկ սրա կողքից փեսաղպէրը՝ գինու շիշը ձեռին [2]), սրանց շուրջը կանանց և տղամարդկանց ահագին բազմութիւն։ Գնացքը յաճախ կանգ է առնում, որովհետև այլ փողոցի վրայ եղող բարեկամ տներից խօնչա են դուրս բերում—մի առաջամատոյցի մէջ ձուաձեղ, հաց և մօտը՝ ծխուող խունկ դրուած մատուցանում են Թագաւորին։ Սա էլ պարտաւորուած է կանգ առնել, մի կտոր ձուաձեղ վերցնել և մնացածը տալ մակարներին. մի ուրիշը գաւով գինի է դուրս բերում և խնդրում է մի մի բաժակ անուշ անել. զանազան կտրիճներ ուզում են գօտեմարտել, Թագաւորը պիտի սպասէ, մինչև որ մինը միւսին վայր գլորէ և խաչեղբայրը բաժանէ նրանց, երկուսին էլ համբուրելով և մի քանի կոպէկ նուիրելով. ուրիշ անուանի մի ըմբիշ գալիս է և ճանապարհի մէջ տեղը խաչեղբօր առաջ չոքում, որով կամենում է ասել, թէ կամ իրեն հետ գօտեմարտելու խիզախութիւնն ունեցող ըմբիշ դուրս բերէք, կամ նուէր տուէք։ Խաչեղբայրը նրան էլ գոհացնում է, վեր բարձրացնում, հետը համբուրւում. նոյնը անում է և Թագաւորը։

Երբ եկեղեցի են հասնում, այստեղ ժամհարն է դուռը փակում և չի թողլ տալիս ներս մտնելու, մինչև որ խաչեղբօրից նուէր չի ո․ անում։

Եկեղեցում պսակի խորհուրդը կատարելիս [3]) խաչեղբայրը խաչաձև բռնում է Աւետարանը, խաչը և Թուրը պսակուողների գլխին։ Երբ աւարտւում է խորհուրդը՝ քահանան Աւե-

[1]) Մի քանի գիւղերում, ինչպէս Չաղբաստ, նախ գնում է խաչեղբայրը, յետոյ Թագաւորը և ապա հարսը՝ հարսնեղբօր և հասնեքրոջ մէջ։

[2]) Եկեղեցում նորապսակներին մատուցանելու։

[3]) Դսեղ գիւղում մինչդեռ եկեղեցում պսակի խորհուրդն են կատարում, դրսում, փոքր ինչ հեռու, դաւուլ—զուռնի առաջնորդութեամբ, մակարները միմեանց հետ գօտեմարտում են։

տարանի մի ծայրը տալիս է Թագուորի, միւսը Թագուհու ձեռքը և հրաւիրում «ազատել նորապսակներին գերութիւնից»։ Նախ խաչեղբայրը և ապա հարսնեւորները խաչհամբոյր են դընում Աւետարանի վրայ։

Ապա բոլորը նոյն կարգով, բայց ուրիշ ճանապարհով վերադառնում են նորահարսի տունը [1]։ Ճանապարհին միևնոյն խոնչաները, գօտեմարտը, պարը շարունակւում է, բացի սրանից մակարները հրացաններ են արձակում, սուր են խաղացնում, *փափըխ* կոչուած ծառը նուէր բերում, որ խաչեղբայրն առնելով յանձնում է մի լաւ պար եկողի, որ ձեռին բռնած շարունակ պարելով առաջ է գնում։ Փափախը մի ճիպոտ է, վրան զանազան կողմերից մանր ճիւղեր և շիւեր տնկած, որ ծառի նմանուի. ճիպոտի ծայրին ցցում են մի խնձոր, կամ սերկևիլ, կամ տանձ և կամ՝ դրանց չճարուած միջոցին՝ կարմիր ներկած ձու։ Ճիւղերի վրայ և նրանց միջով անց են կացնում թելի վրայ շարուած չամչի, սիմինդրի, ընկոյզի և այլ մրգերի *շարուկներ* և կպցնում փոքրիկ մոմեր։ Ճանապարհին խաչեղբօր տանից մատուցուած «սեղանը» ևս ընդունելով, գընացքը կանգ է առնում հարսի տան առաջը. իսկոյն դուրս են գալիս այս գերդաստանի բարեկամ հասակաւոր կանայք և աւագութեան կարգով, հերթով մօտենում են և համբուրում նախ Թագուորին, յետոյ հարսին և ապա խաչեղբօրը, իւրաքանչիւրի ձեռքի մէջ դնելով մի կտոր քաղցր բան—շաքար, կանֆէտ, խնձոր և այլն, որպէս զի «հարս ու Թագուոր քաղցր ապրեն միմեանց հետ»։ Հարսը ամեն անգամ խոնարհւում է և համբուրում նրանց կուրծքը։ Երբ այս կանանց ահագին շարքը վերջանում է, հարսնաղպէրը սկսում է յամառութեամբ պահանջել, որ Թագուորի քոյրը գայ իւր հետ հրապարակաւ *պռօշտի* անի։ Այս պահանջը շատ քիչ բացառութեամբ կատարւում է և ընդհանուր ծիծաղ, ուրախութիւն պատճառում։

---

[1]) Եկեղեցուց դուրս գալիս նորապսակներից իւրաքանչիւրն աշխատում է ինքը առաջինը կոխել միւսի ոտը, որպէսզի նա իրեն ենթարկուի։

Ի վերջոյ դուրս է գալիս տան նահապետը, համբուրում է հարս ու փեսայի ճակատները, խաչեղբօրը ձեռք տալիս և հետը համբուրւում և ապա մի նուէր տալով զուռնաչուն՝ հրամայում է լռել և բոլոր հարսնևորներին ներս հրաւիրում։ Իսկոյն խաչեղբայրը մերկացնում է իւր թուրը և առաջ ընկած, առաստաղին սրի հարուածներ տալով հարս ու թագուորի հետ ներս է մտնում։ Քահանան այստեղ էլ կատարում է պսակի խորհրդի պատշաճաւոր մասը. ապա՝ հարսին տանում են *փարտի* տակը, (կապերտներով առանձնացրած մասը), իսկ խաչեղբայրը թագուորի և մակարների հետ բազմում են թախտի վրայ. «*փոփըխ*»ն էլ վառում, դնում թագուորի առաջ։ Քիչ յետոյ նստում են հաց ուտելու, նախապէս ձեռները լուանալով։ Մատուցանում են բոզբաշ և փլաւ։ Ամենքը ուտում են բացի թագուորից, որ բերանը խփած սպասում է «բերանբացէք»-ի։ Հարսի հայրը կամ աւագ եղբայրը և կամ անբաժան հօրեղբայրը գալիս կանգնում է թախտի առաջ, մի պատառ ձուաձեղ վերցնում թագուորի առաջից և ձայն տալիս.

«Տէրտէր, օրհնեա տէր. էլլիկ ականջ արէք, տուել եմ (այսինքն՝ տալիս եմ) իմ փեսին մի անծին էրինջ»։

—Էդ առանց քո տալն էլ իրանն է, ձայն են տալիս հակառակ կողմերից, հասկանալով, որ նա ակնարկում է հարսին։ Թագուորը բերանը բաց չէ անում, չնայելով որ նա ձուաձեղի պատառը հրամցնում է նրան։ Հայրը ինքն է ուտում այդ պատառը և մի նոր պատառ վերցնելով՝ կրկին դիմում.

«Տէրտէր, օրհնեա տէր. էլլիկ, ականջ արէք. տուել եմ փեսին մի լաւ անցնդնիլ քեահլան մադեան (էգ ձի)»։

—Հանաքի վախտը չէ, ձայն են տալիս այս ու այն կողմից, էդ իրանն է ու իրանը, բան ես տալիս՝ տուր։

Փեսան դարձեալ չի ընդունում պատառը. Նուիրատուն ուտում է այս պատառն էլ ու նորից երրորդը վերցնում և այս անգամ խսկութեամբ խոստանում նուիրել կամ մի երկու փեթակ, կամ մի ձի, կամ կով և կամ մի ուրիշ բան։ Այս անգամ արդէն թագուորը ընդունում է պատառը և բերանը բանում։

Digitized by Google

Հացկերոյթի ժամանակ մակարները աշխատում են մի քանի հաց, գդալ գողանալ, որպէսզի հարսը խւր հօրանց տան դովլաթը իւր հետ տանի, սակայն տանեցիք. սաստիկ հսկում են, որ թոյլ չտան։

Հացկերոյթից յետոյ շտապում են շուտով օժիտը ցոյց տալ հանդիսականներին և դիմել փեսացուի տունը [1]:

*Բաժինք յիշեցնելը*.—Հարսի օժիտը, որ տեղական բարբառով բաժինք է կոչւում, մաֆրաշների մէջ կապած և մի արկղի (զանտուկի) մէջ դարսուած բերում են և դնում հանդիսականների առաջ։ Գալիս է փողհարը, բաց անում, մէկ մէկ բարձրացնում, ցոյց տալիս բոլոր հարսնևորներին և բղաւում.

«Տէր տէր, օրհնեա տէր. էլլիկ, ականջ արէք, շէն կենայ բարեկամը. տուել ա մեր թագաւորին մի լաւ *խալիչա* (գորգ), շէն կենայ, իրան ազապի կարմիրն էլ կապենք, ոնց որ մերինը կապեցինք»։

—Շէն կենայ, բղաւում են ամէն կողմից։

Ժողովրդական երգը այսպէս է յիշատակում այս բաժինքը.

Բաժինքը յիշեցնելը (շորեղէնը)

Շէն կենայ խնամին,
Տուել ա իր բարեկամին,
Ջուխտ համիան ջէջիմ,
Երկու հատ շիջիմ։ [2])
Մի հատ ուսաշոր,
Երկու թաթաշոր,
Մի հատ այազլուխ, [3])
Հինգ ջուխտ էլ ղաւլուխ,
Երկու թաթուջաղ, [4])
Երկու չանչուրբաղ, [5])
Մի եզնախուրջին
Մի ուսախուրջին,
Մի հատ խալիչայ,
Երկու հատ քէչայ,
Տասը հատ քիսայ,
Հինգը խալիս ա,

---

[1]) Գիւղացիները պատմում են, թէ 20—30 տարի առաջ սովորութիւն էր, որ գիշերը հարսի հօրանց տանը պէտք է անցկացնէին, ի հարկէ աւելի մեծ ծախսեր պատճառելով և հետևեալ օրը, կիրակի, ճաշին էին գնում թագուորի տունը, սակայն հանգուցեալ Վարդան արքեպիսկոպոս Օձնեցին վերջացնել տուեց այդ սովորութիւնը, աւելորդ ծախսերի առաջն առնելու նպատակով։

[2]) Մազից հիւսած հաստ թոկ։ [3]) Թամբի վրայից ձգուող գործուածք։

[4]) Կաթսան բռնելու շոր։ [5]) Պաճիճը կապելու թել։

Քսան ջուխտ գուրբայ
Խնամոնց դուր գայ,
Մի հատ թանգաման,
Մի նաշխուն ըղաման,
Մի ղոլիխի բուն,
Եւ մի սանդրաբուն,
Երկու հատ ղջարի, [1])
Խիստ սերուն կարի,
Մի հատ էլ գելի,
Զօլ զօլ կուլենի,
Երկու էլ կարպետ, [2])
Գործողն ա վարպետ,
Երկու հատ լաւ ձունձ,
Նաշխերը փունջ փունջ,
Հինգ հատ նոխտակոտ, [3])
Վեց էլ ֆորթաթոկ,
Վեց հատ տրխատէն։ [4])
Ձէն կենան ու շէն։

## Պղնձեղէնի յիշեցնելը.

Դարսեցինք ծալքը,
Տեսնենք պղնձկալքը,
Վերցնենք կուժը,
Ծանդրն ա ուժը,
Մի հատ ընկնանի,
Թող բարով տանի,
Մի պղինձ ու թասայ,
Երկուսն էլ լաւ ա,
Մի նաշխուն սինի,
Թող խէրով լինի,
Մի հատ սաքսոնի, [5])
Խիստ լաւ բան կոնի,
Մի լաւ մաջմայի, [6])
Ղափաղլուին թայի.
Տասը հատ լմբաքի, [7])
Փէտ չի որ ճաքի,
Մնացածը հեշտ ա,
Մի գուգում ու թեշտ ա։ [8])
Մի շամփուր բարխանայ,
Մի հատ էլ մաշխալայ։

## Արծաթեղէնի յիշեցնելը.

Պրծանք պղնձեղէնը,
Տանք էրծաթեղէնը.
Մի էրծաթէ թաս,
Խալիս էրծաթին բաս,
Մի սիրուն բադիայ
Լաւ բաբաթի ա,
Մի հազարփէշահ, [9])
Ձատերին փէշ քաշ,
Մի հատ բոյինբաղ, [10])
Զողալնին խաղ խաղ,
Մի հատ չալքեչեր,
Հուլունքնին մէջին,
Եռսուն հատ լուլէին,
Ճատ սիրուն կուլէին,
Քսան հատ փիլաքի,
Սոյքաթով հաքի,
Փելաքնին կարած,
Սազով յարմարած,
Մի ջուխտ բլազուկ, [11])
Կոներին նազուք,
Մի հատ մատանի,
Թող բարով տանի,
Ուզալթուն փարայ,
Ծիթուն աշկարայ,
Մի հատ դօշանոց,
Մի լաւ օրօրոց,
Մի ջուխտ կռնանոց,
Մնաց ճտի ոսկին,
Վերջ տանք մեր խօսքին։

---

[1]) Թամբի վրայ ձգուող ասեղի լաւ գործուածք։ [2]) Կապերտ։ [3]) Նոխտա։ [4]) Տրեխի թել։ [5]) Պղնձեայ աման։ [6]) Պղնձէ մեծ ափսէ։ [7]) Պղնձէ փոքր ափսէ։ [8]) Պղնձէ մեծ կոնք լուացքի համար։ [9]) Գինի խմելու աման՝ շերեփի ձեւով։ [10]) Մանեակ։ [11]) Ապարանջան։

Digitized by Google

Սովորաբար օժիտը բաղկանում է հետեւեալ իրեղէններից. 1—2 ձեռք շոր, մաֆրաշ, ջէջիմ, թաղիք. խուրջին (բակեղաթ), տեղաշոր (անկողին), գուլպաներ, զանդուկ (արկղ), ձեռնադութի (փոքրիկ արկղ), սանր, հայելի, մկրատ. քիսաներ (քսակ). արծաթեայ թաս, թէյի գդալներ, արծաթէ քամար, պղնձէ կուժ, թեշտ, կովկիթ, սինիներ (սկուտղ), ջրի տոլչա (ջրաման), ամանեղէններ և այլն։

Օժիտից յետոյ յիշատակւում են հարսի բարեկամների տուած ընծաները, որ լինում են մասամբ պղնձէ ափսէներ, գլխի յարդարանքներ, թաշկինակներ և այլն, (թագուորի բարեկամների կողմից տուած ընծաների մասին յետոյ)։

Երբ կրկին կապում են օժիտը, որ տանեն՝ հարսի կողմից մի երեխայ կամ երիտասարդ նստում է օժիտի վրայ և գըլխարկը դնում մաֆրաշի վրայ։ Թագուորի հայրը 3—10 ր. է դնում գլխարկի մէջ յօգուտ հարսի ծնողների և ապա օժիտը բարձել տալիս ձիու վրայ և ուղարկում իրենց տուն։

Այս ժամանակ զուռնէն դւանն սկսում է նուագել «Տաբան հա՛յ» կամ «Էր հեռանաա» եղանակը, հարսը հեկեկալով, լալով, երկու կանանց առաջնորդութեամբ գալիս կանգնում է օջախի մօտ, թագաւորը մօտենում է նրան և մօտը կանգնում։ Ապա հարսի հայրը լալով խրատում և օրհնում է նրան այսպէս. «Գնաս բարև, բալա (որդի) ջան, Աստուած քեզ հետ, հալալ ըլի քեզ իմ օջախումը կերածդ ու խմածդ, հագածդ ու մաշածդ, ոնց որ քու մօր ծծի կաթը. որտեղ էլ որ ըլես, չմոռանաս քո հօր օջախը. հնազանդ կաց քու գլխատիրոջը, հնազանդ կաց քու նոր հօրն ու մօրը, հնազանդ կաց քու տեգերտոնցն ու քու նոր տան բոլոր մեծին ու փոքրին և այլն ապա դառնալով փեսին՝ քեզ էլ եմ օրհնում, բալաջան, իմ նոր ու ազիզ որդի, Տէր Աստուծը թուրդ կտրուկ անի, բաղդըդ երէգան անի. մին ցանես հազար վերցնես. ո՛ր չոր տեղովն անցկենաս՝ կանանչի, ինչ բանի ձեռդ մեկնես՝ ստանաս. կալիդ քամի ըլի, ջաղացիդ հերթ ըլի. էլ ինչ ասեմ, որթի, դվորը (ուր) գնաս՝ Աստուծ քու բռնելու գործին յաջողութիւն

տայ. դէհ գնաք բարով, իմ բալենի, (որդիներ) Աստուած ինքը ձեզ հետ»...

Հայրը հեռանում է, յառաջ է գալիս մայրը՝ և փաթաթուելով հարսի վզով՝ ասում է. «Լա՛ց մի՛ ըլի, իմ աղիզ բալաջան, քանի որ մօրդ շունչը բերանումն ա՝ միսը ըղնգով բռնած կաշխատի որ ամէն հաւարիդ հասնու, ամէն ցաւիդ դարման անի, ո՞ր աղջիկն ա հօրն ու մօր տանը մնացել, որ դու մնաս. լալն էլ ամօթ է, գնալն էլ. գնա, որդի, Աստուած ինքը ըլի քեզ հետ, ծլիս ու ծաղկիս, քու տիրոնջ հետ մի բարձի ծերանաք. Աստուած ձեր չարը բարի անի. քանի որ շունչդ բերնիդ ա՝ աշխատիր որ խստակ անուն ունենաս աշխարհքի միջին. մտահան չանես քու հօր օջախը, քրքրեն քձձեն՝ բարի անունդ ոտի տակ չձգես. քու մօր հալալ կաթին քոռ չի մտիկ անես. ես քեզ եմ հօյալ անում իմ կաթը և իմ ամագը, դու էլ ինձ հալալ արա—ինչքան որ բարկացել եմ վրէդ ու գէշ խօսք ասել. գնաս բարով, բալաջան, գնացած ճամփէդ փունջ մանուշակ դառնայ, քու տիրոջ հետ երկարիս»։ Ապա դառնալով թագուորին՝ ասում է. «Աստուած ձեզ հետ, բալաջան, քու իմ օջախից վեր առած մի բուռը մոխիրը անհատնում ոսկի դառնայ քեզ համար, աչքիս լիսը հանում եմ ու քեզ տալիս, տեսնեմ թէ ո՞նց պտիս բասլամիշ անել ու պահել. գնացէք, բալէք, Աստուծ ձեր չարը բարի անի, որդով ու փառքով լիանաք աշխարումը»...

Այս ժամանակ աղջիկները երգելով հարսնացուի կողմից պատասխանում են.

Թողուլ մի, մէրայ, Թողուլ մի տանեն,
Դեռ չեմ կշտացել իմ հօրանց տանէն,
Ինձի կըտանեն, ղուլ, եսիր կանեն,
Թողուլ մի, մէրայ, Թողուլ մի տանեն։
Միտդ բէ՛, մէրայ, քու մէրութիւնը,
Մի Թողայ քաշեմ էդ գերութիւնը
Ձատ դժար բան ա օտարութիւնը.
Խղճայ ինձ, մէրայ. մի Թողայ տանեն,
Ինձի կըտանեն ղուլ, եսիր կանեն։
Խաս ու ղումաշով ինձի կոկում են,
Ազիզ մօրիցս առնում, ջոկում են,
Ոխ ես չեմ գնում, զօռով Թոկում են,

Սիրտս, ջիգարս առնում պոկում են։
Օխտն ախպոր մի կենդ` քիրը տանում են.
Ազիզ ախպորտանց հոգին հանում են.
Մօր ազիզ բալին, ա՜խ սպանում են։
Մի Թողայ, մէրայ, մի Թողայ տանեն.
Ինձի կըտանեն, ղուլ, եսիր կանեն։

—

Օրի՛, հէրայ, արի՛, հէրայ,
Լաց ի՛լ ազիզ բալիդ վրայ.
Արի՛, մէրայ, արի՛, մէրայ,
Ճատ մի լաց ըլի՛լ դու իմ ծէրայ.

Օրի՛, ախպէր, արի՛, ախպէր,
Լացով սիրտս դու մի խախտէր,
Արի՛, քիրայ, արի՛, քիրայ,
Ես ջրիցն էլ կաթի քի վրայ։[1])

—Մթնեց, հերիք է, դուրս եկէք, բղաւում են դրսից։ Թագուհին հեկեկալով հրաժեշտ է տալիս իր ծնողներին, համբուրում է օջախի քարն ու մեծ սիւնը [2]) և ապա դուրս գալիս [3])։ Մի մի բաժակ օղի էլ այստեղ խմելով ու բարեմախտութիւններ անելով (սալլամաթլին) գնում են դէպի թագուորի տունը, ղաւուլ զուռնի առաջնորդութեամբ։ «Ուռա» (կեցցէ) կանչելով, պարելով, տորճանակներ արձակելով հարս տանողները հասնում են թագաւորենց դուռը և այդտեղ կանգնում։ Դռան մօտ բացուած են լինում սեղաններ կերակըրներով և խմիչքներով։ Փողովւում են թագուորի բոլոր բարեկամները, որոնք նախընթաց երեկոյի հրաւէրքին մասնակցում էին, փոքր ինչ բան ուտում և ապա պատրաստւում թագուորին «խալաթ» (ընծայ) տալու։ Մի մարդ մի մատուցարան ձեռին կանգնում է թագուորի կողքին, զուռնաչին, կամ մի ուրիշ բարձր ձայն ունեցող մարդ էլ սրա կողքին. ապա աւագութեան կարգով սկսում են նուէրներ տալ։ Նախ խաչեղբայրն է նուիրում 3 - 5 րուբլի, տալով այդ զուռնաչուն։ Սա վերև է բարձրացնում դրամը, ցոյց տալիս և գոռում. «Ճէն կենայ, մեր խէչադպէրը, տուել ա մեր թագաւորի ուղուրին ... մանէթ»։ Ճէն կենայ շէն, ձայնում են հարսնեւորները։ Զուռնաչին դնում

[1]) Այս երկու երգն էլ գրի է առել հանգ. Ե. Երզնկեանը։

[2]) Այս սովորութիւնը այժմ միայն մի քանի յետ ընկած գիւղերում է մնացել։

[3]) Մի քանի գիւղերում, ինչպէս Դսեղում, հարսնամայրը չպէտք է նայէ հարսի յետևից, երբ նրան տանում են։

է սլրամը մատուցարանի մէջ և նորը վերցնում, նոյն կերպ չիշասկում, աշխատելով մի ածական կպցնել նուիրատուի անուան, գովելու և զուարճանալու նպատակով։ Երբ Թագւորի կողմի բոլոր հրաւիրեալները տալիս են նուէրներ՝ համարում են և բարձր յայտարարելով յանձնում Թագւորի հօրը։ Այս գումարը հասնում է 40—120 ր. —համարեա որչափ ծախս էր եղած։

Սրանից յետոյ մի քանի գիւղերում, ինչպէս Հաղբատ, Թագաւորի մայրը համբուրում է նորապսակներին և արծաթի թասով օշարակ (շարբաթ) խմացնում, «որպէսզի նրանց կեանքը քաղցր լինի»։ Ապա բոլորին ներս են հրաւիրում և երբ հարսը ոտը դնում է տան սեմին, մատուցանում են նրան «լօշ» հացեր և նա առնելով՝ տան չորս կողմի վրայ է շպրտում, «որպէսզի առատութիւն լինի»։ Երբ մտնում են ներս, հարսին տանում են «փարտ»ի յետևը, իսկ Թագւորը իւր մակարների հետ բարձրանում է իւր թաղթի վրայ՝ նստում։ Իսկ հարսը փարտի յետևը այնքան կանգնած է մնում և չի նստում, մինչև որ սկեսուրը մի ընծայ է տալիս և նստեցնում, բայց և այնպէս ամէն անգամ երբ մի կին է ներս մտնում, նա պարտաւորուած, ի նշան յարգանքի, ոտի է կանգնում և չի նստում, մինչև որ այդ կինը չի խնդրում։

Հարսնևորներն արդէն ցրուած են լինում, երեկոյեան մի քանի երիտասարդներ գնում են խալաթ (նուէր) տուողների դռները և Թագւորի հօր կողմից հրաւիրում ընթրիքի։ Բաւական վաղ մատուցւում է ընթրիքը ահագին բազմութեան, որ ծալապատիկ, միմեանց հանդէպ նստում են գետնին։ Սովորաբար մատուցանում են խաշլամայ, բօզբաշ, տոլմա, և սպա տաւարի կամ բրնձի փլաւ։ Երբեմն կապոյտ կոչուած ձուկն էլ երևան է գալիս։ Վերոյիշեալ կերպով օրհնւում է սեղանը, մառանապետ ընտրւում, կենացներ առաջարկւում և գինու ահագին կժերը դատարկւում։ Երբ վերջապէս հարսնքատէրը նկատում է, որ գինին վերջանալու վրայ է, աչքով է անում խաչեղբօրը և սա գինով լի մի բաժակի վրայ դնում է մի կտոր հաց և մի խնձոր և ուղարկում քահանային։ Վերջինս հասկանալով

Digitized by Google

դրա նշանակութիւնը՝ իսկոյն սկսում է գոհութեան մաղթանքը։ Այս ժամանակ դռանը հնչւում է «հարկ դուրս անելու եղանակը», և հարսնևոր տղամարդիկ ցրւում են իրենց տները։ Սրանից յետոյ հացի են նստում կանայք, որոնց թիւը տղամարդկանցից պակաս չէ լինում։ Սրանց ևս սեղանակից է լինում քահանան։ Թագուորի սեղանը մինչև լոյս մնում է և մակարները անընդհատ քէֆ են անում, ուտում, խմում, պարում։ Այս գիշեր բացի սովորական խաղերն ու պարերը, նաև փոքրիկ ներկայացումներ են տալիս—վեր են բերում օյիններ—օրինակ. Մի մարդ քուրքը թարս հագած, գլխին թաղիքէ քոլոզ դրած ձևանում է շահ, սրան նրան պատժում է, սևերից կապել տալիս, մեղադրելով զանազան մտացածին յանցանքների մէջ, մինչև որ մեղադրուողի կինը կամ մայրը մի հաւ է բերում և ազատում։ Յատուկ այս օրերի համար վարժեցնում են գամբռ շներին զօտեմարտել և մի քանի ձևեր անել և այս ժամանակ այս շահը գօտեմարտում է այդպիսի գամբռների հետ և բազմութեանը ծիծաղեցնում։ Ոմանք էլ մանրավաճառ հրէայի տարազ են մտնում, մի կապոց շալակում և մօտենում կանանց, գովում իրենց ապրանքները, անքաղաքավարի ակնարկներ անում, սրախօսում և ծիծաղեցնում հարսնևորներին։ Այսպէս ուրախ անցկացնելով, շատ ուշ, լուսաբացին ցրւում են։

*Թագվէրէք*.—Այս ծէսը մի քանի գիւղերում տարբեր կերպով են կատարում. այսպէս Ուզունլարում և նրա շրջակայքում կիրակի առաւօտեան թագուորի հայրը կանչում է քահանային, խաչեղբօրը և մի քանի բարեկամներ, իսկ մակարները արդէն կան ու կան։ Բոլորին թէյ և ճաշ տալուց յետոյ կատարում են թագվէրացի ծէսը։ Սրանից յետոյ թագուորը, հարսը, խաչեղբայրը և թագուորի հայրը տնեցիների, քահանայի հետ դաւուլ-զուռնի առաջնորդութեամբ գնում են գերեզմանատուն, իրենց նոր և հին ննջեցեալների գերեզմանները օրհնել տալիս, գինի ածում գերեզմանի վրայ, ողորմաթաս խըմում և դարձեալ նոյն դաւուլ-զուռնի առաջնորդութեամբ վերադառնում։

Մի քանի գիւղերում էլ, ինչպէս Հաղպատ և Սանահին,

Թագաւորը գերեզմանօրհնէքից յետոյ «Թագաւորահօրս» է գընում. — մի դաշտում, բաւական հեռաւորութեան վրայ մի ձող են տնկում և ծայրին մի խնձոր ամրացնում։ Թագաւորը պարտաւոր է գնդակի մի հարուածով թռցնել խնձորը և եթէ չի կարողանում, հրացանը յանձնում է մակարներին փորձելու և «տրուսն խփողին» մի խալաթ տալիս։

Վարդաբլուրում Թագաւորը իւր մակարների հետ ընկնում է պատահած հաւերի հետևից և սպանում։ Ոչ մի հաւի տէր դժգոհութիւն չի յայտնում, որովհետև գիտեն, որ փեսացուն «Թագաւորահօրս է եղել»։

Նոյն երեկոյեան հարսնետան բոլոր բարեկամները մի մի սեղան են ուղարկում հարսնետուն, որ բաղկացած է լինում հետևեալ կերակրներից՝— փլաւ, հաւի չխրթմա, տապակած լօբի, նրանց հետ նաև մի գաւ գինի կամ մի շիշ օղի։ Հարսանքատէրը հրաւիրում է սեղան ուղարկող տների բոլոր տղամարդկանց և հիւրասիրում նրանց այդ ստացած սեղանների կերակրներով. միանգամայն յիշելով այսպէս՝

Ճէն կենայ բարեկամը,
Չի՛ք չքանայ չարակամը,
Թագաւորի բարեկամ Զաքարը
Թագաւորի ուղուրին բերել ա.
Տանդրը սեղան,
Կի՛քը քըրեղան,
Միջին ջուխտ գաւը,
Չալ տետալ հաւը,
Ղաբլու փլաւը,
Մրգերի լաւը։
Բարեկամնին բերել են,
Միձարքաւորնին կերել են,
Ամենքին էլ ծերել են
Չուդողնին էլ համփերել են։

Հետևեալ օրը, երկուշաբթի առաւօտեան, թագաւորի մօտիկ ազգականները, մանաւանդ կանայք, հրաւիրւում են թագաւորի տանը «խաշ» ուտելու։ Այստեղ խօսք է լինում հարսի կուսութեան մասին և ցոյց է տրւում սաւանը։

Երբ հարսը ուրիշ գիւղից են բերում, հարսանեկան սովորութիւնների մէջ հետևեալ տարբերութիւններն են տեղի ունենում։

Հարսնառ գնալիս եթէ Թագաւորը բարգահկտրէքի ժամանակ որոշուած նուէրներից պակաս կամ վատ է բերել, հարսնացուի կողմի ազապները ծեծում են թագաւորի մակարներին, թէ ինչի էք քիչ և վատը բերել։

Digitized by Google



*Почитание солнца.* *Սուրբ ընգնակ, էս երեխի փայը տաս (եր. 252).* *Adoration du soleil.*

Լուս. Գնունի

Digitized by Google

Սովորաբար հարսի գիւղի ազապների համար Թագուորը նուէր է տանում Թխուածքներ և հաւ, ապա Թէ ոչ սրանք կը յարձակուեն Թագուորի մակարների վրայ և իրենց պահանջը յայտնելով կըծեծեն նրանց:

Թագուորահայրը պարտաւոր է նախ քան հարսը տանելը, նրա գիւղի տանուտէրոջը նուէր տալ։

Երբ հարսն առած վերադառնում են Թագուորի գիւղը, մակարներից մինը ձին քշում գնում է Թագուորենց տուն, հինց ձիով մտնում է սրահը և աւետիս տալիս, որ հարսը բերում են։ Նրա ձիու ականջից մի Թաշկինակ են կապում։ Այս համբաւաբերին կոչում են «աղուէս»։

Պսակը կատարւում է անպատճառ հարսնացուի գիւղում և երբ գալիս են Թագուորի գիւղը, դիմում են եկեղեցի, իջնում ձիերից, մտնում, համբուրում սեղանը և ապա՝ հետի, սովորական կարգով գնում Թագուորի տուն։

*Դաշտան.*—Այս գաւառում և կանանց դաշտանը առաջին անգամ երևում է 14—15 տարեկան հասակում, երբ շատերն արդէն ամուսնացած են լինում։

Դաշտանը տևում է 3—6 օր. երբեմն էլ մի քիչ աւելի։

Այժմ սովորել են սրա համար յատուկ շորեր կարել և իրենց օժիտի հետ տանել, մինչդեռ մի տասնեակ տարի առաջ, հէնց այժմ էլ աւելի չքաւորները, բաւականանում են հին շորերի, շատ անգամ կեղտոտ, կտորտանքով։

Ձատերը մինչև դաշտանի կտրուելը մի կամ երկու անգամ գոլ ջրով լուացւում են։

Դաշտանի ընթացքում ոչ մի կերակրից կամ խմիչքից չեն զգուշանում։

Մօտաւորապէս իմանում են դաշտանն սկսուելու օրը և եթէ չի սկսւում՝ սոխի կճեպը եփում, ջուրը խմում են, կամ ոտները տաք ջուրն են դնում։

Իսկ եթէ դաշտանը սաստիկ է լինում, ոտները սառը ջուրն են դնում, որի մէջ հանգած կիր են անում, մէջքին հինայով և մեղրով *ճախու* դնում. (մեղրը քսում են մի շորի վրայ, հինա ցանում և դնում մէջքին։)

*Ամլութիւն.*—Այս գաւառումն էլ ամլութիւնն Աստուծոյ պատիժ են համարում և ամուլ կանանց նախատում են ոչ միայն նրանց սկեսրանքը, այլև ամուսինները։ Սակաւ չի պատահում, որ ամուլ կնոջ ամուսինը սպօրինի կին պահէր՝ «օջախի յարատևութեան» յուսով։

Առաւելապէս այս նախատինքից ազատուելու յուսով կանայք դիմում են հետևեալ միջոցներին.—

ա. Խնդրում են սրբերի միջամտութիւնը՝ ուխտ գնալով ս. Սարգիս, Սանահին, ս. Նշան և այլ ուխտատեղիները։

Այստեղ մատաղ անելուց յետոյ իրենց գօտին դնում են ուխտատեղու բեմի վրայ և ժամասացութիւնից կամ պատարագից յետոյ խնդրում շատ որդիների հայր մարդու՝ որ գօտին վերցնի և կապի իրենց մէջքին։

բ. Երեք անգամ անցնում են Մ. Ձուլավէրի «Ծակքար» [1]) և ս. Նշանի «Թնդոցի» [2]) միջով։

գ. Սուրբ համարուող ծիծեռնակի բունը, որ ուրիշ դէպքերում անձեռնմխելի է համարւում՝ քանդում են, լցնում ջրի մէջ և լողանում։

դ. Գրբացների օգնութեան են դիմում։

ե. Կաւէ, բոլորովին չքանացրած քիլայի (ջրաման) մէջ ջուր են անում, տանում գերեզմանատուն և մի անյիշատակ (սերունդ, յիշող չունեցող) ննջեցեալի գերեզմանի վրայ իրենց ձեռքերն ու ոտները լուանում և ջրամանը գերեզմանի վրայ կոտրում են։

զ. Պառաւ ննջեցեալին լողացնելիս վերցնում են Թիկունքի և արմունկի վրայով վազած ջուրը և խմացնում ամուլ կանանց, ինչպէս և լցնելով ուրիշ ջրի մէջ լողացնում են նրանց։

է. *Ծախու* են դնում մէջքին, այսինքն հինան և մեղրը խառնելով քաշում են մի շորի վրայ և կապում մէջքին։

*Ցղութիւն*.—Ցղութեան օրերում կնոջ դրութիւնը ոչնչով չի փոխւում, նոյն իսկ աշխատանքը աւելանում է, որպէսզի «աշխատանքի, բեռի տակ երեխան փորումը չմեծանայ և նրան շրջի» (անկողին ձգի)։

Եւ այս պատճառով շատ անգամ պատահում է, որ երեխան ծնւում է անտառում, դաշտում, կնոջ աշխատելու ժամանակ. այսպէս՝ Չաղրատում Սոսանց Հարս Թայգուլը Օղի լեռան գլխից իջնելիս աղջիկ է բերել, փէշերի (քղանցք) մէջ

[1]) Ծակ քարը Մ. Ձուլավէրի մօտ մի ահագին ժայռ է, որի մէջ կան երեք ծակեր։

[2]) «Թնդոցը» ս. Նշանի մօտ այն քարայրն է, որտեղ Օհան Օձնեցու աղօթքով ջուր է սկսել բղխել։ (Տես Աւանդութիւնների բաժնում)։

փաթաթել և բերել գիւղ։ Սնամանց Վաւլառը ձորում ընկոյզ հաւաքելիս երեխայ է ծնել, փէշի մէջ փաթաթել և բարձրացել գիւղ։

Ինչպէս զբաղմունքի, այնպէս և ուտեստի և խմիչքի մէջ չեն նախազգուշանում, և նոյն իսկ ընդհակառակը բոլոր քըմահաճոյքները կատարում են, հաւատալով, որ եթէ մերժեն, երեխայի աչքը ծուռ կը մնայ։ Յղի կնոջ այս որկրամոլութիւնը ժողովուրդը «մտափոխ լինել» է կոչում և թէպէտ մեծ մասամբ կատարում է, սակայն ոչ սակաւ անգամներ էլ իրենք կանայք առանց հարցնելու կամ ծածուկ անում են, հաւատացած լինելով, որ երբ սկեսրանք իմանան՝ ներողամտութեամբ են վերաբերուելու։ Այսպէս օր. յղի կինը երբ «սիրտը ուզում է» բռնում է մի հաւ, շերեփը դնում իւր երկու ոտների միջև, [1]) մորթում հաւը և եփում ուտում տնեցիներից ծածուկ։

Յղի կինը հոգս տանելով, որ իւր որովայնի պտուղը գեղեցիկ լինի՝ խոյովում է շաւարի փայծաղը, ուտում և մասը թաթախելով նրա հիւթի մէջ՝ դնում իւր մարմնի այն մասի վրայ, որի համապատասխան մասում՝ երեխայի վրայ կամենում է խալեր—սև գծեր—տեսնել։

Նոյն նպատակով դրկցից երկու ձու է գողանում, ուտում և կճեպը գլխի վերայով թափում ասելով. «Իմ էրեխէն վարդի նման խալեր ունենայ»։

Դեռ չծնուած երեխայի *սեռը որոշելու* համար նայում են մօր փորին, եթէ «երեխան ձախ կողմն է՝ աղջիկ է, իսկ եթէ աջ կողմը՝ տղայ։ Ոմանք էլ մի կտոր շիբ են ձգում կրակի մէջ և նրա ստացած ձևից գուշակութիւն անում։

Չւստ կանայք սարդի (գործարարար) ոստայնը մատով ծակում են և ասում. եթէ այսքան օրում այս ծակը լցուի նորից, տղայ կունենամ, իսկ եթէ չլցուի՝ աղջիկ։

*Վիժելու* համար դիմում են հետևեալ միջոցների.

---

[1]) Որովհետև ժողովրդի կարծիքով կնոջ մորթածը անսուրբ է, ուստի և նա շերեբ է դնում իւր ոտների միջև. որ տղամարդ համարուի։

ա. Տատմայրը տրորում է յղի կնոջ փորը։

բ. Ալաքլունգ կոչուած միջատը չորացնում, ծեծում և ջրով կամ գինով խմում են։

գ. Բարձր տեղից թռչում են։

դ. Ծանր իր են բարձրացնում։

ե. Փորին երկանք են դնում և աղում։

Յղի կանանց պաշտպան համարւում են Չորեքշըբթամուտք, Ուրբըթամուտք և Կիրակամուտք ոգիները, 'ի պատիւ որոնց երեքշաբթի՝ լոյս չորեքշաբթի, հինգշաբթի՝ լոյս ուրբաթ, շաբաթ՝ լոյս կիրակի կանայք և մասամբ տղամարդիկ կիրակի են պահում—գործ չեն անում և առագաստ չեն մտնում։

Այս ոգիները օգնում են յղի կանանց ծննդաբերութեան ժամանակ, եթէ միայն վերջիններս պահել են նրանց կիրակին, իսկ եթէ ոչ՝ վրէժխնդիր են լինում, աւելի դժուարացնելով երկունքը և կամ սպանելով նորածնին. պատմում են, թէ մինչև անգամ նրանք վրէժ են առնում նրանց ամուսիններից, եթէ սրանք արգելք են լինում նրանց օրինապահութեան։ Այսպէս, ասում են, թէ մի մարդ շարունակ ստիպել է կնոջը կիրակմուտք չպահել, չնայելով որ նա սաստիկ ցանկացել է պահել։ Մի կիրակմուտք օր այս մարդը գնացել է գետում ձուկ որսալու, հակառակ իւր կնոջ աղաչանքներին՝ այդ օրը չաշխատելու։ Այստեղ կիրակմուտքը մի երիտասարդի կերպարանքով եկել է նրա մօտ, և ասել, թէ ինչո՞ւ կիրակմուտք չես պահում։—Կիրակնամուտքը ի՞նչ է, ո՞վ է, որ ես նրա համար կիրակի բռնեմ, ուզում է թող գայ կոխ բռնենք։—Լա՛ւ, պատասխանում է այդ երիտասարդը, կիրակմուտքը ես եմ, ե՛կ տեսնենք։

Այս ասելով նա բռնում է այդ մարդու ձեռքից և գետը շփռտում, խեղդում։ Մի ուրիշ գիւղացի, որ մօտից լսելիս է եղել նրանց խօսակցութիւնը, լուր է բերում կնոջը։

—Ես գիտէի, պատասխանում է կինը, որ նրա վախճանը այդպէս պիտի լինէր, քանի որ նա չէր կամենում կիրակմուտք պահել։

*Ծնունդ.*—Երկունքի օրերը մօտենալիս անպատճառ հրաւիրում են քահանային, որ հաղորդութիւն տայ ծննդկանին, որպէսզի նախ հեշտութեամբ ազատուի և երկրորդ՝ դժբաղդ դէպքում անհաղորդ չմեռնի։

Առաջին որգեծնութեան ժամանակ անպատճառ հրաւիրում և նոյն իսկ, եթէ ուրիշ գիւղումն է, գնում բերում են ծննդկանի մօրը։ Գալիս է նաև տատմայրը, իսկ ծանր դրութեան միջոցին՝ բանիմաց հօվիւ—այս նախնական մանկաբարձը, որ կենդանիների վրայ գործնականապէս ուսումնասիրել է մանկաբարձութիւնը։ Այսպիսի բանիմաց հովիւները սակաւաթիւ են և յայտնի ամբողջ գաւառին. Նրանց դիմում են ոչ միայն իւր համագիւղացիք, այլ և շրջակայ գիւղերից։ Սրանցից նշանաւոր է հաղբատեցի «չոպան Պէւոն», ուզունլարցի «Աւետանց չոպան Բարսեղը» և այլն։ Սրանք նոյն իսկ անդամահատութիւններ են կատարում—ածելու վրայ շոր փաթաթում, ծայրը բաց թողնում և ապա սրանով երեխան կտրըտում, արգանդից հանում են։

Ծննդաբերութիւնը հեշտացնելու համար տատմէրը և տընեցիները դիմում են հետևեալ միջոցների.

ա. Տան մէջ գտնուած բոլոր ծածկուած իրերը, ծալքը, դռները, կարասները, ամանները բաց են անում, որպէսզի «ծննդկանի արգանդն էլ բացուի»։

բ. Ծննդկանի ամուսնու տըեխի կրունկի մէջ ջուր են ածում և շաղ տալիս ծննդկանի կրծքին, որպէսզի «ինչպէս տրեխի կրունկն է բացւում, այնպէս և ծննդկանի արգանդը բացուի»։

գ. Քղանցքի ծայրով երեք անգամ ջուր են խմացնում ամուսինը կամ կայծակի հարուածի ենթարկուածը և կամ ով գործը օձի բերանից ազատել և երեք անգամ այդ սպանած օձի և գործի միջով անցել է։

դ. Ամուսինը հերթիկից մի ձու է վայր ձգում, կոտրում։

ե. Ծննդկանի մէջքի վրայ մի հաց են ձեռով կիսում և տալիս աղքատի։

զ. Ծննդկանին տղամարդի գլխարկ են ծածկում, որ-

պէսզի «չարը խափանի, կարծի թէ տղամարդ է, հեռանայ»։

է. Հրացաններ են արձակում, որպէսզի «չարերը փախչեն»։

ը. Գութանը բարձրացնում են կտուրը և մի շրջան գըծում ծննդկանի գտնուած տեղի վերև, որպէսզի «չարերը չըկարողանան այդ շրջանից անցնել»։

Իսկ երբ ծննդկանը ուշագնաց է լինում, գլխին մի հաց են դնում, ապա երկու կտոր անում, վերան երեք բուռ աղ ցանում և մի աղքատի տալիս։

Ոմանք էլ հացը վառում են, ձգում քացախի մէջ և տալիս ծննդկանին հոտոտելու։

Երբեմն էլ ջրախառն քացախի մէջ շաքար աւելացնելով խմացնում են։

Ծննդկանը ծունր է չոքում օջախից հեռու, դռան յետևը, մեղք համարելով մերձենալ օջախին։ Եւ երբ երկու ոտների վրայ ծունր չոքած և երկու կանանց մէջքերից բռնած «ազատւում է», անմիջապէս պառկեցնում են հէնց այդ տեղում անած ծղօտի վրայ, նախապէս միայն մի սաւան ձգելով։

Շատ անգամ տատմէրը շիշը դնում է կրակի մէջ տաքացնում, ապա ծունր դրած կնոջ շուրջը երեք գիծ քաշում և շիշով (շամփուր) երեք անգամ խաչակնքում, որպէսզի չարը գծից ներս չմտնի. յետոյ երբ ծննդկանին պառկեցնում են, կրկին նոյն տաք շիշով երեք համակեդրոն շրջան են գծում, խաչակնքում, շիշը խփում ծննդկանի սնարի մօտ և մի քիչ աղ ու հաց դնում ծննդկանի բարձի տակ, որ չարը չմօտենայ։

Ծննդկանին պառկեցնելուց յետոյ տատմէրը կռան տակ մի հաց է դնում, որ «երեխան ղսմթով»—բաղդաւոր լինի և պորտը դնում է քաքօրի վրայ, որ «անասնասէր լինի և «պորտակտրի» 10—20 կ. ստանալով դնում բերանը և մի դանակով կտրում պորտը, բամբակի թելով կապում, դանակը մի տեղ պահում, որ յետոյ մեռօնաջրով սրբեն։ Ապա ընկերքը թաղում են կամ գետը ձգում և կամ ծննդկանի տակ ձգուած ծղօտի հետ վառում։ Իսկ եթէ այդ ծննդկանի երեխաներն

առՀաաարակ չեն ապրում, Նորածնին արեշատութիւն տալու յուսով ընկերքը թաղում են տան սեամի յետևը։

Եթէ ընկերքը շուտով չի ընկնում, մի Հին, անպատճառ Հին տրեխից կապում են, որ այդեա չուշանայ և շուտով ընկնի և կամ ծննդկանին ասում են, որ մի շիշի մէջ բոլոր ուժով փչի։

Պորտը կտրելիս արիւնը քսում են Նորածնի այտերին, «որ կարմիր լինի»։

Սրանից յետոյ տատմէրը լողացնում է Նորածնին. ասելով.

«Էս ջրի պէս ումրդ երկար ըլի, Աստծու աջողութիւնը վրէդ ըլի,
Մսոտ ըլիս,
Լուռ ըլիս,
Ուրախ ըլիս։

Ապա ջրից Հանում են, Հայր ու մայր ունեցող և բաղդաւոր Համարուող մի անձն մի քիչ աղ է ցանում երեխայի վրայ և ապա աղը լցնում տատմօր բուռը, որ ցանելով երեխայի բոլոր մասերի, նոյն իսկ բերանի մէջ՝ ասում է.

«Աստուած, դու պաՀես էս երեխին, չարէն թափես, դևից ազատես, ամեն փորձանքից դու պաՀես, պաՀպանես»։

Յետոյ բալուլում է, բալուլի վրայ մի Հաց դնում, իւր ձեռն էլ ծայրին սոխ անցկացրած մի շիշ առնում, դուրս գալիս տանից, դառնում դէպի արևելք և ասում.

«Սուրբ բեգնակ, էս երեխի փայը տաս, երկնքիցը ցօղ ցօղայ, գետնիցը պտուղ ստանայ, մենք էլ, մեղաւորներս, որա շուաքումը ուտենք կերակրուինք»։

Յետոյ դառնում է տուն և երեխային դնում ծննդկանի աջ կողմը։ Չի մոռանում նաև շիշը ծննդկանի բարձի տակ դնելու, աւելացնելով նաև դաշոյն, ռանդերք և երբեմն Հրացան, «որպէսզի չարերը չՀամարձակուին մօտենալ»։

Այս բոլորից յետոյ Հրաւիրւում է քաՀանան «տունը փարատելու»։ Նա օրՀնում է ջուրը և շաղ տալիս ծննդկանի, պատերի, յատակի վրայ, որպէսզի սրբուին և չարերը Հալածուին։ Այս ջրից պաՀում են, որպէսզի ծննդկանն ու տատմէրը շուտ շուտ իրենց ձեռքերը լուանան, սրբեն։

Digitized by Google

Այնուհետև սկսում են խնամել ծննդկանին. Նրան նախ մի սոխ են տալիս, որ ծամում և երեք անգամ գլխի վրայից ձգում է, յետոյ մի քիչ մեղր են ուտեցնում առանց հացի, ապա երկու թերխորոմ ձու, հալուա, խաւիծ և այլն: Միևնոյն ժամանակ խմացնում են կամ մեղրով, կամ պղպեղով և կամ կինամանով (ղանճաֆիլ) թէյ:

Սովորաբար ծննդկանի սնունդը լաւ է լինում, որովհետև տան երեխաներից մինը վազում աչքի լոյս է տալիս բոլոր բարեկամներին, յայտնելով երեխայի ծննդեան մասին: Իսկոյն իւրաքանչիւր բարեկամ *սինին* է բերում—հաւ, փլաւ, տոլմա, հաց, պանիր և մանաւանդ հալուա: Սեղան բերողները հիւրասիրւում են ճաշով: Տանտէրն էլ օգտւում է հանգամանքից և նորածնին հիւրերի գիրկը դնելով պորտակտրէք 5—10-ական կոպէկ ստանում, որ բալուլի վրայ են դնում:

Առաջի երեք օրուայ ընթացքում ծննդկանին անշարժ թողնում են նոյն ծղօտի վրայ պառկած, իսկ երեխային օրը երկու անգամ լողացնում են, երկու անգամ խանձարուրում:

Եւ երբ պորտը ընկնում է, տան մի անկիւնն են ձգում, որ ամաչկոտ լինի, տան պատի մէջ թաղում, որ երեխան տան հետ կապուած լինի, ամփոփում եկեղեցու կամ դպրոցի մէջ, որպէսզի եկեղեցասէր, ուսումնասէր լինի և այլն:

Երբ անցնում են առաջին երեք օրերը՝ տանտէրը լողացնում է թէ երեխային և թէ ծննդկանին, վերջինիս համար անկողին ձգում, նրա մէջ պառկեցնում, իսկ նրա տակի ծղօտը հանում է դուրս և վառում, որովհետև «Աստուածածինն էլ է ծղօտի վրայ պառկել և յետոյ վառել»:

Մինչև կնունքը ծննդկանը անսուրբ է համարւում, նրան չեն մերձենում, նրա գործածած ամանները առանձին են պահում, նրա բաժնից ուրիշները չեն ուտում:

*Կնունք.*—Սովորաբար ծննդաբերութիւնից ութ օր յետոյ կատարում են մկրտութեան խորհուրդը: Գալիս է տատմէրը, լողացնում թէ երեխային և թէ ծննդկանին, ապա մի գառ և մի շիշ օղի, իսկ եթէ աղքատ են, միայն մի շիշ օղի ա-

ռած գնում է քաւորի մօտ և խնդրում, որ առաւօտեան գայ և երեխան մկրտէ։ Սովորաբար իւրաքանչիւր գերդաստան ունի իւր տոհմական քաւորը, որին փոխում են միմիայն այն դէպքում, երբ նրա «ձեռքը տան վրայ չի գալիս»—այսինքն երբ նրա մկրտած երեխանները չեն ապրում։

Քաւորին ընդհանրապէս շատ են յարգում. սանամայրը նրա հետ չի խօսում, նրա դռնից երբէք չի անցնում, նրան տեսնելիս փախչում, թաք է կենում, բոլոր նշանաւոր տօներին, ինչպէս՝ Նոր-տարուն, բարեկենդանին, զատկին, վարդևորին, քաւորի համար նուէրներ—բոխչա կամ սեղան են ուղարկում—մրգեղէններ, թխուածքներ, ձու, հաւ, գառ, գուլպաներ, դըրամի և ծխախոտի քսակներ, թաշկինակներ և այլն։ Քաւորն էլ իւր կողմից սրանց փոխարէն մի որևէ բան ուղարկում է սանամօրը և մանաւանդ սանիկին։

Մկրտութեան օրը քաւորը ուղարկում է կնգուղ և սաւան, իսկ նորածնի տատը՝ նարօտ—սպիտակ ու կարմիր կամ կանանչ ու կարմիր։

Տատմէրը երեխային գրկած տանում է եկեղեցի, ուր գալիս է քահանան և քաւորը։ Գալիս են նաև միքանի ազգական կանայք, երբեմն էլ մի երկու տղամարդ, բայց ոչ երբէք երեխայի հայրը, այդ խստիւ արգելւում է։

Մկրտութեան խորհուրդը կատարելուց յետոյ երեխան քաւորի գրկում, քահանայի առաջնորդութեամբ շարական ասելով գընում են ծննդկանի տունը։ Երբ ներս են մտնում, ծննդկանը տեղիցը վեր է կենում և կանգնում. քաւորի ձեռքը տալիս են երկու վառած մոմ. նա մօտենում է սանամօրը, որ դէպի երեխան կռանալով վերցնում է նրան և դնում իւր առջև դրուած բարձի վրայ, որի երկու կողմում մի մի հաց է դրուած լինում, որպէսզի երեխան «դովլըթուոր», կարողութեան տէր լինի։ Ապա ծննդկանը վերցնելով մոմերը քաւորի ձեռքից, բռնում է իւր երկու ձեռքում, մինչև որ քահանան աւարտում է աղօթքը. ապա բոլորը համբուրում են աւետարանը, խաչհամբոյր տալիս և նստում ճաշելու։ Գերդաստանի մօտիկ ազգականները, 20—30 մարդ, հրաւիրուած են լինում։ Նախ

*տղամարդիկ և ապա կանայք ճաշում են և «Աստուած երեխին օջախին բաշխէ» ասելով ցրւում։*

*Երեխայի անունը սովորաբար գերդաստանի մեծն է ընտրում, վերցնելով նրա ծննդեան օրը յիշատակուած սրբերի կամ իրենց գերդաստանի ննջեցեալ կամ ծերացած անդամների անուններից։ Երբեմն էլ մի որևէ հերոսի անուն կամ նոյն իսկ ազգանուն իբր անուն է տրւում երեխային, այսպէս, օրինակ, կայ Մադաթով, Բեբութով, Վարանցով, Նապոլէօն, Աննիբաղ և այլն։*

*Ահա մի քանի ամենագործածական անուններ իրենց կրճատումներով.*

### ԿԱՆԱՆՑ

Անահիտ.
Ոսկեհատ, Ոսկի։
Աստղիկ
Աստղենիկ.
Արուսեակ.
Զառնուշան, Զառնշան.
Հայաստան.
Հայկանուշ, Անուշ.
Վարսենիկ, Վարսօ.
Վարդիթեր, Վարդօ.
Վարդիշաղ.
Շուշանիկ, Շուշան, Շուշի
Սաթենիկ, Սաթօ.
Մանիշակ, Մանշակ.
Սանդուխտ, Սինդուխտ
Իսկուհի.
Շողեր.
Բարբառէ, Բաբառ.
Սիրամարգ.
Հերիքնազ, Հերիք.
Մալաք.
Մարիամ, Մարիկ, Մարօ.
Մագթաղ.
Եղիսաբէթ, Սաբէթ.
Նուեմզար, Նոհեմզար, Նազօ.
Գայիանէ, Գարան.
Հռիփսիմէ, Հոռոմսիմ, Հուսիկ,
Հոռոմ.
Բախտագիւլ, Բախչօ.
Բէկզատ.
Թազագիւլ.
Գիւլխաս.
Խանում, Խանըմ, Խանօ, Խանիկ,
Թալայ.
Նազլուխան, Նազլխան.
Շահզատ.
Սահարգիւլ, Սհարգիւլ.
Եփեմիա, Եփօ.
Փեփել.
Դարիջան.
Մարգարիտ, Մրգարիտ.
Անուշկի.
Մանիա.
Ելիսօ.
Վարինկա, Վառօ.
Կատինկա, Կատօ.

### Տղամարդկանց

Աշխարհբէկ.
Անուշաւան, Ընուշ.
Արամ.
Արամայիս, Ամաս.
Արտաշէս, Արտագ, Արտուշ.
Գարեգին.
Գեղամ,
Գրիգոր. Գիքոր.
Լեւոն, Լեւան.
Կամսար. Կամսայ.
Կիրակոս.
Հայկ.
Ղեւոնդ, Ղեւանդ.
Պապի, Պապուշ, Պապայ.
Պատուական.
Ռուբէն, Ռուբէլ
Սահակ, Սհակ.
Վարդան.
Վարդազար.
Տիգրան, Տիգոյ.

—

Ահարոն, Հարոն.
Ամիրխան.

Անաստաս.
Ընդրէաս, անդրի.
Աննիբաղ.
Անտօն, Անտայ.
Արզման.
Արիստակէս, Արստակ, Ռստակէս.
Առաքել, Ըռաքել.
Բարսեղ.
Բեբութով, Բեբուդ.
Թաթէոս, Թաթի.
Յովհաննէս, Ուհաննէս, Ուճան.
Յօնան.
Նապալէօն.
Ոսկան.
Պետրոս, Պետի, Պետոյ.
Պաւլէ.
Սաղաթէլ, Սաղոյ.
Սարիբէկ, Սարոյ.
Սահարգիւլ.
Սարգիս, Սաքոյ, Սաքի.
Վասիլ, Վասոյ.
Վարանցով.

Մկրտութիւնից յետոյ երեք օր չեն լողացնում երեխային, որպէսզի «մեռոնը վար չգայ» և երեխան «անմեռոն»—անպատկառ—չլինի, մանաւանդ եթէ աղջիկ է: Երեք օրից յետոյ նոյն տատմէրը հացի տաշտը դնում է թոնրի վրայ և լողացնում երեխային, ջուրը թափում կամ թոնիրը և կամ օջախը, որպէս սուրբ տեղեր, որովհետև նրա մէջ գտնում է մեռոնի մնացորդներ:

Միքանի տատմէրներ երեխային մեռոնից հանելիս ասում են.

Հօրով ըլի,
Մօրով ըլի,
Բաղդաւոր ըլի,
Աստղով ըլի.

Digitized by Google

Փայով ըլի,
Ծըլով ըլի․
Աստուած պահի պահպանի։

Ոմանք էլ ձեռքը քսում են աղջիկ երեխայի գլխին և ասում․

Կեսուրդ մազ է ուզում,
Պատրոնդ ամոտէն [1]),
Ջրի երկենքովը,
Կալմնջի լէնքովը...

Եւ այս այն հաւատով, որ երեխայի մազերը երկար լինին։

Մկրտութիւնից մի շաբաթ յետոյ, որպէս հատուցում քաւորի կրած նեղութեան, ծննդկանի տանից ուղարկւում է քաւորանց տուն մի քանի զոյգ գաթայ, տապակած հաւ, մրգեր, գուլպայ, պաճիճ և այլն։

*Մանկա սնուցութիւն*.—Սովորաբար օրը երկու անգամ խանձարուրում են երեխային և պառկեցնելիս պարկի մէջ ածած և փոքր ինչ տաքացրած հող դնում տակը։ Բացի կիրակի, չորեքշաբթի և ուրբաթ օրերից, ամեն օր լողացնում, ամեն լաց լինելիս ծիծ տալիս, օրօրում, նանիկ ասում, քընացնում։

Սրանից տաս տարի առաջ ծննդից երեք, իսկ այժմ միայն մի օր յետոյ են ծիծ տալիս, որպէսզի երեխան համբերող լինի։

Առանց որոշ ժամանակի, լաց լինելիս միայն, ծիծ են տալիս և ժողովրդական առածն էլ հաստատում է այս ասելով․ «Երեխան մինչև լաց չլինի, մայրը ծիծ չիտայ»։

Սովորաբար մինչև նոր յղութիւնը կամ 3—4 տարի ծիծ են տալիս։ Սրանից աւելի երկար զգուշանում են ծիծ տալու, որովհետև հաւատում են, թէ շատ ծիծ ուտողը բթամիտ կարող է լինել։

Պատմում են դէպքեր, որ ամուլ կանայք, ինչպէս օրինակ, օձնեցի Ղուլանց Ալէքսանդրի կինը, մի օտար երեխայի

---

[1]) Սամի թոկ։

անց են կացնում իրենց շապկի միջով, որդեգրում՝ և սկսում իրենք ծիծ տալ։ Միքանի օրից այդ ամուլ կանանց ստինքից սկսում է կաթ գալ։

Երբեմն էլ պառաւ կանայք, ինչպէս օրինակ, օձնեցի ճարոյենց յիսուն տարեկան պառաւը, որ քսան տարուց ի վեր երեխայ չէր ունեցել, իրենց դստեր կամ հարսի մահից յետոյ իրենք են սկսում ծիծ տալ իրենց թոռներին։

*Կաթ աւելացնելու* համար ուխտ են գնում Կուրթան գիւղի մօտ գտնուած «Կաթնաղբիւրը», մոմ վառում, խունկ ծխում, ստինքներն այդ ջրով լուանում և խմում։

Միևնոյն նպատակով և նոյն կերպ ուխտ են գնում նաև Օհան Օձնեցու վանքի մօտ գտնուած «Օձի պորտի» աղբիւրը։

Իսկ եթէ այս միջոցները չեն օգնում, այն ժամանակ յանձնարարում են մի ուրիշ կնոջ, որ ծիծ տայ, միայն այս դէպքում աշխատում են, որ այդ կինը «հալալ կաթնակեր» լինի, որովհետև «դայի հետ մտածը հոգու հետ դուս կը գայ»։

Եւ կամ կովի կաթով են կերակրում, մի քիչ ջուր և սառը շաքար խառնելով հետը։ Մի տասը տարի առաջ այժմեան ծծուկի (СОСОКЪ) փոխարէն գործ էին ածում եզան եղջիւր, վրան կովի ծիծ, կամ մաքրած մորթուց կարած մի պտուկ անցկացնելով։

Իսկ եթէ *կաթը շատ է* լինում գառան կամ մեծ երեխայի ծծել են տալիս, չէկ հողը մաղում, անալի թանի հետ շաղախում քսում են ծծերին կամ ճումպը (գետի ափից կտրուած քառանկիւնաձև, խոտալից հողի շերտ) սառը սառը դնում են ծծերի վրայ, կամ արաղի սապոնը մեղրով եփում և շորի վրայ քաշած դնում ծծերի վրայ և կամ քացախում թրջած հաց են դնում վերան։

Երեխային *ծծից կտրելիս* ստինքսների վրայ քսում են շաղախած աղ ու մեղր, հաւի ծերտ, ծխամուրճի կեղտ, և կամ շապկի բացուածքը կարում են։

Կնոջ *կաթը խէր դեղ* են գործածում աչքի հիւանդութեան դէմ.—բամբակի վրայ սառը շաքար են ցանում և ապա կաթի մէջ թաթախելով դնում ցաւած աչքի վրայ։

Digitized by Google

Մօր ամենամեծ հոգսերից մինն էլ երեխային չարից ազատելն է, որովհետև եթէ անհոգ գտնուին, «չարերը կըտանին երախային»—(այսինքն կը կապտին և կը մեռնին)։ Այս նպատակով խոզի պինչը չորացնում և կապում են օրօրոցից, որովհետև «չարերը խոզերին չեն մօտենում»։ Իսկ եթէ այս միջոցը չի օգնում և միևնոյն մօր մի քանի որդիները այսպէս տարւում են, «Թփլիսի» են լինում, այն ժամանակ մի նոր երեխայ ծնուելիս պււթանի շղթան ձգում են ծննդկանի շուրջը, որ կէսզի արգիլեն չարերին այդ շրջանից անցնել և մօտենալ երեխային կամ նրա մօրը, ապա, երբ նորածինին լողացնում, աղում և խանձարուրում են, երեք անգամ տան հերթիկից անց են կացնում և դռնից ներս բերում։

Նոյն նպատակով դիմում են հետևեալ միջոցների.

ա. Երեխային մկրտում են ոչ թէ եկեղեցում, այլ տանը, թոնրի վրայ, տաշտի մէջ։

բ. Փաթաթում են էշի ծնի (նոր ծնած սփահի շապիկ) մէջ և այդպէս պահում մինչև երեք օր։

գ. Մի սև հաւ են խեղդում և երեխայի ծնուած սենեակի շէմքում թաղում։

դ. Սև կատուի ականջը կտրում են և երեխայի քթի տակ ծխում։

ե. Երեխան ծնուելիս խախալի (մեծ մաղ) մէջ են առնում։

զ. Երեխային եօթն օր կշռում են քաքոլի հետ և քաքոլները գետնում թաղում։

է. Երեխային մի ուրիշ, բազդաւոր որդիների տէր կնոջ շապկի բացուածքով անց են կացնում, որպէս թէ նրանից է ծնւում։

ը. Երեխային ծախում եմ մի որևէ մարդու և իրենք վերցնում «իբր ուրիշի որդի» պահում։

թ. Երբ երեխային մկրտելուց յետոյ եկեղեցուց տուն են բերում. գնում են մի Թուրքի գիրկ, իբր թէ այդ ոչ—քրիստոնեան է քաւորը եղել։

Իսկ չար աչքից պահելու համար մի քիչ խոզի մազ, մի

կտրուած աեղ և մի քիչ մոխիր անում են մի քսակի մէջ և կախում երախայի վզից. կամ եօթ հատ աչքուլունք եօթը հոգի (չորս կին և երեք տղամարդ) աղօթում են և մանկան թի-կունքին կարում, կամ օրօրոցից կախում և կամ ուղտի մազ են պահում մօտը։

Շատ անգամ երեխաները «կոխւում են»—հեւոզհեւոէ նիհարում և մեռնում և այս առաւելապէս այն դէպքում, երբ քառասունքը չլրացած մի մարդ ներս մտնելիս երեխային չեն բարձրացնում տեղից, երբ մի քառասունքոտ կին է գալիս երե-խայի մօտ և այլն։

«Կոխից» բժշկուելու միջոցները հետևեալներն են.

ա. Մահմեդականի գերեզմանի վրայ լողացնում են երե-խային։

բ. Եօթ տնից մոմ են մուրում, հալում և մի ծակ տախ-տակի միջով անում ջրով լի մի թասի մէջ մոմի ստացած ձևից գուշակում, թէ ինչից «կոխուած պիտի լինի»—ինչից է յառաջացել հիւանդութիւնը – և ապա շորի մէջ փաթաթում և մի խաչ-ճանապարհի մէջ թաղում։

գ. Չորեքշաբթի, ուրբաթ և կիրակի երեկոներն տանում են ներկարարի մօտ, նայել են տալիս ներկարարի կարասի մէջ, մոմեր վառում կարասի շրթունքին, և խունկ ծխում։

դ. Մումիան[1]) խմացնում։

ե. Երեխայի հօր ոտերի վրայ լողացնում են։

զ. Ծիծեռնակի սուրբ համարուած բունը կամ գայլի բե-րանը ձգում են տաք ջրի մէջ և այդ ջրով լողացնում երե-խային։

է. Ծայրայեղ դէպքում երեխային տանում դնում են մի աւերակ ջրաղաց, «որ սովորաբար լի է լինում սատանաներով» և այդտեղ թողնում 3 4 ժամ։ Երբ վերադառնում են վերց-նելու, կամ մեռած են գտնում, կամ առողջացած։

---

[1]) Ժողովուրդը մումիան է կոչում այն քարացած ձանձախա-րիթը, որ գոյանում է դարաւոր խաչքարերի վրայ՝ մոմերի չաճախ վառուելուց։

Digitized by Google

Երեխային կայծակի հարուածից ազատելու համար աւագ հինգշաբթի օրը եկեղեցում սպիտակ, կարմիր և կանանչ թելեր միմեանց հետ ոլորում են և հետևեալ առաւօտեան, ուրբաթ օրը, այդ թելով երեխայի գլխարկի, արխալուղի և կամ չուխի մէջ ծառ ասղնագործում։ Այս ասղնագործած ծառը կոչւում է *ուրբաթարուր*։

Երեխայի կաթնատամները դուրս գալիս մայրը նրա հագած շապիկը մի քիչ պատռում է ասելով. «Էս շապկի պէս ատամի տեղն էլ պատռուի, ատամը դուրս գայ։» Երբ լնդերքը սկսում է եռ գալ, կպճած սոխ են տալիս երեխայի ձեռքը, որ խածոտէ, եռքը անցնի։

Եւ երբ երևում է առաջին կաթնատամը՝ *ծանդիլ* են անում.– ցորեն են խաշում, քամում, մի քիչ հովացնում և այդ երեխայի գլխին մի թաշկինակ ձգելով ածում են գլխին։ Մի քանի գիւղերում հաւեր են կանչում, որ հաւաքեն ծանդիլը, իսկ մի քանիսում ուրիշ փոքրիկ երեխաներ։

Իսկ երբ ընկնում է ատամը, ձգում են թոնրի սնուածքի մէջ ասելով.

Մուկ մուկ տար ու բեր,
Իմ երեխի համա էրծաթի ատամ բեր։

Երբ երեխան մի տարեկան է դառնում, ծննդեան օրը դնում են նրան այն տեղ, ուր նա ծնուել է և երեք անգամ շուռ տալիս, որպէսզի «բան գտնող լինի»։

*Ոտ ելնելու* համար երեխային հօր ոտների վրայ դնում լողացնում են, ս. Նշանի Թնդոցի միջով երեք անգամ անցկացնում. Թլթխմորը կամ ծիծեռնակի բունը ձգում են տաք ջրի մէջ և դրանով լողացնում երեխային։

Բռնում են երեխայի ձեռքերից, կանգնեցնում ասելով.

Տոտա՛յ,
Կանանչ խոտ ա։
Մէրն ուրախանայ,
Երեխէն տոտ ա։

Ման—գալուն օգնելու համար *Ճեռ* են շինում։



Digitized by Google

Երեխային մենակ թողած միջոցին վերան մի շիշ կամ մի խանձող են դնում, որպէսզի «չարքերը չմօտենան»։

Մինի մօտ տանելիս, առաջին անգամին վերջինս երեխայի ձեռքը մի ձու է տալիս (եթէ նա տղայ է) որպէսզի ձուի պէս սպիտակամուրուս դառնայ, կամ ծոցը մի քիչ սպիտակ բուրդ դնում, (եթէ աղջիկ է,) որպէսզի բրդի պէս սպիտակահեր դառնայ։

Եթէ երեխան ուշ է լեզու ելնում, եօթ եկեղեցիների բալանիներ են քսում բերանին, որ շուտով սկսի թոթուել։ Իսկ եթէ ցանկանում են, որ նա «լեզուանի»—ճարտարախօս—լինի, ծիծեռնակի լեզուն քսում են նրա բերանին և երբէք կովի լեզու չեն տալիս ուտելու։

Եթէ երեխան հոլ է ուտում, կանանչ մողէսը քցում են մի փոքրիկ տոպրակի մէջ, մոխրով լցնում և երեխայի մէջքին կապած պահում վեց ամսից մինչև մի տարի։

Երբ երեխան սաստիկ հազում է, մի տիկին են շինում և տանում մի աւերակի մէջ թաղում, որպէսզի հազը կտրուի։

Երբ երեխան ծաղիկ կամ կարմրուկ է հանում՝ ընկոյզը ծեծում, փոքրիկ մոմ շինում և մի ափսէում երեք հատ դրած վառում են երեխայի սնարի մօտ, կարմիր շորեր են փռում շուրջը, օշարակ են սրսկում պատերին, որպէսզի «ծաղկամէրը՝ քաղցրութիւնով հեռանայ»։

Ծնողներն էլ տօն են պահում և միմեանցից հեռու մնում։



# ԲՈՐՉԱԼՈՒԻ ԳԱՒԱՌ

### Ե. ԼԱԼԱՅԵԱՆԻ

---

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԵԱՆՔ*)

*Լոռում այժմ միաժամանակ ապրում են ցեղական կազմակերպութիւնից դեռ ևս բոլորովին դուրս չեկած սերունդներ, գեներ, որոնք արիւնակցական կապով կապուած տոհմեր են կազմում, նահապետական գերդաստաններ և ժամանակակից ընտանիքներ։ Առաջին երկուսը՝ սերունդն ու գերդաստանը՝ արագութեամբ քայքայւում են՝ վերածուելով ընտանիքի։*

*Խօսենք սրանցից իւրաքանչիւրի մասին առանձին առանձին։*

## ՍԵՐՈՒՆԴ ԵՒ ՏՈՀՄ

*Սերնդական կամ գենսական կազմակերպութեան կնիքն ամենից աւելի կրում են Իգահատի և Արդուի գիւղերի բնակիչները, որոնք այս կողմերում տիրապետող տարր կազմելով առանձնացած են մնացել։ Իգահատի 60 տանից բաղկացած բնակիչները բաժանւում են երեք սերունդների (գենս). ա. Մամկուլանք, բ. Իսպիրանք և գ. Թաթուլանք, որոնք սերել են Մամկուլ (Իմամղուլի), Իսպիր և Թաթուլ եղբայրներից։ Իսկ սրանք համարւում են այն Ճահվէրդու որդիները, որը Բջնուց գաղթելով այստեղ, սպանել է այստեղի տէր՝ Կորչուկին*

---

*) *Տես Ազգ. Հանդէս* VII. VIII *և* IX *գրքեր.*

և նրա եղբայր քահանային *) ու տիրապետել նրա երկրին։ Հետևապէս և այս երեք սերունդներն արենակցական կապով կապուած լինելով միմեանց հետ և ընդունելով միևնոյն նախահօրը՝ կազմում են մի տոհմ և կրում Ձահվէրդեան տոհմանունը, որ այսօր իբր ազգանուն է համարւում։—Վաթսուն տունն էլ Ձահվէրդեան է ստորագրում։

Արդուի բնակիչները կազմում են երկու սերունդ՝ Դայեան և Քալանթարեան։ Երկուսն էլ յառաջացել են Լօռու-Մելիքեան Դայի և Ամիրխան եղբայրներից։ Առաջինը պահպանել է իւր սերնդական՝ Լօռու-Մելիքեան անունը, իսկ երկրորդը վերակոչուել է Քալանթարեան, որովհետև Ամիրխանը քալանթարութեան պաշտօն է ստանձնել։ Հետևապէս և՝ այս երկու սերունդն էլ արենակցական կապով կապուած մի տոհմ են կազմում, որի տոհմական անունն այժմ կրում է միայն առաջին սերունդը։

Այժմ տեսնենք իւրաքանչիւր սերնդի ներքին կազմակերպութիւնը.

Ա. *Իւրաքանչիւր սերունդ ունի իւր հողաբաժինը*, որ որոշ սահմաններով բաժանւում է միւս սերունդների հողաբաժիններից։ Այս սերնդական հողաբաժինը պատկանում է սերնդի բոլոր անդամներին հաւասարապէս, ուստի և իւրաքանչիւր անդամը իրաւունք ունի նրանից օգտուելու, բայց եթէ չի օգտւում, նա իրաւունք չունի այն ծախելու, ամբողջ սերունդը թոյլ չի տալ, որ սերնդական հողն ուրիշ սերնդի ձեռն անցնի. Այսպէս՝ երբ Իսպիրենց սերնդից մինը մի փոքրիկ արտ էր ծախել Օձնեցի Առովեաններին, Իսպիրենց սերունդը յարձակուել էր Առովեանների վրայ և թոյլ չէր տուել, որ վարեն այդ հողաբաժինը։ Միևնոյն ժամանակ եթէ հարևան սերնդներից մինը բռնութեամբ խլէ մի սերնդի մի որևէ անդամի դաշտը, ամբողջ սերունդն ոտի է կանգնում պաշտպանելու նրան։ Սերընդին պատկանող հողաբաժնի վրայ եղած անտառից, արօտա-

*) Մինչև այժմ էլ այն փոքրիկ լճակը, ուր ձգուած է եղել այդ քահանան, կոչւում է ըրիցագօլ։

Digitized by Google

տեղուց, ընկուզի և այլ պտղատու ծառերից օգտւում են բոլոր անդամները հաւասար իրաւունքով։

Այս կարգն էր տիրում մինչև առաջին հողաչափութիւնը, (1874 թ.) որ հողերը բաժանելով անհատների վրայ՝ նրանց իբր անձնական սեպհականութիւն յատկացրեց։

Բ. *Նախահօր պաշտամունքը,* նրա գերեզմանը որպէս ուխտատեղի համարելն աւելի որոշ կերպով մնացել է Լօռիս-Մելիքեանների մէջ։ Սրանք իրանց նախահայր համարում են Ս. Օհան Օձնեցուն, որի աճիւնի վրայ եկեղեցի են կառուցել և նրա գերեզմանն էլ պաշտում են, նրա հողը իբրև օխնութիւն, դեղ, գործածում համարեա ամէն տեսակ հիւանդութիւնների դէմ։ Նորապսակները, եթէ նոյնիսկ ուրիշ գիւղում կատարած լինեն պսակադրութիւնը, նախ և առաջ գնում են համբուրելու Օհան Օձնեցու գերեզմանը և Ալալօ Քալանթարեանի տան օջախը, որ աւանդաբար համարւում է իրենց նախահօր բնակարանը։ Ամեն տարի, Զատկի Կանաչ կիրակէին Լօրիս-Մելիքեան ամբողջ տոհմը տօնում է Ս. Օհան Օձնեցու տօնը, իրեն միջից դրամ հաւաքելով հասարակական մատաղ է կտրում և պատարագ մատուցանում ու հոգեհանգիստ կատարում Ս. Օհան Օձնեցու գերեզմանի վրայ։

Գ. *Իւրաքանչիւր սերնդի բոլոր անդամներն իրաւունք չունին միմեանց հետ ամուսնանալու:* Որոշեալ չափով արգելւում է նրանց նաև իրենց տոհմին պատկանող սերնդների անդամների հետ խնամութիւն անել։ Բայց երբ մինը արու ժառանգ չունենալով պէտք է իւր հարստութիւնը իւր աղջկան տար, այսպիսի դէպքում սերունդը թոյլ է տալիս իւր անդամներից մինին ամուսնանալու այդ աղջկայ հետ, որպէս զի այդ հարստութիւնը սերնդի միջից դուրս չգայ։ Այսպէս՝ Քալանթարեան Ռ. միակ ժառանգ դուստրը ամուսնացել է, նոյն սերնդից Բ.-ի հետ, մերժելով շատերին։ Ինչպէս և Ա. Ճահվէրդեանի երկու դուստրներն ամուսնացել են իրենց սերնդից՝ Ե. և Ի. եղբօրորդիների հետ։

Դ. *Սերունդը ժառանգում է անժառանգ անդամի ամբողջ կայքը* և յատկացնում կամ եկեղեցուն, կամ չքաւորնե-

Digitized by Google

րին և կամ հասարակական մի գործի. այսպէս՝ Մելիք Էլիզ-բար և Մելիք Գաբրիէլ Լօրիս-Մելիքեանները, ինչպէս և Մե-լիքսեդեկ Քալանթարեանը ժառանգ չունենալով զանազան ժամանակներում վերանորոգել են Ս. Օհան Օձնեցու վանքը։

Ե. Սերունդը հոգում է իւր կարօտ անդամների կա-րիքները փոխադարձ օգնութեամբ: Այսպէս օրինակ, երբ մինը տուն է շինում՝ սերնդի անդամներն առանց մի որև է վարձատրութեան փայտ, քար են կրում, մի գիշեր հաւաքւում և այդ նոր շինուող տան միջի հողը դուրս ածում, կտուրը կոխկրտում, որ հողը ամրապնդուի։ Երբ մինը ցանկանում է իւր ննջեցեալի վրայ գերեզմանաքար ձգել, դարձեալ սերնդի անդամները հաւաքւում գնում են այդ գերեզմանաքարը բերե-լու։ Երբ մինի տաւարը կորչում է՝ սերունդը խմբովին գնում է որոնելու։

Միմեանց գործիքներ, ձի, էշ, հանդերձեղէն ձրի փոխ տալը սովորական են։

Միևնոյն կերպ և կանայք են վարւում, հարսանիքի բրինձը ընտրելիս, բուրդ զգելիս, էրիշտա անելիս, պարտէզները քաղ-հանելիս, բաղաքայլին հարս ու աղջիկ սիրով հաւաքւում են, խօսելով, ծիծաղելով գործը կատարում և միմիայն մի ճաշով հիւրասիրուելով ցրւում։

Սերունդը օգնութեան է հասնում թէ ուրախութեան և թէ տխրութեան ժամանակ. այսպէս՝ հարսանիքի ժամանակ «կանչի» միջոցով դրամական նուէրներ տալով թեթևացնում է նրա ծախքերը, տղաբերքի ժամանակ «ծննդգաւաթ» տանելով ծննդկանին՝ օգնում է նրան լաւ սննդուելու, ննջեցեալի «եօթի» և Ս. Խաչի տօնին տրուած հոգու հացի ժամանակ զառներ և զանազան թխուածքներ տանելով պակասեցնում է ծախսերը։

Սերունդը օգնութեան է հասնում ամէն մի դժբաղդ դէպ-քում, այսպէս երբ մինի դէզը վառւում է, մինը սայլը լծում է և սկսում ամէն մի տանից խոտ, հասկ հաւաքել և տալ նը-րան։ Երբ մինը զրկւում է տաւարից՝ շատերը մի-մի գառ, հորթ են նուիրում, որ պահի, մեծացնի, տաւարի տէր դառ-նայ։ Իսկ չքաւորներին թուխս ընկած հաւ փոխ տալը շատ

Digitized by Google

տափորական է։ Աղքատ կինը մինի թուխս ընկած հաւը ժամանակաւորապէս վերցնելուց յետոյ՝ դրկիցներից հաւկիթներ է հաւաքում, թուխս դնում և վառեկների, հաւերի տէր դառնում։

Այրի, անտէր կնոջ արտերը սերունդն է ցանում, հնձում, կիրակի և տօն օրերին։

Զ. Սերունդը պաշտպան է հանդիսանում իւր ամէն մի անդամին, վրէժխնդիր լինում նրա արեան։ Երբ մինը կռուի է բռնւում մի ուրիշ սերնդի անդամի հետ, ամբողջ սերունդը երկու կողմից օգնութեան են հասնում և անհատական կռիւը դառնում է սերնդական և երբեմն նոյնիսկ տոհմական։ Ո՜րքան կռիւներ են տեղի ունեցել և ունենում Մամդուլենց, Խալիրենց և Թաթուլենց և կամ սրանց ու Քալանթարեանների մէջ, որոնց սկզբնապատճառը երկու անհատների կռիւն է եղել։ Այսպէս՝ Ա. Խալիրենցը պահանջում էր Գ. Թաթուլեանից, որ կալը հեռացնէ իրեն տան մօտից, սակայն վերջինս չէր կամենում, բանը հասնում է կռուի, որին մասնակցում են թէ Խալիրենց և թէ Թաթուլենց ամբողջ սերունդը։

Սերնդական և երբեմն նոյն իսկ տոհմական կռիւների պատճառ դառնում են աղջիկները։ Երբ մի երիտասարդ մերժումն է ստանում մի ուրիշ սերնդի պատկանող աղջկայ ձեռքն ստանալու, ամբողջ սերունդը կարծես վիրաւորուած մի քանի կտրիճներ է տալիս, որ գնայ փախցնէ։ Եւ երբ մի գիշեր լուր է տարածւում, թէ աղջիկը տարան, իսկոյն այս սերնդի և երբեմն նոյն իսկ տոհմի կտրիճները ձի են հեծնում, հրացան վերցնում և ընկնում փախցնողների յետևից։ Սկսւում է հրացանաձգութիւնը և եթէ մարդ է սպանւում, սերունդն ամեն միջոցի դիմում է արեան վրէժը լուծելու, սպանողի սերնդից մինին սպանելով։

Է. Սերնդի մի առանձնայատկութիւնն էլ այն է, որ առանձին գերեզմանատուն ունի, և ամեն մի անհատ փափագում է այդ սերնդական գերեզմանատանը, իրենց նախնիների մօտ թաղուել։ Եւ այս է պատճառը, որ օտար տեղում մեռնողներին բերում են իրենց սերնդական գերեզմանատանը թաղելու, ինչպէս օր. Միք. Քալանթարեանի մար-

մինը Բագուից բերին Արդուի, Ցարութ. Ճահվէրդեանները՝ Թիֆլիսից Իգահատ։

Շատ անգամ սերնդական գերեզմանատունը կից է լինում տոհմական գերեզմանատան, բայց և այնպէս՝ միմեանցից անջատ։ Այսպէս Լօրիս-Մելիքեան տոհմինը Ս. Օհան Օձնեցու վանքի գաւթումն է գտնւում, միայն բուն Լօրիս-Մելիքեանները նրա հիւսիս արևմտեան, իսկ Քալանթարեանները՝ արևելահարաւային մասում։ Ճահվէրդեան տոհմինը գիւղի մօտ, բայց միմեանցից փոքր ինչ հեռու, երեք մասի՝ Մամգուլենց, Իսպիրենց և Թաթուլենց՝ բաժանուած։

Պէտք է նկատել նաև, որ կանայք թաղւում են ոչ թէ իրենց, այլ ամուսինների սերնդական գերեզմանատանը։

Ը. Սերունդը տիրապետելով մի երկրի, այդտեղի բնակիչներին կամ յետոյ եկածներին իրենից ստոր է համարում, չի թոյլ տալիս մասն ունենալու իր հողից, անտառից, ամօթ է համարում նրանց հետ խնամութիւն անել, թոյլ տալ նրանց իրենց սերնդական գերեզմանատանը թաղուելու: Այսպէս՝ Իգահատ գիւղում բացի Ճահվէրդեաններից, ապրում են նաև մի քանի տուն ուրիշ գիւղացիներ, Ճահվէրդեանները, որպէս տիրապետող՝ բարձր, ազնուական են համարել իրենց և կառավարութեան էլ այդպէս ընդունել տուել, իսկ նախկին ընկճուած բնիկներն ու եկւորները համարւում են ռամիկներ։ Սրանք սեպհական հող չունեին և կապալով են վերցնում Ճահվէրդեանների հողերը և աշխատում նրանց համար։ Ո՛չ մի Ճահվէրդեան չէր ամուսնանում սրանց հետ և ոչ էլ թոյլ տալիս որ իրենց գերեզմանատանը թաղուէին, իրենց սերնդական կամ տոհմային գործերին միջամտեն։

Եւ եթէ մի պառաւած աղջիկ կամ մի այրի կին կամեցել է ամուսնանալ մի ռամկի հետ և կամ եթէ մինը կամեցել է մի ռամկի տղայ որդեգրել կամ տնփեսայ բերել և նրան տալ իւր ազգանունը՝ սերունդը միշտ միջամտել է, մեծ մասամբ արգելել և երբեմն միայն թոյլ տուել։ Այսպէս՝ օրինակ Քալանթարեանի սերունդը արգելք է լինում, որ այրի Փ. ամուսնանայ Զ.-ի հետ, ոչ էլ Թաթուլանց սերունդը կամենում է

Digitized by Google

թողնել, որ Եսայու այրին հաղբատեցի մի ռամկի տընփեսայ բերի։

Թ. Սերունդը իր ներքին գործերը վարում է սերընդական ժողովներում, ուր հաւաքւում են գլխաւորապէս ծերունիներ և ուր երբեմն մուտք են գործում և՛ պառաւներ։ Այսպէս՝ օրինակ, երբ միմեանց հետ կռւում են, երբ մէկին մի դժբաղդութիւն է պատահում, երբ եղբայրները կամենում են միմեանցից բաժանուել, երբ ամբողջ սերնդին պատկանող ընկուզենիները կամ ուրիշ պտղատու ծառերը պէտք է թափ տալ ու բաժանել իրենց մէջ՝ տղամարդիկ և մանաւանդ ծերունիները հաւաքւում են և խորհրդակցութեամբ որոշումներ անում։

Ժ. Տոհմային ընդհանուր ժողովներ հազիւ են պատահում, ամբողջ տոհմին վերաբերեալ խնդիրները լուծելու համար սովորաբար իւրաքանչիւր սերնդից որոշեալ թւով մարդիկ են ընտրւում, որոնք և ժողովներ անելով՝ խորհրդակցում են միմեանց հետ, աշխատելով իւրաքանչիւրը պաշտպանել իր սերնդի շահերը։

Այսպէս Ճահվէրդեան տոհմը կամենալով մի եկեղեցի ունենալ, իւրաքանչիւր սերնդից ընտրել է երկու հոգի, որոնք պիտի հոգան այդ մասին։ Երբ սրանից 25 տարի առաջ կամենում էին ջուր բերել գիւղում, իւրաքանչիւր սերունդը ընտրել է երեք հոգի, որոնք և գլուխ են բերել տոհմի ցանկութիւնը։

## ՆԱՀԱՊԵՏԱԿԱՆ ԳԵՐԴԱՍՏԱՆ

Նահապետական գերդաստանը, որ ծագել է սերնդից, երբ նրա մէջ զարգացել է անհատական սեփականութեան գաղափարը, նկատելի է Լօռու ոչ թէ մի քանի, ինչպէս սերընդինն էր, այլ բոլոր գիւղերում։ Սակայն նահապետական մեծ գերդաստանը արդէն այստեղ անհետացել է, մնացել է միայն միջինը. 60—70 անդամից բաղկացած գերդաստան այլ ևս չը կայ, կայ միայն 25—30 անդամներից բաղկացած, ինչպէս օրինակ Օձունում Վարդանանց գերդաստանը։

Digitized by Google

*Այս նահապետական գերդաստանը հիմնուած է գլխաւորապէս ա. հայրական իշխանութեան, բ. աւագութեան իրաւունքի և գ. ագնատական* *) (agnatique) *կարգի վրայ։*

*Հայրական իշխանութիւնը այս գերդաստանի մէջ գրեթէ ծայրայեղ է, որովհետև նա տարածւում է որդիների, թոռների ու սրանց կանանց ոչ միայն անձի, այլ և ստացուածքի վրայ։ Նա է որոշում իւրաքանչիւրի աշխատանքը, ամուսնացնում որդիներին ու թոռներին գրեթէ ինքնակամ, պատժում և նոյն իսկ հեռացնում տանից այն տղին կամ հարսին, որ համարձակւում է ընդդէմ գնալ իւր իշխանութեան։ Բացի սրանից՝ նա կատարելապէս տէր է գերդաստանի ունեցած բոլոր ստացուածքին։ Բոլոր անդամների, տղաների, հարսների վաստակը նրան է յանձնւում, և առանց նրա համաձայնութեան ոչինչ չի ծախսւում։ Միայն հարսների ամուսնութեան ժամանակ ստացած ընծաները, նրանց բերած օժիտը, մնում են որպէս հարսների անձնական սեպհականութիւն, և գերդաստանի հայրը ամենածայրայեղ դէպքում միայն վերցնում է նրանցից։*

*Բայց այս իրաւունքների հետ գերդաստանի հայրը ծանր պարտականութիւններ ևս ունի։ Նա պատասխանատու է գերդաստանի ամէն մի անդամի արարքի համար, նա պարտաւոր է իւր միջոցների համեմատ հոգալ ամէն մի անդամի կարիքը, այսպէս օրինակ, եթէ գերդաստանի անդամներից մինը, նոյն իսկ տանից հեռանալով, ի հարկէ չը բաժանուելով գերդաստանից, իւր անխոհեմութեամբ, մինչև անգամ գերդաստանի հօր կամքի հակառակ գնալով, մեծամեծ պարտքերի տակ ընկնի, վերջինս պարտաւոր է նրա այդ պարտքերը*

---

*) *Ագնատական, այսինքն քաղաքական կարգի, ազգական կոչւում է այն անհատը, որ հպատակւում է նահապետին իբրև իւր քաղաքական գլխաւորին, առանց նայելու այն հանգամանքին, որ գուցէ ինքը նրա անմիջական սերունդը չէ։ Իսկ այն դէպքում, եթէ մինը մի նահապետի սերունդ, բնական ազգական լինելով հանդերձ, դուրս է գալիս նրա իշխանութիւնից՝ այնպիսին կոչւում է կոգնատական* (cognatique), *այսինքն բնական կարգի ազգական։*

Digitized by Google

հատուցանել։ Նաև մի որևէ դժբաղդութեան պատճառով, եթէ, մինը անընդունակ է դառնում աշխատելու և կամ մեռնում է՝ հայրը պարտաւոր է հոգալ նրա որդիների, կնոջ մասին։

Սակայն այս բացարձակ իշխանութիւնը բաւականաչափ մեղմանում է, հայրական սիրոյ և գութի զգացումով, և գերդաստանի հայրը երբէք չի ներկայանում որպէս բռնակալ։

Տարիների ընթացքում գերդաստանի հայրը ծերանալով և գործից յետ քաշուելով, հետզհետէ կորցնում է իւր իշխանութիւնը, և որդիներն էլ արդէն չափահաս դառնալով, այլևս նախկին խոնարհութեամբ չեն հպատակւում նրան և նա ստիպուած է լինում ծանրակշիռ խնդիրներում խորհրդակցել սրանց հետ։

Այսպէս տևում է մի առ ժամանակ ևս, և ի վերջոյ նա իւր իշխանութիւնը ստանձնում է իւր աւագ որդուն, վերապահելով իրեն միանգամայն ընդհանուր վերահսկողութիւնը։

Աւագ եղբայրն ևս թէև դարձեալ համարւում է որպէս ամբողջ գերդաստանի ներկայացուցիչ, նրա շահերը շինական ժողովներում, դատարանում պաշտպանող, ամբողջ գոյքի սեփականատէր և գանձապահ, սակայն և այնպէս՝ նրա իշխանութիւնը բաւականաչափ սահմանափակուած է, նա պարտաւոր է փոքրի շատէ լուրջ խնդիրներում խորհրդակցել իւր եղբայրների հետ, հաշիւ տալ գերդաստանի ել և մուտքի մասին։

Գերդաստանի ներքին կառավարութիւնը գտնւում է տատի կամ մօր ձեռքին. նա է հսկում հարսների և աղջիկների վրայ, առանց որի թոյլտուութեան ոչ մի տեղ չեն կարող գնալ, նա է պահում տան բոլոր բարիքը և առանց նրա թոյլտուութեան ոչ ոք իրաւունք չունի մի բան վերցնելու, մանաւանդ որ բոլոր բանալիները նրա մօտ են պահւում։ Նա՛ է շատ անգամ միջնորդ հանդիսանում հարսների և սրանց ամուսինների, որդիների և սրանց հօր՝ գերդաստանի գլխի մէջ։

Գերդաստանի հայրը տիրում է իւր իշխանութիւնով, հեղինակութեամբ, իսկ մայրը իր սիրով ու գթով. հօրից վախենում են, մօրը սիրում, և երբ սէրը չի ազդում,

Digitized by Google

մայրը դիմում է վախի՝ սպառնալով գանգատուել գերդաստանի հօրը։

Սովորաբար գերդաստանի մայրը մարմնացեալ աշխատութիւն և դաստիարակութիւն է ներկայացնում։ Առաւօտուանից մինչև գիշեր շարունակ աշխատելով նա բարի օրինակ է տալիս հարսներին ու աղջիկներին աշխատելու, և իրաւունքով էլ պահանջում է իւր օրինակին հետևելու. միևնոյն ժամանակ հսկում է նրանց աշխատանքի վրայ շարունակ նկատողութիւններ անելով. նա է սովորեցնում նրանց կարել, ձևել, կերակուր եփել, պանիր, իւղ պատրաստել, գորգ, կապերտ գործել և այլն։

Եւ պէտք է ասել, որ բոլոր հարսներն էլ նրան սիրում են, եթէ միայն սա անխտրութեամբ մէկին կամ միւսին փոքր ինչ աւելի սիրելով և նրա կողմը պահելով ամբողջ գերդաստանի խաղաղութիւնը չի խանգարում։

Գերդաստանի մօրն օգնական, և նրա ստոյգ պառաւած կամ մեռած ժամանակ փոխարինող, համարւում է աւագ որդու կինը, չնայելով նոյն իսկ, որ նա հասակով կրտսեր եղբայրների կանանցից փոքր լինի։

Սակայն սրա իշխանութիւնը նոյնքան մեծ չէ, որքան սկեսրոջը, և սա ստիպուած է շատ անգամ աւելի մեղմ կերպով վարուել հարսների, տալերի հետ, ու շատ խնդիրներում դիմել գերդաստանի հօր՝ իւր սկեսրայրի կամ ամուսնու գերիշխանութեան։

Սակայն պէտք է ասել, որ դարևոր սովորութիւնն այնպէս կարգաւորել և բաժանել է իւրաքանչիւր հարսի իրաւունքն ու պարտականութիւնը, նրա աշխատանքի բաժինը, որ թէ սկեսուրը և թէ, մանաւանդ, մեծ հարսը ոչ թէ հրամայողի, աշխատանք բաժանողի, այլ միմիայն վերահսկողի դեր են կատարում։ *)

*) Այսպէս, օրինակ, վաղեմի սովորութեամբ.

Սկեսուրը հաց է թխում, կերակուր եփում և բաժանում, ճախարակ մանում։

Առաջին, աւագ հարսը խմոր է հունցում, ճախարակ մանում,

*Աւագութեան կարգը կայանում է նրանում, որ նախ գերիշխանութիւնն անցնում է գերդաստանի սերնդով և տարիքով աւագ անդամին և երկրորդ ամէն բանի մէջ առաւելութիւնը տրւում է միշտ աւագին։ Այսպէս, օրինակ, երբ գերդաստանի անդամները հաւաքւում են տանը, միշտ աւագութեան կարգով են նստում, օջախի մօտ՝ տան մեծը, սրա մօտ սրա կրտսերը և այլն, հաց ուտելիս էլ նոյն կարգով են նստում և նոյն կարգով է կերակուր բաշխւում։ Նոյն իսկ քնելիս նոյն կարգն է պահպանւում, այնպէս որ, ևթէ օր. միջնակ եղբօր քունը չի տանում, նրանից փոքրերը ստիպուած են այնքան արթուն մնալ՝ մինչև որ նա պառկի։ Երբ մինը ներս է մտնում, նրանից կրտսերներն ոտի են կանգնում և իրենցից բարձր նրան տեղ տալիս: Աւագի մօտ կրտսերը մեծ խոհեմութիւն է համարում լռութիւն պահպանել: Նոյն իսկ աւագի ներկայութեամբ իր կնոջ հետ խօսել, իւր երեխային գրկել ու գգուելը նոյնպէս անպարկեշտութիւն է համարւում:*

---

*կով կթում, սար գնում, ուր պանիր է պատրաստում, խնոցուց իւղը հանում։*

*Երկրորդ և երրորդ հարսներն ալիւր են մաղում, թոնիր վառում, գորգ, կապերտ գործում, կարում, կարկատում, հաց տանում արտը, կալը կալսում, թեզում։*

*Փոքր հարսն՝ առաւօտ շատ վաղ գնում ջուր է բերում, (բայց ոչ հարսնութեան առաջին կէս կամ ամբողջ տարին), սկեսրոջ և սկեսրայրի հանդերձները հագցնում, ձեռներին ջուր ածում, անկողինները հաւաքում, տունն աւելում, կրակ անում, մինը դուրս գնալիս չուստերը առաջը դնում, դուռը բաց անում, կերակուր մատուցանում, սեղանը հաւաքում, բացի իւր ամուսնուց բոլորի տրեխները հանում, ոտները շփում, շաբաթը մի երկու անգամ ջուր տաքացնում, բոլոր տղամարդկանց ոտները լուանում, անկողինները ձգում, սկեսրայրի, սկեսրոջ և մեծ տեգրի հանդերձները հանում, լամպը անցկացնում։*

*15—10 տարեկան աղջիկը ջուր է բերում, գորգ, կապերտ գործում, կալի ցորենը խախալում, աղուն է շինում, քաղհան անում, կար անում։*

*10—6 տարեկան աղջիկը գուլպա է գործում, տունն աւելում, ամանները լուանում, ջուր բերում, իսկ 6—3 տարեկանը կալ է քշում, գառներ և եղ արածացնում գիւղի մօտակայքում.*

Digitized by Google

Միևնոյն աւագութեան կարգը պահպանւում է և՛ կանանց մէջ: Տան տիրուհուն փոխարինում է աւագ հարսը, սըրան էլ սրանից կրտսերը։ Ամէն բանում—թէ ուտելիս, թէ խմելիս, թէ աշխատելիս, թէ նստելիս և թէ նոյն իսկ խօսելիս*) առաջնութիւնը, պատիւը պատկանում է աւագին:

Անհատական կարգը կայանում է նրանում, որ արական սեռը միանգամայն գերակշռում է իգական սեռի վրայ թէ ընտանեկան ու հասարակական դիրքի մէջ և թէ ժառանգական խնդիրներում:

Իգական սեռը մանկութիւնից սկսած մինչև պառաւութիւնը կատարելապէս ստորադրուած է արական սեռին. դեռ աղջիկ ժամանակ նա ստորադրւում է հօրը և եղբայրներին. քոյրը իրաւունք չունի, նոյնիսկ իրենից կրտսեր եղբօր հարուածներին պատասխանել, արդար թէ մեղաւոր, նրա ծնողները միշտ եղբօր կողմն են և նա կարող է միայն իւր լացով յուզել նրանց սիրտը, նրա բողոքը եղբօր դէմ համարեա երբէք 'ի նկատի չի առնւում, որովհետև «մի քոռ տղան օխտը սաղ աղջկանից լաւ է»: Ամուսնացած ժամանակ նա միանգա-

*) Կանանց մէջ յարգանքը արտայայտւում է չխօսկանութեամբ—հարսնութեամբ և այս պատճառով առաջին հարսը 5, իսկ միւսները 8-10 տարի հարսնութիւն են անում սկեսուրի հետ. իսկ սկեսրայրի հետ մինչև մահը։ Միայն մի դէպքում, երբ սկեսուրը մեռած լինի, և սկեսրայրը հիւանդ, խնամքի կարօտ, առաջին հարսը, որ ստանձնած է լինում տան կառավարութիւնը, սկսում է խօսել սկեսրոջ հետ։ Միւս հարսները իրենցից աւագների հետ 1—2 տարի հարսնութիւն են անում, և մինչև իրենցից անմիջապէս աւագի հետ չսկսեն խօսել, նրանից աւագի հետ չեն խօսել։ Մեծ տեգրերի հետ երբէք չեն խօսել, միջնակների հետ 5—10 տարի, իսկ փոքրերի հետ 2—3 տարի յետոյ։ Խօսում են միայն չամուսնացած տալերի հետ, մինչդեռ ամուսնացածների հետ դարձեալ հարսնութիւն են անում։ Միևնոյն լռութիւնը պահպանում են նաև անծանօթ, փոքր 'ի շատէ լաւ հագնուած օտարականին պատահելիս, մինչդեռ վատ հագնուած, աղքատ օտարականի հետ խօսում են.—մի ապացոյց ևս՝ որ չխօսկանութիւնը յարգանքի, ակնածութեան նշան է համարւում։

Սակայն փոխանակ լեզուով, նրանք միմիկայով են յայտնում

Digitized by Google

*մայն ստորադրուած է իւր «գլխաւորը»—ամուսնուն, իսկ այրի ժամանակ կամ տէգրներին և կամ իւր որդիներին։*

*Հասարակական կեանքում ևս նրա դերը չափազանց սահմանափակուած է։ Իրաւունք չունենալով ոչ մի տղամարդի հետ, կամ նրա ներկայութեամբ խօսելու, նա ոչ մի հասարակական գործի մէջ չի մասնակցում. Նոյն իսկ այն դէպքում, երբ մօտիկ ազգական տղամարդիկ չունենալով նա ստիպուած է իւր շահերը պաշտպանելու համար գիւղական դատարանին կամ հասարակական ժողովին դիմել, նրան հալածում է հասարակական կարծիքը, «անզգամ», «աներես» է կոչում, որ այնքան մարդկանց ներկայութեամբ կանգնում խօսում է։*

---

*իրենց միտքը և եթէ այս էլ չի օգնում, այն ժամանակ նրանք ասում են փոքր երեխայի, որ նա ասէ իրենց սասծները և եթէ նա սաստիկ փոքր լինելով չի կարողանում, հարսներն այնքան բարձր են ասում երեխային, որ պարզ լսելի է լինում։*

*Այս չխօսկանութեան մասին հազարաւոր պատմութիւններ, աւանդութիւններ և անեկդոտներ կան, որոնցից յիշեմ մի-մի հատ.—*

*Հագուեցի Օսանց Պետրոսը հարսին ցորենի հորն է իջեցնում, որ սերմացու ցորեն հանէ։ Երբ հանում պրծնում է, սա մոռանալով հարսի գոյութիւնը՝ թողնում է նրան հորի մէջ, ծածկում հորի կափարիչը և գնում դաշտ։ Այստեղ, մի քանի ժամից յետոյ միայն մտաբերում է հարսին և ապսպրում, որ հանեն նրան հորից։ Թեզճ հարսը չհամարձակուելով խօսել սկեսրոջ հետ և կամ յետոյ բղաւել՝ ստիպուած էր եղել մի քանի ժամ մնալ անտանելի, մութ և խոնաւ հորի մէջ։*

*—Նոյ նահապետի ժամանակ, երբ սա տապանն էր շինել տալիս, մի պառաւ հարցրել է Նոյին, թէ Ջրհեղեղը ե՞րբ պիտի լինի։*

*—Երբ հարսը սկեսրոջ հետ խօսի, պատասխանել է Նոյը։*

*Մի առ ժամանակից յետոյ մի օր այս պառաւը հարցնում է իւր հարսին.*

*«Թոնիրը կար չընկա՞ւ (չվառուեց)։*

*Ուր ա թա կար ընկաւ, էնքան փչել եմ, գլուխս տրաքւում ա, պատասխանում է հարսը։*

*Պառաւը սրա պատասխանից հասկանում է, որ Ջրհեղեղի օրը հասել է, ապա թէ ոչ՝ հարսը իւր հետ չէր խօսի. մօտենում է թոնրին, տեսնում է ջուր է դուրս գալիս, վազում է Նոյի մօտ և*

Digitized by Google

*Նա զրկուած է նոյն իսկ ժառանգութեան իրաւունքից, երբ ունի եղբայրներ կամ եղբօրորդիք, իսկ ամուսնու մահից յետոյ նա բացի իր օժիտից, ոչինչ չի ստանում կեսրանց տնից՝ եթէ տղու որդի չունի։*

*Նահապետական գերդաստանը այժմ արագութեամբ կազմալուծւում է և կազմում ընտանիքներ։ Եղբայրները միմեանցից, երբեմն էլ որդիները ծնողներից բաժանւում են և առանձին ապրում։*

*Բաժանման ամենագլխաւոր պատճառները հետևեալներն են.*

*ա. Պարապմունքների տարբերութիւնը, որ շատ անգամ յառաջ է գալիս վարելահողերի սակաւութիւնից։ Գերդաստանի անդամներից մի քանիսը գաղթում են՝ քաղաքներում աշխատելու, ընդունում են այնտեղի գաղափարներն ու սովորութիւնները, իրենց վաստակն ամբողջովին տան մեծին չեն ուղարկում, շատ անգամ ցանկանում են իրենց կնոջը իրենց մօտ տանել, իրենց երեխային ուսման տալ, մինչդեռ գերդաստանը հակառակում է, որովհետև միւս երեխաներին ուսման չէ տուած կամ բոլորին չի կարելի տալ և այլն։*

*Անդամներից մի քանիսն էլ արհեստներ են սովորում, և աւելի վաստակելով քան երկրագործ անդամները, ցանկանում են բաժանուել, իրենց ամբողջ վաստակը իրենք վայելելու։*

*բ. Գերդաստանի անդամների խորթութիւնը. Համահայր կամ համամայր եղբայրները միմեանց հետ չեն կարողանում սիրով ապրել, որովհետև աչառութիւն են նկատում իրենց խորթ հօրից կամ մօրից, ուստի և բաժանւում են։*

*գ. Գերդաստանի անդամներից մինի կամ մի քանիսի վատ վարքը, ծուլութիւնը, խարդախութիւնը, կնոջ անբարո-*

---

*խնդրում, որ իրեն էլ վերցնի տապանի մէջ, սակայն սա մերժում է, ասելով թէ միայն մատաղահասներից պիտի վերցնի։*

*—Օձուն գիւղում մի գիւղացի հարցնում է մի ծանօթ հարսի թէ ինչ է որոնում։*

*Սա ձեռները դնում է ականջներին, կռանում և կամաց գը-ռում է։*

Digitized by Google

յականութիւնը, որ ներքին խռովութիւնների պատճառ են դառնում։

դ. Նոր սերնդի հետ նոր գաղափարներ, նոր սովորութիւններ են թափանցում գերդաստանի մէջ։ Փոքր ի շատէ կրթուած նորահարսը չի ցանկանում երկար տարիներ հարսնութիւն անել—չըխօսել, քողն երեսին միշտ փակուած մնալ, ամուսնուց խորշել, ՚իւր երեխային չը գգուել և նոյն իսկ մինչև կեսուրից հրաման չը ստանայ երեխային ծիծ չը տալ։ Նրա այս նորասիրութիւններն սկեսուրի կողմից իբր լրբութիւն, անզգամութիւն են նկատուում և նախատուում։ Նորահարսը պատասխան է տալիս սկեսրոջը, որով և այն դարեւոր, ստրկութեան մէջ պահող շղթան—լուռ հնազանդութիւնը փշրւում է։ Յառաջ են գալիս կռիւներ՝ բաժանումն։

Բաժանուելիս համարեա բոլորովին ՚ի նկատի չի առնըւում եղբայրների վաստակը։ 20—25 տարի վաստակող քառասուն և հինգ ամեայ եղբայրը հաւասար բաժին է ստանում քսանամեայ եղբօր, կամ 10—20 տարի առաջ վախճանուած եղբօր մի քանի տարեկան երեխայի հետ։ Միմիայն ուտելեղէնը, ցորենը, ալիւրը բաժանում են անդամների թուի համեմատ։

Բաժանումը կատարւում է երկու ժամանակ, ա. հօր կենդանութեան և բ. հօր մահից յետոյ։

Առաջին դէպքում, հօր կենդանութեան ժամանակ՝ որդիներից կամ մինն է բաժանւում հօրից և կամ բոլորը։

Երբ միայն մինն է բաժանւում, հայրը լիազօր է տալու նրան ինչ որ ինքը կամենայ, բայց երբէք աւելի քան նրան կը հասնի։ Նա կարող է բոլորովին զրկել նրան՝ «կինը տայ ձեռքը ճանապարհ ձգէ», ինչպէս արել են Շնողում Մկրտումենց Առաքելին։ Այսպիսի դէպքում համայնքը կարող է միայն մի բանում միջամտել. նա կարող է պահանջել, որ հայրը յանձնէ այդ բաժանուող որդուն այն հողաբաժինը, որ նա ստացել է այդ որդու պատճառով համայնական հողերից։

Հօր մահից յետոյ այս զրկուած եղբայրը նոյն իսկ այդ համայնքի միջամտութեամբ հաւասար բաժին է պահանջում իւր եղբայրներից և ստանում է։ Իսկ եթէ հայրը նրան հասա-

Digitized by Google

նելի բաժինն արդէն տուած է լինում, նա այլես ոչ մի իրաւունք չի ունենում հայրական գոյքի վրայ, այդ բոլորը բաժանւում է անբաժան եղբայրների մէջ։

Եթէ հօր կենդանութեան ժամանակ բոլոր եղբայրներն են կամենում բաժանուիլ, այս դէպքում հայրը այլես անզօր է լինում նրանց զրկելու։ Այսպիսի դէպքեր տեղի են ունենում գլխաւորապէս այնպիսի ժամանակ, երբ հայրն արդէն ծերացած և տան կառավարութիւնից յետ քաշուած է լինում։

Այս դէպքում եղբայրներն են հօրը բաժին տալիս. նրբանք յաճախ մի այգի, մի արտ են յատկացնում նրան, որպէսզի նրա արդիւնքով ապրի, իսկ նրա մահից յետոյ կրկին բաժանում եղբայրների մէջ։ Երբեմն էլ մի գումար են տալիս նրան, որ մի մասը ծախսէ, միւսն էլ թողնի թաղման և հոգեհացի ծախսերը հոգալու համար *)։

Այս գումարը, որ 300—500 րուբլի է լինում, կոչւում է հոգեբաժին։ Երբեմն էլ, եթէ նա դեռ ևս բաւականին առոյգ է, եղբօր հաւասար մասն են տալիս։ Հայրն ընտրում է որդիներից մինին, սովորաբար փոքրին և նրա մօտ ապրում, թողնելով իւր ունեցածը նրան։ Իսկ եթէ առանձին է ապրում, մահից յետոյ եղբայրները կրկին հաւաքւում են թէ թաղման ծախսերը միասին հոգալու, և թէ նրա ունեցածն իրենց մէջ բաժանելու։

Եթէ եղբայրները հօր մահից յետոյ են բաժանւում, նախ ընդհանուր գումարից տալիս են չամուսնացած եղբայրներին այնքան, որքան ծախսել են միւսների հարսանիքին, (ազափանա) ապա մի կով, մի քանի ոչխար յատկացնում են այն եղբօրը, որի մօտ կամենում են ապրել իրենց մայրը մինչև մահ, կամ քոյրերը՝ մինչև ամուսնութիւնը։ Ապա մի ձի կամ մի եզ, մի կամ միքանի ոչխար ու զէնքեր նուէր են տալիս մեծ եղբօրը, ի պատիւ աւագութեան, (մենծահարկ) և յետոյ ամբողջ շարժական և անշարժ կայքը եղբայրների

*) Օրինակ Շնողում Աստուր Տէր Մելիքսեդեկեանին տուել են 300 րուբլի։

թւուի համեմատ բաժիններ անում, ու «ծեղ» ձգում—(վիճակ հանում) *)։ Սովորաբար ցորենը, ալիւրը և միւս ուտելեղէնները ոչ թէ եղբայրների՝ այլ բոլոր անդամների թւուի համեմատ են բաժանում:

Սովորաբար հայրական տունը թողնում են աւագ եղբօրը. երբեմն էլ, եթէ մայրը կամենում է ամենափոքրի հետ ապրել՝ սրան:

Ջրաղացն ու ձիթահանքը չեն բաժանում, այլ պահում են իբրև ընդհանուր սեպհականութիւն, հերթով կառավարում են և արդիւնքը հաւասար բաժանում:

Սովորաբար մօր բերած օժիտը տալիս են չամուսնացած աղջկան, իսկ եթէ բոլորն արդէն ամուսնացած են, միւս իրերի հետ այս ևս բաժանւում է եղբայրների մէջ:

Համահայր որդիները հաւասար մասեր ստանալով հայրական կարողութիւնից, իւրաքանչիւրը ժառանգում է իւր հարազատ մօր օժիտը:

Պէտք է ասել, որ ժողովուրդը բաժանումը մեղք է համարում, որովհետև «քանդում են հայրական սուրբ օջախը»: Ուստի և երբ բաժանումից յետոյ մինի որդին կամ կենդանին մեռնում է, ասում են. «բաժանքը նրա վրայ ընկաւ»:

Բաժանուելու ժամանակ շատ մեծ անբաւականութիւններ են ծագում. ամէն մինը աշխատում է լաւը, մեծն ստանալ. եղել են դէպքեր, որ նոյն իսկ հաւերը կշռել և այնպէս են բաժանել**): Այս անբաւականութիւններին վերջ դնելու համար ընտրում են բաժանարարներ, որոնց որոշումներին խոստանում են հպատակուել։

---

*) «Ծեղ»ը այսպէս են ձգում.—ամէն մինը մի ծեղ՝ յարդի, փայտի, քարի կտոր՝ տալիս են մի երեխայի կամ մի անգիտակ մարդու, և խնդրում, որ այդ ծեղերը ձգէ բաժինների վրայ։ Ում ծեղն որ ինչ բաժնի վրայ ընկնի, այն նրան է բաժին ընկնում։

**) Այստեղից է յառաջացել Շնողեցի «Հաւ կշռողենց» մականունը։

Digitized by Google

## ԸՆՏԱՆԻՔ

Ընտանիքը դուրս գալով գերդաստանից դեռ մի առ ժամանակ պահպանում է վերջինիս յատուկ նահապետական սովորութիւններն ու հայեացքները: Ամուսինը իր արու որդիների հետ առանձին, կինը իւր աղջիկների հետ առանձին և միշտ հօրից յետոյ է ճաշում: Ամուսինը չի խորհրդակցում կնոջ հետ, մի առ ժամանակ քաշւում է պզուելու իւր երեխաներին, պահանջում է անսահման հնազանդութիւն իւր կնոջից և երեխաներից: Բայց կարճ միջոցից յետոյ այս բոլորը փոխւում են: Կինը ամուսնու, աղջիկները եղբայրների ու հօր հետ սկսում են հացի նստել: Ամուսինը թոյլ է տալիս կնոջը խառնուելու իւր գործերին, խորհրդակցելու իւր հետ։ Սակայն և այնպէս՝ օտարների ներկայութեամբ դարձեալ նահապետական կարգերն են յառաջ գալիս: Ընտանիքի մէջ մանկանց դաստիարակութեան վրայ աւելի մեծ խնամք է տարւում: Մինչդեռ գերդաստանի մէջ որդուն գգուելը, նրան գրկելը, համբուրելը ամօթ է համարւում, այստեղ կատարելապէս թոյլ է տրւում, և որդիները վայելելով ծնողների սէրն ու գգուանքը՝ համեմատաբար աւելի քնքոյշ և աւելի զգայուն են լինում։

Կինը դառնալով ամուսնու խորհրդատուն, գիտենալով նրա նիւթական դրութիւնը՝ աւելի խնայող և աւելի պակաս պահանջող է լինում:

Ամուսինն էլ իւր անհատական շահի պատճառով աւելի աշխատասէր, աւելի հոգատար է դառնում։ Գերդաստանի մէջ տիրապետող ծուլութիւնը, գործից փախուստ տալը, յոյսը միւսների վրայ դնելով ժամանակ անցկացնելը տեղի չեն ունենում ընտանիքի մէջ։

Իսկ տեղերկնիկների միմեանց դէմ լարած խարդաւանքները, յարատև, ստոր բամբասանքը, յաճախակի պատահող կռիւները, տանից և միմեանցից իրար գողանալը, ստախօսութիւնն ու զրպարտութիւնը եթէ ոչ բոլորովին՝ գոնէ մեծ մասամբ վերանում են։

Digitized by Google

Ընտանիքի մի առաւելութիւնն էլ այն է՝ որ չի նպաստում գաղթականութեան, դեռ ընդհակառակը արգելք է դառնում։ Գերդաստանի մէջ հեշտութեամբ թողնում են կնոջը և գնում օտարութեան, համոզուած լինելով, որ գերդաստանը կը պահէ, կը կերակրէ նրան, մայրը կը հսկէ նրա բարոյականութեան վրայ, եղբայրները կը պաշտպանեն նրան, այնինչ ընտանիքի մէջ ամուսնու հեռանալով կինը մնում է միայն, ինքնակամ, անտէր, անպաշտպան և ամենայն տեսակ հրապոյրի ենթակայ, հետևապէս և չի կարելի նրան միայն թողնել։ Ես ներկայ եղայ մի երիտասարդի յուղարկաւորութեան Օձունում։ Թշուառը պարտաւոր էր զինուորական ծառայութիւն կատարել, բայց որովհետև ամուսնացած էր և չէր վստահանում կնոջը մէն մենակ թողնել՝ ամէն միջոցի դիմել էր, որ զինուորագրութիւնից ազատուի. շատ անգամ զանազան պատրուակներով կարողացել էր գալ, կնոջ դրութիւնը իմանալու։ Վերջին անգամն էլ, երբ հիւանդ ձևանալով կարողացել էր գիւղ վերադառնալ, մի տեսակ դեղ էր խմել, որպէսզի թոքերը փչացնէ և այսպիսով ազատուի զինուորական ծառայութիւնից և վերադառնայ տուն. սակայն նրա այդ անխոհեմ քայլը գերեզման իջեցրեց նրան։ Դժբաղդաբար ստատիստիքական տեղեկութիւններ չկան, որ այս երևոյթն աւելի հիմնաւոր կերպով կարելի լինի ապացուցանել։

Ունենալով այս առաւելութիւնները, ընտանիքը, սակայն, ունի մի քանի պակասութիւններ գերդաստանի համեմատութեամբ։ Փոխադարձ օգնութիւնը, փոխադարձ խնամքն ու կարեկցութիւնը, որ գերդաստանի մէջ նոյն իսկ ծուլութեան և կեղծիքի են տանում, այստեղ բաւականաչափ թոյլ են։ Մինչդեռ գերդաստանի մէջ այրիներն ու որբերն առանց մեծամեծ զրկանքների կարողանում են ապրել, ընտանիքի մէջ հօր, միակ աշխատաւորի, մահից յետոյ քաղցն ու անբարոյականութիւնն սկսում են բուն դնել։

Եւ մինչդեռ գերդաստանի մէջ հայրենական օջախը, որ Լոռեցիների համար ևս սրբութիւն է համարւում, բազմաթիւ շառաւիղների շնորհիւ կանգուն է մնում, ընտանիքի մէջ շատ

չուտ կարող է ոչնչանալ: Ընդհանրապէս զաւակ և մասնաւորապէս՝ արու զաւակ չունեցող ընտանիքը մեծապէս վշտանում է, որ իւր օջախը պիտի հանգչի, որ իւր գերեզմանն օրհնող չպիտի լինի, որ իւր ընտանեկան անունն այլ եւս ոչ ոք չպիտի կրէ։ Այս դժբաղդութիւնը փոքր ինչ ամոքելու համար դիմում են տնփեսայութեան և որդեգրութեան։ Եթէ մի ընտանիք միայն մի կամ միքանի աղջիկներ ունի և ոչ արու զաւակ, տնփեսայ է բերում։ Աղջիկներից մինին ամուսնացնում է մի այնպիսի երիտասարդի հետ, որ համաձայնում է բաժանուել իւր ընտանիքից կամ գերդաստանից, գալ բնակիլ իրանց տանը, կրել աներանց ազգանունը և ժառանգել նրանց բոլոր ունեցածը*)։

Իսկ եթէ ոչ մի զաւակ չեն ունենում, այն ժամանակ մինին, սովորաբար ազգական ժառանգին, որդեգրում են, նրան երեք անգամ անց են կացնում կնոջ շապկի միջով, իբր թէ նրանից է ծնւում, որդի են անուանում ու իրենց ազգանունը, իրենց շարժական և անշարժ կայքի հետ նրան տալիս։

Որդեգրելիս առաւելութիւնը տալիս են արու ժառանգին, իսկ եթէ սա շատ հեռու ազգական է, այն ժամանակ ամենամօտիկ աղջիկ ազգականն են որդեգրում և ապա տնփեսայ բերում։ Շատ հազիւ է պատահում, որ ոչ ազգականին որդեգրէին, կամ որդեգրածին իրենց որդու հետ ամուսնացնէին։

Ընտանիքի, ինչպէս և գերդաստանի մէջ դրեթէ իբր անդամ ընդունւում են *ողջումաքիր* և *ողջումախպէր* լինողները, որոնք միմեանց քիրացու, աղբերացու են կոչւում։

Ողջումաքուր կամ ողջումեղբայր են դառնում հետեւեալ դէպքերում. 1) երբ մինի քոյրը կամ եղբայրը մեռած լինելով նրա նմանին նրա սիրով սիրում են։ 2) Երբ քոյր կամ եղ-

---

*) Այժմ ոմանք, ինչպէս օր. Շնողեցի Առաքելեանի երկրորդ փեսան, օգտուելով ռուսաց օրէնքներից, աներոջ մահից յետոյ նրա բոլոր, շարժական և անշարժ գոյքը չեն թողնում տնփեսային, այլ իրենք, միւս փեսաներն էլ մաս են պահանջում։ Ուստի և այս վաղեմի սովորութիւնը պահպանել ցանկացողները կտակով ամբողջ կայքը տնփեսայի վրայ են հաստատում։

Digitized by Google

թայր բոլորովին չունենալով, Նրանց կարօտը մի ուրիշից են առնում։ 3). Երբ միմեանց վրայ սիրահարուած լինելով՝ չեն կարողանում ամուսնանալ։ 4). Երբ մինը անյաջող փորձերից յետ համոզւում է, որ չի կարող ձեռք ձգել մինի կնոջը՝ այլևս կասկածանքների տեղիք չտալու համար ողջումեղբայր է դառնում Նրան։

Ողջումաքոյր, ողջումեղբայր լինում են զատկին. կինն ու տղամարդը միմեանց ողջոյն են տալիս, և խնդրում են քահանային, որ իրենց գլխների վրայ Աւետարան կարդայ։ Այնուհետև Նրանք միմեանց Նկատում են որպէս քոյր և եղբայր ու սիրում միմեանց պլատոնական սիրով։ Շատ վաղ թոյլ չէր տրւում, որ մինչև եօթներորդ սերունդը միմեանց հետ խնամութիւն անել, սակայն այժմ միայն սրանց մէջ է ամուսնութիւնն արգելւում։*)

*) Աւանդաբար պատմւում է, թէ քուր ու աղբերութիւնը կամ ողջումաքուր —ողջումեղբայր լինելը մնացել է մի ջրաղացպանից, որին տեսութեան է եկել Մարկոս ճգնաւորը, երբ յիսուն տարի ճգնելուց յետոյ Աստծուց լսել է, թէ յիսուն տարի էլ որ ճգնես՝ այսինչ ջրաղացպանին հազիւ հաւասարուիս։

Գալով այս ջրաղացպանի մօտ Մարկոս ճգնաւորը երեք անգամ ողջոյն է տուել, սակայն սա ողջոյնն առել է միայն այն ժամանակ, երբ դանը ածել պրծել է. այսինքն երբ մինի ալիւրը վերցրել է ալրատնից, որ մի ուրիշինի հետ չխառնուի։

Մարկոս ճգնաւորը հարցրել է ջրաղացպանին, թէ ինչու այդպէս ուշ առաւ իւր ողջոյնը, սա էլ պատասխանել է, թէ սաստիկ զբաղուած էր, խէրն ու շառն էր բաժանում։

Ջրաղացպանը լաւ հիւրասիրել է ճգնաւորին և գիշերը պառկեցրել իրենց միակ անկողնում, իւր կնոջ կողքին։

Մէքիչ յետոյ յիսուն տարի ճգնած Մարկոս ճգնաւորիս միտքը փոխւում է, սկսում է գայթակղուիլ, տեսնում է իրենց վերև կախուած քթոցից ջուր է կաթկաթում։ Ջրաղացպանը իսկոյն վեր է կացնում սրան և իւր կնոջը, ասելով, թէ արդէն լուսացել է։ Երբ վեր են կենում, ճգնաւորը հարցնում է, թէ այն ինչ ջրով լի քթոց է, որ կախուած է անկողնի վրայ։

Ջրաղացպանը պատմում է, թէ ինքը երիտասարդ ժամանակ մի աղբրի մօտով անցնելիս մի աղջկայ ասել է թէ ա՜յ քիր միքիչ



Digitized by Google

*Ապօրինի ընտանիք.* Սրանից 25-30 տարի առաջ Լօռում ևս հասարակութիւնը ո՛չ միայն վատաբանում, այլ և խիստ կերպով պատժում էր շնութեան մէջ բռնուած տղամարդին և մանաւանդ կնոջը. այսպէս օր. Օձունում երկու տղամարդի գլխիվայր կապել են ծառերից և ամբողջ հասարակութիւնը եկել թքել է սրանց երեսին։ Միևնոյն գիւղում մի ուրիշ երիտասարդի հրապարակում սաստիկ ծեծելուց յետոյ՝ երեսին մուր են քսել։ Ճնող գիւղում, շնացող կնոջ երեսին մուր են քսել, հակառակ կերպով նստացրել իշի վրայ, պոչը ձեռը տուել և ստիպել մեղսակցին ման ածել նրան ամբողջ գիւղը։ Պատահողը թքել է երկուսի էլ երեսին։

Այժմ այսպիսի պատիժներ էլ չեն տրւում, ոչ էլ սաստիկ վատաբանում, այնպէս որ ո՛չ միայն շնութիւնը, այլ և ապօրինի կնապահութիւնը հետզհետէ աճում է:

Հին սերունդը այժմ էլ ապօրինի կին պահողին մատաղից բաժին չի հանում, ոչ էլ նրա արած մատաղից ուտում, մանաւանդ որ քահանան էլ չի օրհնում նրա մատաղի աղը։ Հարսանիքներին նրան չեն հրաւիրում: Քահանան նրան Սըրբութիւն չի տալիս, տունը չի օրհնում, մեռնելիս թաղման կարգը վերան չի կատարում, նոյն իսկ հասարակական գերեզմանատանը չեն թաղում։ Դսեղում մինչև անգամ մինի դիակը դռնից չեն հանել, այլ պատը ճեղքել են և այնտեղից

---

Ջուր տուր խմեմ։ Նա էլ պատասխանել է թէ «առ, ախպէր»։ Մի առ ժամանակից յետոյ, երբ Ջրաղացպանի հայրը սրա համար, առանց իրեն հարցնելու կամ ցոյց տալու, կին է ուզել և պսակել, սրանք առագաստի գիշերը միմեանց ճանաչել են, մտաբերել են, որ միմեանց քոյր ու եղբայր են անուանել, ուստի և որոշել են թէև պսակուած, այնուամենայնիւ քոյր ու եղբօր պէս ապրել։ Թթոցի մէջ էլ ջուր են ածել և իրենց անկողնի վերև քաշ տուել, որպէսզի եթէ մինի միտքը փոխուի, ջուրը կաթի նրա գլխին և դարձի բերէ։

Մարկոս ճգնաւորը ամօթհար հեռացել է, մտածելով, որ յիրաւի, յիսուն տարի էլ պիտի ճգնի, որ այդ Ջրաղացպանին հաւասարուի։

դուրս տարել.—մի պատիժ՝ որին ենթարկում են խոլթլամիշ եղողներին։

Սակայն նոյն իսկ հին սերունդը շատ աւելի ներողամըտութեամբ է վերաբերւում ապօրինի կնապահութեան, երբ այդ տեղի է ունենում հետեւեալ երկու դէպքում.

1)· Երբ մօտիկ ազգականներ սիրելով միմեանց չեն արժանանում պսակի թոյլտւութեան և ստիպւում են անպսակ ապրել։

2). Երբ մինի օրինաւոր կինը ամուլ է և սա ցանկանալով սերունդ ունենալ՝ ապրում է մի ուրիշ կնոջ հետ։

Առաջի դէպքում ժողովուրդը, գոնէ նրա մի մասը, իւր համակրութիւնն արտայայտում է այդ զոյգին, մասնակցելով նրա հարսանիքին։ Սրանք փողհարների առաջնորդութեամբ օրը ցերեկով դնում են եկեղեցու դուռը համբուրում, իբր թէ պսակւում են և ապա նոյն հանդիսով, փողահարութեամբ և ուրախութեան աղաղակներով վերադառնում տուն, ճաշով հիւրասիրում հասարակութեանը։

Այս հարսանիքը առանց պսակի—գիւղական է համարւում, որ այդ զոյգը միմեանց հանդիսաւոր կերպով խօսք են տալիս միասին ամուսնական կեանք վարելու, և եթէ մինը դրժում է իւր խոստումը, կամ անհաւատարմութեան մէջ բռնւում, նոյնքան դատապարտւում է, որքան կը դատապարտուէր, եթէ եկեղեցական պսակին էլ արժանացած լինէր։

Երկրորդ դէպքում, այսինքն երբ օրինաւոր կին ունենալով մի ուրիշին են պահում, չկարողանալով մի այսպիսի հրապարակական խոստումն անել, դիմում են գրաւոր պայմանագրի, որի մէջ տղամարդը խոստանում է որ պահելու է ապօրինի կնոջը մինչև նրա մահը, և եթէ իւր օրինաւոր կինը վախճանուի՝ ամուսնանալու է նրա հետ։ Միևնոյն ժամանակ երկու կողմից տուգանք է նշանակւում պայմանը չկատարողների համար։

Այսպիսի պայմանագրութիւնից յետոյ, օրինաւոր կինը կամ հեռանում է հօրանց տուն և հոգևոր իշխանութիւնից ապահարզան խնդրում, կամ անձնասպանութիւն է գործում,

Digitized by Google

և կամ, ծայրայեղ գէպքում, եթէ ապրուստի ոչ մի միջոց չունի՝ և չինական դատարանի միջոցով էլ ոչինչ չի կարողանում ստանալ ամուսնուց, այդ արտացունք թափելով ապրում է պօրինի կնոջ հետ միասին։

Դժբաղդաբար ինձ չյաջողուեց այսպիսի մի պայմանագիր ձեռք բերել Լօռում, թէև կան, ուստի և ես այստեղ նոյնութեամբ առաջ եմ բերում մի այդպիսի պայմանագիր՝ որ ձեռք եմ բերել Գանձակի գաւառում, Գետաշէն գիւղում, արժ. Սարգիս քահանայի աջակցութեամբ.

Բայմանաթուխթ

1897 ամի մայիսի 21-ին։

Ես ներքոյ անվանեալ յէլիսաբէթպօլու կավառի 'ի գօղն Գէտաշէնու բնակիչ Գրիգոր Ղահրմանովս տալիս էմ իմ հօժար կամովս իմ թոռ Մարգարիդ Յարութինովին քեզ Բրեջերեցի Բէկլար Աւանէսովիդ գոնոջ տեղ, որ դանէս քեզ մօտ պահես մինչև Մարգարիդ Յարութինովի մահն. եթէ իցէ որ մէկ բակասութին բաղայի մեր մէջ ես Բէկլար Օվանէսօվս բարդաւորվում եմ որ 100 մնթ. տալ Յարութինովիդ և թէ Աստուած տայ երախայք լինի այն ժամանակը բեդկէ այս բայմանաթուղթը ոչնչանայ մենք մնանք սրրութեամբ մինչև մեր երկուսիս մահը ինչպէս որ նա ինձ գին ես նրան մարդ. թէ իմ աւանեսովիս առաջի գինը ոխջանուի ես պարտ եմ մարքարիտին հետ պսակվիլ և թէ մարքարիդ յարութինօվն մէռնի ես աւանեսովս բայղէմ իմ խարջովս թաղեմ և մէկ 30 մնթանոց քար քաշեմ և էլ մի և նոյն բէդկէ ոչնչանայ այս բայմանաթուղթը, որ և ստորագրեմք

Որովհետև պէկլար օվանէսովն կիր ոչ գիտէր խնդրեաց դիս նորայ տեղ ձերք տրի ջհան Աւաքով։

Որովհետև Գրիգոր ղահրամանովը գիր ոչ գիտէր խնդրանօք ձեռք դրի յարութին միրզայօվս։

Վկայ եմ Եղիշէ Պետրոսեան Զաւատեանցս։

Վկայ եմ Համբարձում Բիշլուբէկեանցս։

Վկայ եմ Յարութին Սարիօվս, որովհետև սարիօվը գիր ոչ գիտէր խնդրեաց ինձ ձեռք դրի Համբարձում Բեշլուբէկեանցս։

Digitized by Google

Վկայ եմ Ներսէս Յ. Գրիգորեանցս։

Բամոշնիկ Յարութիւն Գրիգորով Տ. Կ.

Որովհետև Բրջրեցի սուդիայ Ղահրման Մարքարովը գիր ոչ գիտէր սորա տեղ ստորագրեցի Ներսէս Յ. Գրիգորեանց Տ. Կ.

Ուղիղ է ընդ խսկականիս՝ Գէտաշէնու ս. Աստուածածնայ եկեղեցւոյ միաբան Սարգիս քահանայ Այքերեանց։

'Ի 12-ին յուլիսի 1899 ամի.
'Ի Գիւղն Գետաշէն (Ձայքենդ)։

## ՄԱՔՐԱՍԻՐՈՒԹԻՒՆ

Ժողովրդի մաքրասիրութիւնը շատ աննախանձելի դրութեան մէջ է. տղամարդիկ, նոյն իսկ կանայք, մեծ մասամբ միմիայն մի փոխնորդ սպիտակեղէն ունին, իսկ փոքր ինչ չքաւորները դրանից էլ զուրկ են, այնպէս որ երբ փոխելու ստիպուած են լինում լուանալ տալու՝ տղամարդիկ կրծքի վրայ փռում են մի թաշկինակ, որի ծայրերը ծոծրակի մօտ կապելով՝ վրայից հագնում են արխալուղը և այդպէս մնում մինչև որ շապիկը լուացւում և չորանում է. իսկ վարտիկը, որ մանաւանդ ամառը չեն էլ հագնում, առանձին նեղութիւն չի պատճառում. կարող են նոյն իսկ մի քանի օր առանց նրան անցկացնել։

Սակայն չարաճճի միջատները չեն բաւականանում միայն սպիտակեղէնի մէջ բուն դնելով, նրանք տարածւում են նաև արխալուղի, չուխի և մանաւանդ փափախի մէջ, և շատ անգամ ճանապարհորդութիւն են կատարում գլխից դէպի մարմնի միւս մասերը, երբ նկատւում են կողմնակի անձնաւորութիւններից և բռնւում։ Գիւղացին դէպի այդ «ամլուկ զառ» (ոջիլ) և «ժռչկան ուլը» (լու) այնքան էլ խստութեամբ չի վերաբերւում, որովհետև ցերեկը խելքը աշխատանքի է տըւած, իսկ գիշերը այնպէս յոգնած ընկնում է քնելու, որ ոչ թէ այդ թոյլ արարածները, այլ և եթէ շուն կծի, չի իմանալ։ Անտանելին միայն այն ժամանակն է, երբ գիւղացին

Digitized by Google

անգործ, հանդիստ է՝ այս ժամանակ արդէն դրանց տանել չի կարողանում, և ահա փողոցում, արևի տակ նստած անգործ գիւղացին, ահագին փափախը ձեռին այս ու այն կողմ է դարձնում և այնպէս ստուգութեամբ թելի և ցուցամատի մէջ սեղմում, որ հետքն անգամ չի մնում. յետոյ քանդում է արխալուղի կուրծքը և մէկ մէկ բռնելով դնում բութ մատի եղունգի վրայ, միւս բթի եղունգով ճնշում։ Սակայն այսպէս կէնտ կէնտ բանիխմն սպանէ, դնում է տուն, հանդերձները հանում և մշմեղած (կիսով չափ հանգած) թոնրի մէջ թափ տալիս, մեծ ու պստիկն այրում, խորովում։ Այս կոտորածից զրաւուած պառաւ տատն ու մեծ հարսը դնում են գլխները փոքր հարսների գիրկը ու սրանք սկսում են «բթուել»:

Քիչ չի պատահում, որ արիւնոտ եղունգները սրբելու համար՝ լիզէին և կրծքին քսէին:

Սովորաբար ձմեռը՝ ամիսը մի անգամ, իսկ գարունը՝ մէկ կալը սկսելիս, մէկ էլ կալը վերջացնելիս (աւրեմն աշնանը) են լուացք անում։ Այն էլ ամէն անգամին 10—20 կտոր հագիւ են լուանում։

Չորեքշաբթի, ուրբաթ և կիրակի օրերը լուացք չեն անում, մեղք է։ Լուացք անելիս թրջում են, սապոնում և պարզաջրում, ոչ թէ բոլոր կտորները միաժամանակ, այլ մէկ մէկ, այսպէս՝ վերցնում են մի շոր, թրջում տաք ջրի մէջ, յետոյ ջրով լի կաթսայի մէջ մոխիր ածում, քիչ եփ տալիս, քամում, սա կոչւում է բ ո վ ա (մոխրաջուր) ապա այս մոխրաջրից մի քիչ ածում են տաշտակի [1]) մէջ, թրջում, մի քիչ սապոն քսում, յետոյ այս ջուրը թափում, նորից մի քիչ մոխրաջուր լցնում, կրկին սապոնում. ջուրը թափում և ապա գոլ կամ սառն ջրում պարզաջրում ու փռում։ Յետոյ վերցնում մի ուրիշ շոր և նոյն կերպ լուանում։

Սպիտակեղէնը հարթելու սովորութիւնը նոր նոր է մտնում. Օձուն գիւղում միմիայն հինգ հատ հարթիչ (ութօ) կայ։

---

*) Ժողովուրդը տաշտակ անունը տալիս է լուացքի, իսկ տաշտ հացի տաշտին։

Digitized by Google

*Բաղանիք*.— Հայաբնակ ոչ մի գիւղում, և նոյն իսկ գաւառի կենտրոն Շուլավէրում չկայ ոչ հասարակական և ոչ մասնաւոր բաղանիք. միայն Ջալալօղլում, այն էլ ռուսական մասում, կայ մինը, որից օգտուողներն այնքան սակաւաթիւ են, որ կարիք չի զգացւում ամէն օր բանացնելու, այլ շաբաթը միայն երկու կամ երեք օր։

Ընդհանրապէս թէ կանայք և թէ տղամարդիկ լողանում են, երբ կամենում են հաղորդութիւն առնել, և երբ տկարանում են։ Գիւղացիները լողանալը ամէն հիւանդութեան բուժիչ են համարում, և հէնց որ մինը հիւանդանում է, հոգատար տատը կամ մայրը կաթսայով ջուր է տաքացնում, տաշտակը դնում, մի ափսէի մէջ մի քանի կրակ ածում, խունկ ձգում վերան, խաչակնքելով ու աղօթելով խունկը ծխում, և ապա տկարին նստեցնում տաշտի մէջ, տաք տաք ջուրը գլխին ածում, լողացնում, հանում անկողնում պառկեցնում և քրտնացնում։

Սակայն հայ կինը ունի մի գեղեցիկ սովորութիւն, որի շնորհիւ պահպանւում են նրա մազերը. այդ այն է, որ նա ամենայն շաբաթ անշուշտ լուանում է իր և իր փոքրիկների գլուխները, ոչ միայն սապոնով, այլ և երբեմն՝ մածունով կամ սիզուկով կամ ձուի դեղնուցքով և կամ քացախով, որ մազերը փափկին։

Գլխի թեփն (քերքէշ) էլ կտրելու համար մոխրաջուր (բուլա) են պատրաստում, քամում, գլխին ածում։

Նորահարս կամ նորատի աղջիկ ունեցող գերդաստաններում ամէն երեկոյ կամ օրամէջ լուացւում են բոլոր տղամարդկանց, սկեսրոջ և մեծ հարսի ոտները։ Նորահարսը ջուր է տաքացնում, չարղաթը երեսին ձգած, փոքրիկ տաշտակով մօտենում է սկեսրայրին, չոքում նրա առաջ, կեղտոտ, հոտած տրեխները արձակում, նախ աջ և ապա ձախ ոտը դնում տաշտակի մէջ, գոլ ջրով, առանց սապոնի լուանում, համբուրում, և ապա անցնում մեծ տեգոր և միւսների ոտները լուանալու։ Եթէ տանը հիւր է պատահում, այդ բաղդին նա էլ է արժանանում։ Շատ հազիւ է պատահում, որ հիւրը նը-

ուէր տայ ոտը լուացող հարսին, փոքր ի շատէ միջոց ունեցող գերդաստանը այդ վիրաւորանք է համարում։

Դիտակիրթ ժողովուրդների պէս Լոռեցի կինն էլ աւելի մեծ ուշադրութիւն է դարձնում արտաքին պարդարանքների քան ներքին մաքրութեանը։ Նրա օժիտի մէջ մի զոյգ սպիտակեղէնի հետ դրուած է լինում արծաթեայ քամար, արծաթեայ թաս հազարփիշեան [1]), ապարանջան և այլն։ Կեղտոտ շապկի վրայ, ծոցում, շատ անգամ մանիշակի, սուսամբարի և վարդի փնջիկներ են շարում, որպէսզի անուշահոտութիւն բուրեն։

Միևնոյն ծաղիկները երեսի երկու կողմը պատող պղնձի տակն էլ են ապաստանում ամուսնու հոտոտելիքը շոյելու։

Երբեմն էլ մեխակաջուրը[2]) անուշ հոտ է պարգևում առաւելապէս նորահարսի ամբողջ մարմնին։

Մի գունտ խմորի վրայ շարուելով փափկացած չոր մեխակը թելի վերայ անցկացրած ոչ միայն զարդարում է նորատի աղջկայ կամ հարսի շատ անգամ կեղտոտ վիզը, այլ և անուշահոտութիւն բուրում։ Այս մեխակի շարքն միանում են շատ անգամ և հուլունքների շարաններ։ Իսկ աչքահուլունքները մազերի հիւսերի ծայրերին ամրանալով պահպանում են նրանց չար աչքերի ազդեցութիւնից։

Մեր «պոմադը» փոխարինւում է կովի իւղով, որով օծում են ունքերն ու կաւիրները, իսկ «սիւրման» արտևանունքին և ունքերին սև գոյն է տալիս, աւելի հրապուրիչ դարձնելու համար։

Հինան, որ քացախով կամ գինով շախազում և մի օր պահելուց յետ դնում են գլխներին ու ձեռներին ու մի օրից յետոյ լուանում, շէկ գոյն է տալիս պառաւների սպիտակ մազերին և գեղեցկացնում հարսերին ու աղջիկներին։ Իսկ սրանք դրպաններում փոքրիկ հայելիներ են պահում, շուտ շուտ հանում և մազերը կոկում են։

---

1) Գինի խմելու աման, շերեփի ձևով։

2) Զորացրած միխակը տաք ջրի մէջ ենածում և ծածկած մի օր պահում. ապա ածում նորահարսի վրայ, երբ արդէն բոլորովին լողացած է լինում։

## ԿԵՐԱԿՈՒՐ ԵՒ ԽՄԻՉՔ

*Լոռեցիների թէ սննդի նիւթերը, թէ ուտելու եղանակը և թէ ժամանակամիջոցները միանգամայն նման լինելով Գանձակի գաւառի գիւղացիներին, որ բաւական մանրամասն արդէն նկարագրել եմ, չեմ ուզում այստեղ նորից մի առ մի կրկնել։ Այստեղ ևս սննդի գլխաւոր նիւթը կազմում են բուսեղէնն ու մրգեղէնը, ապա կաթնեղէնը և քիչ մասով մսեղէնն ու ձկնեղէնը։ Խըմիչքներից ամենից աւելի տարածուած է օղին, մանաւանդ Օձուն, Կուրթան և Ծաթեր գիւղերում։ Թէյի գործածութիւնը հետըզհետէ ընդհանրանում է։*

*Այստեղ ևս տղամարդիկ առանձին, կանայք առանձին են ճաշում։ Օրը չորս անգամ հաց են ուտում՝ առաւօտեան, կէս օրին, ժամը չորսին, և երեկոյեան։ Խմբական ճաշկերոյթը լինում է երեկոյեան, մինչդեռ միւս ժամանակներում ով երբ կամենում է։*

## ԲՈՒՍԵՂԷՆՆԵՐ

*Ալդալ.—Եփում են միայն ճայլաղներում։ Ալիւրը սերուցքով հունցում են, գնդում, երկար գլանաձև բաց անում, յետոյ մի վերշոկաչափ կտրատում են, մի քիչ տափակացնում, նաշխում և թաւի մէջ իւղում տապակում։*

*Բլիշի.—Նոյն ակղակի խմորից բաց են անում կլոր, 3 վերշոկ տրամագծով, յետոյ մատնոցով երեսը նախշում և ապա հալած իւղի մէջ ձգելով տապակում։*

*Ձեթով բլիշի.—Թխում են հասարակ խմորից նոյն կերպ, միայն ձէթի մէջ։*

*Ծմբուռ.—Տաք հացը բրդում են անհալ իւղի մէջ, աղ ցանում, ճմլում և ուտում։*

*Փթուկ.—Առաւելապէս պատրաստում են ծերունիների համար։ Եռացրած ջրի մէջ կոտորած սոխ և աղ են ածում և մի քիչ յետոյ աւելացնում են ընձի մեծութեան խմորի գնդակիկներ, որ պատրաստում են մի սկուտեղի մէջ մաղած ալիւրի վրայ սառը ջուր շաղ տալով և մատներով տրորելով։ Ուտիսին փթուկի մէջ մի քիչ իւղ են լցնում, իսկ պասին՝ ձէթ և մանրած ընկոյզ։*

*Հալուայ.—Առաւելապէս նշանդրէքի համար են պատրաստում։ Իւղը ղաղում են, վերան մաղած ալիւր ածում և խառնում, և երբ կարմրում է՝ մի քիչ էլ մեղր են աւելացնում և կրկին*

*խառնում, մինչև որ պնդանում է։ Ապա լցնում են փոքրիկ սկուտեղների մէջ, երեսը հարթում, գդալի ծայրով զանազան նախշեր անում, մի կտոր շաքար խրում մէջ տեղում և չամիչներ խաչաձև շարում։*

*Սաջարասի.—Այս խմորեղէնը գլխաւորապէս պատրաստում են եայլաներում, ուր խոհանոցի յարմարութիւններ չը կան։ Խմորը սերուցքով (րաժան) հունցում են, առանց ջուր և խաշ աւելացնելու, յետոյ կամ ուղղակի կլոր ձև տալիս, 3/4 արշին տրամագծով և մօտ մի վերշոկ հաստութեան, և կամ գնդում են, բարակ, նոյն մեծութեան բաց անում, երեսին իւղ քսում, և այսպէս 5-6 հատ միմեանց վրայ դարսում, ապա թէ այսպէս և թէ առաջի կերպ պատրաստածի երեսը դանակով նախշում, եզրերին իւղ քսում, դնում մի սաջի մէջ, մի ուրիշով ծածկում, դնում կրակների մէջ և կրակը սաջի վրայ տալիս, թողնում եփուելու։ Ապա վերցնում են, երեսը սրբում, մի քիչ իւղ քսում։*

*Եթէ սաջ չեն ունենում, լենատերևների մէջ են դնում, վերան մոխիր ածում և կրակ վառում։*

*Սովորաբար այս պատրաստում են վարդևորին՝ փեսին ընծայ ուղարկելու։*

*Բաղաճ.—Սովորաբար միմիայն ուրբաթ օրն են թխում և բաժանում իբրև հոգու հաց, որպէս յիշատակ առաքեալների կրած նեղութեան, որոնք այդ օրը առանց խաշի անեկ հաց են թխել հապճէպով և միայն դրանով կերակրուել։ Սա անեկ հաց է, սովորական բլիթի մեծութեան, միայն երեսին զանազան գծերից կազմած նաշխեր կան։*

*Նազուկ.—Հալած իւղը լցնում են ջրի մէջ, խաշ են աւելացընում, հունցում, յետոյ երբ թթւում է, գնդում են, ձեռքով կլորաձև՝ մօտ 1/2 արշին տրամագծով բաց անում, սղոցի բերանով նախշում և երեսին ձու կամ թան քսելով թխում։*

*Գաթայ.—Սովորական ձևով կամ կաթնով խմոր են հունցում, յետոյ իւղը առանց հալելու լցնում բաղեայի մէջ և գդալով հարում են, (աւելի լաւ է ձեռքովը) մինչև որ սաստիկ սպիտակում է. ապա մեղր են խառնում՝ նայած որքան քաղցր են ցանկանում, նորից հարում, յետոյ ալիւր աւելացնում, լաւ շաղաղում, որով և կազմւում է խորիզ։ Խմորը, որ եկած է լինում, գնդում են, յետոյ ձեռքով բաց անում, խորիզից մի քիչ լցնում մէջը և խմորի ծայրերը վրայ բերում, «գաթանաշխ» փայտով նշխում, յետոյ հարած ձու (չունեցողը թան կամ ջուր) քսում երեսին և թոնրում կամ փռնում թխում։ Հանելիս գաթի երեսին իւղ ու մեղր են քսում, որ գոյնը լաւանայ։*

Digitized by Google

*Պասուց կամ ծիթով զաթայ.*—Թխում են նոյն կերպ, միայն իւղի փոխարէն ձէթ են խառնում և երեսին ձու չեն քսում։

*Ախցան.*—Սիպեխի, ինչպէս և շուշանի ծաղիկները չորացնում են և պահում. ապա՝ երբ կամենում են՝ իւղով տապակում են և ուտում։ Սրանք կոչւում են սիպեխի կամ շուշանի (չիշուիկի) ախցաններ։

*Աւելուկի ախցան.*—Աւելուկը խաշելուց, քամելուց և թաթակիշով ծեծելուց յետոյ ձգում են ձէթով սոխորածի վրայ տապակում։ Ուտելիս ծեծած սխտոր են աւելացնում։

*Աւելուկէ սալաս.*—Աւելուկը, որ չորացրած և պահած են լինում, լուանում են, խաշում, քամում, վերան աղ ցանում և թաթակիշով ծեծում, ձեռքով տրորում, և կրկին ձգում նոյն ջրի մէջ. ապա մի բուռը ալիւր մի քիչ ջրի մէջ տրորում և լցնում են նոյն ջրի մէջ, թողնելով որ եփ գայ։ Վերցնելիս մի քիչ էլ ծեծած ընկոյզ են աւելացնում։

*Բալքայ.(փիփերթ)*—Ջուրը եռացնում են, աղ ձգում, բալքան մաքրում, կոտորում, մէջն ածում, իսկ եփելուց յետոյ քամում են. ապա մի քիչ իւղ հալում ու կոտորած սոխի հետ մէջն ածում, տապակում, մի բաժակ նոյն բալքի ջրից և 2-հարած ձու աւելացնելով մի փոքր էլ եփ տալիս։

*Դանդուռ.*—Խաշում են, քամում, աղ և քացախ աւելացնում և ուտում։

*Սինդրիկ.*—Խաշում են, քամում և ապա քացախ ածելով ուտում են։

*Ծնեբակ։*—Ընտրում են, մաքրում, լուանում, եռացրած ջրի մէջ մի քանի րոպէ խաշում, հանում իւղի մէջ տապակում, աւելացնելով մի քանի հարած ձու։

*Դդում.*—Դդումը մեծ-մեծ կոտորում են և ձգում եռացրած ջրի մէջ, շոգիով մի քիչ եփ տալիս, յետոյ վերցնում են դանակով կպչում, կեղևը դէն ձգում, իսկ միջուկը նորից ջրի մէջը լցնում, եփում, աղ աւելացնելով, ինչպէս և պղպեղ, սոխ ու մանրացրած ընկոյզ։ Ուտում են պասին։

*Բանջար.*—Ջեռներին շորեր կապած քաղում են բանջարը, որ չը կծոտէ, յետոյ ընտրում են, մաքրում, դանակով կտրատում, խաշում եռացրած ջրի մէջ մի քանի րոպէ ձգելով, ապա ջուրը քամում, վերան աղ ցանում և կամ այսպէս խաշած, քացախով ուտում և կամ իւղով ու ձուով կամ ձէթով տապակում։

*Լոբու-խորակ.*—Լոբին նախ լուանում են, յետոյ ածում կաթսան, ջուր աւելացնում և դնում կրակին եփելու։ Երբ մի քիչ կակղում է՝ աղ են ցանում, երբ եփւում է՝ քամում են, չերեփով

Digitized by Google

լոբին ճմլում, վերան կոտորած սոխ և մանրած ընկոյզ ածում, քամած ջուրը կրկին վերան լցնում, դնում կրակին կրկին եփում. վերջը աղ և պղպեղ աւելացնում։

*Լոբուփփիկաշ*.—Լոբին եփելուց յետոյ քամում են, հատիկները վերցնում, վերան աղ, սոխ, պղպեղ ցանում, ուտում։

*Կանանչ-լոբի*.—Կանաչ լոբին թելահան են անում, կոտորում, խաշում, քամում, իւղում տապակում, աւելացնելով մի քանի հարուած ձու։

Լոբին նաև թելահան են անում, կոտորում, չորացնում են ու պահում ձմեռուայ համար, երբ տապակում են և ուտում։

*Կարտոֆիլի* թարմ տերևները իւղով և ձուով տապակում և ուտում են։

*Տապակած կարտոֆիլ*.—Հում կարտոֆիլը կլպում են, շերտ շերտ կտրատում, ածում հալած իւղի մէջ և տապակում։

*Կարտոֆիլով տոլմա*.—Կարտոֆիլը խաշում են, յետոյ կլպում, տրորում, ածում սոխառածի վրայ, խառնում, աղ աւելացնելով։

*Կարտոֆիլի չրխրտմա*.—Կարտոֆիլը խաշում են, կլպում, լցնում պատրաստած սոխորածի վրայ, ապա ջուր աւելացնում, աղ ու պղպեղ ցանում և մի քիչ էլ եփ տալիս։

*Կարտոֆիլի խաշու*.—Կարտոֆիլը խաշում են, հանում կըլպում, ձեռքով ճմլում, վրան սոխ կոտորում, ածում մի ուրիշ տաք ջրով լի կաթսայի մէջ, եփ տալիս, յետոյ աղ ու պղպեղ ցանում։

*Խաւիծ*.—Պատրաստում են առաւելապէս ծննդկանների համար։ Մի քիչ ալիւր են մաղում և վերան սառը ջուր շաղ տալիս, մատներով տրորում, փոքրիկ, բրնձաչափ հատիկներ կազմում, ածում սոխառածի վրայ, խառնում և երբ կարմրում է՝ մի գդալ մեղր են ածում և մատուցանում։

*Խաշիլ*.—Ցորենը սաջի վերայ աղանձում են՝ փոխինդ դարձնում, ապա երկանքով աղում, մաղում, մաղի մէջ մնացած խոշոր մասն ածում ջրով լի կաթսայի մէջ, յետոյ աղ աւելացնում, եփ տալիս, երբ ջուրը քաշւում է, մաղուած մանր փոխինձից մի քիչ շաղ են տալիս վերան, խառնում, վերցնում կրակից։ Յետոյ հարած թան են ածում ափսէի մէջ, խաշիլից աւելացնում վերան, մէջ տեղում փոքրիկ փոս բացանում և հալած իւղ ածում։ Ուտելիս գդալը նախ թաթախում են մէջ տեղի իւղի մէջ և ապա վերցնում խաշիլից՝ ուտում։

*Ձաւարի խաշիլ*.—Կորկոտը սանդում թակում են, փռում արևի տակ չորացնում, քամուն տալիս որ թեփը գնայ՝ մաքրուի. ապա երկանքում աղում են, մաքրում, դառնում է ձաւար։ Այս

Digitized by Google

*ձաւարից լցնում են ջրով լի կաթսան, եփում, երբ ջուրը քաշւում է, աղ են ցանում և վերցնում կրակից։ Յետոյ մի քիչ ալիւր են մաղում և շաղ տալիս կաթսայի մէջ, նորից եփ տալիս, մինչև որ պնդւում է։ Այս ժամանակ արդէն վերջնականապէս վերցնում են կրակից, ածում ափսէները, մէջ տեղը փոս անում, հալած իւղ ածում և ուտում։*

Սոնչոլ.—*Իւղով կամ ձէթով սոխառած են անում, մի քիչ եռացրած ջուր աւելացնում, և հաց բրդում մէջը։ Ուտխսին մի քանի հարած ձու էլ են ածում վերան։*

Մախոխ.—*Ձաւարը մաղում են, ածում ջրով լի կաթսան, քիչ եփ տալիս, թթխմորը տաք ջրում տրորում, ածում այս կաթսայի մէջ, խառնում, յետոյ լցնում մի ամանի մէջ 1—3 օր պահում, որ թթուի։ Ապա քիչ քիչ ածում են կաթսայի մէջ, մի քիչ տաք ջուր աւելացնում, կրկին եփում, հաց բրդում, սխտոր խառնում և ուտում։*

Փլաւ.—*Ջուրը եռացնում են, որա $^{1}/_{3}$-ի չափ մաքրած բրինձ երեք անգամ լուանում են և ածում ջրի մէջ, թողնում եփ գայ, ապա աղ ցանում. երբ բրինձը հատ հատ որոշւում է, փլաւ-քամով քամում են, կաթսան լուանում, մի քիչ իւղ ձգում տակը կամ մի քանի ձու հարում ածում, ապա քամած բրինձը լցնում են վերան, մի քիչ սառը ջուր շաղ տալիս, և խուփը ծածկում, դնում մարմանդ կրակի վերայ՝ որ «դամը» գայ։ Յետոյ մի քիչ հալած իւղ են շաղ տալիս վերան և ուտում։*

Ճաշովի փլաւ.—*Իւղը հալում են, մէջը կոտորած սոխ ածում, կարմրացնում, $2^{1}/_{2}$ չափ սառը ջուր ածում, եռացնում, մի չափ բրինձ (մաքրած և լուացած) աւելացնում, աղ ցանում, մի քիչ խառնում, յետոյ վերցնում դնում կրակի ափը, որ դամը գայ։*

Չամչով փլաւ.—*Փլաւը քամելուց յետոյ մաքրած չամիչ են խառնում հետը։*

Հաւով փլաւ.—*Հաւը առանձնապէս խաշում են, յետոյ կոտորում, կաթսայի տակը իւղի հետ միասին հարած ձու են ձգում, ապա քամած փլաւը և այս կոտորած հաւը ածում վրան ու դնում դամ։*

Կաղինի սուրճ.—*Կաղինի միջուկը բովում են, աղում և սուրճի նման եփելով՝ մի քիչ ցիկորի աւելացնում և խմում իբր սուրճ։*

Գարու սուրճ.—*Գարին, մանաւանդ սրա սև տեսակը բովում են, աղում և սուրճի նման պատրաստելով՝ շաքարով խըմում, շատ անգամ կաթ աւելացնելով։*

Digitized by Google

## ԹԹՈՒՆԵՐ

Թթուները գլխաւորապէս գործ են ածում պաս օրերին, երբ մեծ մասամբ ցամաք հացն է կազմում ամբողջ սնունդը։ Եւ որովհետև գիւղացիներից շատերը ոչ միայն օրինական պասերը, այլ և սըրանց «փոխը»—այսինքն մի շաբաթ էլ աւել են պահում, ուստի և՛ մեծ հոգս են տանում, որ որքան կարելի է շատ և բազմազան թթուներ դնեն։ Բացի սրանից՝ որովհետև թթու դրուելիք բոյսերից շատերը վայրի են և նրանց քաղելու պարտաւորութիւնը ընկնում է նորատի հարսների, աղջիկների և տղաների վրայ, որոնք այդ՝ զբօսանքի մի լաւ առիթ են համարում, ուստի և՛ մեծ քանակութեամբ և շատ տեսակներ հաւաքում են և թթու դնում։

Գրեթէ գարնան բացուելուն պէս նորատի հարս աղջիկ մեծ և փոքր խմբերով գնում են դաշտերը, անտառները որոշ բոյսեր քաղելու, նրանց հեռուից հետևում են տղաների խմբերը, որ առիթից օգտուելով մօտենում են նրանց, իրենց սրտի թագուհիներին տեսնում, կանանչներով միմեանց խփում, և ապա կըկին անջատ խմբերով վերադառնում գիւղ՝ բոյսերի ահագին խուրցեր շալակած, ուրախ և զուարթ։

Այս վայրի բոյսերից թթու են դնում՝ բոխը—Heracleum villo sum Fich), շէշխանա բոխը, շնբոխը, բոլին, գինազոխը, իշատըրտըրուկը, ղանձիլը—Allium ursinum L черемша: նիախուրը, շիշուիկը, սիբեխը—cochlearia officinalis L ложечная трава). սինդրիկը, տղաբերուկը, քեխը, Levisticum offiicinale Koch) ինչպէս նաև վայրի տանձը, զկեռը։

Իսկ ընտանի բոյսերից՝ բադրիճան. (solanum melongena L)· լոբի, (Phaseolus vulgaris L). կաղամբ. (Brassica oleracea capitata L). ճակնդեղ, տակ. Beta vulgaris Moqu· буракъ, свекловица, свекла· վարունգ. (Cucumis sativus L· огурецъ· պղպեղ, տաքդեղ Capsicum annuum L· стручковый перецъ).

Սրանցից բոխը, շնբոխը, շէշխանաբոխը, բոլին, գինազոխը, իշատըրտըրուկը, ղանձիլը, նիախուրը, շիշուիկը, սիբեխը, սինդրիկը, տղաբերուկը և քեխը միատեսակ են թթու դրւում.—Նախ մաքրում են, աւելորդ տերևները և կոշտ մասերը կտրատում, ապա եռացրած ջրի մէջը ձգելով փոքր ինչ խաշում են և հանում փըռում, որ հովանայ։ Ապա մի քանիսը միասին հանգոյց ձգելով կամ թելով կապելով փոքրիկ փնջիկներ (կոնա) շինում, դարսում պուտուկների (քիլա) մէջ և վերան սառը աղաջուր ածում, մի քանի կոշտ աղի կտոր էլ պուտուկի բերանին դնում, որ հետըզ-

Digitized by Google

հետէ հալուի։ Ոմանք սինդրիկի և շիշուփկի վրայ մի քիչ քացախ էլ են ածում, իսկ միախուրի հետ խաշած կանաչ պղպեղ դնում։

Վայրի տանձը և զկեռը առանց խաշելու, ուղղակի սառը ջրի մէջ են ածում, ինքն իրեն թթւում մնում է։

Ընտանի բոյսերից վարունկը թթու դնելիս աղում են և այդպէս երեք օր թողնում. ապա բադրիճանը և կանաչ պղպեղը առանձնապէս լցնում են եռ տուած ջրի մէջ և իսկոյն հանում, թողնում հովանայ։ Յետոյ արդէն վարունկները փաթաթելով խաղողի տերևների մէջ՝ դարսում են քիլի մէջ մի շարք բադրիճանի վրայ, ապա մի շարք պղպեղ են դարսում, կրկին՝ վարունկ շարում, այսպէս դարսելով ամբողջ քիլան լքցնում են, ու սառը աղաջուր ածում վերան և մի մեծ քար դնում, որ ճնշի, իսկ քիլի բերանը բաց են թողնում։ Շաբաթը մի անգամ «ըրսկալած» ժամանակ «արսը» քաշում, մաքրում են։

Կաղամբը, ճակնդեղի արմատն ու տերևները (բազկաթեր), բադրիճանը և թէ առանձին, առանձին բայց միատեսակ են թթու դընում։ Եռացրած ջրի մէջ փոքր ինչ խաշում են, հանում հովացնում, դարսում պուտուկների մէջ և սառը աղաջուր աւելացնում։ Ոմանք էլ սրանց հետ միասին խաշած կանանչ պղպեղ են դնում։ Բացի սրանից խաշելուց յետոյ կաղամբը 4—6, ճակընդեղը 2—4, իսկ բազկաթերը 2—3 կտոր են անում՝ ճակնդեղն էլ կճպում։

Շնող գիւղում վարունկի, միախուրի, բադրիճանի թթուների վերայ չը հասած (ժուռ) խաղող են դնում, որ թթւութիւն տայ ջրին։ Այդ խախողը չեն ուտում։

## ՁՈՒԵՂԷՆ

Ձուն ներկելիս եփում են, շուկայից առած ներկով ներկում կարմիր, կանաչ, նարնջի։ Նշխելիս մոմով նշխեր են անում ներկած ձուի վրայ և ձգում քացախի կամ թանի մէջ, բոլոր ներկը վայր է գալիս և մնում է մոմի տակի ներկը միայն, որը երևում է մոմը վերցնելուց յետոյ։ Սովորաբար պինդ են խաշում։ Պատահում է նաև, երբ ուզում են թերախորով լինի, կրակի եզրին են դնում և վրան մի քիչ մոխիր ցանում։

*Մ՚խլով*.—Իւղը ածում են կրակի վրայ դրած թաւայի մէջ, դաղ անում և յետոյ առանց հարելու ձու ածում մէջը, մի փոքր աղ ցանելով վրան. մի քիչ եփւում է, յետոյ վերցնում են։

*Ձուածեղ*.—Իւղը ածում են կրակի վրայ դրած թաւայի մէջ, դաղ անում (նշանակում է եփել մինչև այն աստիճան, որից

*յետոյ սկսում է այրուել), իսկ յետոյ զարկած (հարած)ձու աւելացնում։ Եթէ քաղցր են ցանկանում, աւելացնում են մեղր կամ շաքար։*

## ԿԱԹՆԵՂԷՆ

*Կաթնապաս.—Կաթը տաքացնում են, երեք անգամ սառը ջրով լուացած բրինձը մէջն ածում, եփ տալիս. վերցնելիս մի քիչ աղ ցանում։ Ոմանք մի քիչ էլ շաքար են ձգում, որ փոքր ինչ քաղցր լինի։ Եթէ կամենում են, որ պինդ լինի, բրինձը շատ են ձգում։*

*Այս սպասն երբեմն ձաւարով էլ են պատրաստում։*

*Ջամբ.—Կաթը (երբեմն ջրախառն) տաքացնում են, յետոյ նրանից մի քիչ վերցնում, ալիւր ածում վրան, հարում. ածում կաթի մէջ, եփ տալիս, վերցնում աղ ցանում և ուտում։*

*Թան.—Խնոցին հարելուց և կարագը վերցնելուց յետոյ թանը ածում են մի կաթսայի (էրկու ընգնանի) մէջ, մի քիչ եփ տալիս, ապա մի տոպրակի մէջ ածելով, բերանը ամուր կապում ու քար դնում վրան և շուտ շուտ տոպրակը թանքերով (թիակաձև փայտ) քերում, որպէսզի ջրային մասը շուտ ծորուի։ Թանձրացած թանը հանելով տոպրակից, տաշտի մէջ են ածում, աղ ցանում վրան և դնում ոչխարի մորթուց շինած պարկի մէջ, բերանը կապում և այսպէս մի ամիս պահում։ Երբ այս պարկի միջից էլ ջրային մասը բոլորովին ծորում է, այն ժամանակ լցնում են քիլի մէջ, աղ ցանում վերան։ Քիլի բերանը տերևով ծածկում և բրնքավէր դնում, որ դարձեալ քամուի։ Երբ կամենում են թանէ սպաս կամ թանէ խորակ եփել, հանում են այս թանից, ջրի մէջ լուծում և գործ ածում։*

*Թանէ սպաս.—Ձաւարն անալի եփում են. թանը գոլ ջըրում բաց անում (ջրի հետ խառնում՝ ալիւրի նման), մի քիչ եփ տալիս, լցնում ձաւարի վրայ. յետոյ փոշի են անում (քիչ թան կամ ջուր են լցնում մի ամանում և ալիւր խառնելով հարում) և ածում կերակրի վրայ, ու մի քանի րոպէ յետոյ վերցնում են։*

*Թանէ խորակ.—Թանը գոլ (մտնագոլ) ջրի մէջ ճմլում են, որ լուծուի, յետոյ մի քիչ եփ տալիս, սոխառած անում, ածում վրան և ուտում են։ Ոմանք էլ ուտելիս ծեծած սխտոր են ցանում վրան։*

Digitized by Google

## ՄՍԵՂԷՆ

*Ապուխտ.*—Միսը երկար երկար կտրատում են, եռացրած և աղած ջրի մէջ քաշում ու կիսաեփ հանելով, արևի տակը կախում, կամ թոնրի մէջ չորացնում են, պահում. երբ կամենում են ուտել, շամփուրով խորովում են։

*Բաստըրմա.*—Միսը երկար երկար կտրատում են, սոխ, աղ, պղպեղ ածում վերան, դնում պուտուկների մէջ և բերանները «սիրեկում», այսինքն անասունների մաքրած, աղած և չորացրած ստամոքսը դնելով թելով պինդ կապում են։ Եթէ կամենում են երկար ժամանակ պահել, պուտուկը բերնքսըվայր են դնում։ Ուտելիս խորովում կամ եփում են։

*Բոզբաշ.*—Միսը խաշում են, մի կտոր էլ դմակ գցում մէջը, յետոյ քափը քաշում, աղ ձգում, թողնում մի քիչ էլ եփ գայ. ապա պղպեղ, կտորած սոխ ձգում, միջի դմակը հանում, մանրացնում, ճմլում և նորից մէջն ածում ու ապա վերցնում։

*Բոզարթմա.*—Կտորած դմակ կամ մի քիչ մսի իւղ ածում են կաթսայի մէջ, միսը կտորում ձգում, մի քիչ տապակում, յետոյ քիչ տաք ջուր աւելացնում, սկուտեղով ծածկում և թողնում, որ մարմանդ եփուի։

*Բուղլամա.*—Միսը և մի քիչ էլ դմակ կտորում, խառնում են մաքուր լուացած բրնձի (ընդհանրապէս 3 անգամ են լուանում) և հոնի հետ, ածում կաթսայի մէջ, բերանը խմորում ու մարմանդ եփում։

*Կորկոտ.*—Մի շերտ միս, մի շերտ ձաւար են ածում կաթսան, աղ ցանում և այսպէս շարունակում, մինչև որ կաթսայի $^3/_5$ մասը լցւում է. ապա ջուր են ածում, կաթսայի բերանը ծածկում, լաւ վառուած թոնրի մէջը ջուր են շաղ տալիս, որ կրակը անցնի, եռոտանի դնում և կորկոտի կաթսան թոկերով կապած իջեցնում թոնրի մէջ, դնում եռոտանու վրայ։ Ապա այս կաթսայի վրայ դնում են նոյն կերպ պատրաստած մի ուրիշ կաթսայ, նրա վրայ մի ուրիշը, վերջինի վրայ մի քար են դնում, որպէսզի շոգուց կաթսայի խուփը չը բարձրանայ։ Յետոյ տախտակներով ծածկում են թոնիրը և ցեխով ծեփում, այնպէս որ ոչ մի տեղից շոգին չի դուրս գալիս, որովհետև մնկուածքն էլ ծածկուած է լինում։

Եթէ քիչ քանակութեամբ են կամենում կորկոտ պատրաստել, կաթսայի խփի շուրջը պատում են խմորով և դնում կրակի վրայ եփ տալիս։



Digitized by Google

*Շիլա—փլաւ.*—Կոտորած դմակը ձգում են կաթսայի մէջ, փոքր ինչ հալում, յետոյ կոտորած միս են աւելացնում, և թողնում մի քիչ եփ գայ, ապա $2^1/_2$—3 չափ ջուր, 1 չափ բրինձ լցնում, սկուտեղով ծածկում են և եփում։ Աղ ձգում են ջուրնածելուց յետոյ։

*Տաւարի խաշ.*—Տաւարի ոտները կրակի վրայ խանձում են, քերում, երեք անգամ տաք և մի անգամ սառը ջրով լուանում, ապա կոտորում, ձգում ջրով լի մի կաթսայի մէջ և դնում կրակին այնքան եփում, որ ջուրը մածուծիկ է դառնում ու ոսկըրները մաահան։ Ապա աղ են աւելացնում։

*Ոչխարի խաշ կամ քեալլա—փաչա.*—Ոչխարի ոտներն ու գլուխը խանձում, քերում և մի քանի անգամ լաւ լուանում են։ Ապա մաքրում են ստամոքսը (թափան), քերում, լուանում, կըտրատում և ոտ ու գլխի հետ լցնում ջրով լի մի կաթսայի մէջ և թողնում եփ գալու։ Երբ քափը (փրփուրը) քաշում են, աղ են ձգում։ Ուտելուց առաջ գլուխը կոտրատում են և ուղեղն առանձին մատուցանում։

*Փորը լըցրած հաւ.*—Հաւը խաշում են, յետոյ փորի մէջ լցնում են եփած և չամչախառն բրինձ ու կարում։ Սովորաբար պատրաստում են կամ փեսի համար, կամ իբրև ճանապարհի պաշար։

*Չխրտմա.*- Հաւը խաշում են, կտրատում, մի քիչ տապակում կոտորած սոխ աւելացնելով, ապա այդ հաւի մսի ջուրը լցնում են վերան, և մի քիչ աղ ցանում։ Կրակից վերցնելիս քացախով բացած մի քանի ձուն ածում են վերան։

Չխրտման ոչխարի կամ գառի մսով էլ են պատրաստում միևնոյն կերպ։

*Խուրուղու.*—Սարում հովիւներն երբ ոչ մի աման չեն ունենում, հետևեալ կերպով են կերակուր պատրաստում։ Գառը կամ ոչխարը մորթելուց յետոյ միսը կտրատում են, աղում, ածում նոյն գառի կամ ոչխարի մորթու մէջ, փաթաթում, ½ արշին խորութեան մի փոսի մէջ հորում, վերան հող ածում և մի մեծ կրակ վառում։ Ասում են, թէ շատ համեղ է լինում։

## ՁԿՆԵՂԷՆ

Դեբետ գետում լինում է կապուտ, սարի գող (դեղին աչքաւոր) և մուրծայ։—Սրանք եփում են, կալաթում (կողով) դարսում և քիչ քիչ ուտելով պահում մինչև երեք շաբաթ։

*Ձուկ.*—Փորը մաքրում են, թեփը քերում, լուանում, յետոյ

Digitized by Google

աղ են անում ջրով լիքը կաթսայի մէջ և սպասում մինչև եռալը, այս ժամանակ վերցնում են, քամում և ձուկը ձգում մէջը, մի քիչ եփ տալիս, ապա հանում և գցում մի ուրիշ կաթսայի մէջ, որի ջուրը մաքուր է, որտեղ և եփում են։ Նրամի ձուկը եփելիս՝ մի քիչ էլ շիբ են ձգում աղի ջրի մէջ, որ լաւ մաքրուի, յետոյ նոյն ջրի մէջ ձգում են ձուկը և եփում։

Թարմ ճկան փորը ճեղքում են, բանում, թաւի մէջ իւղը եռացնում, ձգում մէջը տապակում։

Ոողակը, իշխանը, խրամուլին աղն են դնում։ Փորը մաքրելուց և լուանալուց յետոյ աղ են ցանում վերան, ապա աղ ցանելով դարսում կարասի մէջ և սրա բերանը պինդ շորով կապում։ Ձկի մէջ եղած ջուրը բաւական համարելով, ջուր չեն աւելացնում։ Երբ ուզում են ուտել, հանում են, եփում, ապա ձգում սառը ջրի մէջ, որ մի քիչ աղը դուրս տայ։

Իշխան ճկի հետ, եթէ թարմ է և խաշած, իբր համեմունք ընկոյզ են գործ անում։ Սա ծեծում են, մի քիչ աղ ցանում, մի քիչ ջուր աւելացնում, խառնում են և առանձին ափսէով մատուցանում, ով ինչքան ուզում է՝ վերցնում է։

Ձկի հետ քացախ շատերն են գործ անում, իսկ մանաւանդ շատ քչերը։

## ԺՈՂՈՎՐԴԻ ԱՌՈՂՋԱՊԱՀԻԿ ԴՐՈՒԹԻՒՆԸ

Ժողովրդի առողջապահական դրութիւնը շատ աննախանձելի է։ Նախ և առաջ նրա բնակարաններն առողջապահական տեսակէտից շատ մեծ պակասութիւններ ունին. շատ ու շատ հիւանդութիւնների պատճառը հէնց այդ բնակարաններն են. այսպէս՝ օրինակ, խոնաւ են, որի պատճառով և ռէվմատիզմը (քամին) սաստիկ տարածուած է. երբէք չեն տաքանում, քամին շարունակ դռնից փչում է և հերթիկից դուրս գալիս, իսկ եթէ նոր ձիւ սենեակ է՝ թիթեղեայ վառարանով մէկ սաստիկ տաքանում, մէկ ցրտում է, որից և էնֆլուէնցա, հարբուխ, թոքային և այլ հիւանդութիւններ են ծնունդ առնում. մութն է և մշտատև ծխով պատած, որից և յառաջանում են աչքի հիւանդութիւններ. օջախը և թոնիրը շատ անյարմար

տեղ են չինուած, այնպէս որ շատ անգամ երեխաներն ընկ-նում են մէջը և այրւում [1])։

Բացի բնակարանի ահագին անյարմարութիւններից, ժողովրդի անմաքրութիւնն էլ շատ հիւանդութիւնների պատճառ է դառնում. այսպէս, օրինակ, շատ անգամ կտրւում է ձեռքը կամ մարմնի մի որև է մասը, որը մաքուր չպահելու պատճառով վարակւում է և հազար ու մի բարդութիւններ յառաջացնում. ես իմ աչքերովս տեսայ մի արդուեցի աղջուական, որ ստիպուած էր եղել գնալ Թիֆլիս և անդամահատել տալ այն մատը, որ սկզբում դանակով փոքր ինչ կտրել էր։

Բայց ամենից աւելի վնասներ հասցնում է գիւղացուն ճակատագրի մասին ունեցած խոր համոզմունքը, որ միանգամայն պատճառ է դառնում նաև նրա անշարժութեան։ Եթէ նախախնամութիւնից սահմանուած մահուան օրը հասել է, ասում է գիւղացին, ոչ մի հանդամանք, ոչ մի Լօխմանի (երեւելի բժիշկ) չի կարող ազատել մարդուն Գաբրիէլ հրեշտակապետի ձեռքից, իսկ եթէ չէ հասել, կրակն էլ որ ձգեն՝ կենդանի դուրս կըգայ։ Եւ այս է պատճառը, որ հիւանդները մեծ մասամբ մնում են անխնամ, որ ժողովուրդը չի զգուշանում վարակիչ հիւանդութիւններից, հաւատացած լինելով, որ եթէ իրեն չէ վիճակուած հիւանդանալ, ոչ մի ցաւ չի կարող մօտենալ իրեն։

Այս, մահմեդական տարրից ժառանգած մոլար վարդապետութեան պակասը լրացնում են բազմաթիւ սնահաւատութիւնները, որոնք հազարաւոր զոհեր են տանում.—Ես ներկայ եղայ Օձունում մի նորատի կնոջ յուղարկաւորութեան. Թշուառը զոհ էր գնացել նախապաշարուած տատմօրը, որ սրա ծննդաբերութիւնից յետոյ պատահած արիւնահոսութիւնը

[1]) Բազմաթիւ դէպքերից յիշեմ մինը. Օձունում Հայրապետանց Աթանի կինը տեսնելով, որ փոքրիկ աղջիկն օջախի մօտ կնքուարտելով կրակն է ընկել, վրայ է վազել, հանել նրան կրակից, ու սրտի կսկծից ինքն իրեն կրակը ձգել։ Եւ թէպէտ ամուսինը օգնութեան է հասել ու հանել նրան, բայց հազիւ մի օր է ապրել։

դադարեցնելու նպատակով չարունակ մի սենեակից միւսն էր քաշ տուել, որպէսզի «ալքերի» ճիրաններից ազատէ նրան։ Խեղճ կինը արիւնաքամ էր եղել։

Ես դեռ չեմ ուզում այստեղ ևս *) երկարօրէն պատմել այն զարհուրելի սնոտիապաշտութեան մասին, որ վարակիչ հիւանդութիւնների ժամանակ փոխանակ զգուշանալու կամ ախտահանական միջոցների դիմելու, ննջեցեալների գերեզմաններն են բաց անում, ննջեցեալի գլուխը կտրում դնում ոտների տակ, սրտին մի մեխ ցցում, հաւատալով, որ նա կիսամեռ թաղուած լինելով վրէժ է առնում՝ իրեն թաղողներին իւր մօտ տանելով։ Եւ եթէ վերոյիշեալ միջոցը չի դադարեցնում կոտորածը՝ ննջեցեալը երևալով տնեցիներին երազներում դարձեալ սպառնում է կենդանի մնացածներին ևս իւր մօտ տանելու, կրկին բաց են անում գերեզմանը և դիակը հանում, ամբողջովին վառում ու փոշին քամուն տալիս, ինչպէս արել են Օձունում Մկդսոնց Ստեփանին։

Միւս սնոտիապաշտութիւնների մասին ես կը խօսեմ հաւատքի բաժնում։ Սակայն ցաւալին այն է, որ սնոտիապաշտութիւնները սաստիկ դանդաղութեամբ են վերանում, որովհետև գործադրւում են հէնց այն անձնաւորութիւնների կողմից, որոնց վրայ դրուած է դրանց վերացնելու պարտաւորութիւնը։ Գիւղերում բժիշկ չլինելու պատճառով ասպարէզը թողնուած է «գիր անող քահանաներին ու տիրացուներին», հէքիմ—տատմէրներին, սափրիչներին, չոփչիներին, թիքափչողներին, պորտ քաշողներին, աղօթող պառաւներին, որոնց զոհերի թիւը բաւական մեծ է։

Գիւղացու հասկացողութեամբ բոլոր հիւանդութիւնները երեք տեսակի կարելի է բաժանել. սրբերի տուած, կախարդների դիւթած և զանազան պատահարներից յառաջացած։ Առաջին տեսակ հիւանդութիւնները, որ մեծ մասամբ ներարդային են, յառաջանում են այն ժամանակ, երբ մինը մի որևէ մեղք գործելով բարկացնում է սրբերին և նրանցից այդ կեր-

*) Տես իմ «Գանձակի գաւառ» Բ. եր. 87—88.

պով պատժւում։ Այս տեսակ հիւանդութիւններից բժշկուելու համար պէտք է սրբերի ներողամտութեան արժանանալ, և որովհետև մի սրբի տուած պատիժը միայն ինքը, տուողը, կարող է վերացնել, ուստի և նախ աշխատում են գուշակել, թէ ո՛ր սրբի տուածն է և ապա այդ սրբին ուխտ գնում, մատաղ անում։ Այս տեսակ հիւանդութիւնների ժամանակ դիմում են փիլթա-թափողներին, գարի-ծգողներին, ղանակ-դնողներին, կուռ-չափողներին *)։

Երկրորդ տեսակին վերաբերում են այն հիւանդութիւնները, որոնք իբր յառաջացել են «գիր անելուց», այսպիսի են՝ առնական զօրութիւնից զրկուիլը, ամլութիւնը, խելագարութիւնը և այլն, և աչքը տալուց, վախենալուց, որոնց բժշկելու համար դիմում են «գիր անողներին» և աղօթողներին **)։

Երրորդ տեսակի հիւանդութիւնները նրանք են համարւում, որոնք յառաջանում են մրսելուց, վարակուելուց, վատ սննդից, ընկնելուց, դանակի կամ սրի հարուածից, կոտրուելուց և այլն, և որոնց բժշկելու համար դեղ են անում՝ կամ իրենք իրենց, կամ հէքիմ կանանց, սափրիչների, սնիչների (վիրաբոյժ), չոփչիների և պորտ քաշողների ձեռքով։

Իրենք իրենց դեղ անելիս սովորաբար հետևեալ կերպ են վարւում։ Դեռ սկզբներում ուշադրութիւն չեն դարձնում, կարծելով, որ թեթև բան է, կանցնի, բայց երբ տեսնում են որ ծանրանում է, թոյլ չեն տալիս աշխատելու, և լաւ կերակուր, թէյ, մրգեր են տալիս, ստիպելով որ անպատճառ ուտէ. յետոյ ջուր են տաքացնում, տաք տաք լողացնում հիւանդին, օջախի կամ թոնրի մօտ պառկեցնում, թէյ խմացնում, և աշխատում քրտնեցնել։ Եթէ այս չի օգնում, կանչում են սափրիչին՝ որ արիւն առնէ։ Այսպէս՝ գիւղական բժշկականութեան մէջ լողացնել—քրտնեցնելն ու արիւն առնելն ամենատարածուած և ամենայն հիւանդութիւններից բուժող միջոցներն են համարւում։ Եթէ սրանք չօգնեցին, կանչում են հէքիմ կանանց, որ միևնոյն ժամանակ տատմէր են լինում։ Պէտք է ասել, որ սրանք գիտեն մի քանի տեղական, սաստիկ

*) և **) Սրանց մասին տես կախարդութեան գլխում։

տարածուած հիւանդութիւններ յաջողութեամբ բժշկել, որովհետև երկար փորձերից յետոյ գտնում են և սերնդից սերունդ աւանդում, իսկ այլ հիւանդութիւնների ժամանակ մեծ մասամբ վնասում են։ Տեղական վիրաբոյժներն եւ բաւական ճարտարութեամբ կարողանում են լաւացնել դուրս ընկած կամ կոտրած ոսկրը, մեծ մասամբ գեղարքունի ձուկ դնելով վերան և տախտակներով կապելով։ Գորտ քաշողները, որ նախնական մասսաժիստներն են, երբեմն սոսկալի նեղութիւն են պատճառում, որովհետև հիւանդին պառկեցնում են մէջքի վրայ, իւղ քսելով տրորում են փորը, մօտ կէս ժամ, յետոյ մի մազ ուղղակի դնում են հիւանդի պորտի և կրծքի մէջ տեղը, մի թոկ անցկացնում հիւանդի մէջքից և կապում մազի վրայ և ապա մի փայտ (յաճախ սամի) անցկացնելով մազի և թոկի միջով սկսում պտոյտ տալ. թոկը փայտի վրայ ոլորուելով ճնշում է մազին, իսկ սա՝ հիւանդի փորը։ Կարեւոյն չափ ճնշելուց յետոյ կանգ են առնում և մօտ 10 րոպէ այդպէս թողնում ու ապա արձակում, հաւատացնելով որ շատ աշխատելուց կամ ծանր բան վերցնելուց տեղահան եղած պորտը տեղն ընկաւ։

Ոչ պակաս ցաւ են պատճառում և՛ *թիքա փչողները*, որոնք օգնութեան են հասնում, երբ մինն ոտների մէջ թուլութիւն, սրտի մէջ ծակոց, ու մէջքի մէջ ցաւ է զգում և ախորժակ չէ ունենում։ Հաւատացնելով, որ որկորում կամ ստամոքսի պատերին կպած «թիքայ» (պատառ) է մնացել, հուժկու—ողամարդ «փչողը» մի առաւօտ, երբ հիւանդը դեռ ես ոչինչ չէ կերել, պառկեցնում է մէջքի վրայ, ոտները բարձրացնում, ծալում, և ապա միքանի կաթիլ ջուր խմացնելով բերանը դնում նրա բերանի վրայ և այնպիսի ուժգնութեամբ փչում, որ հիւանդը ուշագնաց է լինում։ Ջուր են սրսկում երեսին, ուշքի բերում, հաւատացնելով որ փչելուն հետեւեց մի գունդ ստամոքսի մէջ և «թիքան» ընկաւ։

Այս միևնոյն վայրենական միջոցը գործ են դնում նաև երեխաների վրայ. և որովհետև այստեղ մեծ ոյժ չի պահանջւում, ուստի կատարում են կանայք, միայն իրազում մի որևէ սրբից այդ շնորհն ստացած պիտի լինի։ Սրանք *փչել* են կոչ-

ւում։ Հաւատացնելով, որ երեխաները կորիզներ, քարի կտորտանք, ածուխի մանրուանք, կոճակ բերանն են դրել, որ կոկորդի մէջ մնալով մասկալել են և խալկայրել երեխային, «չոփչին» փչում է երեխայի քթից, և վերոյիշեալ բաները բերանից թափւում են. և կամ բերանից է փչում՝ քթից դուրս են գալիս։

Այսքան սոսկալի տանջանքների և զոհերի ենթարկելով իւր անձը՝ գիւղացին այնքան էլ հաճութեամբ չի դիմում բժըշկին, եթէ նոյն իսկ հնար է ունենում, որովհետև այդ բժիշկները չեն ճանաչում իրեն, ժողովրդին, չեն հասկանում ոչ նրա դրութիւնը և ոչ նրա հոգեբանութիւնը, ուստի և շատ անգամ նրանց տուած խորհուրդները մնում են անկատար և ապարդիւն։ Եւ ահա թէ ինչպէս այս միտքը արդայայտում է ինքը ժողովուրդը հետևեալ պատմուածքով։

Երևելի բժիշկ Լոխմանին մի հիւանդ որդի ունէր, որին ոչ ինքը և ոչ մի ուրիշ բժիշկ չեն կարողացել բժշկել, չնայելով որ ամէն միջոցի դիմել էին։ Մի անգամ, երբ Լոխմանին բացակայ էր տնից, նրա աշակերտներից մինը ծածուկ ասել է Լոխմանու կնոջը. «Երեխադ կազատուի մահից, եթէ խոստովանիս, թէ ումնից է նա»։ Լոխմանու կինը խոստովանել է թէ մի քրդից է։ «Դէհ, ուրեմն, թան խմացրու և թանով լողացրու», պատուիրել է Լոխմանու աշակերտը։ Մայրը կատարել է նրա պատուէրը և կարճ միջոցում երեխան բոլորովին առողջացել է։ Եւ երբ Լոխմանին իմացել է երեխայի բժշկուելու միջոցը՝ յանդիմանել է կնոջը՝ ասելով. «ինչի՞ էիր տանջում երեխային թաքցնելով նրա քրդական ծագումը, չգիտես, որ առանց այդ իմանալու անհնարին է բժշկել»։

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՂԵՐ

*Ականջացաւ.—Տզրուկ են կպցնում քունքերի վրայ։*

*—Արիւն են առնում աջ ձեռքի ճկոյթի երակից։*

*—Ականջի մէջ մեռոն են կաթացնում։*

*—Ջիթոտ գաւը (կաւէ աման) տաքացնում են, ականջի վրայ մի շոր ձգում և դնում վերան։*

*—Սև թաղիքի կտորի վրայ ձուի դեղնուց քսելով դնում են*

Digitized by Google

ականջների վրայ, ձեռքերով բռնում և գլխին տաք ջուր ածում։

—Ակնամոմ են դնում ականջի մէջ։

*Ամրութեան դէմ.*—Այծի կամ հում կաթ են խմում։

*Այրուածի.*—Հում կարտոֆիլը մաքրում են, ծեծում, թորած ջուրը քսում մի շորի վրայ և դնում վէրքի վրայ, որ մորթին պոկէ, ապա եփած կարտոֆիլն ծեծում, կովի կամ ձիթապտղի իւղով շաղախում և շորի վրայ քսած՝ դնում վէրքի վրայ։ Օրը երկու անգամ փոխում են։

—Քամած մածունը շորի վրայ քսում դնում են վէրքին, որ կաշին պրծնի, յետոյ խունկը, մոմը, կովի իւղը, ձիւթը, ոչխարի դմակը իմիասին եփում են, մի գլուխ սոխ էլ չորս կտոր անում ձգում մէջը և երբ կարմրում է՝ սոխը հանում են, իսկ մնացածը կարմիր դանաւուզի վրայ քաշում, դնում վէրքին։

—Օղիով լուանում և քթախոտ են ցանում վերան։

—Խաշած կարտոֆիլը կպչում են, շաղախում խմորի պէս և շորի վրայ քաշած դնում այրուածի վրայ։

—Ընկոյզի իւղ են քսում։

—Օղի են ածում վերան, որ գոնէ մի առժամանակ հովանայ։

—Կովի առաժանը (հում սերը) մաղած հողի հետ շաղախելով շորի վրայ են քաշում և դնում վէրքին։

—Կովի կամ ձիթապտղի իւղը ձուի դեղնուցի հետ շաղախելով շորի վրայ են քաշում և դնում վէրքին։

—Լեղակ կամ մեղր են քսում. հովացնում և լաւացնում է. իսկ եթէ խորն է այրուած, լեղակ, ձէթ, հինայ, ծամոն միասին եփում են և դնում այրուածի վրայ։

—Ձէթը և ձուի դեղնուցը միասին շաղախում են և քսում այրուածքի վրայ՝ հովանում է. ապա կարագն ու մեղրամոմը միասին շաղախած քսում են վերան։ Կարագի փոխարէն գործ են ածում նաև իւղ, նախապէս եօթ անգամ սառն ջրում լողացնելով։

*Աչքացաւ.*—Ձղչիկի արիւն են քսում։

—Ձուի սպիտակուցը սառը շաքարով խառնած քսում են աչքերին։

—Կովի ճարպ են քսում։

—Երկու ձուի սպիտակուցը մի թխլի չափ շիբի հետ մի բաժակում հարում են, և բամբակով դնում ցաւող աչքի վրայ։

—Ձուն խորովում, կիսում և դնում են մրսած աչքին։

—Աղջկայ մօր կաթի մէջ սառը շաքարը լուծում են, բամբակը թաթախում և դնում աչքին։

Digitized by Google

—Ջուի սպիտակուցը շիբի հետ հարում, բամբակով դնում աչքի վրայ։

—Ջուի միայն սպիտակուցն առանձին հարում են, ստացուած իւղը բամբակով դնում աչքի վրայ։

Ատամնացաւ.—Օձի շապիկը քացախի մէջ երկար եփում են և ապա բամբակով դնում ցաւած ատամի վրայ։

—Մոյգ թէյի մէջ շիբ են ածում և դրանով ողողում բերանը։

—Գինու ոգու հետ փոքր ինչ քացախ խառնելով ողողում են բերանը։

—Կաղնի ծառի տերևը եփում են և ջրով բերանը ողողում։

—Այրած ընկոյզ են դնում ցաւող ատամի վրայ, կամ այրած ընկոյզի հիւթը կաթեցնում են ցաւող ատամի վրայ։

—Գղպեղը եփում են օղիով և դնում ցաւած ատամի վրայ։

—Ձիու ատամը այրում են, փոշին նիշադիրի հետ խառնում և բամբակով դնում ատամի վրայ։

—Ընկոյզի միջուկը մանրում և ծխախոտի հետ ծխամորճով ծխում։

—Սառը ջրով կամ օղիով ողողում են բերանը։

Արբեցողութեան դէմ.—Գինու, թէյի և կամ ջրի մէջ ձկան լեղի են խառնում և խմացնում արբեցողին, առանց նրա գիտակցութեան։

—Կատուի ձագերի «ծինը» (ընկերքը) չորացնում, լուծում են օղու կամ գինու մէջ և խմեցնում արբեցողին մի քանի անգամ։

—Հարբեցողի արբած միջոցին պորտի շուրջը թթխմոր են դնում, մէջը օղի ածում, և բերանին մեղր դնում, որ սիրտը խառնի և զզուեցնի։

—Ձիու նոր փթրած թրիքը քիչ թրջում և քամում են հարբածի բերանում։

Արենահոսութիւն.—Ծննդաբերութեան միջոցին եթէ արիւնահոսութիւնը սաստիկ է լինում, «մէր հող [1])» դնում են փորին, որ արիւնահոսութիւնն ընդհատի։

—Նոյն նպատակով հանգած կիրը շաղախում են և քսում փորին։

Արիւն ածողնել.—Շատ ու շատ անգամ, բոլորովին անտեղի կերպով արիւն են առնել տալիս սափրիչներին, որոնք քարոզում են, թէ այդ՝ ամէն տեսակ հիւանդութիւնների օգտաւէտ է։

Արիւն առնելիս սովորաբար ամուր կապում են հիւանդի ձախ բազուկը, ապա խաչակնքուելով՝ բութ, նահապետական նըշ-

[1]) Բոլորովին չքանդուած սեահող.

*տրակը (ланцеть) կէս վերշոկաչափ կոխում նոյն ձեռքի երեսին, ճկոյթի մօտ գտնուած երակի մէջ. արիւնը 5—10 րոպէ հոսելուց յետոյ, սափրիչն արձակում է բազուկի կապը, մի մեծ կտոր յաբէթ և սրա վրայից բամբակ դնում ծակած տեղը և կապում։ Շատ անգամ ուշագնաց եղող հիւանդին ուշքի են բերում գլխին սառը ջուր ածելով։ Պատահում են դէպքեր, որ արիւնաքամ լինելով զուր տեղը՝ մեռնում են։*

*Արիւն կտրելու.* *Ձմուռը փոշիացնում, քիթն են քաշում։*

*Բկացաւ.*—*Թթու դրած վարունկը ճզում են և դնում բկին։*

*—Միրանի թթու չիրը եփում են, կորիզները հանում, գարի ալիւրով շաղախում, շորի վրայ քաշում և դնում բկին։*

*—Հացի միջուկը քացախով եփում են և շորի վրայ քաշած դնում բկին։*

*—Եթէ լնդերքը կարմրում են և ուռչում, գարնանացան գարին մաքրում, եփում և ջուրը հովացնելով խմում են։*

*—Թուխ, անլուայ բուրդը ձիթով եփում են և դնում բկին։*

*Բոր.*—*Ղանձլամօր (վայրի ղանձիլ, որ չի ուտւում) արմատը եփում են և քսում մարմնին։*

*—Գվազը (թել ներկելու մի տեսակ դեղ) կովի իւղի հետ շաղախում և քսում են վէրքին։*

*—Հաւասարաչափ ծծումբ, ժանգ և խոզի իւղ խառնում են, քսում բորոտի վրայ և գոլ թոնրում կանգնեցնում, յետոյ հանում լողացնում։*

*Գլխացաւ.*—*Եթէ արեան շատութիւնից է յառաջանում՝ տզրուկով արիւն են առնում նստատեղուց։*

*—Գլուխը սափրում են և օղին ու քացախը միասին խառնելով քսում վերան։*

*—Ձէթով ձուաձեղ են անում և դնում սափրած գլխին։*

*Գորտնուկ.*—*Գորտնուկի թուի համեմատ գարի ածում են ոչխարի ճղած երիկամունքի մէջ և թաղում տան շեմքի տակ։*

*—Լուսնի նորին գորտնուկը համարում են և ասում.*

*Լիսինը նոր՝*
*Գորտնուկը չոր։*

*Եւ այս կրկնում են 7 օր։*

*—Մածուն են քսում և սև շանը լիզել տալիս։*

*—Գորտնուկի թուով գարի և աղի կտորներ են վերցնում և տանում թուրքի գոռում թաղում ասելով*

*Դու տի չըքուի,*
*Գորտնուկն ընտի։*

*—Գորտնուկի թուի համեմատ քարեր են լցնում մի շորի մէջ*

և տանում մի ուրիշի տան մէջ կամ ճանապարհի վրայ վայր ձըգում։ Գորտնուկն անցնում է այդ շորը վերցնողին։

—Վառած փայտից դուրս եկած ջրից քսում են գորտնուկի վրայ մի քանի անգամ։

—Թզի կաթ են քսում։

*Դեղնութիւն.*—Կոծոխուրը ծեծում են և նրանից ստացած ջուրն օրական երեք անգամ մի-մի բաժակ խմում։

—Հին սաթը ծեծում են, շորով մաղում և մի թէյի գդալաչափ լուծելով սառը ջրի մէջ՝ անօթուց խմում։

*Դող.*—Ծեծած սխտորը, քացախը, օղին խառնում են և մի թէյի բաժակով խմացնում դողը բռնելիս։

—Սև բողկը քերում են, ջուրը քամում և անօթուց մի բաժակ խմում ու անմիջապէս նախաճաշում սառը կերակուրներով։

—Խեցգետնի փորը ջարդում են և մի բաժակ ջրով գիշերը «աստղալիս» (աստղերի տակ) դնում. առաւօտեան կտաւով քամելուց յետոյ հիւանդին խմացնում։

—Մի բաժակ թունդ օղու մէջ մի քիչ կոտեմի սերմ են խառնում և անօթի ժամանակ խմում։

*Թոքախտ.*—Եթէ թոքերի ներքին մասն է վնասուած, գարնանացան գարին մաքրում են, եփ տալիս և ջուրը հովացնելով խմացնում են երկու շաբաթ շարունակ, օրական թէյի չորս բաժակ և միշտ թարմ։ Կաթնեղէն և թերխաշ ձու ուտեցնում։ Եթէ մի քիչ թեթևութիւն է զգում՝ անօթուց անաղ խաշած 2—3 կարմրախայտ ուտեցնում և յետոյ գարու ջուրը խմացնում, կէսօրին ոչխարի նոր մակըրթած պանիրն իրեն սիճուկով փոքր ինչ եփ են տալիս և ուտում ու շիճուկը խմում։

Արիւն գալիս սիպեխը ստուերում չորացնում են, թէյի պէս պատրաստում և հովացրած խմում։*)

—Իշի կաթ են խմացնում։

*Թունաւորուածին.*—Խմացնում են մոխրաջուր։

—Կաթ են խմացնում։

—Մածուն և կամ կիտրոն են ուտեցնում։

—Սառը ջրով լուացւում են։

*Լուծելու դէմ.*—Մեխակը եփում, ջուրը խմում են։

—Ուրցը, մեխակը և սուրճը միասին եփում և խմում են։

—Գխտորը մանրում են, մեղրով շաղախում և երեք առաւօտ անօթի ժամանակ ուտում։

---

*) Այս և մի քանի այլ դեղեր գրի առայ Օձնեցի Աբովեանից, որ հեքիմութեամբ է պարապում։

—Ուտեցնում են աղացած գխտոր պինդ եփած ձուով։

—Բոված խողակաղին են խմացնում։

—Մանրացրած ածուխ են խմացնում։

—Մատակի հում և թարմ կաթ են խմացնում անօթուց։

*Խարքուխ*.—Կապոյտ կտաւ են վառում և քթին ծուխ տալիս։

—Ունարը կաթով եփում, խմում են։

—Շորը վառում են և քթի տակին ծուխ տալիս։

—Ծրագու են քսում քթի արմատին։

*Ծծի ուռոյցք*.—Դդումի միջուկը կաթնով եփում են և դնում ուռուցքի վրայ։

—Հացի միջուկը գինով եփում են և դնում ուռուցքի վրայ։

—Կտաւատը կաթով եփում և դնում են վերան։

—Թեղքի ծառի կեղևը շատ եփում են, մի քիչ գարու ալիւր աւելացնում, կրկին եփ տալիս և ապա դնում ուռուցքի վրայ։

—Գաղտիկուռի արմատը լուանում, ծեծում, սոխի հետ խառնում, ջրով եփում, մի քիչ ալիւր աւելացնում, երեսին իւղ քսում և դնում կաթի շատութիւնից ուռած ծծի վրայ։

—Աղաւնու ծեռտը տաքացնում և դնում են ուռած ծծի վրայ։

—Սառը ջրում թրջած շոր են դնում։

—Խողի երիկամունքի ճարպը հալում են, հին բամբակի կըտորը նրա մէջ դաղում և մի քիչ (մատնապով) հովացնելուց յետոյ դնում ուռուցքի վրայ։

*Կարմիր քամի*.—Սև կատուի ականջը կտրում, մի քիչ սև մազ, գզմի ծաղիկը, մի քիչ օխտոր, մի գլուխ սոխ միասին ծեծում դնում են ցաւած տեղին։

—Իշի արիւն են քսում հէնց որ կարմիր քամու նշանները երևում են։

—Համեմի սերմը, ոչխարի կամ կովի լեարդի մի կտորի հետ ծեծում, դնում են ցաւած տեղին։

—Մուրը մի ձուի դեղնուցի հետ խառնում են և քսում վերան։

—Մխախոտի մեծ տերևի վրայ մեղր են քսում և դնում վրան։

—Երկաթի ժանգ են քսում։

*Կծածի*.—Ձուաձեղ են դնում վերան։

*Գայլի կծածի*.—Տխլքու տերևը լաւ եփում են և դնում կծուած տեղի վրայ։

—Ցարդը եփում են և դնում կծածի վրայ։

*Կարիճի կծած*.—Կարիճը ձգում են ձէթով լի շիշի մէջ և պահում, ապա պատահած միջոցին ածում են կարիճի կծած տեղի վրայ։

Digitized by Google

—Սառը ջրի մէջ երկար պահում են։

*Մեղուի կծածի դէմ.*—Մի սառը բան, դրամ, երկաթի կըտոր են դնում կծած տեղի վրայ և սեղմում։

—Թան կամ մածուն են քսում։

*Ճան կծածի.*—Օղիով լուանում են, բամբակը օղումէջ թաթախած դնում կծած տեղի վրայ։

—Տորոն, մոմ և խունկ միասին շաղախում և դնում են կծուած տեղի վրայ։

—Կաթը միքիչ տաքացնելուց յետոյ մէջը միքիչ շիբ են ձըգում և երբ սկսում է շաղուիլ, հանում են շիբը, կաթը հովացնում, շաքար աւելացնում և շորի վրայ քաշած դնում վէրքի վրայ։

—Նոյն կծող շան մազն են դնում վերան։

—Լոբին կիսում են և դնում կծուած տեղի վրայ։

*Կատաղած շան կծածի դէմ.*—Ալաքըլունք կոչուած միջատը բռնում, ձգում են մի տեղ, որ սատակի և չորանայ. ապա նրան փոշիացնում են, և գինով անօթուց խմում։ Եթէ սխալմամբ այս դեղից շատ են խմում, ջրխնած մածուն են ուտում։

—Կատաղած շունը մարդկանց կծելիս սպանում են շանը, երկու կտոր անում և կծուածներին նրանց միջով անցկացնում, որ լաւանան։

*Կողքացաւ.*—Տաքացրած աղիս կամ աղ են դնում։

*Կտրուածի արիւնը կտրելու համար* յարէթի վրայ միզում են և դնում կտրուած տեղի վրայ։

—Շորը այրում են և փոշին դնում կտրուածի վրայ։

—Շաքարի փոշին ածում են վերան։

*Սրով կտրածի.*—Սինամաքի կամ եարի քոլ կոչուած խոտը դմակի հետ խառնում, ծեծում են և դնում վէրքի վրայ։

—Շերամի բոժոժը իւղի մէջ զաղում են և դնում կտրուածի վրայ։

—Շաքարաւազ են ցանում վերան։

*Կողքի կամ Թիկունքի ծակոց.*—Տաքացրած աղ կամ աղիս են դնում։

—Սև բողքը ջերում, և սև կտաւի վրայ հաստ շերտով փըռում և դնում են ծակող տեղի վրայ, շորերով փաթաթում և մինչև քրտնելը անկողնում պառկում են։

*Կոտոշ քաշել.*—Ոսկրացաւ ունեցողի համար ասում են, թէ «քամի» ունի, և սափրիչներին «կոտոշ են դնել տալիս»։ «Կոտոշը» եզան եղջիւրն է, որի սուր ծայրի վրայ մի փոքրիկ ծակ է արած։ Այս գործիքը դնում են ոտի ցաւած տեղի վրայ բերանքսըվայր և ծայրի ծակից ծծում, օդը հանում և իսկոյն մեղրա-

մոմով ծածկում։ Մի քանի րոպէից յետոյ ասեղով ծակում են մոմը, որպէսզի օդ մտնի «կոտոշի» մէջ և յետոյ վերցնում, ուռած տեղը ածելիով կտրատում և նորից «կոտոշը» նոյն կերպ դնում և երբ վերցնում են՝ նա արիւնով լիքն է լինում։

Այս մի քանի անգամ կրկնելուց յետոյ՝ վէրքը կապում են, պատուիրելով, որ երեք օր շարունակ զգուշանան թթու և կծու կերակուրներից։

*Հազի դէմ.*—Չոր թուզը կաթով եփում են, սառը շաքար խառնում, ուտեցնում։

—Սերկևիլի կորիզը կաթով եփում և խմում են։

—Սերկևիլի տերևով թէյ են պատրաստում և խմում։

—Կովի կամ մատակի եփած կաթի մէջ հում ձուի դեղնուցը խառնելով խմում են։

—Երեք օր անօթուց մի մի բաժակ սագի թարմ արիւն են խմում։

—Սառոյց են ուտում։

—Կտաւատի կամ կովի իւղ հալում են և անօթի ժամանակ խմում։

—Մեղր են ուտում։

—Պուտ կոչուած ծաղիկը եփում են սառը-շաքարի հետ և խմում։

—Իշի կաթ են խմում։

—Իւղ են խմացնում. ղանթափի կոչուած ծաղիկը (որից և դեղին գոյն են պատրաստում), եփում են և խմում։

—Ուղտի մէզ են խմացնում։

—Ծիծակը կաթնով եփում են և խմացնում։

—Գղպեղով թէյ են պատրաստում և խմացնում։

—Խունկը մանրում, ջրի մէջ ածում խմում են։

—Գղպեղը կաթի մէջ ածելով եփ են տալիս և խմում։

—Տուարի աղրի կոյտը ծակում են և միջով երեք անգամ անցնում։

*Ձայնը կտրուելու դէմ.*—Հում ձու են խմում։

—Խորոված սոխ են ուտում։

—Լեզուի տակի երակից արիւն են առնում։

—Գարնանացան գարին մաքրում, լուանում, եփ են տալիս ու ջուրը խմում։

—Վայրի մանուշակը և լորենու ծաղիկը շուաքում չորացնում են, թէյի նման պատրաստում և խմում։ Նոյնը գործ են ածում և հազի դէմ։

*Ձեռքի ճաքճքոց.*—Ճրագու են քսում ճաքճքած տեղերին։

Digitized by Google

—Ձէթն ու մեղրամոմը եփում են և քսում ձեռին։

—Ալիւրի Թեփով կամ սպիտակ նաւԹով լուանում են։

*Ծիճուի ճարա.*—Քիչ է պատահում. լինում է երկու տեսակ. որձ և էգ. առաջինը բուժելի, իսկ երկրորդը գրեԹէ անբուժելի է։ Խոցի վերայ դնում են խոզի աղը։

—Մեխակը դնում են ատամի տակ։

*Մազերը երկարացնելու* համար դիմում են հետևեալ միջոցների. խմորի համար գործ ածած ջրի աւելցածով և կամ համբարձման ցօղով լուանում են գլուխը։ Մսի ճիլ են ուտում։ Հաւի փորոտիքի ճարպ, ինչպէս և խոզի իւղ, են քսում մազերին։

*Մազերը Թափուելու դեմ.* Թափուած մազերը կապում են ոտի սրունքին։

*Ուրիշ գիւղ* գնալիս իրենց գիւղից մի քար են տանում և առաջին անգամ լողանալիս ձգում լողանալու ջրի մէջ։

— Տուղտի արմատը եփում են և ջուրը գլխին ածում։

*Մատը աչք ըլել.*—Երբ մատի կամ ոտի վրայ սպիտակում, իսկ մէջ տեղը կապտում է, կապոյտ Թելի ասեղով անց են կացնում վէրքի միջով և անասնի մի աչք դնում վերան, կապում։

*Մատնաշունչ.*—ԹԹխմոր կամ խորոված սոխ են դնում վերան, մինչև հասնում է, ապա սև ձուԹ, դմակ և այծի ճրագու՝ միմեանց հետ խառնած և եփած։

— Ծամոն են դնում։

– Կոտեմի ծաղիկը, փիփերԹի կոկոմը շաքարի հետ ծեծում են և դնում մատի վրայ։

—Տաք մոխրի մէջ են կոխում մատը։

—Ձուի դեղնուցը ալիւրով շաղախում և դնում են մատի վրայ։

—Մածունը շաղախում են ալիւրով, վերան իւղ քսում և դնում մատի վրայ։

*Մէզը կտրուելու դէմ.*—Ծնեբեկի արմատը ծեծում, եփում և խմում են։

*Մէջքացաւ.*—Երբ մէջքը կռանում է և չի կարողանում ուղղուել, մէջքը բռնում քաշում են, մասսաժ անում, խունկը, մեղրամոմը և ձիւԹը միասին եփում, *ճախու* շինում, քաշում մի շորի վրայ և դնում մէջքին, այսպէս անփոխել Թողնում ուԹն օր շարունակ։

—Ծիծական մանր կտրում են, եփում, կրակի վրայից վերցնում, մի քիչ շրէշ խառնում հետը, քսում մի շորի վրայ և կապում մէջքի ցաւած տեղի վրայ։

*Մկնատամ։*—Օձունի խաչ-գաւազանը (Սմբատ Թագաւորի մահարձանը) քերում են, շաղախում և դնում մկնատամի վրայ։

Digitized by Google

—Առամների կեղտ են քսում։

Մոլոքոր. (чесотка).—Սառն ջուր ենածում վերան, նախապէս մի որևէ մօր իւր հարս գնացած աղջկան նուէր տուած ոսկին ձգելով ջրի մէջ։

Մրսածի.—«Ցարարաղնիք» են անում, այսինքն կրակի մէջ քարեր կարմրացնելով ձգում են արդէն եռացրած ջրի մէջ և դընում մրսածի վերմակի տակ, որպէսզի գոլորշիներով քրտնի։

—Մոխրով թէյ են պատրաստում և խմացնում, որ քրտնի։

—Ուրցը և եաւշանը եփում են ջրով, մի քիչ թան աւելացնում, եռացնում. ապա մի աղիւս ձգելով կրակի մէջ սաստիկ կարմրացնում են. մի կաթսայ դնում մրսածի վերմակի տակ, այդ կարմրացրած աղիւսը դնում նրա մէջ, և յետոյ վերոյիշեալ ուրցի և եաւշանի թանախառն ջուրը ածում վերան, որ գոլորշիանայ և քրտնացնի մրսածին։

Մրսելուց փորն ուռչելիս ոչխարի աղբը լցնում են մի ամանի մէջ, լաւ տաքացնում, ածում մի պարկի մէջ և կապում փորին։

—Ղանթափի կոչուած ծաղիկը ջրի մէջ եփում են և խմացնում։

Ոջիլը կտրելու.—Սնդիկը, հինան և կովի իւղը միասին շաղախում են և քսում գլխին։

—Գլխին հաւի կամ խոզի իւղ և կամ սնդիկ են քսում։

Պատառուածք.—Երբ երեխան շատ լաց լինելուց առաջը պատառւում է, ձիւթը, մաստակը, խունկը, մեղրամոմը, զմուռը, հինան և մեղրը հաւասարաչափ և մի ձուի դեղնուց միասին խառնում, եփում, մի կապտաւոյն շորի վրայ քսում և կապում են պատառուածի վրայ։ Երկու օրը մի անգամ փոխում են։

Գլխի ալատառուածք.—Տիրը կաթնով եփում են և դնում պատառուածքի վրայ՝ նախապէս լուանալուց յետոյ։ Մի քանի օրից ձէթ, մեղրամոմ, մաստակ և այծի ճրագու միասին եփում են և դնում պատառուածքի վրայ։

—Մանրած շաքար են ցանում պատառուածքի վրայ և ալանի ձուաձեղ դնում վերան, օրը երկու անգամ։

Պորտը քաշել.—Պորտը բռնում են, մի քիչ բարձրացնում, ոլորում և յետոյ վերան եախու դնում։ Եախուն պատրաստում են հաւասարաչափ խնկից, մեղրամոմից, կիւից (մաստակ) և սև ձիւթից, միասին եփելով։

Պորտը քիլով քաշել.—Փորին սառը ջուր են քսում, ձէթի մէջ թաթախած շորը դնում պորտի վրայ, վառում և իսկոյն քի-

լան (պուլլիկ) բերանքսիվայր ծածկում վերան. մի քիչ յետոյ վերցընում են և վերոյիշեալ եախուն քցում վերան։

*Ջերմ.*—Արևածաղկի տերևները լցնում են օղու մէջ, դնում արևի տակ, յետոյ խմում։

—Գարնանը առաջին անգամ գորտի կռկռոցը լսելիս մի թել երեք անգամ հանգուստում են և պահում, որ յետոյ ջերմ ունեցողի վրայ բռնած արձակեն, որպէսզի վերջինս առողջանայ։

—Սափերաւ կոչուած խաղողի տեսակի արմատը եփում են և $1/2$—1 բաժակ անօթուց խմում։

—Չիլիկ-պուրնի կոչուած բոյսը, որ սովորաբար գործ են ածում թել սևացնելու, եփում են, մի քիչ էլ ծծումբ աւելացնում և երեք առաւօտ խմում։

*Ստամոքսի կատար.*—Մատակի թարմ կաթ անօթուց խըմում են։

*Վախի դէմ.*—Վախեցածին արջի լեղի են խմացնում։ Այս նպատակով արջի լեղին չորացնում են և պահում են հարկաւոր դէպքում գործածելու։

—Վախեցածի մէզը չորեքշաբաթ կամ ուրբաթ և կամ կիրակի գիշերները դնում են աստղի տակ և առաւօտեան անօթուց խմացնում (3 անգամ)։

—Մանանան լուծում են կարմիր գինու մէջ և խմացնում։

*Ցրտի տարած.*—Գոմշի թրիքը տաքացնում են և դնում ցրտի տարածի վրայ. երբ կաշին «պառակոտում» (քայքայւում է), լուանում են և քացախով շաղախած ու փոքր ինչ տաքացրած հինայ դնում։

*Փորացաւ.*—Փորին օղի են քսում և վերան պղպեղ ցանում, կապում։

—Աղաջրով տրորում են փորը և մի բաժակ կտաւատի ձէթ խմացնում։

*Երեխայի փորը ցաւելիս*—մէջքին սառը ջուր են ածում։

—Սառը ջրի մէջ աղ լուծելով քսում են փորին և մէջքին։

—Փոշիացրած խունկն ածում են կնոջ կաթի մէջ և խմացնում։

—Կտաւատի ձէթ են խմացնում։

*Փսխելու դէմ*—շաքար են ուտում։

*Քաչալ.*—Գիւղական տան առաստաղի մուրը, մղիկը, սև ձիւթը, սպիտակ մաստակը, խունկը, մեղրամոմը, մոյգ կարմիր գոյնի ներկը հաւասարաչափ վերցնելով միասին եփում են և քըսում գլխին, նախապէս սափրելով և երեք տեղից ածելիով կտրելով, որ արիւն դուրս գայ։

Քառասուն օր շարունակ, օրը մի անգամ սառը ջրով լուանում են գլուխը և այս դեղից նորից քսում։

Քարխեծ.—Քարի դիպչելուց առաջացած վէրք—ծամոն են դնում։

—Թթխմոր կամ չորթան են դնում վերան։

—Ցամաք թանը թիկնաքոլի տերևների մէջ կլորում են, խորովում, քիչ հովացնում և դնում վէրքի վրայ։

Քարխեծը լինում.է երբ վառեկ ելած ձուի կեղևը կոխում են։

—Թթխմորի վրայ ձէթ են քսում և դնում վերան։

Քթից արյուն հոսելիս՝ կտրելու համար չորացրած պիտնան, խունկը և շաքարը միմեանց հետ ծեծում են և քթախոտի նման քաշում։

—Սարդի ոստայնը քաշում են քիթը։

Քոսոտ.—Խոզի իւղ, ծծումբ, կապոյտ քար և վառօդ հաւասարաչափ վերցնում են, խառնում, օծում մարմինը և գոլ թոնրում նստում։

## ՄԱՀ, ԹԱՂՈՒՄՆ ԵՒ ՄԵՌԵԼՈՑ

Այս գաւառի հայ ազգաբնակութեան մեծագոյն մասն ևս հաւատում է, որ մահուան օրն էլ ճակատագրով նախասահմանուած է և որ ոչ մի միջոց չի կարող յետաձգել այն։ Սակայն փոքրագոյն, համեմատաբար աւելի զարգացած մասն արդէն թերահաւատութեամբ է վերաբերւում դէպի այդ ճակատագրութիւնը։

Ցանկանալով գուշակել, թէ հիւանդը կառողջանա՞յ թէ կը մեռնի՝ խնամողները նայում են նրա աչքերին, եթէ ձախ աչքի բիբը հետզհետէ փոքրանում է, այդ նշան է համարւում, որ հիւանդը չի առողջանալու։

Նախասահմանուած օրը Գաբրիէլ հրեշտակապետը իջնում է հիւանդի մօտ, կանգնում ոտքի կողմը և, եթէ հիւանդը բարի, առաքինի է եղել, «բարի դէմքով» երևում նրան ու առնում հոգին, իսկ եթէ մեղաւոր է եղել, «չար դէմքով» է երևում։ Հիւանդը զարհուրում է և խնդրում որ իրեն մի ուրիշ տեղ տեղափոխեն. այդ ժամանակ հրեշտակը անցնում է դէպի նրա սնարը և առնում հոգին։

Digitized by Google

*Հոգևարքը թեթևացնելու համար եթէ երեխայ է՝ մայրը երեք անգամ ստինքը քսում է նրա բերանին, որպէսզի «ծիծը նրան հալալ լինի, խաղաղութեամբ գնայ», իսկ եթէ չափահաս է՝ նրա ոտների տակ մեղր են քսում, «որ ճանապարհը քաղցր լինի, շուտ գնայ»։ Միայն քչերն են համաձայնում այդ դերը կատարել, որովհետև քսողն էլ չի կարող մեռնել, մինչև որ մի ուրիշը իրեն ոտներին էլ մեղր չքսի։*

*Այդ միևնոյն՝ հոգևարքը թեթևացնելու՝ նպատակով եթէ հիւանդն երկրագործ է՝ խոփը, եթէ դարբին՝ մուրճն ու սալը, եթէ հիւսն՝ ուրագը դնում են կրծքին։ Եթէ հիւանդի սիրելիներից մինը ներկայ չէ և նա տանջւում է նրա կարօտով, վերջինիս շորերը, գաւազանը, նամակը դնում են հիւանդի կրծքին՝ որ հանգստանայ և հոգին աւանդէ։*

*Երբեմն էլ պատահում է, որ ոչ թէ թեթևացնում են հոգևարքը, այլ «հոգեդարձ» են անում. սաստիկ լացով խանգարում են հրեշտակին հոգին առնելու։ Այսպիսի դէպքերում հիւանդը ապրում է դարձեալ մի կամ ութ օր, սաստիկ տանջւելով։ Այդ ժամանակ միայն նկատելով որ հոգեդարձ է եղել, հիւանդին բոլորովին առանձնացնում են և հանգիստ թողնում, որ հոգին աւանդէ։*

*Մեռած բոպէին սիրելիներն ընկնում են վրան և սաստիկ լալիս, բարձրաձայն ողբում։*

*Յետոյ մինը վերցնում է ննջեցեալի գլխի տակից բարձը, եթէ աչքը բաց՝ «աշխարհի ա ըլում», հող է ածում, որ կշտանայ, փակուի. եթէ բերանը բաց է լինում, թաշկինակով կապում է։ Ապա հեռացնելով ներկայ եղողներին՝ հանում են հանդերձները, ձեռները կրծքին խաչում, ոտները բամբակի թելով միմեանց հետ կապում, ձունձի մէջ փաթաթում և երեսը դէպի արևելք դարձնում, ու մի հաց դնում կրծքին։ Այս հացը պահում են և տալիս մեռելից վախեցածներին ուտելու, որ սրտապնդուին։ Այս ժամանակ հրաւիրում են քահանային, որ հոգոց ասի։*

*Երկու կին էլ մի կտաւի կտոր առնելով՝ կանգնում են ննջեցեալի սնարի և ոտների մօտ, կտաւը երեք անգամ մի-*

Digitized by Google

մեանց ձգում «Աստուած ողորմի հոգուն» ասելով և ապա ննջեցեալի վրայ չափում ու պատանք կարում։ Աւելացած կտորը փաթաթում են սանը և երեք օրից յետոյ նուիրում ննջեցեալին լողացնողին։

Յետոյ ննջեցեալին լողացնում են. եթէ կին է՝ կանայք, իսկ եթէ տղամարդ՝ տղամարդիկ, սովորաբար երկու հոգի։ Ննջեցեալին դնում են մի տախտակի վրայ՝ երեսը դէպի արեւելք դարձրած և լողացնում նոր բերած ջրով, զգուշանալով որ կուժը, թէ ջուրը բերելիս և թէ լողացնելու միջոցին, ոչ մի անգամ գետին չդնեն։ Նախ լուանում են գլուխը, ապա կուրծքը և ոտները ասելով.

*Քարդ քաղած ըլի,*
*Հողդ մաղած ըլի,*
*Աջու դասին արժանի ըլես.*
*Աչքդ օջախիդ վրայ քաղցր ըլի.*
*Մենք էլ քե չմոռանանք:*
*Օղորմի քի, լիսեղէն էիր լիս դառար.*
*Ճամբէդ բարի ըլի:*

Յետոյ լողացնողները միմեանց ձեռքի ջուր են ածում, լուացւում և կուժը այդ տեղում գլխիվայր տնկում և երեք օր այդ պէս թողնում։

Ննջեցեալին լողացնելուց յետոյ պատանքում են, պատանը կարում, միայն կրծքի մօտ բաց թողնում ասեղը վրան շուլալած, որպէս զի յետոյ եկեղեցում նշխարն ու վարշամակը դնեն։

Երիտասարդ ննջեցեալի վրայ նոյն կտորից մի գօտի և մի ուսկապ են կապում։ Ուսկապը անց են կացնում պարանոցով, կրծքի վրայ խաչաձև կապում և ծայրերը ամրացնում գօտիում։

Երեխայ ննջեցեալի ականջների և քթածակերի մէջ և աչքերի վրայ բամբակով փաթաթած խունկ են դնում, ձեռքերին մի մի խաչաձև մոմ տալիս, միայն նախապէս մի մոմը վառում են, յետոյ նրանից միւսը վառում, և ձեռքով հանգցընում առաջինը, ապա կրկին վառում առաջինը և հանգցնում

երկրորդը, յետոյ նորից վառում, երկուսը միմեանց մօտեցնում և միասին հանգցնում։

Ապա դնում են դագաղի մէջ և երեսքաշը (քիշմիր կամ չիթ կտորից) ծածկում վերան։

Այժմ հետզհետէ ընդհանրանում է ննջեցեալներին հանդերձ ձագցնելու և գլուխը յարդարելու սովորութիւնը։ Պահանջւում է, որ շապիկն ու վարտիկը անշուշտ նոր լինին, իսկ միւս շորերը ոչ մի անգամ չլուացուած, որովհետև «տաշտակը հարամ ա», մեղք է։

Դագաղը շինում են հասարակ փայտից, կարելոյն չափ թեթև, որովհետև «դատաստանի օրը շալակելու են այն և այնպէս դատաստան գնալու»։ Դագաղի վրայ քաշում են սև կտոր՝ եթէ պառաւի և կարմիր՝ եթէ երիտասարդի համար է։ Նոյն գոյնի է լինում և երեսքաշը։

Պատահում է, որ դագաղի մէջ դնում են եթէ ննջեցեալը դարբին է եղել՝ մուրճ, եթէ հիւսն՝ ուրագ, եթէ սափրիչ՝ ածելի, մի խօսքով նրա պարապմունքին վերաբերեալ մի որևէ գործի։ Քահանաների կրծքին էլ աւետարան են դնում, և այն էլ, երբեմն, ձեռագիր, կողքին դաւազան։

Քանի ննջեցեալը տանն է, նրա բարեկամներն առանձին-առանձին, կամ միքանիսը միասին քահանայի հետ գալիս են և հոգոց ասել տալիս, իսկ եթէ բարեկամը ինքը քահանայ չի բերում իւր հետ՝ ընդհանրապէս անբիծք չի կատարւում։

Սովորաբար ննջեցեալին, եթէ անչափահաս է, նոյն օրը թաղում են, իսկ եթէ չափահաս՝ երեք օր պահում են կամ տանը կամ եկեղեցում։ Թէև կան աւելի յետ ընկած գիւղեր, ուր ննջեցեալին մի օր անգամ չեն պահում։

Ննջեցեալին եկեղեցի տանելիս ոչ միայն ազգականներն ու բարեկամները, այլ և բոլոր ծանօթները, հետևաբար ամբողջ գիւղի տղամարդիկ և պառաւները յուղարկաւորում են։

Տան մէջ կարգը կատարելուց յետոյ շատերը փաթաթւում են ննջեցեալին, լալիս, ողբ ասում և բարեմաղթում. «Գնացած ճանապարհդ բարի ըլի. դատաստանդ քաղցր ըլի»։ Դագաղը վերցնելիս նրա տեղը մի քար են դնում, որպէսզի նըն-

Digitized by Google

*ջեցեալի «ոտը ծանդր ըլի օջախին վրայ», և նոյն տանից շուտով ուրիշն էլ չմեռնի։ Նոյն նպատակով էլ սենեակից հանելիս դագաղը երեք անգամ խփում են դռանը և յետ տանում։*

*Ննջեցեալին եկեղեցում դնում են յատակի վրայ, և ոչ դիազարդի, ինչպէս առհասարակ քաղաքներում, յաճախ նախապէս մի կապերտ փռելով։*

*Չափահասների համար սովորաբար պատարագ են մատուցանում, իսկ անչափահասներին և մանաւանդ աղքատներին առանց պատարագ մատուցանելու են թաղում։*

*Պատարագի միջոցին ննջեցեալի սնարի և ոտների մօտ կլեպտար (կերոն) են դնում, մոմ վառում։ Պատուել ցանկացողները նոյնպէս մոմեր են դնում և այդտեղ վառում։*

*Թաղման կարգը կատարելիս քահանան վարշամակը և մի նշխար դնում է ննջեցեալի բերանի վրայ, այս ժամանակ պատանք կարողը մօտենում է և պատանքի կրծքի բաց մնացած մասը կարում է և ասեղը վերան կոտրում։*

*Այս միջոցում կանայք շրջապատում են դագաղը, չոքում, փաթաթւում ննջեցեալին, սաստիկ լալիս և բարձր ձայնով ողբեր ասում երգելով։ Սովորաբար «մայր-ողբոց» հանդիսանում է գիւղի մէջ այդ մասում անուն հանած մի կին, ինչպէս օրինակ Օձունում Գիւրգենանց Թալալը, կամ Ճարոյենց Աղիզը։ Սա դրուատում է ննջեցեալի գործերը երգելով և լալով. շրջապատող կանայք կրկնում են նրա վերջին խօսքերը, նոյնպէս լալով։*

*Ահա մի քանի նմուշ այդ ողբերից*).*

*Մանկան վրայ.*

*Կարմիր արևից ընկած, բալայ ջան,*
*Կանանչ տերևից ընկած, բալայ ջան,*
*Տերևաթափոյին թափահարուած, բալայ ջան,*
*Ջրերի հետ տարուած, բալայ ջան։*
*Աչքիս լիս տանող, բալայ ջան,*

**) Սրանցից մի քանիսը Ե. Երզնկեանն է գրի առել։*

*Սրտիս տայաղ[1]) անող, բալայ ջան,*
*Մեր ֆողին[2]) փանահ[3]) անող, բալայ ջան,*
*Վո՛ւյ էս ինչ թաւուր բան ա, բալայ ջան,*
*Անզուռնա հրամանքաւոր են եկել, բալայ ջան,*
*Անմեձրիլ մեձարքաւոր են եկել, բալայ ջան,*
*Անեխայ շապիք են հագցրել քեզ, բալայ ջան,*
*Անկտուր տուն են դնելու քեզ, բալայ ջան։*

*Նորահարսի վրայ.*

*Արեգակ (է)իր խաւարեցիր, Մանիշակ ջան,*
*Մանիշակ իր թառամեցիր, Մանիշակ ջան,*
*Լիմնիակ իր բոլորվեցիր, Մանուշակ ջան,*
*Վարդի պէս կարմիր բացուեցիր, Մանուշակ ջան,*
*Սարերի սաւոր, Մանիշակ ջան,*
*Սև քուշուշքաւոր[1]), Մանիշակ ջան,*
*Դեղնածաղկի կարօտ, Մանիշակ ջան,*
*Եղածաղկով հղոտ, Մանիշակ ջան,*
*Քողրած քորոցաւոր, Մանիշակ ջան,*
*Սև քուշուշքաւոր, Մանիշակ ջան,*
*Նաշխուն շոշաւոր[2]), Մանիշակ ջան,*
*Կանանչ քոշաւոր, Մանիշակ ջան։*
*Մատնուքը մատիդ, Մանիշակ ջան,*
*Քորոցը ճըկատիդ, Մանիշակ ջան,*
*Ասեղը պտղնցիդ, Մանիշակ ջան,*
*Մկրատը ճըկըթիդ, Մանիշակ ջան,*
*Խաս[3]) ու դումաշը[4]) հագիդ, Մանիշակ ջան,*
*Հայլին ըղաքիդ, Մանիշակ ջան,*
*Հարգևոր հարկաւոր, Մանիշակ ջան,*
*Ամենքին դիրեկան[5]) սիրեկան ջան։*

*Երիտասարդի վերայ.*

*Թամքած ձիաւոր, որդի ջան,*
*Թուխ եփնջաւոր, որդի ջան,*
*Իմ սարերի ծաղիկ, որդի ջան,*
*Շարմաղ (բարակ) ճակատիդ մեռնիմ,*
*Լըխտիկ (գեր) կռներիդ մեռնիմ,*

---

[1]). Նեցուկ. [2]). հողին. [3]). յոյս դնող.
[1]) քող. [2]) զարդ. [3]). Թանգագին. [4]) շոր. [5]). հաճելի

Շիշմատ սրտիդ մեռնիմ,
Չալչալ աչքերիդ մեռնիմ,
Քո նամը կորել էր
Քո մահը տեսել չէր, բալա՛.
Ինչ քե էր գալու՝
Ինձ գէր, բալա՛.
Բալա, բալա, բալա,
Անուշ բալա, ջան բալա,
Իմ սրտի սրտակ բալա,
Իմ խելօք, ճարտար բալա։

Կարդալ իմացող որդու վրայ.

Հիւանդ տեղդ շուռ եմ տուել,
Ծարաւ տեղդ ջուր եմ տուել,
Ա՛յ իմ թագաւոր որդի ջան,
Գրաւոր, դաւթարաւոր որդի ջան։
Ուսիդ ուրարին մեռնիմ,
Ձեռիդ փուրվարին մեռնիմ,
Ժանգոտ ղալամիդ մեռնիմ,
Թոզոտ գրքերիդ մեռնիմ։
Գրանքդ թոզոտել ա,
Կողպէքը ժանգոտել ա,
Գրանքդ անտէր ա մնացել,
Էլ ո՛չ հէր, ո՛չ մէր ա մնացել։
Ժամաշապիքդ հանել՝
Անեխայ շապիկ են հագցրել,
Քեզ անկտուր տուն են դրել,
Վայ էս ինչ բան են արել.
Աստուածանէ կտրեց իմ բարին,
Նարաբ ինձ խի՞ սէնց արին,
Զկել սոր գլուխս չոր քարին,
Հմի էլ թողիր աչքս արին (արիւն)։
Անուշ բալա, ջան բալա։

Երկրագործի վրայ

Աչքդ խուփ վախտն եմ եկել,
Անկաճդ խուլ վախտն եմ եկել,

Ա՜խ ինչ անեմ որ ինձ լըսես,
Էրուած սրտիս մի դեղ քսես։
Մանգաղը ձեռիցդ ա ընկել,
Բահը ուսիցդ ա ընկել,
Մահը իմ մտիցս ա ընկել,
Ահը սրտիցս ա ընկել։
Աշխատաւոր ջանիդ մատաղ,
Լարած գութանիդ մատաղ,
Աշխատանքիդ, բանիդ մատաղ,
Լծկանիդ ու կթանիդ մատաղ.
Ցերեկը տուն չես մտել,
Գշերը քուն չես մտել,
Ա՜խ ես քու արևիդ մատաղ,
Գլուխս գլխիդ սադաղ։

Հարսը ողբում է սկեսրոջը.

Նանի ջա՜ն, նանի ջան,
Իմ քէյվանի նանի ջան.
Իմ սարի սարուոր նանի ջան,
Քաղցր ծծերիդ մեռնիմ, նանի ջան,
Անուշ լեզուիդ մեռնիմ, նանի ջան,
Իմ երեսի փարդայ, նանի ջան,
Իմ կրակի անթեղ, նանի ջան,
Իմ դռան փակիչ, նանի ջան,
Երեխէքը քեզանայ ահ ունէին, նանի ջան,
Վա՜յ թէ էրեխներուս ամօթը փախչի, նանի ջան,
Բա ես անահ ո՞նց ապրիմ, նանի ջան,
Իմ մեծ կծիկ, նանի ջան,
Իմ մեծ ոստ, նանի ջան,
Դուռն էկողին ջուղապ (պատասխան) տուող, նանի ջան,
Տուն էկողին պատիւ տուող, նանի ջան,
Ջուաձեղի ղօնաղն էլ դու գիդէիր, նանի ջան,
Ալլիկով սպասինն էլ դու գիդէիր, նանի ջան.
Բա որ հիմա գան ո՞նց պատուեմ, որ շնորհակալ ըլին, նանի ջան։

Բա որ աղջիկդ գայ մէր ուզի,
Փեսէդ գայ զանքաճ ուզի,
Բա ես ինչ ջուղապ տամ, նանի ջան,
Մեծ շուաքիդ մեռնիմ, նանի ջան,

Digitized by Google

*Մեծ շուաքդ կտրուեց, Նանի ջան,*
*Նանի ջան, Նանի ջան,*
*Ծերան ձեռքով, իրան ոտքով գնացող Նանի ջան։*
*Վա՜յ թէ քու խաթեր բարեկամներին յետ դառնան, Նանի ջան,*
*Էլ ինձ չճանաչեն, Նանի ջան։*

Լալկան կանանց հեռացնելով դագաղը հանում են եկեղեցուց և դնում դռան առաջ։ Այժմ էլ քահանան տիրացուների հետ սկսում է զանձ ասել, չնայելով որ վաղուց այս արգելուած է։ Բոլոր յուղարկաւորողները համբուրում են ննջեցեալի կրծքից և նրա վրայ դրած ափսէի մէջ դրամ ձգում, որը պատկանում է քահանային, իբր վարձատրութիւն զանձ ասելուն, ապա ինչո՞ւ օրինազանց կը գտնուէր։

Վերջապէս ուժով հեռացնում են կանանց և չորս հոգի դագաղը ձեռներին բռնած կամ ուսերին դրած տանում են դէպի գերեզմանատուն։ Յուղարկաւորողները չուտ չուտ փոխարինում են այդ չորս մարդկանց, որպէսզի «ննջեցեալի երախտիքի տակից դուրս գան» և թէ տանողները չյոգնին։ Դիակառք նոյն իսկ Շուլավէրում և Ջալալօղլում չկայ։

Կանայք եկեղեցու դռանը մի քիչ էլ լաց լինելուց յետոյ վերադառնում են ննջեցեալի տունը, նրանցից ոչ մինը չի յուղարկաւորում ննջեցեալին մինչև գերեզմանատուն։ Տուն վերադառնալով ննջեցեալի շորերն առաջ են բերում, ողբը ասում, լալիս, և ապա լուացւում ու սպասում տղամարդկանց վերադարձին։

Յուղարկաւորող տղամարդիկ դագաղը տանում են դէպի գերեզմանատուն, կէս ճանապարհին վայր դնում, կարգ կատարում, զանձ ասում, խաչհամբոյր ձգում և ապա կրկին վերցնում և տանում դնում գերեզմանի աջ կողմը։ Յուղարկաւորութեան միջոցին ամենից առաջ գնում է ժամակոչը կամ մի ուրիշ անձն՝ դագաղի խուփը ձեռին բռնած, լայն ծայրը վերև, նեղը ներքև, ներսի կողմը դէպի իրեն դարձուած։ Սրան հետևում են խաչվառ կրող մի կամ երկու տիրացու, ապա քահանան՝ սուրջառը վերան, և յետոյ արդէն դագաղը կրողներն ու յուղարկաւորողները։

Digitized by Google

Մինչդեռ քահանան կարգ է կատարում, գերեզման փորողները իջեցնում են դագաղը գերեզման, իսկ եթէ առանց դագաղի է, ջուխայի (նաշ) մէջ դրած, մի կապերտում փաթաթած, որ սակայն քիչ է պատահում, հանում են ննջեցեալին կապերտից և բռնելով նրա ոտներից և գլխից իջեցնում գերեզման և թրխկալով ձգում մէջը. միայն այս դէպքում ուրիշ երկու հոգի կապերտը կամ երեսքաշը բռնում են գերեզմանի վրայ, որպէսզի պատանքած դիակը շատ աչքի չընկնի։

Քահանան մօտ ազգականի բռի մէջ օրհնում է մի բուռն հող և ձգել տալիս ննջեցեալի վրայ. միւս յուղարկաւորողներն էլ հետեւում են նրան և մի մի բուռ հող ձգում վերան ասելով. «Աստուած ողորմի հոգուն»։ Ապա գերեզման հատողները հողով լցնում են գերեզմանը և մի թումբ շինում վերան։ Թաղման կարգն աւարտելուց յետոյ յուղարկաւորողները ձեռք են տալիս ննջեցեալի մօտիկ անձնաւորութիւններին և ասում. «Աստուած սիրտդ մխիթարի», կամ «Աստուծով մխիթարուիր»։ Ցետոյ ննջեցեալի տիրոջ հրաւէրով գնում են սգատուն, լուացւում ու նստում հաց ուտելու, այս ճաշը կոչւում է «ծնկնահաց»։

Ընդհանրապէս մի եզ են մորթում և թողբաշ ու փլաւ պատրաստում։

Ճաշի աւարտին «ողորմաթաս» են խմում, բարեմաղթելով, որ Աստուած ողորմի այդ գերդաստանի նոր և հին բոլոր ննջեցեալների հոգիներին և ապա բոլորը կանգնում են ու քահանան, որ սեղանակցում է, հոգեհանգիստ է կատարում։ Անմիջապէս տղամարդիկ ցրւում են և կանայք են նստում ճաշելու։

Ճաշ են տալիս նաև գերեզման փորողներին, որոնք երեկոյեան էլ գալիս են ընթրելու և եօթական հաց ստանալու իբր վարձատրութիւն իրենց կրած նեղութեան։ Եւ այս եօթական հացերը նրանք անշուշտ այդ թաղման երեկոյեան են ստանում, որպէսզի «բահի և թիի ձայնը կտրուի» ննջեցեալի ականջից։

Նոյն երեկոյեան գերեզմանի վրայ կրակ են վառում, որպէսզի «բորենին չգայ և մեռելը հանէ»։

Digitized by Google

Տանն էլ, այդ երեկոյից սկսած մինչև «եօթը» գիշերները ձէթի ճրագ են վառում, որպէսզի «ննջեցեալի ճանապարհը լոյս լինի»։

Նոյն թաղման երեկոյին բարեկամները երխաների ձեռքով «սգասեղան» են ուղարկում ննջեցեալի տունը։

Սգասեղանը բաղկացած է լինում հետևեալ կերակուրներից կամ խմիչքներից՝ փլաւ, տապակած կամ խաշած հաւ, լոբի (եթէ պաս է), գինի և օղի։ Այս սգաւորի տանից մինը գնում և հրաւիրում է սգասեղան ուղարկողներին և հիւրասիրում նրանց թէ այդ ստացած և թէ այլ կերակուրներով ու խմիչքով։

Թաղման երկրորդ օրը «կիղնափողէկ» է։

Առաւելապէս կանայք հաւաքւում են սգաւորի տունը և «սգմէրների» հետ գնում գերեզմանատուն, քահանային օրհնել տալիս գերեզմանը, լալիս, ողբեր ասում, և ապա վերադառնում սգատուն, հաց ուտում, ցրւում։

Թաղման երրորդ օրը ննջեցեալին լողացնող կանայք գալիս են սգատուն ննջեցեալի շորերը լուանալու։ Տանեցիք ննջեցեալի հանդերձները, գլխարկը կամ գլխի շալը և անկողինը (եթէ այրի է) տալիս են քահանային իբր կողոպուտ, իսկ շապիկը, վարտիկը և գուլպաները՝ լողացնողներին։

Թաղման օրը սգասեղան չբերող բարեկամներն այսօր են բերում, և ստիպում են կանանց գլուխները լուանալ, բայց սովորաբար նրանք, ոչ էլ տղամարդիկ չեն համաձայնում, և մինչև եօթը ծանր սուգ են պահում. կար չեն անում, ճախարակ չեն մանում, ոչ մի տեղ չեն գնում. տղամարդիկն էլ չեն սափրւում և հազիւ է պատահում, որ գործի գնան։

Թաղման եօթներորդ օրը «եօթն» են տալիս, թէպէտ և պատահում է, որ զանազան, մանաւանդ չքաւորութեան, պատճառով այս «եօթը» յետաձգւում է նոյնիսկ մինչև մի տարի։

«Եօթին» սովորաբար պատարագ են մատուցանել տալիս, որին ներկայ են գտնւում ննջեցեալի բարեկամները և ապա գալիս են սգատուն հոգու հաց ուտելու։ Սովորաբար մորթում են 3—4 ոչխար կամ մի եզն, և եօթը կաթսաներով

Digitized by Google

կերակուր պատրաստում, որոնցից չորսի մէջ կորկոտ կամ շիլափլաւ, իսկ երեքի մէջ՝ բոզբաշ։

Երբ տղամարդիկ ճաշում վերջացնում են, ս. սեղանը առաջ են բերում։

Ս. Սեղանը մի սկուտեղի մէջ դրած եփած հաւ, մեղր, 7 գաթայ, կարմիր ձուեր, խնձոր, անշուշտ ոչխարի կոնքի ոսկրը (բոլոր ոսկր) խաշած և այլ մրգեղէններ են, մի մի շիշ էլ գինի և օղի։

Ս. Սեղանը պտտեցնում են և բոլորը քսում են ձեռքերը սկուտեղին՝ ասելով. Աստուած հոգին լուսաւորէ։

Ապա բոլորը կանգնում են, քահանան հոգեհանգիստ է կատարում, որից յետոյ տղամարդիկ ցրւում են, ու կանայք նստում հաց ուտելու։

Ս. Սեղանը ուղարկւում է քահանայի տունը։

Եօթի հետեւեալ օրը, առաւօտեան նորից մօտիկ ազգականները հաւաքւում են սգատուն, սգուորների հետ նախ եկեղեցի և ապա գերեզմանատուն գնում, օրհնել տալիս գերեզմանը և վերադառնում։

Մի քանի օրից կանայք սապոն վերցրած գալիս են սգատուն, լուանում են սգուորների և իրենց գլուխները և այսպիսով նրանց սգից հանում։ Տղամարդիկն էլ սափրիչի հետ գալիս են և տան տղամարդկանց ու իրենց միրուքները սափրել տալիս։

Քառասունքին կամ տարելիցին շատ քչերը, այն էլ միայն հարուստներն են պատարագ մատուցանել տալիս ու հոգեհաց տալիս։

Գլխաւոր մեռելոցներին օրհնել են տալիս բոլոր, հին և նոր ննջեցեալներին՝ գնալով գերեզմանատուն։

Աւագ ուրբաթ օրը բարեկամների հետ գնում են գերեզմանը օրհնել տալիս, վերադառնում սգուորի տունը և հաց ուտում։ Այդ օրը անեկ բաղարջ են անում, «որովհետև Քրիստոս խաչուած է, խաշը (թթխմորը) չեն շարժիլ» և մէկ էլ «անեկ հացը մեռելի բաժինն է»։

Ս. Խաչին սգուորը իր մօտիկ ազգականներից ոչխար,

գաթայ, միրգ, խաղող, դեղձ ստանալով, հրաւիրում է նուիրողներին և հիւրասիրում նրանց ճաշով, քահանային էլ ժամոց (20 կ.) մի բաժին կերակուր, 2 հաց, 3 մոմ և բաժակի համար մի շիշ գինի է ուղարկում։

Հետևեալ օրը, մեռելոցին, բարեկամները կրկին հաւաքւում են սըգատունը և սըգաւորների հետ գնում գերեզմանատուն։ Սըգաւորը վերցնում է իւր հետ զանազան մրգեր և շարում գերեզմանի վրայ։

Քահանան գերեզմանը օրհնելուց յետոյ սըգաւորը քահանային բաժին է հանում այդ մրգերից և մնացածով հիւրասիրում ներկայ եղողներին. ապա միրանի հաց թողնելով գերեզմանի վրայ, վերադառնում են տուն և ճաշում, ցրւում։

Գերեզմանատունը ընդհանրապէս գտնւում է գիւղից դո՛ւրս, այլևս ո՛չ եկեղեցու շուրջը, յաճախ ճանապարհի կողքին։ Ծառեր բոլորովին չեն տնկւում, և ոչ էլ ծաղիկներ ցանւում գերեզմանի վրայ։ Ամէն գերդաստան աշխատում է իւր բոլոր անդամները միմեանց մօտ, նոյն իսկ կից թաղել, և այս պատճառով ամէն ջանք գործ են դնում, որ կարողանան նոյն իսկ շատ հեռու տեղերում վախճանուածներին բերել, գերդաստանական գերեզմանատանը թաղել։ Օտարութեան մէջ դեգերողների վերջին խղձն ու կտակն էլ յաճախ այդ է լինում՝ հանգչել իւր ծննդավայրում, իւր ծնողների և սիրելիների մօտ։

Գերեզմանները կանոնաւոր շարքերով չեն դասաւորուած, այլ այս ու այն կողմում անկանոն կերպով կուտակուած, իրենց շուրջը նոյն գերդաստան միւս անդամների համար տեղ թողնուած լինելով։ Սովորաբար գերեզմանի վրայ հողաթումբ են կանգնեցնում և մի քանի քարեր շարում, իսկ փոքր ի շատէ միջոց ունեցողները՝ գերեզմանաքար են ձգում։ Սրանք կամ դագաղաձև և կամ քառանկիւնի են լինում, տապանագրով և երբեմն իւր ննջեցեալի և կամ նրա պարապման յատկանիշ մի գործիքի պատկերով։

Առանձին գերեզմանահատներ չկան, այլ իւրաքանչիւր ննջեցեալի չքաւոր բարեկամները կամ հարևաններն են փորում գերեզմանը, որի համար և իբր վարձատրութիւն եօթական հաց

և ննջեցեալի շորերից են ստանում և սգատանը հաց ուտում։

Գերեզմանը մօտ երկու արշին խորութեան են փորում, և աւարտելիս բահն ու թին խաչաձև դնում վերան, որ սատանան ներս չմտնի և երբ ննջեցեալին ամփոփելուց յետոյ վերադառնում են՝ բահը հակառակ կողմով են անցկացնում կոթին, որպէսզի ինչպէս անսովոր մի բան է այդպիսի բահը, այնպէս և անսովոր բան, լինի գերեզման փորելը։



Digitized by Google

# ՀԱՒԱՏՔ

## ԼԵՌՆԵՐԻ ԵՒ ՔԱՐԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

*Լեռների պաշտամունք*. Լեռների պաշտաման վերաբերեալ ոչինչ չկայ Լօռում, չնայելով որ ոչ մի փոքր իշատէ նշանաւոր լեառ չկայ, որ իւր գագաթին չկրէր մի ուխտատեղի, միջանի սուրբ համարուած ծառեր, աղբիւր և այլն։

*Քարերի պաշտամունք*. Լօռում քարերի պաշտամունքից շատ քիչ բան է մնացել։ Արդուինի մօտ գտնւում է «Օձի պորտը», որ երկու ահագին քարաշերտ է. ժողովուրդը դրանց համարում է քարացած վիշապներ—օձեր, և նրանց առաջ մոմ վառելով բժշկութիւն հայցում [1]։

Բացի սրանից Օձունի և Ս. Նշանի միջև գտնուող Ս. Կիրակի ուխտատեղում կայ մի կլոր, սև քար, որի վրայ ոչ մի խաչ չի քանդակուած։ Սա կոչւում է «Դողի խաչ» և պաշտւում է իբրև ջերմ (դող) հիւանդութեան բուժիչ։

Ձուլավէրումն էլ մի ահագին ժայռ կայ, որի գագաթին մի ժամանակ բերդ է կառուցուած եղել։ Այս ժայռի մէջ կան երեք ծակեր, որոնց միջով ամուլ կանայք երեքական անգամ անց են կենում, որպէսզի որդի ունենան։

Հաղբատի արևելահարաւային կողմում, առուակի ափին մի քարքարոտ տեղ կայ, որ Քօսի սար է կոչւում։ Այս տեղը ոչ ոք չի վարում, որովհետև «վարողը բորոտութիւն է ստանում»։

---

[1] Տես այս մասին Օհան Օձնեցու մասին եղած աւանդութիւնները և Ջրի պաշտամունքը։



Digitized by Google

## ՋՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

Հայաբնակ շատ գաւառների նման Լօռում ևս մինչև այժմ դեռ մնում են նախկին ջրապաշտութեան հետքեր, դեռ ևս կան ջրեր, որոնց ժողովուրդը դիմում է ա. զանազան հիւանդութիւններից բժշկուելու կամ անասուններին բժշկելու, բ. որդի ունենալու, գ. սակաւակաթ կանանց կաթն աւելացնելու, դ. երեխաները շուտով ոտք ելնելու և ե. արտերը մորեխից և զանազան միջատներից պաշտպանելու համար։

Պէտք է ասել, որ բացի հաւատի նեարդային հիւանդութիւնների վրայ արած բարերար ազդեցութիւնից, այս սուրբ համարուած ջրերը մեծ մասամբ հանքային լինելով բուժում են կաշու հիւանդութիւններ։

Այսպիսի աղբիւրներից յիշենք ամենանշանաւորները. Արդուլի գիւղի Օձի պորտի [1]) աղբիւրի մօտ առաւելապէս բորոտ և առհասարակ հիւանդ մարդիկ ուխտ են գալիս, մոմ վառում, խունկ ծխում և այդ ջրով լողանում, խմում կամ վէրքերին քսում, որ առողջանան։

Նոյն այս ջրի մէջ միքիչ աղ աւելացնելով տալիս են հիւանդ անասուններին, որ առողջանան։

Հաղբատի մօտ, Խէչի-դուռ լերան վրայ մի աղբիւր կայ «Թնդոց» անունով. այստեղ ևս ուխտ են գալիս, մոմեր վառում, մատաղ կտրում, թէ՛ մարդկանց և թէ կենդանիների համար առողջութիւն հայցելով։

Մեծ Ձուլավէր գիւղի Ծակ-Քար ժայռի ստորոտում հանքային ջուր է կաթկաթում։ Բորոտները սրա առաջ մոմեր են վառում՝ և ջրից իրենց վրայ քսում, որ առողջանան։

Ուզունլարում, այգիների մօտ կայ մի «Զօրաւոր աղբիւր», ուր քոսոտ մարդիկ մոմ են վառում, խունկ ծխում, ջրից վերաները լցնում, որպէսզի բժշկուին։

Ս. Նշանի վանքի մօտ մի քարայրի մէջ մի փոքրիկ աղբիւր կայ, որ կոչւում է «Թնդոց»։ Ամուլ կանայք այս ջրի ա-

---

[1]) Տես Օհան Օձեցու մասին եղած աւանդութիւնները։

Digitized by Google

առաջ մոմ են վառում, այրի անցքով երեք անգամ անցնում, որ երեխայ ունենան: Նոյն անցքով անց են կացնում նաև այն երեխաներին, որոնք ժամանակին ոտք չեն ելնում։

Վարդաբլուրից ոչ հեռու Ս. Սարգիս ուխտատեղու մօտ գետնից բղխող մի աղբիւր կայ, որ *Կաթնաղբիւր* է կոչւում. Կաթ չունեցող կանայք ուխտ են գալիս այստեղ, մոմ վառում, ջրից իրենց ստինքներին քսում, որպէսզի կաթ ունենան։

Երբ «բողոճ» կոչուած միջատը ծծում է ցորենի հասկի հիւթը, գիւղացիները մի քանի ամուրի այր մարդիկ են ուղարկում «բողոճի ջուր» բերելու. Սա գտնւում է Չարդախլու գաւառում մի այրի մէջ. մի վճիտ աղբիւր է, որ «գոյացել է այրի առաջ թափուած ճգնաւորի արցունքներից»։ Անխօս մօտենալով աղբիւրին, մոմեր են վառում, երկրպագում և ջրից վերցնելով վերադառնում, զգուշանալով, որ ջրի սրուակը գետնին չը դնեն, այլ շարունակ իրանց վրայ պահեն, նոյն իսկ քնելիս։ Ջուրը բերում, դարձեալ անխօս մտնում են եկեղեցի, դնում սեղանին և ապա քահանան վերցնում է այդ և բոլոր գիւղականների հետ շրջում արտերը, անդաստան կատարում և ջուրը սրսկում արտերին։ Իսկոյն «այդ բողոճները կոտորւում և կամ թռչում հեռանում են»։

Երբ մօրեխն է կոտորում արտերը, նոյն ձևով գնում Մասիսի վրայից Ս. Յակոբայ աղբիւրի ջրիցն են բերում և անդաստան կատարելով սրսկում արտերին։ Իսկոյն երևում են սև *ժեռ* կոչուած թռչունները, որոնք կոտորում են մօրեխներին։

## ԿՐԱԿԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ.

Կրակապաշտութեան իբր մնացորդ կարելի է յիշատակել հետևեալները.

1) Տարեմուտին մի ահագին գերան են դնում օջախի մէջ, որ անշէջ վառւում է մինչև Քրիստոսի Ծննդեան օրը, և այս գերանի խանձողները թաղում արտերում, որ կարկուտ չը

*խփի, և այլն ինչպէս մանրամասն գրել եմ «Նոր—տարի» նկարագրութեան մէջ։*

2) *Կրակով երդւում են։*

3) *Կրակի վրայ ջուր չեն ածում։ Բայց երբ բացօթեայ տեղումն են կրակ անում, որպէսզի արգիլեն սատանաներին կրակից տանելու՝ վերան խաչակնքուելով ջուր են չաղ տալիս։*

3) *Կրակին չեն խփում, վերան չեն թքում, վրայից չեն անցնում, մեծ մեղք համարելով այդ բոլորը։*

4) *Գիշերները կրակ դուրս չեն տալիս։*

5) *Հաւատալով, որ կրակը կարող է չարերին հալածել, անթեղ անելիս խանձողի կոթը դէպի դուռն են ուղղում, որպէսզի չարը ներս մտնելիս դէպի նա գայ և հալածուի։*

6) *Եթէ փայտը վառուելիս ձայն է հանում, ասում են, թէ իրենց բամբասում են։*

7) *Կրակին համահաւասար յարգանք մատուցւում է և կրակարաններին—օջախին ու թոնրին։ Սրանցով էս երդւում են, սրանցով անիծում, թոնրի վրայ պսակ և կնունք կատարում, մեռոնաջուրը սրանց մէջ ածում, հարսանիքին նորապսակները համբուրում են օջախը, ողջերթը շատ անգամ օջախի մօտն է կատարւում։ Նոր տուն շինելիս առաջին անգամ հին տան օջախից են վերցնում կրակը տան ամենամեծ անդամի ձեռից և տանում վառում։ Նոր հաւ, հորթ, գառն գնելիս՝ մօտեցնում են օջախին և ոտների վրայ ջուր ածում։*

*Արևապաշտութեան, հեթեանոսական և կրակապաշտութեան մնացորդ է և այն, որ ծննդաբերութիւնից յետոյ տատմայրը նորածնին գիրկն առած և ձեռքին ծայրը մի սև անցկացրած շամփուր բռնած դուրս է գալիս՝ դառնում դէպի արեգակը և աղօթում. «Ցուրտ բեզնակ, Լս հրեխի փայլ տաս, երկնքիցը ցօղ ցօղայ, գետնիցը պտուղ ստանայ»*)։*

---

*) *Տես «Տղաբերք և կնունք» գլխում.*

## ԾԱՌԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

*Լօռում էլ կան սուրբ համարուող ծառեր, զարդարուած բազմաթիւ, գոյնզգոյն շորերի և բամբակեայ թելերի կտորներով, որոնցով ուխտաւորները կապել են այդտեղ իրենց ցաւերը։*

*Բայց ծառապաշտութեան մնացորդներից աւելի հետաքրքրականն ու Լօռուն առանձնայատուկն այն է, որ պառաւ կանայք մեղք են համարում փայտի վրայ ոջիլ կամ լու ջարդել, իսկ ծերունիները պատմում են, որ առաջները դրամ փոխ տալիս մօտենում էին տան սեանը և նրա առաջ դրամը յանձնելով ասում. Թող այս սիւնը վկայ լինի, որ 'ես քեզ այսքան դրամ փոխ եմ տալիս։ Եւ այժմ էլ, երբ երեխաները տան սեանը խփում են կացնով, պառաւներն արգելում են ասելով. «Մի՛ խփիր, պարտքատէրերը կը գան պարտքերը կուզեն»։*

*Սուրբ համարուած ծառերից յիշում եմ միայն նշանաւորները։*

*Հաղբատի մօտ, Ս. Լուսի լերան ստորոտում մի հաճարի ծառ կայ, որ սուրբ է համարւում։ Մելքոնենց Ալէքսանի կինը գնացել այդ ծառի բնի և ճիւղերի միջով գոյացած անցքով երեք անգամ անցել է և երեխաներ ունեցել, մինչդեռ տասնեչորս տարի շարունակ ամուլ է եղել։*

*Այժմ առաւելապէս Համբարձմանը ուխտ են գնում այդտեղ և մոմեր վառում։ Ամուլ կանայք էլ իրենց գօտիներն են կապում այդ ծառի բնին, որ երեխայ ունենան։*

*Ամոճ գիւղի մօտ մի բլրակի վրայ գտնւում է Ս. Ցակոբի ուխտատեղին, ուր կան մի քանի, սուրբ համարուած ծառեր, շորի կտորներով ծածկուած։ Պատմում են, թէ Ս. Ցակոբը իւր դաւազանը դրել է այդտեղ, որը բուսել, ծաղկել և այդ ծառերն է դառել։*

*Մի անգամ Ս. Ցակոբը երևում է Լեճանեցոց և ասում,*

Digitized by Google

թէ բերէք մատաղ արէք իմ առաջ, որ ցաւումս անցնի․ սըրանք չեն անում, կայծակը խփում մի աղջիկ է սպանում։

Դսեղի ծմակում մի կաղնի կայ, որին երկու մարդ միասին հազիւ կարող են գրկել։ Սա սուրբ է համարւում և կոչւում է «Զօրաւոր ծառ»։

«Իմ ախպէրը, պատմում էր մի կին, այդ ծառի տակ նստած տրեխ էր կարում. ինչպէս եղաւ մի կտոր կաշի վեր ձգեց, դիպաւ ծառին, այս պատճառով նա հիւանդացաւ և մի ամբողջ տարի հիւանդ պառկեց։ Յետոյ նրան տարանք այդ ծառի տակ, մատաղ արինք, մոմեր վառեցինք, մի գիշեր քնեց հէնց ծառի տակ, բոլորովին առողջացաւ»։

Ուզունլարից փոքր ինչ հեռի սարում, Խէչի խոռի Ս. Սարգսի մօտ կաղնի ծառեր կան, որոնք ամենայն հիւանդութիւնների բուժիչ են համարւում։ Այստեղ ես ուխտ են գալիս, սրանց փոշուց, որ «օխնութին» է կոչւում, ջրի մէջ լուծում և տալիս հիւանդներին իբր դեղ։

Քորփլու Թրքարնակ գիւղից մի վերստ հեռու վեց չինարի ծառեր կան, որոնց առաջ թէ հայերը և թէ թուրքերը մոմ են վառում, մատաղ կտրում և որոնց ճիւղերը կամ տերևները ոչ ոք չի համարձակւում կտրել, մեղք համարելով այդ։

Լոռուտից բարձր Քոշ-եօլի ճանապարհի մօտ մի աճառի ծառ կայ, որին ինչպէս հայերը, այնպէս և թուրքերն են պաշտում։ Ծառը ծածկուած է չորի կտորներով։

Արճէշ գիւղում, եկեղեցու մօտ կայ մի բռշնի ծառ, որի վրայ քաշ է արած եկեղեցու զանգակները։ Սա ես սուրբ է համարւում։

Ճահալի գիւղից փոքր ինչ բարձր կայ մի կաղնի, որ կոչւում է «Զօրաւոր խաչ»։ Սրա առաջ մատաղ են կտրում և անձրև կամ արև հայցում։

Գինեքի և սոսի ծառերն առանձնապէս յարգում են ժողովուրդից և սրանց մասին պատմում է հետևեալը.

*Գինեքի*. Քրիստոսին խաչելուց յետոյ գինեքու ճիւղերով ծեծել են, ուստի և նրանք դիպչելով սուրբ մարմնին՝ սրբա-

Digitized by Google

ցել են։ Այժմ էլ այդ ծառի ճիւղերից դնում են տան դրան վերև, որ ցաւերը և սատանաները չկարողանան ներս մտնել։

*Սոսի ծառ*. Երբ Քրիստոսին որոնում էին բռնելու, նա գնաց սոսի ծառի տաղարլթի մէջ պահ մտաւ: Երբ եկան և այդտեղ որոնելու, կկուն սկսեց ծառի վրայից կանչել. այդ ժամանակ սրանք ասացին, թէ, եթէ այդտեղ մարդ լինի, կըկուն վերան չի կանգնիլ, ուստի և առանց որոնելու հեռացան: Քրիստոսը ազատուելով օրհնեց սոսի ծառը, որ ամառ ձմեռ կանաչ մնայ, իսկ կկուին օրական երեք ծիտ նշանակեց, որոնցից մինը նա միշտ մատաղ է անում բաց թողնելով, իսկ միւս երկուսը ուտում է:

*Ծաղիկներից* վարդն ու մանիշակը առանձնապէս արժանացել են լօռեցիների ուշադրութեան և ահա թէ ինչ գեղեցիկ աւանդութիւններ են հիւսել սրանց մասին:

*Վարդ եւ Մանուշակ*.—Շատ ու շատ տարիներ առաջ մի Թուրքի տղայ սիրահարուել է մի հայ քահանայի աղջկայ վրայ և գրաւել նրա սիրտը, սակայն քահանան ամէն կերպ ընդիմադրել է և թոյլ չէ տուել, որ նրանք միմեանց առնեն: Խեղճերը վառ սիրուց հալ ու մաշ են եղել՝ մեռել։ Բարեկամները տարել են սրանց միմեանց մօտ թաղել։ Բայց մի քանի օրից քահանան էլ է մեռել կտակելով, որ իրեն այդ երկուսի մէջ տեղը թաղեն, որպէսզի այնտեղ էլ կարողանայ նրանց բաժանել։ Կարճ միջոցից տղայի գերեզմանի վրայ վարդ, իսկ աղջկանը մանիշակ է բուսել, սակայն սրանք էլ միմեանց կարօտ են մնացել և չեն կարողացել միմեանց տեսնել, որովհետև քահանայի գերեզմանի վրայ փշեր են բուսել և արգելել այդ։

Մինչև այժմ էլ, ով վարդն ու մանուշակը միմեանց ցոյց տայ, նա անշուշտ կենթարկուի քահանայի անէծքին և կը մեռնի, ինչպէս մեռաւ Շնողում Բեժանենց Ստեփանը, որ սարից գալով մի փունջ մանիշակ էր բերել գիւղ և ցոյց տուել վարդին:

Մի ուրիշ աւանդութիւն Վարդն ու Մանուշակը քոյր և

Digitized by Google

եղբայր է համարում: Վարդը իւր փշերով միշտ ծեծելիս, ծակոտելիս է եղել իւր քոյր մանուշակին, իսկ սա նրա արիւնը ծծելիս և իւր երեսին քսելիս: Սրանց մայրը տեսնելով սրանց անվերջ կռիւները, անիծել է, որ միմեանից կարօտ մեռնին: Եւ այդ օրուանից Վարդն ու Մանուշակը միմեանց չեն հանդիպում, միմեանց չեն տեսնում, և ով որ նրանց իրար մօտ բերի «մուրազաչոր» կը մեռնի:

Միայն *Մանուշակի* մասին պատմում է, թէ սա մի շատ գեղեցիկ, բայց սաստիկ խաբարբզիկ աղջիկ է եղել: Իրենց տան գաղտնիքները ուրիշներին, սրանցը իրենց տանեցիներին է յայտնել: Մայրը երկար խրատելուց յետ երբ տեսել է, որ նա չի ուղղւում, անիծել է ասելով. «Ձոլերն ընկնիս, լեզուդ ծըրծորանքովդ դուրս գայ»: Եւ նոյն րոպէին նա դառել է համանուն ծաղիկը՝ լեզուն ծոծրակով դուրս եկած:

Միւս բոյսերից *Թութթունի* մասին պատմում են, թէ մի թագաւորի աղջիկ բորոտութեամբ բռնւում է: Երբ ոչ մի միջոցով չեն կարողանում նրան բորոտութիւնից սրբել, ձգում են ծովի ափ, որ այնտեղ շուտով մեռնի: Սա այստեղ թութթունի տերևներ գտնելով քաղցածութիւնից ստիպւած ուտում է և կարճ միջոցում բոլորովին առողջանում: Երբ իմանում են այն՝ աղջկան տուն են տանում և իրենք էլ սկսում են թութթունը գործածել:

*Սիրի-սիրի*.—Այս եռատերև բոյսը (trifolium) բուսել է այն երեք եղբօր արիւնից, որոնք միաժամանակ սիրահարուած լինելով միևնոյն աղջկայ վրայ, լցուել են սիրոյ նախանձով ու միմեանց կոտորել: Ուստի և այժմ նորատի տղաներն ու աղջիկներն այս եռատերև բոյսով գուշակութիւն են կատարում, թէ իրենց մտադրած անձնաւորութիւնը իրենցից որին է սիրում: Իւրաքանչիւր տերևը մի անձնաւորութեան յատկացնելով դիմում են մի անտեղեակ անձի և ցոյց տալով այս բոյսը՝ հարցնում. Սիրի սիրի ում սիրի: Այդ անտեղեակ անձը բռնում է երեք տերևներից մինը, որով և գուշակւում է, թէ մտադրըուած անձնաւորութիւնը այն անձին է սիրում, որին յատկացրել էին այդ բռնած տերևը:

Digitized by Google

*Ասում են, թէ այս բոյսի չորս տերևանին եթէ դրամով կարեն ու քսակում պահեն, դրամը երբէք չի պակասի։*

*Լօշտակ.* (Bryonia Alba). *Այս բոյսի տերևներին սիրելի դարձնելու, իսկ արմատներին՝ ամենայն տեսակ հիւանդութիւններ բուժելու յատկութիւնն են վերագրում։ Սրա արմատը հանելու համար բաւականաչափ փորում են, ապա մի թոկ կապում արմատից և ծայրը ամրացնում եօթն օր քաղցած պահած մի շան վզին և շանը ծեծում, որ քաշէ հանէ։ Ասում են, որ արմատը դուրս գալիս այնպիսի մի սոսկալի ձայն է արձակում, որ շունն երկիւղից սատակում է։ Մարդը ևս չի ազատուիլ մահից, եթէ որ կամենայ ինքը հանել։*

*Այս արմատն այսպէս տարօրինակ կերպով ձեռք բերելու եղանակը հետևեալ կերպ են բացատրում.*

*Պատմում են, թէ այս բոյսը մի ժամանակ Լօշտակ անունով մի փոքրաւոր է եղել, որ իւր վարդապետից սաստիկ տանջուելով՝ մի օր, նրա քնած ժամանակ, կանթեղից ձէթ է ածել նրա միրուքին և կրակ տուել։ Վարդապետը զարհուրած զարթել է և տեսնելով Լօշտակին կանթեղը ձեռին՝ հասկացել է, որ նա է արել և անիծել է նրան, ասելով. «Գետինը մտնես»։ Իսկոյն Լօշտակը գետինն է մտել։ Վարդապետն այդ տեսնելով զղջացել է և օրհնել ասելով. «Ամենայն հիւանդութեան դեղ լինիս»։ Բայց յետոյ այրուածի ցաւը նորից զգալով, կրկին անիծել է, որ ով նրան հանէ, ինքը մտնի նրա տեղը։ Եւ ահա այդ է պատճառը, որ մարդիկ զգուշանում են նրան հանելու և շանն են հանել տալիս։*

*Իսկ Որոմի* (դև) *մասին կարծում են թէ սա ոչ թէ յառաջանում է առանձին սերմից, այլ կերպարանափոխւում է ցորենից, մարդկանց մեղքերի պատճառով, ուստի և ոչ թէ մաքրում են ցորենի սերմը որոմի սերմից, այլ աշխատում են մեղք չգործել, որ ցորենի արտերին ազատ մնան որոմից։*

## ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

*Ծլիծեռնակ.—Հայաբնակ շատ գաւառների նման Լոռին*

Digitized by Google

եւ ծիծեռնակին սուրբ է համարում և երբէք ոչ մի վնաս չէ հասցնում նրան: Նրա բունը որքան էլ անյարմար տեղ շինուած լինի, միշտ մնում է անձեռնմխելի։ Նրան մի վնաս պատճառողն սաստիկ պատժւում է. այսպէս Իգահատցի Զաւրանց Եղիշերը երեխայ ժամանակ Հոռոմելում մի ծիծեռնակի լեղու էր կտրել, որի պատճառով և մեծանալիս նրա երեք աղջիկն ու մի տղան համր էին ծնուել: Ճնոլում մի իրիցկին նոյնպէս միևնոյն բանն էր արել և նրա երեխան էլ համր էր ծնուել։

Երբ առաջին անգամ տեսնում են ծիծեռնակներին ասում են․

*Ծիծեռնակ, ծիծեռնակ,*
*Քու հէրն ինչ, քու մէրն ինչ,*
*Բալկուլ հաւի աչքերն ինչ։*

Եւ այս այն պատճառով, որ հաւատում են թէ ծիծեռնակի ծնողները վերադարձին ծովն են ընկնում. սգաւոր ծիծեռնակին պէտք է մխիթարել, նրա ծնողների մասին տեղեկութիւն հարցնելով։ Միևնոյն ժամանակ պէտք է հարցնել բալկուլ հաւի (?) կուրանալու պատճառը, որպէսզի վերջինս նեղանալով չանիծէ իրենց ու կուրացնէ:

*Կռունկ*.—Լոռեցին կռունկը սուրբ է համարում և հաւատացած է, որ եթէ նրան սպանի, անշուշտ մի դժբաղդութիւն կը պատահի իրեն։ Այսպէս Զորագիւղում որսորդ Խաչոն մի անգամ երկու կռունկ է տեսնում և առանց երկար մտածելու, խփում, մինին սպանում է։ Այնուհետև որսի ժամանակ շատ անգամ տեսնում է, թէ ինչպէս սպանուած կռնկի ընկերը գալիս է սրա ընկած տեղը և ողիողորմ ձայն հանում։

Մի կարճ միջոցից յետոյ այս որսորդի որդին հիւանդանում է և իւր ընկերոջ մահը ողբացող կռնկի նման ձայն արձակելով մի ամբողջ տարի տանջւում ու մեռնում։

*Ժեռ*.—Լոռեցիները սուրբ են համարում և ժեռ թռչունին, որովհետև սա կոտորում է մորեխին։ Եւ որքան ժեռերի թիւը մեծ լինի, այնքան գիւղացին ուրախանում է, հաւատալով որ հունձը այնքան աւելի առատ պիտի լինի։

Digitized by Google

*Ցոպյոպ.*—Մի հարս խմոր հունցելիս գործը կիսատ է թողել և սկսել է մազերը սանրել։ Ցանկարծ սկեսուրը վրայ է եկել և այդ տեսնելով «հոպոպոպո՛, էդ ի՞նչ էս անում» է ասել։ Հարսը երկիւղից սանրը գլխին թռչուն է դառել և մինչև այժմ էլ կրկնում է իւր սկեսրոջ խօսքերը. հո-պո-պո՛-պո՛։

*Քոռաքով.*—Սա ժամանակով եզնարած է լինում, որ իւր ընկեր Պիւրլի-ի հետ եզները արածացնելիս կորցնում է։ Երկար որոնում են, չեն գտնում, երբ գիշերը վրայ է հասնում, ցաւից ու երկիւղից քոռաքով (կոյր բու) են դառնում և շարունակում են որոնել։ Դեռ մինչև հիմայ էլ նրանք հարցնում են միմեանց.

«Պուբղի հէ՜յ»։
—Հէյ, հա, հէյ.
«Եզը գտա՞ր·
—Չէ, հա չէ՜։
«Վա՜յ հարա հա՛։

*Չալ ծիտ.*—Այս թռչունը մայիս ամսին սարերում երգում է.

*Տատի-սի՜-տո՛ւ.*
իսկ կանայք անիծում են ասելով.

Չոռը քի, ըսկի սեր չկայ թէ դայմախ անենք, հիմի է·կել ես, ու տատիցը սեր ուզում։

*Տատրակ.*—Ժամանակով սա աղջիկ է եղել. մի անգամ սրա հայրը քաղաքից սրա հանդերձի համար «չիթա» կտոր է բերում, բայց նա չի հաւանում և չի կամենում կարել հագնել։ Հայրը բարկանում է և անիծում ասելով. «Երբ որ իմ բերած շորերիս չես հաւանում, գնայ թող Աստուած քեզ բմբուլէ շորեր տայ»։ Իսկոյն աղջիկը տատրակ է դառնում և շարունակ կրկնում.

Գո՛ւքը կո՛ւ գո՛ւ ամի՛ն էկել-ա,
Գո՛ւքը կո՛ւ-գո՛ւ ի՞նչ բերել-ա
Գո՛ւքը կո՛ւ-գո՛ւ թոփով չի՛-լա՛.
Գո՛ւքը կո՛ւ-գո՛ւ էրէ՛սն ի՛նչ-ա՛։
Գո՛ւքը կո՛ւ-գո՛ւ ես ուզում չե՜մ։

*Մուկը եւ տատրակը.*—Մի անգամ մուկն ու տատրակը ընկերացել են և գնացել միասին աշխատելու։ Մի քանի ժամանակից յետոյ մուկը առել է իրենց երկուսի վարձատրութիւնն էլ, և առանց տատրակին մաս տալու, փախել գնացել ծակը մտել։ Եւ այդ օրից սկսած տատրակը գանգատւում է, ասելով.

Գու-քու, քու, մուկ, խափեց,
Գու-քու, քու, փայըս խը-լեց,
Գու-քու, քու, ծակ մը-տաւ, թու։

—

*Մեղու.*—Մեղուները շատ իմաստուն են համարւում։ Պատմում են, թէ Սողոմոն իմաստունը սրանց լցրել է մի ապակեայ անօթի մէջ և սկսել քննել։ Քննել, քննել, վերջը քունը տարել, անօթի վրայ ընկել է։ Երբ զարթել է, տեսել է, որ մեղուները նրա քթում մի *տխրակ**) են շինել։ Սողոմոնը նայել է, նայել և ասել, թէ սրանք շատ իմաստուն են, խելքըս տեղ չի անում։

Մի անգամ մեղուներն ասել են Սողոմոն իմաստունին, թէ մենք ոսկի կը շինենք, միայն թէ դու թոյլ տուր, որ ում կծենք՝ մեռնի։

—Չէ, ասել է Սողոմոնը, մարդկանց գնով չեմ ուզում ոսկի ստանալ, աւելի լաւ է դուք մեղր շինեցէք և եթէ մինին կծէք, ինքներդ մեռէք։ Եւ այդ օրուանից նրանք զգուշանում են մարդկանց կծելու, որպէսզի իրենք չը մեռնին։

Մեղուները գողութիւն չեն սիրում և եթէ գողածոնի մի բան լինի փեթակի մէջ, անպատճառ բոլոր մեղուները կը սատկին։

Մեղուների փեթակը հանգցնելը, այսինքն ոչնչացնելը մեծ մեղք են համարում։

Մեղրն ամէն տեսակ հիւանդութիւնների դեղ է համարւում. նոյն իսկ ջերմ ունեցողը մեղր է ուտում, վէրքին մեղր են քսում, մեղրը մինչև անգամ մահուան տանջանքին վերջ

*) Այն փոքրիկ մեղրահացը, որ շինում են բոլոր մեղրահացերից յետոյ։

Digitized by Google

է դնում, այնպէս որ երբ ուզում են, որ չարչարուող անյոյս հիւանդը շուտ մեռնի, ոտների տակ մեղր են քսում։

—

*Կրիայ.*—Ժամանակով կրիան մարդ է եղել։ Մի անգամ ճանապարհ գնալիս Քրիստոսն ընկերանում է նրան։ Գնում են, մի գետի ափին նստում. այս մարդը հանում է իւր ճանապարհի պաշարը և Քրիստոսին հրաւիրում հաց ուտելու։ Երբ սկսում են ուտել, Քրիստոսը հարցնում է այս մարդուն, թէ ինչ կը ցանկար ունենալ։ Այս մարդը նայում է շուրջը, տեսնում է գետի ափին անհամար քարերը, ասում. «Ես կը ցանկայի, որ այս քարերը ոչխար դառնային, ես էլ հովիւ, թասը բաշլուղիս մէջ դրած ման գայի և որ ոչխարից որ ցանկայի, կթէի ուտէի։ Քրիստոսը խաչակնքում է և անյայտանում. իսկոյն այն բոլոր քարերը ոչխար են դառնում։ Այս մարդը հաւաքում է այս բոլոր ոչխարները, հովւում և ուրախ, երջանիկ ապրում։ Մի օր Քրիստոսը կրկին գալիս է սրա մօտ, միայն այս անգամ աղքատի կերպարանքով և մի քիչ կաթ խնդրում։ Հովիւը բարկանում է սրա վրայ և կանչում շներին, որ պատառոտեն նրան։

Քրիստոսն այս տեսնելով անիծում է, և իսկոյն ոչխարները կրկին քար, իսկ հովիւը կրիայ են դառնում։ Հովուի սիրած թասը պատում է նրան և կազմում նրա պատեանը։

—

*Էշ.*—Մի անգամ սատանան մօտեցել է իշին և ականջին ասել, թէ նրա էգին գցել է գետը։ Էշը վշտանալով սկսել է լաց լինել—զռալ, բայց նրա զռոցը այնքան անախորժ տպաւորութիւն է գործել սատանայի վրայ, որ սա զզուած շտապել է յայտնելու, թէ սուտ է ասել։ Իսկոյն էշը կտրել է ձայնը՝ հա՛, հա՛, հա՜ անելով, ուստի և մինչև այժմ երբ էշը ըսկսում է զռալ, մտաբերում է սատանայի վերջին խօսքը՝ և հա՛, հա՛, հա՛ անելով դադարում է զռալուց։

*Գոմէշ.*—Նոյ նահապետը բոլոր կենդանիներից առաւ տապանի մէջ, միայն գոմէշին մոռացաւ։ Երբ ջրհեղեղն սկըսուեց, և տապանը լողաց ջրի երեսին, գոմէշը կիսախեղդ վա-

Digitized by Google

գեց դէպի տապանը և Նոյէ, Նոյէ բղաւեց։ Նոյ նայեց, տեսաւ գոմէշին, խղճաց և օրհնեց, որ լաւ լող տայ՝ ազատուի։ Եւ այդ օրից ի վեր գոմէշը սիրեց ջուրը և շարունակեց Նոյէ կանչել՝ բառանչելիս։

*Կով եւ եզ.*—Երբ մի կով կամ մի եզ 10—15 տարի մի գերդաստանին պատկանելով բաւական օգուտներ է տալիս նրան, վերջինս երախտագիտական զգացումով լցուած՝ այլեւ նրան չի ծախում, պահում պահպանում է։ Եւ երբ այս գիւղացու ընկեր կենդանին սաստիկ պառաւում է՝ ստիպուած մորթում են, և գանգը՝ կովինը տան ձեղունից, եզինը՝ պարտէզի պատնէշին են խփում ու այդպէս թողնում շատ տարիներ։ Իսկ եթէ պատահում է, որ աղքատութիւնից ստիպուած են լինում և այդ կենդանին ծախելու, սրտի մորմոքով քաշում են նրա վրայից մի փունջ մազ ու պահում իրենց մօտ իբր յիշատակ։

Ճնող գիւղում Զոփուռենց Աւետիքի սրահի ձեղունում տասը տարուց ի վեր ցցուած է նրա երախտաւոր կովի չորացրած գանգը։

*Խոզ.*—Սկզբներում խոզի միսը պիղծ էին համարում և ոչ ոք չէր ուտում։ Սակայն մի անգամ Քրիստոս իւր աշակերտների հետ ման գալիս պատահել է խոզերի և միսի պոչից բռնել. այն օրուանից նրանք սրբուել են և քրիստոնեաներն սկսել են նրանց միսն էլ ուտել։

*Գայլ.*—Մի անգամ Մովսէս մարգարէն խնդրեց Աստուծուց, որ իրեն թոյլ տայ գոնէ մի բան ստեղծելու։

Աստուած թոյլ տուեց և նա հող վերցնելով ստեղծեց գայլին։ Բայց սա իսկոյն յարձակուեց Մովսէսի վրայ և կամենում էր ուտել։

—Տէր, գոչեց Մովսէսը, ազատիր ինձ սրա ձեռքից, այս ինչ մեղք գործեցի։

«Նախ քան մի բան ստեղծելը, նկատեց Աստուած, նրա գովլաւթը պիտի ստեղծել. քաշուիր անտառ, դարձաւ նա գայլին, այնտեղ փթթակով կը կերակրուիս. երբեմն երբեմն էլ մարդկանց պատառները կը փախցնես»։ Եւ այդ օրուանից

Digitized by Google

գայլերը ապրում են անտառում, կերակրւում փթռակով և երբեմնապէս փախցնում մարդկանց պատառ՝ գառները։

*Արջ.*—Սա ժամանակով այգեպան է եղել: Մի անգամ Քրիստոս աղքատի կերպարանքով եկել է նրա մօտ և մի ճութ խաղող խնդրել։ Մերժումն ստանալով Քրիստոս անիծել է նրան և այգին անտառ, իրեն էլ արջ է դարձրել:

Սա նախազգում է, թէ երբ պիտի սպանուի, ուստի և նախորդ օրը ծնում կամ վիժում է ձագերին: Եւ այս է պատճառը, ասում են, որ ոչ մի որսորդ յղի արջ սպանած չէ:

*Կապիկ.*— Սա ևս ժամանակով մարդ է եղել, ներկարար. մի օր, երբ իւր մահամերձ մօրը նեղացրել է, վերջինս անիծել է նրան և այն օրից նա այլևս հանգիստ չէ գտնում, յուսահատ թափառում է անտառներում։

## ՕՁԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

Օձի պաշտաման ամենալաւ մնացորդ կարելի է համարել Արդուի գիւղի մօտ դտնուած «Օձի պորտը», որի մասին յետոյ հիւսուել է այն աւանդութիւնը, որը յիշել եմ Ս. Օհան Օձնեցուն վերագրուած աւանդութիւնների մէջ*)։

Սա, Օձի պորտը, ժայռի մէջ ընկած մօտ յիսնական սաժէն երկարութեան սև քարի երկու չերտ է, որոնց մէջ տեղից, «պորտից», հոսում է երկաթաջուր:

Անա այստեղ առաւելապէս բորոտ և առհասարակ հիւանդ մարդիկ ուխտ են գալիս, մոմ վառում, խունկ ծխում, աքաղաղ մատղում և այդ ջրից վէրքերին քսում, խմում, լողանում, որպէսզի առողջութիւն գտնեն։

Տան «դովլաթ օձ»-ի գաղափարն այս գաւառում ևս ընդհանրացած է և կան տներ, ուր օձերը ազատ համարձակ ապրում են, առանց մի որևէ հալածանքի ենթարկուելու և կամ իրենք վնաս պատճառելու։ Այսպէս Արդուի Դարիջանենց տանը մի օձ կայ, որ իւր ձագերով դուրս է գալիս բնից, գնում ջուր խմում և կրկին ապահով վերադառնում իւր բունը։

1) Տես՝ Սրբեր գլխում։

Իսկ Օձունում, Արամ Արովեանի տանը երկու օձ կային, մինը սև, միւսը սպիտակ։ Սրանք մի մի անգամ գալիս տան սեանից քաշ էին ընկնում և այդպէս մի քանի ժամ մնում։ Ո՛չ ոք նրանց չէր դիպչում, այլ ամէնքը սաստիկ տխրում, կամ ուրախանում էին, որովհետև եթէ սևը գար՝ այդ նշան էր, որ տանից մինը պիտի մեռնէր, իսկ եթէ սպիտակը՝ մի ուրախալի բան, հարսանիք, որդեծնութիւն, և այլն պիտի պատահէր։

Առաջին անգամ այդ տնում սև օձն է երևացել: Տնեցիները զարհուրած կամեցել են սպանել, բայց չեն յաջողացրել։ Նոյն գիշերը տան պառաւն երազում տեսել է մի սպիտակ օձ, որ եկել է ասել իրեն, թէ այդ սև օձը, որ տան դովլաթն է, իրեն դէմ գործած սպանութեան փորձից վշտացած, թունաւորել է օջախի վրայ դրուած կաթը, որպէսզի սպանէ տան բոլոր անդամներին։ Ինքը, որ նոյնպէս այդ տան դովլաթն է, խորհուրդ է տալիս, որ այդ կաթը թափեն, ու այնուհետև ոչ մի վնաս չը հասցնեն սև օձին:

Երազատես պառաւին հպատակում են որդիներն ու թոռները, մանաւանդ երբ շուտով տեսնում են սպիտակ օձին՝ սիւնից քաշ ընկած։ Եւ այնուհետև այդ երկու օձը արձակ համարձակ շրջում էին տան մէջ։

Օձերի «Ճահմար» տեսակը բերանում մի ընկուզի մեծութեան հուլ (հուլունք) ունի։ Գիշերները հանում է բերանից և խաղում, վերև ձգում, բռնում. Նրանից լոյս է ճառագայթում: Եթէ մինը մոխիր ածի այդպիսի օձի բնի առաջ, կարող է այդ հուլը ընկնել նրա մէջ և մնալ, այն ժամանակ գտնողը ինչ բանի մէջ որ նրան ձգէ՝ այն անսպառելի կը դառնայ. այսպէս օր. երբէք քսակից դրամը, շտեմարանից՝ ալիւրը չի պակասիլ, եթէ դրանց մէջ լինի այդ հրաշագործ հուլը։

Հաւատալով, որ օձերը առանձին թագաւորութիւն կազմելով ունին իրենց առանձին թագաւորը, կարծում են, որ սա կարող է մարդկանց իմաստութիւն պարգևել, իւր լեզուն նրանց բերանը քաշելով:

Միևնոյն ժամանակ հաւատալով որ բոլոր օձերը խորա-

մանկ և իմաստուն են, նրանց շապիկը դնում են երեխաների բարձի տակ, որպէսզի սրանք ևս օձի պէս իմաստուն, խելօք լինեն, հանգիստ քնեն։

Ոմանք էլ այս շապիկը ծխախոտի հետ խառնելով ծխում են, որպէսզի սա իւր դիւթիչ զօրութեամբ ատամի ցաւը կտրէ։

## ՏԱՐՐԵՐԻ ԵՒ ՖԻԶԻՔԱԿԱՆ ԵՐԵՒՈՅԹՆԵՐԻ ՊԱՃՏԱՄՈՒՆՔ

Լոռեցիները սովորաբար խուսափում են տարրերի, ֆիզիքական երևոյթների մասին խօսելուց, շատ անգամ հետևեալ հրաշապատումով բացատրելով պատճառը։

Մի անգամ մի քանիմաց գիւղացի էշն առաջը ձգած գնում է անտառ փայտ բերելու։ Այստեղ նա պատահում է մի անծանօթ մարդու, որի հետ երկնային մարմինների մասին երկար զրոյց է անում և վերջը հրաւիրում է երեկոյեան հացը ուտելու։ Նստում են մի ծառի տակ, հանում իրենց հացն ու պանիրը, սկսում ուտել։ Գիւղացին նայում է վերև, տեսնում հինգօրեայ լուսինը և դառնալով անծանօթ հիւրին, ասում. «Լուսինը չորային եղանակ է խոստանում, որովհետև կորանկիւն չէ»։

Սեղանակիցը, որ հայր Յովսէփն է լինում, ձանձրացած այն բանից, որ նա շարունակ բարձր բաներից է խօսում, ձեռի դաւազանով խփում է նրան և էշ դարձնում, բոլորովին նման նրա իշին։ Ապա փայտ բարձում վերան և ասում. «Գնա ուղղակի տունդ, և կաց այնտեղ, որքան էլ որ կինդ թակէ քեզ, որպէս զի իմանաս, թէ քո տանդ մէջ ինչ է կատարւում, մինչդեռ դու այդ թողած՝ երկինքն ես քննում»։

Գիւղացին գնում է տուն իշի կերպարանքով. կինը վերցնում է փայտը և քշում գոմը։ Քիչ անցած նա տեսնում է, որ կինը, որի հաւատարմութեան վրայ բոլորովին չէր կասկածում, ընդունում է մի մարդու և ամբողջ գիշերը նրա հետ անցկացնում։

Առաւօտն էշ դարձած գիւղացին վազում է անտառ, գտնում հայր Յովսէփին և լիզում նրա ոտները։ Հայր Յովսէփը



Digitized by Google

Նրան կրկին մարդ է դարձնում։ Եւ այնուհետև նա թողնում է երկնային մարմինները ու իւր տնով, իւր գործով զբաղւում։

Սակայն և այնպէս՝ որքան կարողացանք տեղեկանալ, լօռեցին կարծում է, թէ երկիրը մի շատ մեծ տափարակ է, որի շուրջը փաթաթուած է մի ահագին օձ, լ ի կ ի ո ն, որի պոչը բերանից մի թիզ հեռու է գտնւում։ Մի մի անգամ սա ցանկանում է իւր պոչը խածել, չիմանալով, իհարկէ, որ դա իւրն է, բայց որքան նա դէպի պոչն է յառաջանում, նոյնքան պոչը յետ է փախչում. որանից յառաջանում է երկրաշարժը։ Ամենահեռու վայրերում ապրում են մեզանից տարբեր արարածներ, ինչպէս օրինակ օղուզներ (հսկաներ) բարձրահասակ և սիրունատես, աճին-պաճիններ (գաճաճներ), միրուքը մինչև գօտին, դաշոյնի ծայրը քաշ տալով ման եկողներ, թափա-գեօղներ (կիկլոպներ). կան և երկսեռ էակներ, որոնք իրենք իրենց բեղմնաւորում են և ծնում։

*Ծովերը* անյատակ են և սրանց մէջ ևս ապրում են այն բոլոր արարածներից, որոնք կան երկրիս վրայ, ինչպէս ծովի մարդ, ծովի աղջիկ, ծովի հրեշտակ (հուրի-մալաք), ծովի ձի, ծովի էշ և այլն։

*Կապոյտ երկնակամարն* ահագին ծով է, Աստծու հրամանով կանգնած, նրանից բարձր գտնւում է Աստծու ոսկէ աթոռը։

*Արեւն* սկզբում երկրիս շատ մօտ է եղել, սակայն մի անգամ մի պառաւ աղբը դուրս թափելիս վերան է ածել, ուստի և նա բարկացել է և վերև բարձրացել։ Նա չարունակ պտոյտ է գալիս, երկնքի երեսովը գնում, գետնի տակովը վերադառնում է։ Նա սաստիկ ամաչկոտ է, մի անգամ նա ասել է իւր եղբայր լուսնին, թէ ես գիշերները վախենում եմ մանգալու, ցերեկն էլ ամաչում, բոլորը ինձ են նայում։ Լուսինը մի թոփ մեծ դնդասեղներ է առել և տուել քրոջը՝ արևին՝ ասելով. Առ և ով քեզ նայի՝ աչքը խոթիր, և համարձակ շրջիր ցերեկը, իսկ ես գիշերը ման կը գամ։

Մի ուրիշ աւանդութիւն էլ լուսնի վրայի բծերն այսպէս է բացատրում. Լուսինը մի անհամբեր երեխայ է եղել, մի

Digitized by Google

անգամ, երբ մայրը խմոր էր հունցում, սա լալով հաց է խնդրում։ Մայրը խմորոտ ձեռքով մի ապտակ է տալիս ու անիծում, որ երբէք չկշտանայ։ Նա ապտակի հարուածից թըռչում է երկինք և այնտեղ էլ մնում, կրելով իւր երեսին խըմորի ահագին կտորները։ Երբ նրա փորը կուշտ է լինում, պայծառութեամբ փայլում է, բայց հէնց որ քաղցում է, սկըսում է խաւարիլ։

Լուսնի 'նորին ծնունդը շուտ, իսկ հնացած ժամանակը՝ ուշ կ'սպիտակի։

Եթէ լուսնի շուրջը բակ է բռնում, ասում են, թէ դա նշան է, որ եղանակը խառնուելու է։

*Աստղերից* իւրաքանչիւրը մի մարդու է պատկանում, որի մահուան ժամանակ նա խաւարում է և վայր ընկնում. իսկ նորածինի համար նոր աստղ է ստեղծում Աստուած։

*Լուսոյ աստղը* Թագաւորի աստղն է, իսկ *շէկ աստղը*՝ կաթողիկոսի։ Միւս աստղերից *Բազուկը* (7 աստղ են) շատ նաւսոտ է. եթէ նրան տեսնի ոչխարը՝ երեսի և մէջքի բուրդը կը թափուի, եթէ տաւարը տեսնի՝ մէջքի մազերը կը թափուին, իսկ եթէ ձին տեսնի, երեսի վրայ շերտեր կը յառաջանան։

*Քարվանի ղռանը* շատ անգամ մոլորեցնում է քարվանին և ջարդում, որովհետև նրան լուսոյ աստղի տեղ ընդունելով շուտ ճանապարհ են ընկնում և մթութեան պատճառով մոլորւում կամ ցրտից սառչում։

*Ցարդ-գողի ճանապարհին ղարմանագողի ճանապարհ* են կոչում և ջրհեղեղի ժամանակ գոյացած երկնքի պատռուածքն համարում, որտեղից ջուրը թափուել է երկիր։

*Ծիածանը*, որին կոչում են *կանանչ ու կարմիր*, Աստծու գօտին է, լուանում են և փռում։ Սրա տակից ով կարողանայ անցնել՝ աղջիկ է տղայ, տղայ է՝ աղջիկ կը դառնայ։

Եթէ ծիածանը երեք կամարանի լինի, սաստիկ առատութեան նշան է համարւում, եթէ գիւղի աջ կողմը կապէ՝ այդ տարի հունձը առատ կը լինի, իսկ եթէ ձախ կողմը՝ սակաւ։

Ծիածանը տեսնելիս ասում են՝

Digitized by Google

*Կանաչն ու կարմիրը իմ ախպօր գլխին,*
*Սեւն ու սիպտակը Թուրքի գլխին։*

*Ամպի գոռոցի* մասին պատմում են, թէ ջրհեղեղից յետոյ Աստուած ասել է մարդկանց, թէ քանի դեռ գիր չկայ, թող ամպի գոռոցը յիշեցնէ ձեզ ջրհեղեղը։

Առաջին անգամ ամպը գոռալիս գիւղացիները մի քար են դնում գլխին, մի կտոր երկաթ, յաճախ մեխ, առնում բերանը և քարով մխեանց մէջքին խփում ասելով.

*Քարէ գլուխ, Էրկաթի ատամ,*

որպէսզի քարի պէս ամուր գլուխ և երկաթի պէս կարծր ատամ ունենան։

Եթէ ամպի գոռոցն առաջին անգամ փետրուարին տեղի ունենայ, այդ տարին բերքը սակաւ կը լինի, իսկ եթէ մարտին՝ շատ առատ։

*Անձրեւ.*—Աստուած գաւազանով խփում է երկնքի ծովին և այնտեղից ջուրը վայր է Թափւում, և կամ ամպերը իջնում գետնից ջուր են խմում և բարձրանում, անձրև անում։

Առաջին անգամ անձրև գալիս ասում են՝

*Անձրև, անձրև գօլ արա,*
*Ցորէն հացը բօլ արա,*
*Անձրև, անձրև գօլ արա,*
*Թուրքի մօզին Թօլ արա։*

Առաջին անգամ ձիւն գալիս՝

*Ձիւն ա գալիս, վազ ա գալիս,*
*Պախրի փալինք շաղ ա տալիս։*

Եթէ երաշտ է լինում, անձրև բերելու համար վեց այրի կին կամ մի աղջինեկ և մի տաշտաքերանք աղջիկ՝ ձեռներին մի չոր հազցրած ցախաւել բռնած՝ շրջում են գիւղը և տների առաջ կանգնելով երգում.

*Նուրին Նուրին եկել ա,*
*Աջքա հուրին եկել ա,*
*Շիլա շապիկ հագել ա,*
*Կարմիր գօտիկ կապել ա.*
*Ջու բերէք Թաթը դնենք,*
*Եղ բերէք պօրտը քսենք,*

*Զուր բերէք գլխին ածենք,*
*Երկնքի դուռը բացենք։*

*կամ*

*Նուրին նուրին նազարոյ,*
*Էս նազարոն եկել ա,*
*Քու դուռն ու դուս կայնել ա,*
*Ճալէ շապիկ հագել ա,*
*Կէմէ գօտիկ կապել ա.*
*Ձու բերէք թաթը դրէք,*
*Եղ բերէք վարսը քսէք,*
*Ջուր բերէք գլխին ածէք,*
*Աստծանէ ցօղ ցօղայ,*
*Գետնիցը պտուղ դուս գայ։*

Ամեն տնից ջուր են դուրս բերում, ածում նախ ցախաւելի, որ նուրի է կոչւում և ապա նրան ման ածողների վրայ, որոնք բոլորովին չեն բարկանում, այլ առնելով նուէր տուած ձուերը, իւղը, ալիւրը, խունկ ու մոմը՝ հեռանում են։ Երկար շրջելուց յետոյ այս ստացած նուէրները ծախելով մի քանի ոչխար կամ մի եզն են առնում, միւս առաւօտ եկեղեցու դըրանը մատաղ անում, բաժանում։ Երբ մատաղը ուտում պըրծնում են, նուրի ման ածող կանանցից չորսը լծւում են մի արօրի, մինը մաճկալ, միւնն էլ հոտաղ է դառնում և սկսում են հոռովել երգելով վարել իրաշտից չորացած առուների տեղերը։

Բացի սրանից անձրև բերելու համար դիմում են նաև հետևեալ միջոցների.

Օձունում պատարագից յետոյ գիւղացիները կժերով ջուր են բերում և լցնում Աստուածածին (Խաչգունտ) եկեղեցու հարաւային կողմում գտնուող մի զոյգ բեմախաչերի գըլխին, որոնց տակ հանգստանում են Օհան Օձնեցու ծնողների մարմինները, որպէսզի սրանք բարեխօսեն անձրև գալու։

Հայքատում միևնոյն բանը կատարում են Յովհաննէս Ծործորեցի, Պլուզ մականուանուած վարդապետի գերեզմանի վրայ։

Ոմանք էլ սատակած ձիու ոլոգը տանում երեք ճանա-

պարհի վրայ թաղում են, սատակած էշի գանգը ջուրն են ձգում և կամ գլոր անել տալիս և դաշտում թաղում։

Իսկ երբ կամենում են յարատև տեղացող անձրևը կտրել, մի առջինեկ և մի տաշտաքերանի երեխայ բոլորովին լուռ մի խումբ տղաների և աղջիկների հետ տնէ տուն ման են գալիս։ Ամէն մի տան առաջ խումբը երգում է.

Ծոլի, ծոլի, ծոլ չկայ,
Խաւիծ անեմ եղ չկայ,
Ծոլին ընկել ա ծովը,
Ծովիցը հանող չը կայ.
Չուան բերէք դուս հանենք,
Չալթու բերէք կցան անենք,
Խոփ ու ծեւիչ մանգոտել են,
Հոտաղ մաճկալ թողոտել են,
Կանանչ տափին կարօտել ենք,
Կարմիր արեւին կարօտել ենք,
Թանձր շուաքին կարօտել ենք.
Եղ բերէք վարսը քսենք,
Ալիր բերէք խաւիծ անենք,
Բլիթ բերէք ծոցը դնենք,
Ուտենք, խմենք քէֆ անենք:

Տնեցիները մի քիչ ցեխ են տալիս երկու լուռ երեխաների ձեռքը, և ձու, իւղ, ալիւր, աղ՝ խմբին։ Վերջը այս երեխաները այդ ցանելով ցեխի վրայ մի մեծ բլիթ են շինում և խփում մի պատի, իսկ հաւաքած ձուով ու իւղով ձուաձեղ պատրաստում՝ ուտում, ուրախանում։

Մի քանի գիւղերում էլ նոյն նպատակով Նուրին ման ածող երկու երեխաները եօթը դռնից ցեխ են հաւաքում, եօթ գնդակ շինում, ապա քահանայի տանից մի աւել գողանում, վառում և այդ գնդակները մէջը ձգում։

Ոմանք էլ նոյն նպատակով կանանչ խոտը կրակի մէջ են ձգում, վառում։

Ուրիշներն էլ Թուրքի գերեզմանից կամ հորթի կապելու եօթը փայտերի մօտից ցեխ են հաւաքում և կրակը ձգում:

Կարկուտը Եղիա մարգարէն է անում, ուստի և ծերունիները կարկուտ գալիս բղաւում են.

Եղիա մարգարա, էս չէնլիկ ա, քարերին, խարաբա աշխարհին տու:

Եւ եթէ չի լսում, Ս. Սարգսի փոխնդից պահածը փչում են դուրս բղաւելով. Ս. Սարգիս, դու բարեխօս ըլիս Եղիա մարգարէին, որ մեր որդկերանց աշխատանքը մեզ ըղսմաթ անի։

Եւ եթէ չի կտրւում, նոյն փոխինդը խառնում են տեառնընդառաջին վառած խարոյկի մոխրի ու աղի հետ և շաղ են տալիս դէպի վերև:

Եւ կամ տարեմտի «քիւթուկի» խանձողն են դուրս ձգում։

Եւ եթէ սրանք էլ չեն օգնում, գուլթանի խոփը հակառակ կողմով դուրս են ձգում, որպէսզի Աստուծուն բողոքէ, թէ վարել եմ, տանջուել, ինչի՞ Եղիա մարգարէն փչացնում է իմ աշխատանքը։

Կարկուտից գիւղացիները չափազանց վախենում են, ուստի և զատկից մինչև վարդավառ ամէն երկուշաբթի կիրակի են պահում, Ռուսաց Պրիվոլնոյէ գիւղի մօտ գտնուած Տօլու-բար (կարկտի հայր) ուխտատեղին հասարակական մատաղներ ուղարկում, որպէսզի կարկուտ չը գայ և եթէ չի օգնում՝ կարկտի գիր են անել տալիս։

Քամին մի պառաւ կին է, որ փչում է և երբ գիւղացիների թեղի ժամանակ ցանկացած կողմից չի փչում, հայհոյում են, ասելով. Քաւթառ պառաւ, քո հէրն անիծած, էս կռնից փչի էլի։

## ՈԳԻՆԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

### Ա.

### ԲԱՐԻ ՈԳԻՆԵՐ

*Հրեշտակներ՝ բարի եւ չար.*—Երկու տեսակ հրեշտակներ կան՝ բարի և չար: Երկուսն էլ թևաւոր են, միմեանց նման, միայն բարին՝ սպիտակ է, բազմերանգ թևերով, իսկ չարը՝ սև։

Սրանք միշտ միմեանց հետ կռւում են, ծննդկանի, հի-

Digitized by Google

ւանգի աջ կողմը՝ բարի, ձախ կողմը չար հրեշտակը կանգնած միմեանց հետ վիճում, կռւում են՝ և ով յաղթանակում է, նա է տիրապետում սրանց հոգուն։

*Պահապան հրեշտակ*.—Ամեն մի երեխայ ունի պահապան բարի հրեշտակ, որ մի ամբողջ տարի խնամում է նրան, ջուր տալիս, եղունգները կտրում, իւր ձեռի խնձորով զբաղեցնում, ծիծաղեցնում նրան։ Նա թևերը բաց կանգնած է լինում երեխայի սնարի մօտ և կամ առաստաղում, որտեղից անդուլ հսկում է նրա վրայ։

Եւ այս է պատճառը, որ մի ամբողջ տարի երեխային ջուր չեն տալիս և ոչ էլ եղունգները կտրում։

Միևնոյն ժամանակ երեխայի ձեռքում միս չեն դնում, որովհետև նրա մատները մոմի պէս լոյս է տալիս, եթէ միս բռնեն, այդ լոյսը կը խաւարի։

*Հացի հրեշտակ*.—Ժողովուրդը հաւատում է, թէ կան հացի հրեշտակներ, որոնք կանգնում են թոնրի շուրթը, երբ հաց են թխում, ուստի հէնց որ կամենում են հաց թխել, խաչակնքում են, երբեմն էլ խունկ ծխում, ձգելով խունկը թոնրի մէջ։

*Տան-դովլաթ*.—Մի մեծ գերդաստանից մի հարս բաժանւում է, իւր համար առանձնանում։ Հետևեալ առաւօտը գերդաստանի հայրն առաւօտ շատ վաղ, երբ բոլորը դեռ քնած են լինում, վեր է կենում, տեսնում է, որ թարմ ձիւնի վրայ մնացած հետքից երևում է, որ մինը տանից հեռացել է, բայց չի վերադարձել։ Նայում տեսնում է, որ տնեցիներից ոչ ոք չէ դուրս գնացել. նայում է բաժանուած հարսի դռանը, տեսնում է, որ ոչ մի հետք չկայ, բռնում է իւր տան դռան հետքը և գնում։ Մի քիչ գնալուց յետոյ պատահում է մի մարդու, որին բարևելուց յետոյ հարցնում է թէ ով է։

—Ես ձեր տան դովլաթն եմ, պատասխանում է այդ մարդը, ես այն հարսի ճակտին էի նստած, որ երէկ բաժանուեց ձեզանից. հետը գնալ չուզեցի, որովհետև փոքրիկ տուն է, ձեզ մօտ մնալ էլ չարժէ, ուստի և հեռանում եմ։

Գերդաստանի հայրը սկսում է խնդրել, պաղատել, որ վերադառնայ տուն, սակայն դովլաթը չի համաձայնում, մին-

չև որ գերդաստանի հայրը խոստանում է հաշտուել բաժանուած հարսի հետ և նրան կրկին իր մօտն առնել։

*Տաւարի-ղովլաթ.*—Ուզունլար մի գիւղի մի հարս իւր սկեսրոջ հետ միասին տանը առանց տղամարդի մնալով դըռները կողպում են և կրակի առաջ լուռ ու մունջ նստում։ Մէկ էլ յանկարծ դռնից մինը բարակ ձայնով կանչել է, որ դուռը բանան։ Հարսը դուրս է եկել և տեսել մի սատրիկ մազոտ մարդ՝ կանգնած։ Հարցնում է, թէ ով ես։ Թէ մի մարդ եմ, էլի, եկել եմ։ Հարսը վախեցած ներս է քաշւում, մարդն էլ նրա յետևից գնում և օջախի մօտ նստում է. բերում նրա առաջ հաց են դնում, սա սկսում է ուտել։ Ուտում է ուտում, բայց հացը չի պակասում։ Մարդը անխօս սրբում է բերանը և յետ նստում։ Այս ժամանակ սկեսուրը վերցնում է ճրագը և հարսի հետ գնում են օդան, որ այդ մարդու համար անկողին պատրաստեն՝ քնի։ Այս մարդն էլ սրանց հետևում է, հարսը անկողինը ձգում է, մէկ էլ յետ են նայում որ մարդ չկայ։ Նոր են հասկանում, որ սա տաւարի «դովլաթն է եղել»։

*Ղսմաթ.*—Սողոմոն իմաստունը մի նախիրի մօտից անցնելիս ասում է, թէ այս ինչ կովի որովայնի հորթի ճակատը ծաղկաւոր (ղաշղա) է։ Նախրապանը պատասխանում է թէ չէ, պոչն է ծաղկաւոր, որ դրել է ճակատին, այդպէս է երեւում։ Սողոմոնը մորթել է տալիս կովը և տեսնելով, որ նախրապանի ասածն էր ճիշտ, հարցնում է, թէ ինչի՞ այդքան իմաստուն տեղալը նախրապան է մնացել։ Նա էլ պատասխանել է, թէ իմ ղսմաթս է այսպէս. իմ ծննդեան ժամանակ իմ ղսմաթի ղոչը (խոյ) ոտը տարել պոզերն է քերել, դրա համար էլ ես չոր չորացել եմ, այն ինչ քո ժամանակը՝ ըլմակն է քերել։

## Բ.

## ՉԱՐ ՈԳԻՆԵՐ.

*Սատանաներ.*—Սրանց գլխաւորը համարւում է Բելիարը, որի որդին կոչւում է Սաթիէլ, իսկ աղջիկը՝ Նարմադուշիկ: Սրանց մասին պատմում են.

Digitized by Google

Ա.

Երբ Քրիստոսի մայրն ու մօրաքոյրը (Եղիսաբէթ) Փրկչի գերեզմանի վրայ ողբում էին՝ գլուխները քաշ ձգած և առանց չուրջը նայելու, սատանաները, որ մինչև այդ ժամանակ մարդկանց մէջն էին ապրում և նկատելի էին, կամենալով նրանց ուշքը ուրիշ բանի վրայ դարձնել, որպէսզի մոռանան Տիրոջը, պարկերի մէջ պղնձէ ամաններ էին ածել և նրանց առաջ կանգնել թրխկթրխկացնում էին։

Աստուածածինը յետ է նայել և տեսնելով սատանաներին՝ անիծել է, թէ «աներևոյթք ըլլիք», և այդ օրուանից նրանք աներևոյթացել են, այլևս մարդկանց չեն երևում։

Բ.

Մի անգամ մի սատանայ պատահելով Կարփեցի մի արքայի, առաջարկում է նրան, թէ ես քեզ կը հարստացնեմ, եթէ քո, կնոջդ և երեխաներիդ հոգին ինձ տաս։ Արքան ասում է, թէ սպասիր գնամ կնոջս հարցնեմ, տեսնեմ ինչ կասի: Գնում կնոջը հարցնում է, կինն ասում է. Լաւ, համաձայն եմ, միայն այն պայմանով, որ մեր «ամէն ծուռը դրստէ»։ Արքան գալիս գտնում է սատանային և պայմանը կապում։

Այնուհետև սատանան սկսում է նրանց պէտքերը հոգալ. ահագին հարստութիւն է տալիս, զուարճութիւններ է պատճառում։ Մի օր էլ, երբ իւր կարծիքով, ամէն ինչ արած, կատարած էր համարում, սատանան ինքնագոհութեամբ հարցնում է կնոջը, թէ էլ բան չունի՞ք ծուռը՝ դզեմ։ Կինը մի մազ է հանում գլխից և տալիս, թէ դզիր։ Սատանան առնում գնում է մազը և երկար չարչարուելուց յետոյ ուղղում, բերում տալիս կնոջը հարցնելով.

«Այդ մէկն էր, թէ էլի կայ»:

—Ինչպէս չէ, մի ամբողջ խուրձ, պատասխանում է կինը:

Այս որ լսում է սատանան, իսկոյն անհետանում է։ Այսպէս Կարփեցի կինը մինչև անգամ սատանաներին է խաբում։

Digitized by Google

## Գ.

*Ուզունլար գիւղում Գորգնանց պապը մի անգամ օջախի մօտ նստած միջոցին տեսնում է, որ մի քանի սատանաներ եկան ներս մտան։ Իսկոյն վերցնում է խանձողը և տալիս սրանցից մինի գլխին: Սա վայր է ընկնում, իսկ միւսները փախչում են։ Պապը սիրտ է անում, սրա մազերից մի քիչ կտրում պահում։ Մի քիչ յետոյ սատանան վեր է կենում, և էլ չի հեռանում, մնում է սրանց տանը։ Սրանք դրան եօթը տարի ծառայեցնում են, միշտ հակառակ ձևով հրամայելով։ Երբ եօթը տարին լրանում է, այս սատանան սաստիկ աղաչում է, որ իւր մազերը իրան տան, գնայ։ Սրանք էլ տալիս են։ Սատանան նորից է սկսում աղաչել, պաղատել, որ տնից մի բան տան իրեն: Վերցնում մի բուռ մոխիր են տալիս նրան։ Սատանան անհետանում է, բայց մինչև այժմ էլ սրանց տանը մոխիր չի մնում, սատանան հաւաքում, տանում է։*

## Դ.

*Իգահատցի Արաղ որսորդը պատմում էր. «Որպէս աշխարհին յայտնի է», երիտասարդ ժամանակս ես որսորդութիւն էի անում և «բոլորը գիտեն, որ իմ գնդակը գետին չէր ընկնիլ»։ Քանի՜ քանի լեզգիներ ենք քոթկոթաղ արել Հասան խանի տարուց առաջ... Հա՛, այն էի ասում, որ մի անգամ մենակ գնացի որսի, մի անտառի մէջ մութը վրայ հասնելով կրակ վառեցի և սկսեցի սպանածս եղնիկի մսից խորոված անել. Հրացանս կողքիս դրած էր։ Յանկարծ տեսնում եմ անտառի խորքից մի մարդ եկաւ, եկաւ նստեց իմ հանդէպ և ինքն էլ սկսեց խորոված անել։ Խօսում եմ, չի խօսում, հարցեր եմ տալիս՝ չի պատասխանում, անձղակոթ եմ վեր առնում, որ գլխին տամ, նա էլ նոյնն է անում։ Կարծելով, որ անտառում մոլորուած մի լեզգի է, վերցրի հրացանս և դրա կրծքին տուի։ Հրացանիս ձայնի հետ տեսնեմ մի սոսկալի ողբ ընկաւ և ամբողջ անտառը լցուեց։ Հրացանս ձեռ-*

քիցս խլեցին՝ քարերով տուին, ինձ քաշ ածեցին ու տուր թէ կըտաս։ Հասկանալով, որ սատանաների ճանկն եմ ընկել, սկսեցի հայր մեր ասել։ Եօթն անգամ ասել էի, երբ ինչպէս որ մարդ քնից կը զարթնի, այնպէս յանկարծ զարթնեցայ, տեսնեմ չորս բոլորս ոչինչ չը կայ, կրակը առջիս վառվում է, խորովածս այրուել էր, հրացանս էլ կողքիս դրած…

Ե.

Մի օձնեցի պատմում էր. Մի տարի երիտասարդ ժամանակս Արտաժանու գոմերում (ձմերանոց) տաւար էի պահում. երեկոյեան դէմ զուռնա դհոլի ձայն լսեցի, կարծեցի, թէ հարս են տանում։ Մթնեց, տաւարը ներս էի արել ու կրակի կողքին նստել, տեսնեմ զուռնա դհոլը եկաւ գոմի դուռը։ Դուրս ելայ, ինչ տեսնեմ. բոլորովին լոյս է, և զուռնաչիք, անբաւ հարսնւորք, և հարս ու թագաւոր գոմի դռանը ուրախութիւն են անում, պարում։ Ինձ էլ առաջարկեցին պարել, ու հետներն առած տարան։ Բաւական գնալուց յետոյ, յանկարծ տրեխս ոտիցս դուրս եկաւ, նստայ շինելու։ Մի քանիսն ինձ շտապեցնելով հարցրին, թէ ինչի նստայ։ Ես բացատրեցի նրանց, թէ տրեխներս խոզի բարակ կաշուց լինելով քրքրուեցան և ոտիցս դուրս ելան, ուզում եմ ամրացնել։ Խոզի անունը բերնիցս դուրս ելնելուն պէս՝ էլ հարսանիք, հարսնեւոր անյայտացան աչքիցս. աշխարհը մթնեց և ես ինձ տեսնում եմ գոմերից կէս օրուայ ճանապարհ հեռու մի անտառի մէջ վար ընկած։ Իսկոյն եւետ խաչակնքում եմ հասկանալով բանի էութիւնը և մինչև լուսաբաց հազիւ վերադառնում գոմերը։

Զ.

Օձունում Սօնք, Արդուինում Դաւիթ քեօխվանք, Ճահալլում Քոշնանց Քոշարը նկատել են, որ իրենց գոմերում ձիերը գիշերները սաստիկ քրտնում են և մազերը հիւսուած են լինում. կուպր են քսում ձիերին և բռնում մի մի սատանայ եօթական տարի աշխատեցնում, յետոյ արձակում։ Սրանք հեռանալիս մի բան էին խնդրել իբր վարձ իրենց եօթն տա-

րուայ ծառայութեան, սրանք էլ մի մի բուռ մոխիր են տուել, այս պատճառով էլ սրանց տներում երբէք մոխիր չի մընում, սատանաները հաւաքում, տանում են։

Մի նոյնանման գիւղից յետոյ Արղուլեցի Օթարանք ջուր են տուել, և մինչև այժմ էլ սրանց տանը ջուրը բարաքեաթ չունի, որքան էլ բերեն, մի քիչ յետոյ չքանում է:

Իսկ Ճնող գիւղում, Ճաժլենենց տանը կդալ երբէք չէր մնում. մի օր տեսնում են, որ մի կին եկաւ և գդալները հաւաքեց, ուզում է տանի: Տան տղամարդը սրտոտ է լինում, վրայ է վազում, մի հատ խփում վայր ձգում կնոջը, թէ այդ ուր ես տանում մեր գդալները։

—Ձեր պապը այդ մեզ է տուել, պատասխանում է կինը և անյայտանում։

Նոր հարց ու փորձ են անում, իմանում, որ իրենց պապն էլ մի սատանայ է բռնած եղել, եօթը տարի աշխատացրել և վերջը մի գդալ նուիրել։

Է.

Երկու մարդ միմեանց գանգատում էին, թէ որքան անում են, չեն կարողանում կրակ վառել։ Սրանց խօսակցութիւնը լսում են երկու սատանայ և սրանց վրայ ծիծաղելով միմեանց ասում. «Ասլա թող չախմախը քարին տան, կը տեսնեն ոնց է վառւում»։ Մարդիկ լսում են սրանց ասածը և իսկոյն գնում փորձում, կրակ ստանում։ Երբ բոցը բարձրանում է, նոյն սատանաները գալիս են սրանց մօտ և հարցընում, թէ այդ ով ձեզ սովորեցրեց կրակ հանել։

— Այդ մենք վաղուց գիտէինք, պատասխանեցին այս մարդիկը։

Ը

Երբ առաջին անգամ ձիթահանք շինեցին, իսկոյն չը կարողացան ձէթ հանել. չգիտէին ինչպէս անէին։ Այս ժամանակ սատանան եկաւ նրանց մօտ և խոստացաւ սովորացնել ձէթ հանելու կերպը, եթէ որ իրեն էլ մաս տան։ Մարդիկ չհամաձայնուեցան և շարունակեցին փորձեր անել, բայց

Digitized by Google

անօգուտ։ Մի օր էլ երբ սատանան ներս մտաւ միւնոյն առաջարկը անելու, ձիթահանքի տէրը տաք ջուր ուզեց։ Սատանան այս լսելով՝ բացականչեց. Ի՞նչ, գտա՞ր պարտնիքը, տաք ջուրը կլծաւատի վրա՞յ պիտի ածէք։

—Այո, պատասխանեց տէրը, վաղուց արդէն գտել ենք պարտնիքը և կարիք չունենք քեզ մաս տալու։

Եւ հէնց որ սատանան ամօթահար հեռացաւ, տէրը փորձեց սատանի ասածը և հիանալի ձէթ ստացաւ։

Թ.

Կլեկչին ամաննիրը մաքրում է և կամենում է կլայեկել, սակայն չի իմանում, թէ կլայեկը ինչո՞վ քսէ։ Երկար, զուր ջանքեր թափելուց յետոյ, կլեկչին կողպում է խանութն ու գնում։ Սատանան պատահում է նրան և հարցնում.

—Կլեկեցի՞ր ամանները։

—Կլեկեցի, պատասխանում է կլեկչին։

—Թէ ի՞նչով, բամբակո՞վ, կրկին հարց է տալիս սատանան:

—Հա՛, բամբակով, պատասխանում է կլեկչին, յետ դառնում, դրանով փորձում, տեսնում է կլայեկուեց։

*Ջրի խսան.* (ջրի մարդ)։ Սրանք ապրում են գետերի, լճերի և ծովերի մէջ. կլոից բարձր մարդու մարմնով և գլխով, իսկ ներքև ձկի մարմնով և պոչով են լինում։ Ձկան թևերի տակ լինում են մարդկային երկու ձեռք, բայց ո՛չ ոտներ։ Երկու սեռի են լինում, շատ խմաստուն, կերակրւում են ընդհանրապէս աւազով, երբեմն էլ խեղդուած մարդկանց դիակներով. և այս պատճառով շատ անգամ աշխատում են նաւեր խորտակել, որպէսզի լաւ ճաշ ունենան։

*Քալթառ քոսի.* Օձնեցի Մայրանը մազմազոտ, ծըլծըլոտ (ծալ ծալ մազերով) մորթի՝ խորխ՝ ունէր, երբ հագնում էր՝ դառնում էր քալթառ քոսի, էլ նրան ո՛չ մարդ էր տեսնում և ո՛չ շուն հաչում վերան։ Գիշերները գնում էր օրօրոցներից երեխաներին հանում տանում Օձունի ձորի քալթառ քոսի էրում (այր) ուտում։ Օձնեցիները իմացան, սկսեցին սաստիկ հալածել, թողեց գնաց Թազագեղ, ուր և մեռաւ։

## Գ

## ՑԱՒԵՐ

*Դող.*—Ուզունլարում Ա. Մ. որ երկար ժամանակ դողացնում էր, մի անգամ, երբ կամենում էր մածուն ուտել, զգում է, որ դողը պիտի բռնի, նայում տեսնում է, որ դողը գդալի վրայ նստած է, կամացուկ այդ գդալի մածունը լցնում է կողքը դրուած մորթէ պարկի (տաւարչուղ) մէջ և բերանը կապում։ Իսկոյն պարկն սկսում է դողացնել, իսկ ինքը բոլորովին ազատւում է այդ հիւանդութիւնից։

*Հարսնիքի հրեշտակ.*—Օձունում մի պառաւ պատմում էր. Մի օր մեզ մօտ մի ծերունի հիւր եկաւ, որ իւր ասելով տասերկու տարի շարունակ հարսնիքի հրեշտակներին ման էր ածել։ Նա ասում էր, թէ դրանք ամենից առաջ գետնափոր, աղքատ տներն էին մտնում։ Միայն սև շներից ու սև կատուներից խոյս էին տալիս: Երբ ներս էինք մտնում, նրանք գընում ծալքի վրայ նստում էին և ինձ հրամայում, որ այդ տնից ուտելիք և ըմպելիք մատուցանեմ իրենց։ Ո՛չ նրանց և ո՛չ ինձ մարդիկ չէին տեսնում. ես մտնում էի սփռոցին և եղած ամենալաւ բաները վերցնում տալիս սրանց։ Երբ ուտում կշտանում էին, հանում էին իրենց մօտի մատեանը և սկսում տան անդամների անունները գրել։ Ում անունը աջից ձախ էին գրում, նա միայն հիւանդանում էր, իսկ ում անունը ձախից դէպի աջ էին գրում, նա մեռնում էր։ Երբեմն իմ սիրելիների անուններն էլ էին ընկնում այդ մատեանը և երբ ես տեսնում էի, որ ձախից աջ են գրել՝ խնդրում, աղաչում էի, որ գոնէ աջից ձախ գրեն, սակայն նրանք պատասխանում էին, թէ «եազըլան փոզուլմազ» (գրուածը չի ջնջուիլ), և ձեռների զաւազանով խփում գլխիս: Այդ միջոցին ես ցաւ չէի զգում, սակայն նայեցէք, թէ որպիսի սպիներ են մնացել այդ հարուածներից։

Ես իմ աչքերովս տեսայ նրա գլխի սպիները, հաստատեց պատմող պառաւը, էլ ինչպէս կարող էի կասկածել նրա ասածների վրայ։

Digitized by Google

*ծաղիկ.* –Շնողնեցի մի կին պատմում էր, թէ տասն տարի առաջ գիշերները երկու պառաւ ինձ դուրս էին կանչում, գլխիս մի սև բան դնում, և ձեռիս դեղնաւոյն փոշի ածում։ Ես այլևս չէի կարողանում տանը մնալ, շարունակ շրջում էի և այդ փոշին շաղ տալիս սրա նրա վրայ։ Առաւօտ շատ վաղ միևնոյն պառաւներն գալիս էին ինձ մօտ, վերցնում գլխիցս սև բանը, ես իսկոյն տուն էի վերադառնում։ Յետոյ նկատում էի, որ ում վրայ այդ ինձ տուած փոշուց ածել եմ՝ ծաղիկ է հանել։

Մի կին, որի բոլոր երեխաները մեռել էին ծաղկից, իւր տաշտաքերանքի ժամանակ, երբ ծաղիկը գալիս է գիւղը, վերցնում է իւր մէկ հատիկին և հեռանում գիւղից, որպէսզի ծաղիկը նրան էլ չը տանի։ Գնում է, գնում, վերջը նկատում է, որ մի ամայի տեղում մի ծուխ է բարձրանում։ Գնում է ներս մտնում, տեսնում մի պառաւ նստած։

Սա Գաբրիէլ հրեշտակապետի մայրն է լինում, այն ժամանակներում Գաբրիէլ հրեշտակապետը դեռ ևս երկրիս վրայ էր ապրում։ Այս պառաւը հարցնում է այս կնոջը, թէ ո՞վ է և ո՞ւր է գնում, սա էլ պատմում է, որ իւր բոլոր երեխաները ծաղկից մեռել են, այժմ իւր տաշտաքերանքը առել, նրա երեսից փախել է։ Երեկոյեան Գաբրիէլ հրեշտակապետը տուն է գալիս, այս պառաւը ծածուկ հարցնում է նրան, թէ այդ կնոջ երեխայի ճակատին ինչ է գրած, արդեօք ազատուելու է ծաղկի ձեռից։

Գաբրիէլ հրեշտակապետը պատասխանում է, թէ դա երեք օր պիտի ապրի և այնպիսի մի մահով պիտի մեռնի, որ մայրը իւր կռները կոծէ, թէ ես արի։

Այս կինը այդտեղ երկու օր մնում է, երրորդ օրը երբ պառաւը կամենում է հաց թխել, սա ասում է նրան. «Նանի, այդ հացից ես էլ եմ ուտելու, դու պառաւ ես, թող ես թըխեմ»՝ պառաւը թոյլ է տալիս։ Սա հունցում է խմորը, ըսկըսում պնտել։ Այս ժամանակ երեխան մօտենում է մօրը և ասում, թէ մի բլիթ եմ ուզում։ Մայրը կռնով յետ է հրում, թէ դէն կնայ, դեռ ժամանակը չէ։ Երեխան վայր է ընկնում

և մեռնում։ Խեղճ մայրն սկսում է կոները կածել, լաց լինել և ասել. «Մեռնի այս կոները, սրանք եղան որդուս մահուան պատճառը»։

Երեխան ծաղիկ հանած ժամանակ ծնողները կիրակի են պահում, ընկուզի և սառը շաքարի փշուց երեք մոմ են շինում և վառում, խունկ ծխում, կարմիր շորեր փռում։

*«Տուր»*.—Երբ մինը մեռնելիս մէջքի վրայ կարմիր բծեր է ունենում, ասում են, թէ նա «տուր»-ից է մեռել, այսինքն ոգիները իրենց ձեռի գաւազանով «տուել» են (խփել են) նրան, և այդ կապոյտ բծերը հարուածի հետքերն են։

*Ցապախուրչին*.—Երբ գերդաստանի մէջ քուն է դնում մի վարակիչ հիւանդութիւն, տնեցիներն այդ հիւանդութիւնն իրենց տանից հեռացնելու հաւատով փայտից մի փոքրիկ խուրջին (բակեղաթ) են կարում և տան անդամների թուի համեմատ *կէնճիներ* (չիւղեր) հաւաքելով տնից՝ լցնում են նրա մէջ և տանում ծածկաբար ամփոփում դրացիներից մինի ցանկապատի մէջ։ Այսպիսով ցաւը իրենց տանից փոխադրւում է հարևանի տունը և իրենք այլևս չեն հիւանդանում։

Բայց սրանից ցաւը տնից հեռացնելու նպատակով շինում են երկու տիկնիկ և միմեանց կտրող երեք ճանապարհների մէջ թաղում, կամ այդ տան ալիւրամանից ալիւր են վերցնում և տանում հոսող ջրի վրայ մաղում, հաւատացած լինելով, որ ցաւը, սիրելով մինչև ալիւրի վրայ նստել, կարող է նրա հետ ջուրը թափուել և հեռանալ և կամ տունը լաւ աւելում են և աղբը ածում դրացու աղբահորը։ Եւ եթէ այս բոլոր միջոցները չեն կարողանում հեռացնել ցաւին տանից, խնդրում են մի որևէ սրբի միջամտութիւնը և խոստանում, որ եթէ նա հեռացնէ ցաւը տանից՝ մի որոշ իր, օրինակ, մի կաթսայ, մի կացին և այլն, կը ծախեն և արժէքը կը նուիրեն այդ սրբին՝ մատաղ անելով։ Եւ որպէսզի սուրբը չը կասկածի նրանց ուխտի վերայ, այդ իրը տանում են դրկցի մօտ «գրաւ» դնում, և երբ ցաւը հեռանում է, իրը վերցնում, ծախում և ստացած դրամով ոչխար են գնում, մատաղում, իսկ եթէ չի հեռանում, իրը նորից յետ են վերցնում։



Digitized by Google

*Մոլեռանդ կանայք խաչի սէր են ման գալիս.*—Երբ մի կին մի որևէ երկարատև հիւանդութեամբ տանջւում է, կամ որդիքը մեռնում են և կամ սիրելիներից մինը սաստիկ հիւանդ է, նա ուխտ դնել, փալ բանալ տալով իմանում է, թէ որ խաչից է, ապա՝ երեք, հինգ կամ եօթը գիւղ բոբիկ ոտով հետի անցնում է և դռնէ դուռ մուրալով «խաչի փայ» հաւաքում և խունկ, մոմ, սեղանի զարդարանք, մատաղացու առնում, տանում այդ խաչին նուիրում։

Ամօթխած գեղջկուհին, որ իր երեսը ծածկում է օտարից և խոյս տալիս մարդկանցից, այսպիսի դէպքերում մի պառաւ կնոջ ուղղեկցութեամբ, սպիտակ դաթիբէն (ծածկոց) ծածկած, առանց ամաչելու ման է գալիս գիւղից գիւղ, տընից տուն և մուրում։ Գիւղացիները մեծ յարգանքով են վերաբերւում դէպի այսպիսի «խաչի սէր մանեկողները» և մեղք են համարում նրան ողորմութիւն չը տալը։

Բայց երբ որբերի միջամտութիւնն էլ ցանկալի հետևանքը չի ունենում, և ցաւերը յամառութեամբ շարունակւում են մնալ տանը, հետևում են Գ—ի և Բ. քահանայի օրինակին.—Օձունում Գ.ի անասունները վարակիչ հիւանդութեամբ բըռնւելով սկսում են կոտորուել։ Գ. մի կով է մատաղում, գոմում մոմ վառում, խունկ ծխում, որպէսզի «ազար տուն ածող հրեշտակների» աչքը քաղցրանայ իր վրայ ու թողնեն գնան։ Սակայն բոլորը զուր է անցնում և կոտորածն աւելի ևս սաստկանում է։ Այս ժամանակ Գ. սաստիկ կատաղում է, վերցնում է մի ահագին մահակ և անասելի հայհոյանքներ ուղղելով այդ հրեշտակներին, սկսում է ուժգին հարուածներ տալ պատերին, առաստաղին և անկիւններին։ Հետևեալ օրը կոտորածը դադարում է։ Միևնոյն ժամանակ հարևան պառաւը գալիս ասում է, թէ ինքը նոյն գիշերն երազում տեսել է, որ տաճկական հանդերձներով չորս հոգի, ձեռներին տէգեր բռնած, դուրս են եկել դրանց գոմից։ Պառաւը հարցրել է դրանց թէ ովքեր են և ուր են գնում, նրանք էլ պատասխանել են, թէ իրենք «ազարի հրեշտակներն» են, և զզւելով Գ—ից, գնում են Բ. քահանայի տունը։ Նոյն իսկ նրանցից մինը

Digitized by Google

ցոյց է տուել պառաւին Գ—ի հարուածներից վիրաւորուած գլուխը։

Մի քանի օրից Բ. քահանայի անասուններն էլ են ըսկըսում կոտորուել և սա լսելով պառաւից նրա տեսած երազը, աւելի զօրեղ միջոցի է դիմում այդ անկոչ հրեշտակներին իւր գոմից հեռացնելու։ Մի մեծ կրակ է վառում գոմի մէջ տեղը, խօմը շամփուր փափախակի տաքացնում և կոխում պատերի, առաստաղի ծակերն ու անկիւնները։

Հետևեալ օրը նոյն պառաւը պատմում է, թէ կրկին տեսել էր հրեշտակներին մի ուրիշ գոմ փոխադրուելիս, և թէ դրանցից երկուսը կուրացել էին հնարագէտ քահանայի տաք շամփուրից։

## ՍՐԲԵՐ

*Մովսէս.*—Սա Սինայի լերան վրայ Աստծու հետ խօսելուց յետոյ սաստիկ հպարտացել է, թէ իրենից արժանաւոր մարդ չը կայ աշխարհում, որովհետև ինքը միայն արժանի եղաւ Աստծու հետ խօսելու։ Քիչ յետոյ սարից իջնելիս ճանապարհը կորցրել է և գնացել իւր ժողովուրդից բաւական հեռացել։ Վերջապէս մի ծերունու է պատահել և ասել նըրան. Ես Մովսիսի ժողովուրդից եմ, ցոյց տուր ինձ նրա երկիրը։ Ծերունին պատասխանել է, թէ Մովսիսի երկրի մասին առաջին անգամն է լսում, լաւ կանէ որ գնայ իւր մեծ եղբօրը հարցնէ, թերևս նա գիտենայ։ Մովսէսը գնացել է նրա մօտ, սակայն սա ևս ոչինչ լսած չէ եղել այդ երկրի մասին, ուստի և ուղարկել է ամենամեծ եղբօր մօտ։ Եւ երբ Մովսէսը միևնոյն խնդիրը սրան էլ է արել, սա պատասխանել է, թէ Մովսէսի անունը երբէք լսած չէ, սակայն կարող է ամպերից իմանալ։ Ապա ցած է կանչել ամպերին և հարցրել է նրանց, թէ ո՞րն է Մովսիսի երկրի վրայ անձրև տեղացնում։ Մի փոքրիկ ամպ ասել է, թէ ես եմ տեղում։ Այդ ժամանակ ծերունին պատուիրել է այդ ամպին, որ նրան տանի այդ երկիրը։

Digitized by Google

—Հա՛, պատասխանում է ամպը, թող աչքերդ խփէ։

Մովսէսը խփել է աչքերը, և երբ մի քանի րոպէից բաց է արել, տեսել է իւր ժողովուրդի մօտ կանգնած։ Այս ժամանակ մի հրեշտակ երեւացել է նրան և ասել. «Աստուած պատժեց քեզ հպարտանալու համար, նա քեզ մոլորեցրեց, որ տեսնես, թէ քեզանից շատ աւելի արժանաւոր, նոյն իսկ ամպերին հրամայող մարդիկ էլ կան, որոնք, սակայն, չեն հպարտանում։

*Եղիա մարգարէ*.—Սա մի շատ առաքինի մաշկակար է եղել, որ չը կամենալով կանանց երեսին նայել, մի մեծ ծանր գդակ է ծածկել, որպէսզի երբէք չը կարողանայ վերև նայել։ Սակայն մի անգամ սատանան կնոջ կերպարանքով եկել է մաշիկ կարել տալու, փոքրիկ, գեղեցիկ ոտը ցոյց տուել, մի քիչ սիրախօսել. Եղիան բարձրացրել է գլուխը և երեսին նայել։ Բայց իսկոյն զգացել է, որ մեղանչեց, ձեռի հերանը աչքն է խրել, կուրացրել։ Բայց նոյն վայրկեանին սատանան անյայտացել է և նա երկինք է համբարձել։

*Աստուածածին*.—Կոյս Մարիամը կուժը ուսին դրած ջրի գնալիս մի ձայն է լսել, թէ Մարիամ, քեզանից պիտի ծնուի Քրիստոսը։ Մի քիչ յետոյ Մարիամը զգացել է, որ մի քամի ականջից ներս է մտնում և նկատել է, որ որովայնը հետզհետէ մեծանում է։ Մի առ ժամանակից յետոյ Մարիամը տեսել է, որ մի լուսեղէն բոց դուրս եկաւ բերանից, բռնել է, ծղօտով փաթաթել և դրել մսուրը։

Սեդրակ, Միսակ և Աբէթնակոյը առանձին առանձին եկել են նրան տեսութեան, սակայն Սեդրակին երեւացել է ծերունու, Միսակին միջահասակ, իսկ Աբեթնակովին մի երիտասարդի կերպարանքով։

Յետոյ Մարիամը վերցրել է Յիսուս երեխային և գնացել, մի պառաւի տան իջևանել։ Պառաւը սիրով ջուր է տաքացրել և բերել, երեխային լողացրել է, և երբ տարել է տաշտի ջուրը թափելու՝ տեսել է, որ թանձրացել, ոսկի է կտրել։

*Ս. Նշան*. Ա. Երբ Լեզգիները աւերում էին Լօռին, իգահատցի 75 տարեկան Խուդավէրդի ծերունին փախչում և

ապաստանում է Հաղբատի վանքում։ Այստեղ տեսնում է, որ մի մեծ, արտասովոր թռչուն եկել, թառել է Ս. Նշան եկեղեցու խաչի թագի վրայ և երեք օր այդպէս կացել։ Վանահայրը և գիւղացիները զարմացած հարցրել են այդ ծերունի Խուդավէրդուն, թէ ինչ պիտի նշանակէ այս թռչունը։ Սա էլ պատասխանել է, թէ Լեզգիների աւերած շրջակայ եկեղեցիների զօրութիւնները թռչունի ձևով եկել, իջել են այս եկեղեցու վրայ։ Այս որ ասել է, թռչունը դէպի երկինք է սաւառնել և անհետացել։ Եւ այդ ժամանակից մինչև այժմ էլ ժողովուրդը կարծում է, որ շրջակայ Քոբայրի, Ս. Գրիգորի, Սիոնի և այլ աւերակ եկեղեցիների զօրութիւնը Հաղբատի Ս. Նշանի վրայ է անցած։

Բ. Մի անգամ մի քանի հաղբատեցիներ վրացի խոզարածներից 30 խոզ են գողանում։ Սրանք գալիս են գողերին բռնում, սակայն երբ վերջիններս իրենց յանցանքը չեն յանձն առնում, վրացիներն ստիպում են, որ գնան Ս. Նշանը համբուրեն և երդուեն, որ իրենք չեն գողացել։ Հաղբատեցիներն ստիպուած գնում են, բայց հէնց որ ներս են մտնում, առաջինը վայր է ընկնում, ուշաթափ լինում և մեռնում։ Վրացիները զարհուրած թողնում փախչում են, իսկ հաղբատեցի գողերն սկսում են բղաւել, թէ ուր էք փախչում, մենք ենք գողացել, եկէք, տարէք։ Սակայն վրացիները յետ չեն դառնում, այլ բղաւում են, թէ սուրբ Նշանին մատաղ արինք։

Գ. Մի անգամ երբ լեզգիները յարձակւում են հաղբատեցիների վրայ, որ կոտորեն, սրանք տեսնում են, որ յանկարծ Ս. Նշան եկեղեցու դռները բացուեցին և մի դեղին զգեստով եպիսկոպոս դուրս եկաւ և խաչակնքելով հալածեց բոլոր լեզգիներին։ Հասկանալով, որ այդ դեղնազգեստ եպիսկոպոսը Ս. Նշանն է եղել, սկսել են նրան «դեղնաթիկունք»՝ իսկ լեզգիների հալածուած տեղն էլ «յաղթուած փոս» կոչել։

## ՕՀԱՆ ՕԶՆԵՑԻ

*Օհան Օձնեցին եւ ապօրինի երեխան.*—Օհան Օձնեցին ապրում էր Օձունում։ Նա իբր կով կթող պահում էր մի այրի կին։ Ինչպէս է պատահում, այդ այրի կինը մի որդի է

ծնում։ Ժողովուրդը տեսնելով այս, սկսում է կասկածել Օհան Օձնեցու առաքինի կեանքի վրայ և քամբասում նրան։

Օհան Օձնեցին սաստիկ վշտանալով երեխայի ծննդեան ութօրեակին պատարագ է մատուցանում, հաւաքում է ժողովրդին եկեղեցի, բերել է տալիս վերոյիշեալ կնոջ նորածին որդուն և առում նրան. Աստծու անունով հրամայում եմ քեզ, ով մանուկ, լեզու եկ և ասա, թէ դու ո՞ւմ որդին ես։

Իսկոյն ութօրեայ երեխան լեզու է ելնում և ասում.

—Ես հովիւ Օհանի որդին եմ։

Ժողովուրդը զարմանալով հրաշքից և խղճահարուելով, որ իզուր քամբասել է առաքինի Օհան Օձնեցուն, ընկնում է նրա ոտները, մեղայ գալիս։ Բայց Օհան Օձնեցին լիովին չի ներում, այլ մի թեթև անէծք է դնում օձնեցիների վրայ՝ ասելով. «Ո՛չ բոլորովին կորուիք (աղքատանաք), ոչ էլ բոլորովին հարստանաք», և այս է պատճառը, որ օձնեցիք ո՛չ շատ աղքատանում են, ոչ շատ հարստանում։

Յետոյ Օհան Օձնեցին որոշում է հեռանալ այս գիւղից։ «Գնամ, ասում է նա, մի այնպիսի տեղ, ուր ո՛չ եզան լուծ կայ, ոչ կովի կիթ», որպէսզի ստիպուած չը լինի ծառաներ կամ կով կթող կանայք պահել։

Նա բարձրանում է Արգուեի լեռան և այնտեղ սկսում է ճգնել, բայց այդ տեղից միշտ հայեացքն ընկնում է Օձուն գիւղի վրայ, որը յիշեցնում է նրան անարդար քամբասանքը, ուստի և իջնում է ձորը, հիմնում այժմեան փոքրիկ վանքը և շարունակում այստեղ ճգնել։

*Օհան Օձնեցին եւ վիշապները*.—Մի անգամ Օհան Օձնեցին պատարագ մատուցանելիս դրսից մի ֆշշոց է լսում. իւր եօթը սարկաւագներից մինին ուղարկում է, որ իմանայ թէ ինչ ձայն է։ Սարկաւագը գնում է և չի վերադառնում, ուստի և Օհան Օձնեցին երկրորդ, ապա երրորդ, չորրորդ, վերջապէս եօթներորդ սարկաւագին է ուղարկում և երբ տեսնում է, որ ո՛չ մինը չի վերադառնում, հէնց այնպէս զգեստաւորուած դուրս է գալիս վանքից և տեսնում է երկու ահագին օձ, իսկ ժայռի գլխին մի կին՝ գումանին հայց տանելիս։

*Հասկանալով, որ այդ օձերն են կլանել իւր սարկաւագներին, և բարկանալով, որ այդ պառաւը իրեն իմաց չէ տուել, ասում է. «Վիժեցէք սարկաւագներիս և բոլորդ էլ քար դարձէք»։*

*Իսկոյն օձերը վիժում են եօթը սարկաւագներին, սակայն մեռած, և քար դառնում։ Քար է կտրում (դառնում) նաև այն պառաւ կինը, որ պուլթանին հաց էր տանում։*

*Այժմ Օհան Օձնեցու վանքի և Արդուի գիւղի մէջ ցոյց են տալիս այս երկու օձ-վիշապները, որոնք ժայռի մէջ ընկած սև քարի շերտեր են, մօտ յիսնական սաժէն երկարութեան։ Ժայռի գլխին, քարերի կոյտը և մի տափարակ քարի վրայ նկարուած ափսէն ու գդալները պատկերացնել են տալիս պուլթանին հաց տանող պառաւին։*

*Օձ համարուած քարաշերտի մէջտեղից, որ այժմ «օձի պորտ» է կոչւում, հոսում է երկաթաջուր։ Այստեղ առաւելապէս բորոտ և աւհասարակ հիւանդոտ մարդիկ մոմ են վառում, խունկ ծխում, և այդ ջրով լողանում, խմում, կամ իրենց վէրքերին քսում, որ առողջանան։*

*Այս ջրի մէջ մի քիչ աղ աւելացնելով տալիս են հիւանդ անասուններին խմելու, որ առողջանան։*

Օհան Օձնեցին և յոյները.—*Օհան Օձնեցու ժամանակ յոյները սաստիկ նեղում էին հայերին։ Նրանք տախտակը ծակում էին, անցկացնում հայի վիզը, երկու կողմում մի մի յոյն նստում, որոնք հայի գլխին ընկոյզ կոտրելով ման էին գալիս և զուարճանում։*

*Այս նեղութիւնների ժամանակ մի կնոջ միակ, հիւանդոտ որդին ցորենի հաց է ուզում, իսկ յոյները հայերի համար ցորենի հացը «պաս էին դարձրել», նրանք գարի հաց էին ուտում։ Այս կինը դիմում է մի ջրաղացպանի և մի քիչ ցորենի ալիւր խնդրում իւր երեխայի համար մի փոքրիկ բլիթ եփելու. սակայն նա առաջարկում է դրա փոխարէն իւր հետ «պլաւս մէկ անել»։ Կինը սաստիկ վրդովուած հեռանում է ջրաղացից և դիմելով Օհան Օձնեցուն, արտասունք թափում և պատմում։ Օհան Օձնեցին հրամայում է իւր ծառային*

Digitized by Google

բանալ պահարանը և մի հաց տալ այդ կնոջը։ Ծառան պատասխանում, թէ իրենք էլ հաց չունեին, բայց երբ Օհան Օձնեցին կրկնում է իւր հրամանը, ծառան բաց է անում պահարանը և զարմացմամբ երկու հաց գտնելով տալիս է կնոջը։

Նոյն երեկոյին Օհան Օձնեցին վեր է կենում, գնում Բաղդատի խալիֆայի մօտ օգնութիւն խնդրելու։ Խալիֆան սպասով ընդունում է նրան և տեսնելով նրա չափազանց շքեղ հանդերձը, յանդիմանում է, թէ ինչպէս է, որ Քրիստոսը պարզութիւն է քարոզում, և ինքը, նրա հետևողը, այդպէս շքեղ է հագնւում։ Օհան Օձնեցին առանց պատասխանելու բաց է անում կուրծքը և խալիֆան տեսնում է, որ գեղեցիկ հանդերձի տակ, մարմնի վրայ խարազան է հագած, որի վրայ նոյն իսկ մանր մեխեր են անցկացրած, որ շարունակ ծակոտեն մարմինը։

Մինչդեռ խալիֆան զարմացած նայում է, Օհան Օձնեցու մարմնից մի կաթիլ արիւն է թռչում խալիֆայի կոյր աչքին, որ իսկոյն բացւում է։ Օհան Օձնեցին բռնում է խալիֆայի բորոտ ձեռքերը և տանում իւր ծոցը, որոնք ևս իսկոյն բժշկւում են։ Խալիֆան այս հրաշքներից հիացած, խոստանում է կատարել Օհան Օձնեցու խնդիրը, միայն ոչ թէ ուղղակի զօրք, այլ դրամ տալով, որպէսզի նա այդ դրամով ինքնակամ զօրք պատրաստէ։ Օհան Օձնեցին ճարահատուած համաձայնում է։ Երբ քանակի մասին խօսք է լինում, Օհան Օձնեցին մի կտոր թղթի վերայ գրում է մի քանի խօսք և տալիս խալիֆային, խնդրելով նրա քաշովը մէկ ոսկի տալ իրեն։ Խալիֆան ծիծաղելով ձգում է այդ թուղթը մի փոքրիկ կշռի նժարի մէջ, և միւսում ոսկիներ դարսում, բայց որքան էլ որ աւելացնում է՝ թուղթը չի կշռւում։ Հրամայում է մի քիչ աւելի մեծ, յետոյ աւելի մեծ և ի վերջոյ ամենամեծ կշեռքը բերել և երբ իւր գանձերը չեն կարողանում կշռել այդ մի կտոր թուղթը, համաձայնում է հինգ հարիւր զինուոր տալ։ Օհան Օձնեցին զօրքն առած գալիս է և երբ կամուրջից պիտի անց կենային, դիտում է, թէ որի պատկերը գետում անգլուխ է երևում։ Եւ սրանից գուշակելով, որ այդ զինուորին

վիճակուած է պատերազմում մեռնել, վերադարձնում է խալիֆային և միմիայն 300 զինուոր առած գնում է *)։ Այս ժամանակ երկնքից մի խաչանիշ թուր է վայր ընկնում, որ Օհան Օձնեցին վերցնում է և մէջքը կապում։

Այս հրաշքը տեսնելով՝ յուսահատւում է և փախչում։ Օհան Օձնեցին հալածում է յոյներին Հայաստանից և գերի բռնում Յունաց պատրիարքին, որ սպառնացել էր, թէ եռացրած ջրի մէջ է ձգելու Օհան Օձնեցուն։ Մի կաթսայ ջուր եռացնելուց յետոյ Օհան Օձնեցին դիմում է Յունաց պատրիարքին. Սպառնացել էիր ինձ եռացրած ջրի մէջ ձգել. ես այդ քեզ չեմ անի, միայն հրամայում եմ որ գոնէ այս խաչը ձգես ջրի մէջ և հանես։ Յունաց պատրիարքը հրաժարւում է։

«Տես, առաջ ես կը ձգեմ և կը հանեմ, յետոյ էլ դու ձըգիր և հանիր», ասում է Օհան Օձնեցին և խաչակնքելով ջուրը, խաչը մէջը ձգում և հանում է առանց վնասուելու։ Պատրիարքն որոշում է ինքն էլ փորձել, բայց հէնց որ ձեռքը ջուրն է կոխում, իսկոյն խաշւում է, դուրս է քաշում։

—Այդքանը քեզ բաւական է իբր պատիժ, ասում է Օհան Օձնեցին և ազատ թողնում պատրիարքին։

Պատրիարքի հետ մի յոյն վարդապետ է լինում, որ տեսնելով այս հրաշքը՝ թողնում է պատրիարքին, և գալիս Օհան Օձնեցու հետ ճգնում։ Այժմ էլ Օհան Օձնեցու վանքի հա-

*) Օհան Օձնեցու մասին եղած աւանդութիւնները սաստիկ տարածուած են. պ. Քաջբերունուն Շարուր-Դարալագեազի գաւառում այս միևնոյն պատմութիւնը պատմելիս աւելացրել են և հետևեալը. Երբ արաբական զօրքը կամուրջը անցկացաւ, շարքով կանգնեց և նրան միացաւ հայոց զօրքը. այս ժամանակ «Օհան Օձնեցին իւրաքանչիւր զինուորի, թէ հայի և թէ արաբի առանձին մօտենալով՝ համբուրեց նրանց գագաթի մազէ փնջիկը։ Փընջիկի մէջտեղ, ուր դիպչում էին Օձնեցու շրթունքը, կլոր ոսկի դուրս եկաւ, որից և ծագած է ԿԸԶԸԼԲԱՇ կոչումը, այն է ոսկէգլուխ։ Ուրեմն հայերի գագաթի մազափնջի մէջտեղի սափրած բոլորակը, որ հին ժամանակներում սովորական էր և այժմ վերացել է, համապատասխան է Օձնեցու շրթունքներով դրոշմած ոսկուն։ «Փորձ» 1881 № IV. եր. 85.

րաւային կողմը յունական տապանագրով մի գերեզման են ցոյց տալիս, ուր, ասում են, ամփոփուած է վերոյիշեալ վարդապետի մարմինը։

*Օհան Օձնեցին եւ Վասիլ զօրավարը.*—Յունաց Վասիլ զօրապետը յունական զօրքով գալիս է հայերին կոտորելու։ Օհան Օձներին մի սաստիկ ցաւ է ձգում Վասիլ զօրավարի մարմնի մէջ, այնպէս որ հայերի կոտորածը թողած, ուշքն ու միտքը կենդրոնացնում է իւր անձի բժշկութեան վրայ։

Երկար, ապարդիւն դիմումներից յետոյ Վասիլ զօրավարը լսում է, որ իրեն միմիայն Օհան Օձնեցին կարող է բժշկել, ուստի և մարդիկ է ուղարկում և խնդրում իւր մօտ։ Օհան Օձնեցին ձին հակառակ կողմով պայտել է տալիս, որ գնալիս հետքը չը նկատուի, գնում է Վասիլ զօրավարի մօտ, մի գիր գրում և տալիս նրան, որ ջրով կուլ տայ։ Վասիլ զօրավարը թուղթը կուլ է տալիս և իսկոյն առողջանում է։ Անմիջապէս զօրքը յետ է ուղարկում և ինքն էլ առանձնանում է Ս. Նշանի վանքում՝ ճգնելու։

Մի օր Օհան Օձնեցին այցելութեան է գնում նրա մօտ, և իմանալով, որ ջրի նեղութիւն է կրում, խաչակնքում է մի այրի մէջ, ուր իսկոյն ջուր է դուրս գալիս։ Այստեղն այժմ կոչւում է Թնդոց, և այս ջրի առաջ մոմեր են վառում և իբր դեղ գործ ածում։

## ԱՒԵԼՈՐԴ ՊԱՍԵՐ ԵՒ ՏՕՆԵՐ

Լօռեցիների, մանաւանդ սրանց կանանց, համար պասը կազմում էր կրօնի ամենաէական մասը։ Մի աւանդութիւն ասում է, թէ մի լօռեցի իւր բոլոր մեղքերը, գողութիւնը, զրպարտութիւնը, սուտ վկայութիւնն ու սուտ երդումը քահանային հեշտութեամբ խոստովանելուց յետոյ, կանգ է առել և լալով հրաժարուել է իւր ամենամեծ մեղքը խոստովանելու։ Բայց երբ քահանան ստիպել է՝ հեկեկալով աւելացրել է, թէ մեծ պասին մի օր իւղի երեսին դրած հացից մի կտոր կերել է։ Սակայն այժմ այս հաւատը բաւական թուլացել

է, և մանաւանդ մեծ գիւղերում և նոր սերնդի մէջ պաս ուտողները մեծամասնութիւն են կազմում։ Պառաւները այժմ էլ խրատում են, թէ պաս ուտողի կեանքի օրերն այդ մեղքի պատճառով պակասում են, սակայն լսողները քիչ են։

Պատակասէրները պատմում են, թէ պասը պապ է, իսկ ուտիքը՝ տատ։ Պապը զայրացած յարձակւում է միայն մարմնականի մասին մտածող տատի վրայ, լոբու սպասի ահագին չերեփով խփում նրա գլխին և տանից դուրս անում, ասելով. «Գնա, հեռացիր, անզգամ, բաւական է որքան որդիներիս պարարտացրիր, ճարպերը աւելացրիր, յանցանքների մէջ ձգեցիր, ժամանակ է, որ այժմ թողնեն այդ մարմնական զուարճութիւնները և մի քիչ հոգեկան սնունդով սնուելով յաւիտենականութեան համար պատրաստուին»։ Տատը հնազանդւում է և դուրս է փախչում, սակայն մի առ ժամանակից յետոյ ուրախ և առոյգ տատը, մածունի ահագին չերեփը եպակոլոլ ձեռքին մտնում է ներս, և դուրս անում նիհար, չորացած պապին մի քանի հարուած տալով նրա փետրած «պլորին» *)։

«Գնա կորիր, ասում է տատը պապին, քո սոխ ու բոխով, լոբի ու մախոխով. Թող որդիներիս պռոշներին մի պատառ իւղ քսեմ, թխացած սրտերը կաթն ու մածունով հովացնեմ»։

Բացի օրինական պասերից, կանայք ազատակամ պաս էլ են բռնում, այս տեսակ պասերը «փոխ» են կոչում, այսպէս, օրինակ, ասում են Ս. Սարգսի փոխն եմ բռնել, Աստուածածնայ փոխն եմ բռնել։ Այս նշանակում է, որ բացի այդ օրինական պասը, մի ամբողջ շաբաթ էլ նրանից առաջ են բռնել։

Շատ անգամ էլ պատահում է, որ մայրերը ցանկանալով, որ նախախնամութիւնը պահի, պահպանի, շնորհք տայ իրենց աղիկ որդուն, մի քանի տարի շարունակ շաբաթուայ մի որոշ, ոչ պաս օր, օրինակ երկուշաբթի, կամ երեքշաբթի և այլն, ինքնակամ պաս են պահում։

---

*) Պապի պլոր է կոչւում այն 7 փետրանի սոխը, որ կախում են հերթիկից մեծ պասին։

Կիրակի և եկեղեցական տօն օրերը մեծ մասամբ պահում են, կանանցից շատերը եկեղեցի են գնում, իսկ տղամարդիկ աւելի սիրում են գիւղական խանութի առաջ համախմբուիլ և զրոյց անել։ Սակայն պէտք է ասել, որ ոչ ամէն կիրակի կամ տօն օր պատարագ է մատուցւում։ Քահանաները չեն կատարում իրենց պարտականութիւնը, մինչև որ պատարագը «առնող» չէ լինում, իսկ առնում են, երբ ննջեցեալ է լինում, կամ կամենում են հոգու հաց տալ։ «Առնողը» քահանային 20 կ. ժամոց, ճաշ և մի շիշ գինի, 2 մոմ և միքիչ ալիւր է ուղարկում բաժակի և նշխարհքի համար։ Շատ անգամ պատահում է, որ վարդավառին, համբարձմանը պատարագ չեն մատուցանում։ Իսկ առաւօտեան և մանաւանդ երեկոյեան ժամերգութիւնը միանգամայն քահանաների քմահաճոյքից է կախուած. ամառը շաբաթը միերկու անգամ հազիւ են ժամ ասում, գէհ, թէ գիւղացիները և թէ իրենք, քահանաները զբաղուած են դաշտային աշխատանքներով, իսկ ձմեռը գրեթէ ամէն օր ասում են առաւօտ չափազանց վաղ, դեռ լոյսը չբացուած և երեկոյեան՝ կենդանիներին ջրելուց և յարդ տալուց յետոյ։

Բացի օրինական տօներից՝ գիւղացիներն որոշեալ օրեր ևս կիրակի են պահում, մի որևէ պատճառով։ Այսպիսի տօները իրենք «հուքմի» են կոչում և սրանցից նշանաւորները հետևեալներն են.

*Կարկուտի հուքմի.*—Եղիական պասի ընթացքում և մանաւանդ տօնի օրը, ինչպէս և զատկի երկուշաբթի և այնուհետև ամէն երկուշաբթի մինչև վարդավառ տօն են պահում, որպէսզի կարկուտը չխփէ արտերին։

*Մկան հուքմի.*— Զատկի չորեքշաբթի օրը, որպէսզի մկները չկտրեն հասկերը։

*Ցեցի հուքմի*— Զատկի հինգշաբթի օրը, որպէսզի ցեցը չուտէ թելերն ու բրդեայ գործուածքները։

*Հաւկուրի հուքմի*—Ցինանց յիսներորդ օրից մինչև համբարձում ամէն օր արևը մայր մտնելուց յետոյ այլևս չեն աշ-

*խփտում, որպէսզի «հաւկուր չլինեն», այսինքն երեկոները բոլորովին կամ վատ չտեսնեն։*

*Ծաղկամօր հուքմի.—Համբարձման չորեքշաբթի օրը առաւելապէս կանայք են պահում, որպէսզի երեխաները «ծաղիկ չհանեն»—ծաղիկ հիւանդութեամբ չբռնուին։*

*Սովորաբար քահանաները և ծերերը հսկում են, որ բոլոր գիւղացիներն էլ կիրակի և տօն օրերը չաշխատեն։ Շատ անգամ ամրան աշխատանքների ժամանակ քահանան և տանուտէրը մարդ են ուղարկում հանդերը, որ տեսնեն, թէ աշխատողներ կա՞ն։ Ցանցառներին տանուտէրը մի օր բանտարկում է և մի րուբլի տուգանք ենթարկում։*

## ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

*Գիւղական խաղաղ և միակերպ կեանքի մէջ ուխտագնացութիւնը մի տեսակ փոփոխութիւն է ձգում և թարմացնում, կազդուրում։ Երբ մօտենում են ուխտագնացութեան օրերը, գերդաստանի մէջ մի առանձին տրամադրութիւն է սկսում տիրապետել. հարսներն ու աղջիկները, ինչպէս և երիտասարդները—զարդարուելու, կոկուելու տենչով բռնուած՝ ստիպում են իրանց ամուսիններին և ծնողներին նոր հանդերձներ, կօշիկներ առնելու։ Գերդաստանի մեծն էլ, կարծես այս օրերում, առատաձեռն է դառնում և փոքր ինչ բաց անում ընդհանուր քսակի այնքան սեղմուած բերանը։ Սակայն որովհետև բոլորին բաւականութիւն չի տրւում, ուստի դժգոհութիւնը, արցունքը, բամբասանքն ու գրպարտութիւնն սկսում են թունաւորել այն հոգեկան մեծ բաւականութիւնը՝ որ ստանալու են այդ ուխտագնացութիւնից։*

*Վերջապէս այդ երջանկութեան վերջընթեր օրը տանտիկինը հարսների հետ լուացք է անում, հաց, ղաթայ, բաղարջ թխում, պաշարեղէնը կապում, պատրաստում։ Նախօրեակին մօտիկ բարեկամները միասին խմբեր կազմած կառքերով ու ձիերով դիմում են դէպի ուխտատեղին—Վարդաբլուրի Ս.*

Մարգիս, Օձունի Ս. Նշան, Հաղբատ, Սանահին, Արդուի Ս. Օհան և այլն։

Շատ գիւղերում կառքեր, սայլեր չը լինելու պատճառով, մեծամասնութիւնը հետի է գնում, միայն երիտասարդները և կանայք ու աղջիկներ՝ ձիով. առաջիններն իրենց ձի քշելու, ջիրիթ խաղալու շնորհքը ցոյց տալու, երկրորդները՝ իրենց հարուստ լինելն ապացուցանելու։ Կանայք տղամարդկանց նըման են ձի նստում—թամբն առնում իրենց երկու ոտների մէջ։ Գրեթէ բոլորն էլ շատ վարժ են լինում, որովհետև հէնց 7—8 տարեկան հասակից լոտ, հունձ կրելով՝ վարժւում են։ Սակայն շատ քչերին է վիճակւում միայնակ մի ձի նստել, սովորաբար 3—4 հոգուն մի ձի է ընկնում և սրանք այսպէս են օգտւում. տարիքովը նստում է թամբի վրայ, երեխային առնում գիրկը, աղջկանը՝ կամ հարսին՝ գաւակը, իսկ միւս տարիքաւոր կինը ձիու պոչից բռնած գնում է, ձին նրան քաշում է. երբ յոգնում է, ինքն է նստում ձին և առաջին նստողը՝ նոյն կերպ քայլում։ Եթէ ձին չար է կամ հեծնող-ները անվարժ, մի տղամարդ ձիու սանձից բռնած քաշում է։

Երբ հասնում են ուխտատեղին, մի ծառի տակ իջնում, բարկեղա՛ժները վայր առնում, ձին մի տեղ կապում արածելու, և մէկին պահապան թողնելով իրերի և ձիու մօտ՝ շտապում են ուխտատեղին, առնելով իրենց հետ բերած մոմերը։

Ուխտատեղու դուռը, խաչարձանը, պատկերը մի քանի անգամ ջերմեռանդութեամբ համբուրելուց յետոյ՝ վառում են մոմերը և աշխատում կպցնել որքան կարելի է մօտ՝ խաչքարի, պատկերի վրայ, որից և սրանք փչանում են։ Յետոյ մի քա-նի անգամ երկրպագում և ապա չոքած, գրեթէ լսելի ձայնով շշնջում.

Ով (այս անուն սուրբ), երեսս ոտից տակը, դու իմ բա-լնու (փոքրերի) ռուզզը (պարէնը) հասցնես. դու սրանց ա-րեւշատութիւն ու սաղ ջան տաս. դու հանդ ու հանդաստանը ցասումից ազատես, աշխարհքին առատութիւն տաս. դու ամէն նեղացածի փրկես, ազատես. նրանց սաղային էլ մեզ։ Մեղայ քեզ, Տէր, անարժան մեղաւոր եմ, դու քո ստեղծածը

չի կորցնես. դու իմ մեղաւոր հոգուն մի լիս ու ճար անես. արքայութենից մասն ու բաժին տաս. դու չի դուշմանի սըրտով անես, նամարդի մոհտաջ. քու լիս երեսին ղուրբան, քու լիս տաճարին ղուրբան, դու քաղցր աչքով մտիկ անես իմ տանն ու տեղին, իմ տիրոջը (ամուսնուն). դու չարից ու փորձանքից ազատես. անդարձին դարձ տաս. չարը կործանես, բարին առաջացնես. Դու մեր հողն ու ջուրը պտղացնես, աղար բէզարը հեռացնես. աշխարհքի ռուզիը շատացնես, թագաւորի սիրտը կակղացնես, կարկուտը կորցնես, ձինն ու անձրեւը առատացնես, աշխարհին հանդարտութիւն տաս, մեծերին հաշտութիւն տաս, հիւանդներին սաղութիւն տաս...

Դեռ աղօթքը չը վերջացրած՝ քահանան կամ տիրացուն պոկում են վառած մոմերը և տալիս երեցփոխին նորից վաճառելու, ու ձայն տալիս աղօթողներին, որ դուրս գան, նոր եկողներին էլ տեղ լինի։

Սկսում են դուրս գալ և խմբուել ուխտատեղուն կից բարձրացած հնձաւուրց, սուրբ համարուած ծառերի և խաչքարերի շուրջը։ Այստեղ շատերը պատառում են իրենց հանդերձներից մի մի կտոր և կապում ծառի ճիւղերից, որպէսզի իրենց ցաւերն էլ այդ շորերի հետ կապուած մնան այդտեղ և այլես չը նեղացնեն իրենց։ Ոմանք էլ բամբակէ թելերի շարաններ, ծայրերը մեղրամոմով ամրացրած՝ բերում և նոյն հաւատով կապում են ծառի ճիւղերից։ Աւելի ջերմեռանդները իրենց ծամերն են կտրում և կապում ծառերին։

Հիւանդոտ կանայք վզերից հանում են երկաթեայ մանեակները, որ «խաչի սիրուն» կրել են ամբողջ մի տարի և կախում ծառից կամ դնում խաչարձանի առաջ. ուրիշներ էլ մարդակերպ, կամ ոտի, ձեռքի նմանութեամբ երկաթէ շինուածքներ են դնում խաչարձանի առաջ, որպէսզի իրենց հիւանդութիւնները այդ արձանների մէջ ամփոփուած մնան այնտեղ և ազատ թողնեն իրենց։

Ամուլ կանայք ծառերի ճիւղերից ճօճք են ձգում և երեխայի մի տիկնիկ դնում մէջը, որպէսզի երեխայ ունենան։

Այլք երեխայի ծաղիկ հանած ժամանակ նոր կարուած

ու հագցրած շապիկը հանում են և կախում ծառից, որպէսզի ծաղիկը չը կրկնուի։

Սակայն կանայք չեն բաւականանում միայն իրենց երազները որբին յայտնելով, այլ և ցանկանում են իմանալ, թէ արդեօք կատարուելու են, թէ ոչ։ Նաւադկոտ կանայք, ինչպէս Գուրթանեցի Անուշը, այլևս չեն լինում, քահանաները և նոր սերունդը հալածում է նրանց. այնպէս որ կանայք զրկուած են այդ Պիւթեան քրմուհիներից, ուստի և քարի կտոր են վերցնում և խաչարձանի, սեղանի բեմի վրայ քսում. եթէ կպչում է՝ այդ նշան է, որ սուրբը կատարելու է նրանց ուխտը։

Ուխտատեղուց բազմութիւնը կամաց կամաց իջնում է դէպի մրգավաճառների և մանրավաճառների շարքերը, և ահագին թաշկինակներով ծանրաբեռնուած քաշւում դէպի իրենց իջած տեղերը։ Իսկոյն կանաչ խոտի վրայ սփռւում է նոյնպէս կանաչագոյն սփռոցները և սկսւում է կեր ու խումը, երգն ու պարը, որ տևում են մինչև կէս գիշերը։ Նուագածուների խումբը ակումբից ակումբ անցնելով՝ աւելի ու աւելի զօրեղացնում է ուրախութիւնը։

Խմիչքների ազդեցութիւնից տաքացած գլուխները ահագին աղմուկ են բարձրացնում, դաշոյնն ու ատրճանակները ձեռներին պարում և «ուռա»-ի աղաղակով արձակում։

Աւելի ճարպիկներն այս մթութեան մէջ մտնում են սիրային տեսարաններ սարքել, իսկ աւելի ընչաքաղցները աշխատում են սրանից նրանից մի բան թռցնել (գողանալ). բայց երբ մէկը կամ միւսը բացւում է, սկսւում է տուր ու դմբոցը, որ երբեմն մեծանալով՝ զոհեր է տանում։

Վերջապէս՝ յաղեցած ու յոգնած՝ խոտերի վրայ ընկնում քնում են 3—4 ժամ։

Վաղ արշալոյսին սկսում են մատաղ կտրել։ Բազմաթիւ գառներ ու ոչխարներ զոհւում են. դրւում են ահագին կաթսաները, որոնց մեծ մասը ուխտատեղին կառավարող երեցփոխն է մատակարարում, և սկսւում է «մատաղի» պատրաստութիւնը։

Հետզհետէ մօտակայքից նոր ուխտաւորներ են գալիս

Digitized by Google

խմբերով և սրանց հետ միացած մտնում ուխտատեղին համբուրում, ուխտ անում, վերադառնում, կրկին սփռոցները սփռում, «մատաղ»-ը, արիւնոտ խորովածի հետ ուտում, մի լաւ կոնծում, երգում, պարում և շտապով վերադառնում տուն, ճանապարհին մի երկու տեղ կրկին հաց ուտելով, թէյ խմելով ու շարունակ կոնծելով։

Մինչև կէս օր բոլոր ուխտաւորներն արդէն քաշուած են լինում, մնում են միայն քահանաները, որ իրենց ստացած մատաղացուների մորթիներն ու էրինները (աջ ոտը) բարձում են ձիերի վրայ կամ տեղն ու տեղը ծախում և վերադառնում։

## ԿԱԽԱՐԴՈՒԹԻՒՆ

Կախարդութիւնը Լօռում եւ բաւական տարածուած է, այստեղ էլ դրանով պարապում են թէ տղամարդիկ և թէ կանայք։ Տղամարդիկ գործում են առաւելապէս «Վեցհազարեայ» «Ախթարք», «Հաւախօս» և այլ ձեռագիր գրքերի ցուցմունքով, ուստի և սրանց մասին մենք մանրամասն կը խօսենք, երբ բաղդ կունենանք շատ գաւառներից կախարդութեան վերաբերեալ նիւթեր հաւաքելուց յետոյ այդ արուեստի զարգացման մասին մի ընդհանուր տեսութիւն անել, քննելով նաև վերոյիշեալ ձեռագիրները։

Կանանց մէջ տարածուած կախարդութիւնը աւելի ըսկզբնական և աւելի ընդհանրացած է, նա յաջորդաբար աւանդուել է առանց գրաւոր մի յիշատակարանի և սրա մէջ պահպանուած են նախնի դրեթէ բոլոր տեսակի հմայութիւնների (орнеомантія, ornifomancie), մեռելահմայութեան (Necromancie) մնացորդները։

Հաւահմայութիւն.—Թռչուններից ծիծեռնակը, աղաւնին, կաչաղակն ընդհանրապէս համարւում են բարեգուշակ, իսկ բուն, ագռաւը՝ չարագուշակ։ Բացի սրանից՝ գուշակութիւններ են անում նայելով թռչունների ա) գտնուած տեղին, բ) հանած ձայնին և գ) կատարած գործողութեան։ Այսպէս՝

*Տեղը.*—Երբ աքաղաղը կտրանն է կանչում, գուշակում են, որ հիւր է գալու։ Երբ հաւը թառի վրայից է կանչում՝ իսկոյն բռնում են և տան հերթիկից վայր ձգում, եթէ դէպի անկիւնը գնայ՝ լաւ նշան են համարում և կուտ տալիս, իսկ եթէ դէպի դուռը՝ վատ և անմիջապէս մորթում են։

*Ձայնը.*—Եթէ կաչաղակը կանչէ՝ հիւր կը գայ. եթէ բուն բուայ մի տան վրայ, այդտեղ բնակւողներից մինը կը մեռնի. եթէ ագռաւը կռաւէ՝ անձրև կը գայ, իսկ եթէ դմ՛յ անէ՝ մի անասուն կը սատկի, որ նա ուտէ. դրա համար էլ գիւղացիները այդպիսի ձայն լսելիս ասում են. «Գլուխդ ուտես»։

*Գործողութիւնը.*—Եթէ կաչաղակը կռկռալիս երեսը դարձրնէ դէպի մի տուն՝ գուշակում են, որ այդ տնեցիները լաւ՝ իսկ եթէ պոչը դարձնէ՝ վատ համբաւ են առնելու։ Եթէ մարտի իննին արագիլը վերադառնալիս կտցում մի որևէ որդի կտոր ունենայ բռնած՝ պատերազմ, կոտորած է լինելու, իսկ եթէ հացաբոյս ունենայ բերանում՝ հացահատիկների և պըտուղների առատութիւն պիտի լինի։

*Կենդանիների միջոցով գուշակութիւն.*—Թռչունների նման՝ վայրի կենդանիներից միքանիսը բարեգուշակ, միքանիսն էլ չարագուշակ են համարւում.—այսպէս, օրինակ, աղուէսը բարեգուշակ է, և այս է պատճառը, որ հարսանիքի ժամանակ հարսը թագւորի տանը մերձենալու համբաւը տանող անձնաւորութեան *աղուէս* են կոչում, կամենալով «բարեգուշակ» գաղափարը արտայայտել։

Սակայն աղուէսը միշտ էլ բարեգուշակ չէ, եթէ նա անցնի մարդկանց միջով, սրանից, գուշակում են, որ դրանց մէջ կռիւ է ծագելու, ուստի և շատ անգամ ասում են. «Սրանց միջով աղուէս է անցել», կամենալով յայտնել, որ նրանք միմեանց հետ կռուել են։

Իսկ նապաստակը չարագուշակ է համարւում. գիւղացին գիւղից դուրս գալիս եթէ նապաստակի է հանդիպում, շատ անգամ յետ է դառնում, գուշակելով՝ որ այդ օրւայ մտադրութիւնը չպիտի յաջողուի։

Ընտանի կենդանիներից՝ երբ շունը ոռնում է՝ գուշակում

են, որ տնեցիներից մինը մեռնելու է։ Երբ կատուն հիւանդի վրայ է նստում, ասում են, թէ վերջինս առողջանալու է։ Երբ ձին ջրի մէջ միզում է՝ գուշակում են, որ մի մեծ դժբաղդութիւն է պատահելու, և երբ կովի պտուկն է կուրանում, մեղադրում են նրան կթող հարսին անառակութեան մէջ։

*Մարդկանց միջոցով գուշակութիւն*.—Մարդկանցից կոյրը, կաղը և գոշը չարագուշակ են համարւում, ինչպէս և քահանան։ Երբ մի գործի, ճանապարհ գնալիս քահանայի են հանդիպում, կամ յետ են դառնում և կամ թքում են և ձեռքը ամորձիքին քսում, որպէսզի «չարը խափանի»։

*Մարդու բնազդական շարժումների միջոցով գուշակութիւն*.—Եթէ աջ աչքը խաղայ՝ ուրախալի, իսկ եթէ ձախը՝ տխրալի բան է պատահելու։

Եթէ քիթը քոր գայ՝ հիւր է գալու։

Եթէ ականջը կանչէ՝ ասել է մինը յիշել է, և որպէսզի գուշակեն թէ ով է եղել, անուններ են տալիս, ում անուան վրայ որ կանչը դադարի՝ ասել է նա է յիշել։

Եթէ աջ ականջը քոր գայ՝ անձրև է գալու, իսկ եթէ ձախը քոր գայ՝ արև պիտի անի։

Եթէ աջ ձեռքը քոր գայ՝ փող է ստանալու, իսկ եթէ ձախը քոր գայ՝ ծախսելու է։

Եթէ աջ ոտը քոր գայ՝ յաջողակ ճանապարհ պիտի գնայ, իսկ եթէ ձախը քոր գայ՝ ձախորդ ճանապարհ է գնալու։

Եթէ զոյգ փռշտայ՝ յաջողութիւն, իսկ եթէ կենտ՝ ձախորդութիւն է պատահելու։

*Անշունչ առարկաների միջոցով գուշակութիւն*.—*ա.—Բոյսեր*։ Սիրի-սիրի կոչուած եռատերև բոյսի իւրաքանչիւր տերևը մի անձի յատկացնելով հարցնում են մի անտեղեակ մարդու, թէ մտադրուած անձնաւորութիւնը (աղջիկը կամ տղան) սիրի-սիրի ում սիրի։ Այս անտեղեակ անձը բռնում է տերևներից մինը, որից և գուշակում են, թէ մտադրուած անձնաւորութիւնը սիրում է այն անձին, որին յատկացրուած էր այդ տերևը։

*Գարի գցել*.—Երեք, հինգ, կամ եօթը գարի վերցնելով

նշաններ են անում մինի ծայրը կտրելով, միւսը կիսելով, երրորդը փոքր ինչ ճիկքելով և այլն ու խուրաքանչիւրը մի բանի՝ օրինակ սրբի, բաղդի, կորստի, տղայի, աղջկայ նշան համարում։ Յետոյ բոլորը միասին լցնելով ձախ բռի մէջ, աջով ծածկում են և երեք անգամ Ժափ տալիս։ Ապա աջ ձեռքը վերցնում են և նայելով գարիների դասաւորութեան՝ գուշակութիւններ անում։ Այս միջոցով գուշակում են, թէ հիւանդութիւնը որ սրբից է, թէ յղի կինը տղայ թէ աղջիկ է ծնելու, թէ կորուստը գտնուելու է, թէ ոչ, թէ կասկածելի անձնաւորութիւններից որն է գողը, թէ հարսնացու աղջիկներից որի հետ վերջիվերջոյ նշանադրուելու են և այլն։

*Մաղ պտտել*.—Այս կերպով գուշակում են, թէ մինի հիւանդութիւնը որ սուրբն է տուել։ Թէև գործողութիւնը պարզ է, սակայն ամէն կին չի կարող կատարել, պէտք է, որ այդ անելու շնորհը մի որևէ սրբից ստացած լինի երազում։ Այսպիսի կանայք կան գրեթէ բոլոր գիւղերում, և ամէնքին էլ յայտնի են։ Հիւանդի տէրը մի քանի ձու, մի երկու մոմ առած գալիս է այդպիսի մի կնոջ մօտ և նկարագրելով իւր հիւանդի դրութիւնը, խնդրում գուշակել՝ թէ որ խաչից է։ Մաղ պըտտեցնողը վերցնում է մաղը, որի խիմի (շրջանակի) վրայ ցըցած է լինում ձիու պայտի երկու ականջաւոր մի մեխ։ Թէ պտտեցնողը և թէ խնդրողը իրենց աջ ձեռքերի ցուցամատերն անցկացնելով մեխի ականջների տակ՝ պահում են մաղը կախուած դրութեամբ։ Ապա պտտեցնողը ասում է. «Եթէ այսինչի հիւանդութիւնը խաչից է՝ մաղը աջ պտտուի, եթէ ոչ՝ ձախ»։ Եթէ ձախ է պտտւում, ասում է, թէ հիւանդութիւնը խաչից չէ, թող դեղ անէ՝ կըլաւանայ, իսկ եթէ աջ է պըտըտւում՝ հաստատում է, որ խաչիցն է և յետոյ կամենալով գուշակել թէ որ խաչիցն է, շարունակում է. թէ այս ինչ խաչիցն է՝ աջ պտտուի, թէ չէ՝ ձախ։ Այս կերպ գտնելով նաև թէ որ խաչիցն է՝ պատուէրներ է տալիս, թէ մոմով. մատաղով պէտք է գնալ այդ խաչի դուռը՝ նրա ցասումը շիջուցանելու և նա կը բժշկէ հիւանդին։

ը. *Կրակով*.—Երբ փայտը այրուելիս ձայն է հանում,

Digitized by Google

գուշակում են, որ իրենց մասին խօսող կայ և որպէսզի իմանան, թէ ո՞վ է, ասում են անուններ տալ, ում անուան վրայ որ դադարի փայտի հանած ձայնը, նա՛ է խօսողը։

Տեառնընդառաջին վառուած խարոյկի ծուխը ո՛ր կողմը որ ուղղուի՝ այն կողմի արտերը լաւ հունձ կըտան։

Մատաղի համար վառուած կրակը եթէ լաւ վառուի՝ մատաղն ընդունելի կըլինի։

գ. *Քարերով.*—Սովորաբար ուխտատեղիներում երբ ցանկանում են իմանալ, թէ իրենց ուխտը կատարուելո՞ւ է, թէ ոչ և կամ իրենց մատաղն ընդունելի՞ եղաւ, թէ ոչ, վերցնում են մանր քարեր և քսում խաչքարի կամ եկեղեցու բեմի, պատի վրայ, եթէ կպչում է՝ ուրեմն կատարուելու է, ընդունելի է, իսկ եթէ չի կպչում, ասել է չի կատարուելու, մատաղն ընդունելի չէ *)։

դ. *Ջրով.*—Այս միջոցով գուշակութիւններ անելու ամենալաւ ձևը «վիճակն» է, որ հանում են համբարձման տօնին և որ ես ամենայն մանրամասնութեամբ նկարագրել եմ տօների բաժնում։ Բացի սրանից՝ այս գաւառում ևս տարածուած է փիլթա և մկրատ դնելը, որ դարձեալ կատարւում է ջրի միջոցով։

*Փիլթա-դնել.*—Այս կերպով առաւելապէս գուշակում են, թէ հիւանդն ո՛ր սրբի ցասման պատճառով մահիճ է ընկել։ Գուլպայի ճաղերի վրայ փաթաթում են մօտ երկու վերշոկ երկարութեան երկու տակ արած բամբակ, որ «փիլթա» է կոչւում և իւրաքանչիւրը մի սրբի յատկացնելով՝ դնում կիսից հետ ջուր ածած գաւաթի կամ մի ուրիշ ամանի վրայ, և նախ մաղով ու ապա սփռոցով ծածկում։ Քառորդ ժամից յետոյ սփռոցն ու մաղը վերցնում են և եթէ փիլթաներից մինը կամ բացուած լինի և կամ երկու ծայրերից բռնած արձակե-

*) Քարով գուշակելու մի ուրիշ ձև կայ Գանձակի գաւառում Խաչ քցի անունով (տես իմ Գանձակի գաւառը, Բ. երես 143). և Զանգեզուրի գաւառի Մեղրի գիւղում. (տես իմ Զանգեզուրի գաւառը՝ Ե. հատորում, որ շուտով լոյս կըտեսնի)։

լիս ճաղը բամբակի միջից դուրս գայ [1]), այդ նշան է, որ հիւանդութիւնը այն սրբիցն է, որին յատկացրուած էր այդ փիլթան։ Եթէ ոչ մինը արձակուած չլինի, գուշակում են, որ «սրբից չէ», և կամ ենթադրելով, որ ուրիշ սրբերից կարող է լինել, կրկնում են՝ այլ սրբերի յատկացնելով փիլթաները։

*Մկրատ կամ դանակ դնել*.—Այս միջոցով էլ գուշակում են, թէ հիւանդութիւնն ո՛ր սրբի տուածն է։ Միքանի մկրատ կամ դանակ զանազան սրբերի յատկացնելով դնում են ջրի մէջ, գիշերն այդպէս թողնում և առաւօտեան նայում, թէ նրանցից ո՛րն է ժանգոտել։ Հիւանդութիւնն այն սրբիցն է լինում՝ որին յատկացուած էր այդ ժանգոտած մկրատը կամ դանակը։

*Կուռը չափել*.—Սա էլ սրբի պարգև է համարւում և միայն նա է այդ անում, ով երազում մի որևէ սրբից ստացել է այդ շնորհը։ Այս կերպ գուշակում են, թէ արդեօք մինի հիւանդութիւնը սրբի՞ և յատկապէս որի՞ ցասման հետևանք է։ Չափողը սոթքում է իւր ձախ բազուկը մինչև արմունկը, ապա աջ դաստակով չափում է երկու թիզ, սկսելով ձախ ձեռքի միջամատից և ապա նորից չափում, սկսելով երկրորդ թիզի յանկած կէտից։ Եթէ այս անգամ չափելիս աջ ձեռքն աւելի է սպրդւում և թիզը երկարում է՝ դրական գուշակութիւն են անում, իսկ եթէ կուչ է գալիս և թիզը փոքրանում՝ բացասական։

*Կարկտագիր*.—Գանձակի գաւառի նման Լօռին էլ ունի մի քանի տիրացուներ, որոնք կարկտագիր անելով ապահովացնում են գիւղացիների արտերն ու այգիները կարկտից։

Այս տիրացուներից ամենահռչակաւորը դսեղեցի Գրիգորն է: Սա երբ լաւ վարձատրուելով կամենում է, որ իւր կարկտագիրը սաստիկ զօրաւոր լինի, գրում է Աւագ Հինգշաբթի օրը, եկեղեցու խորանում, երբ քահանան վերաբերումն է

[1]) Երբ ճաղը դնում են բամբակի մէջ և երկու ծայրերը միացնելով փաթաթում վերան, երբեմն մի ծայրը միւսից կարճ են թողնում, այնպէս որ փաթաթելիս՝ ճաղը կարճ ծայրից դուրս է գալիս։

կատարում, միայն թէ նախորդ օրը ուխտ կանոն սաղմոս պիտի քաղած լինի։ Եւ նրա դրածը այս է.

Յորժամ երթայր Տէրն մեր Յիսուս Քրիստոս յԵրուսաղէմ, հարցին նմա սուրբ առաքեալքն՝ Յորժամ ելանիցէ ամպ բարկութեան կարկտին զինչ արասցուք։ Պատասխանի ետ Տէրն մեր Յիսուս Քրիստոս. «Ասիցէք անունք այսորիկ, որք են. Ենոք, Եղիա, Ռասին, Ռասուտ, Ատքէլ և Տրքէլ, դուք տարէք հեռացուցէք զամպ կարկտին հանդից, հանդաստանից, ծառոց և տնկոց ի տեղւոյս, ամէն»։

Չորս կտոր թղթերի վրայ այս միևնոյնը արտագրելուց յետոյ նոյն խորանում վերցնում է նախ Ս. Յովհաննու Աւետարանը և ապա Ս. Գրիգոր Նարեկացու աղօթագիրքը և սրանց ԺԲ. գլուխները կարդում այդ թերթիկների վրայ և յետոյ ինքն իրեն անդաստան կատարում։ Յետոյ այդ թղթերը տանում է տուն և մի մաքուր տեղ պահում. ինքն էլ 40 օր ողջախոհութեամբ է անցկացնում։

Համբարձման օրը, այդ թղթերը ծոցում դրած ներկայ է լինում պատարագին, որից յետոյ ամէն մինը տալիս է մի երիտասարդի, որ տանի գիւղի մի անկիւնում, երկու քարերի մէջ, մի չոր տեղ թաղի։ Կարկուտն այդ թղթերի սահմանից ներս չի կարող անցնիլ։

*Երազատես.*—Լօռին ունի նաև երազատեսներ, որոնք խնդրատուների յանձնարարութեամբ քնում են և երազում տեսնում, թէ մինի հիւանդութիւնը ինչ սրբից է յառաջացել, կամ կորած անասունը որտեղ է, և կամ գողացուած իրը ում մօտ է։ Այսպիսի երազատեսներից նշանաւոր է եղել դսեղեցի Հուլին, որի սրբատուր շնորհը փոխանցել է նրա եղբոր կին՝ Եղսօին, որին այժմ էլ դիմում են շատ շատերը։

*Վախ չափել.*—Երբ ցանկանում են իմանալ, թէ մինի հիւանդութիւնը վախենալուց է յառաջացել, դիմում են վախ չափող կանանց, որոնց մի որևէ սուրբ պարգևել է այդ իմանալու շնորհքը։ Վախ չափող կինը մի քանի անգամ երեսը խաչակնքելով քանդում է իր գօտին, մի ծայրը տալիս հիւանդի ձեռքը, միւս ծայրից ինքը ձախ ձեռքով բռնում և «վախի

Digitized by Google

աղօթքներից» մինը շշնջալով՝ աջ ձեռի արմունկը դնում բռնած տեղին և դաստակը աջ ու ձախ դարձնելով մեկնում գօտու վրայ. ապա ձախի ձեռով՝ առանց գօտու բռնած տեղը թողնելու՝ առաջ է բերում և բռնում գօտու այն տեղից, ուր հասել էր աջ ձեռի ցուցամատը և այս կերպ մի կանգուն եռ չափելով՝ հիւանդին բռնել է տալիս երկրորդ կանգունի յանկած տեղից։ Սրա բաց է թողնում առաջի կանգունը չափելուց յետոյ բռնած տեղը և կրկին երկու կանգուն չափում, եթէ այս անգամ «ձեռքը երկարանալով» անցնում է հիւանդի բռնած տեղից, ասել է հիւանդը վախեցել է և այնքան սաստիկ՝ որքան աւելի երկարանում է ձեռքը. իսկ եթէ «ձեռքը կուճ գալով» չի հասնում բռնած տեղին, նշան է, որ հիւանդութիւնը վախից չէ յառաջացել։

Յետոյ վախեցածին աղօթում են այսպէս՝ վերցնում են նրա մօր գօտին, վախի աղօթքը երեք անգամ ասում, իւրաքանչիւր անգամին մի հանգոյց ձգելով գօտու վրայ և գիշերը դնում վախեցածի գլխի տակ։

Ահա այդ աղօթքները.

Վախ չափելու.

Հրէս էկաւ երեք ձիաւոր,
Մինը Յիսուսը,
Մինը Քրիստոսը,
Մինը Մարիամ Աստուածածինը,
Թամքեց սև ձին,
Հաքաւ սև շորը,
Սարի էս կոնովը վէր էլաւ,
էն կոնովը վէր էկաւ,
Դուշմանի աչքը հանեց[1]։

Վախը բռնելու.

Դեղին ծաղիկ,
Դեղնածաղիկ,
Մէրը քաղեց,
Դուստրը փնջեց,

---

[1]) 3 անգամ են ասում, միւս անգամներին «կարմիր, սպիտակ»ածականներն են տալիս ձիուն և շորին։

*Հէրը ննջեց,*
*Որդին փնջեց.*
*Էլաւ սարին,*
*Քոթոթը քարին,*
*Հաւն ա թառին,*
*Կովն ա կապին.*
*Ա՜յ սիրտ, տեղդ։*

*Չար աչք*.—Լոռեցիներն էլ հաւատում են, որ մի քանի, մանաւանդ չէկ, մարդիկ չար աչք ունին և ինչի, ում որ հաւանին՝ աչքով կըտան,—իրը կըկոտրի, իսկ մարդը կամ անասունը կը հիւանդանան, գլխները կըցաւին, կըսկսին սաստիկ յօրանջել։ Չար աչք ունեցողները շատ անգամ յայտնի են լինում, և մարդիկ զգուշանում են նրանցից, այսպէս, օրինակ, երբ դրանք մինի տանից դուրս են գալիս, տնեցիներն օջախի մոխրից վերցնում են և դրանց յետեից փչում ասելով. «Քու չար աչքը քի հետ տար», որպէսզի եթէ նոյնիսկ աչք տուած լինի՝ անցնի։

Եւ որովհետև առաւելապէս երեխաներին են աչք տալիս, ուստի և հոգատար մայրերը բաշխի ծառից փոքրիկ կուժ են շինում և օրօրոցից կախում, որպէսզի եթէ աչք տան, այդ կուժը տրաքուի և երեխան ազատուի, և կամ մի քիչ խոզի մազ, մի կոտրած ասեղ և մի քիչ մոխիր են ածում մի փոքրիկ տոպրակի մէջ և կախում երեխաների վզից։ Ոմանք էլ եօթը հատ աչքահլունք (գունաւոր հլուններ) 4 կնոջ և 3 տղամարդի աղօթել են տալիս և կարում երեխաների թիկունքին։ Թէ այս հուլունքները և թէ առհասարակ աչք տուածներին աղօթելիս՝ վերցնում են մի ասեղ կամ մի գրչահատ, և աղ ու հաց, շարունակ յօրանջելով շշնջում են չար-աչքի մի աղօթք, թեթևութեամբ թքում հիւանդի գլխին թիւհ, թիւհ, թիւհ, անելով, և վերջը աղ ու հացը երեք անգամ պտտեցնելով հիւանդի գլխով, տալիս են, որ տան շանը, որպէսզի «չար նիաթը» շանը անցնի։

Չար աչքի աղօթքներ շատ կան, և շատ շատերը գիտեն, թէ տղամարդիկ և թէ կանայք, մանաւանդ պառաւներ։ Թէ այս և թէ միւս, կախարդական աղօթքներն ամէն մարդ կա-

Digitized by Google

րող է սովորել և գործադրել, սրանց համար հարկաւոր չէ երազում մի որև է սրբից շնորհ ստանալ, ինչպիսին հարկաւոր է փիլիսա թափելու, վախ չափելու, մազ դնելու համար. այստեղ միմիայն պէտք է որ սովորեցնողն ու սովորողը տարբեր սեռի լինեն, ապա թէ ոչ երկուսի աղօթքն էլ չեն «կտրիլ»—ազդեցութիւն չին ունենալ։ Ահա այդ աղօթքներից մի քանիսը.

Ա.

*Չար աչքը,*
*Չար սահաթը,*
*Հոգևոր պառաւը*
*Հանէ չար աչքը,*
*Մազի պէս մաղէ,*
*Եղի պէս պարզացնէ,*
*Աղի պէս հալէ,*
*Մոմի պէս սառցնէ,*
*Իծի պէս ծըկըկացնէ,*
*Ուլի պէս մըկըկացնէ,*
*Օցի պէս սըկըկացնէ։*

Բ.

*Չար աչք, չար նիաթ,*
*Չար սահաթ,*
*Սև սարի տակին,*
*Սև քարի տակին,*
*Օձի պէս սողէր,*
*Ուռի պէս դողէր,*
*Ցողի պէս մաղուէր,*
*Խախալի պէս ծկծկտուէր,*
*Թէ մարդ ա մերուքը վէր գայ,*
*Թէ կնիկ ա ճաւլը վէր գայ։*

Գ.

*Ով աչքը ըչքահարէ,*
*Քրիստոսը նրա աչքը հանէ,*
*Կապիտ եզը լծեցի,*
*Կապիտ կովը կթեցի,*

Digitized by Google

*Կապիտ մածուն հանեցի,*
*Կապիտ խնոցի հարեցի,*
*Կապիտ կարագ հանեցի,*
*Կապիտ մարդ, կապիտ կնիկ,*
*Թէ մարթ ա աչք տուել՝*
*Աչքը դուս գայ,*
*Թէ կնիկ ա աչք տուել՝*
*Ծաւլը (ծամը) վէր գայ։*

**Դ.**

*Աչքը ընչքահարի,*
*Քրիստոսը մտնահարի,*
*Ուռի պէս դողայ,*
*Օձի պէս սողայ,*
*Մաղով մաղուի,*
*Շտարարով շտարարուի,*
*Խըխալով խըխալուի,*
*Գոմշի պէս տըռլնգայ,*
*Աղի պէս հալուի,*
*Տւարի պէս բռնչայ,*
*Գորգան պէս ճռնչայ,*
*Թէ կնիկ ա, ճաւլը վէր գայ,*
*Թէ տղամարթ ա, միրուքը պռճոկուի։*

**Ե.**

*Զար աչքը,*
*Զար չարաքանի,*
*Քանց շունը կատաղած,*
*Քանց գետը վարար։*
*Պիղծ ճւր ես գնում,*
*Պիղծ պիղծ անելով,*
*Կով կով անելով,*
*Եզ եզ անելով։*
*Սև սարըմը սև շոր կայ,*
*Սև ձորըմը սև ֆոր կայ.*
*Սև ֆորըմը սև օձ կայ,*
*Միսը կէ, արինը խմի,*
*Ցիսուս Քրիստոս.*

—

## Զ.

*Քրիստոսի ութը մատնով երկու բթով,*
*Զար աչքը արընի,*
*Զար միտքը կործանի։*
*Աստուածածնի քաղցր կաթնով*
*Զար աչքը արընի,*
*Զար միտքը կործանի։*
*Սուրբ Սարգսին ձիու ձարով*
*Զար աչքը արընի,*
*Զար միտքը կործանի։*
*Աստուածածինը նստել ա մարմար քարին՝*
*Աղօթում ա էս հիւանդին,*
*Զար աչքը արընի,*
*Զար միտքը կործանի։*
*Յոնան մարգարէն ձկան փորումը աղօթեց,*
*Սև օձը սև սարի տակին կնքուեց մկրտուեց.*
*Զար աչքը արընի,*
*Զար միտքը կործանի։*

## Է.

*Պատռեց սև լեռը,*
*Դուրս եկաւ սև ձին,*
*Դուրս եկաւ սև մարդը,*
*Դուրս եկաւ սև օձը.*
*Սև օձի մի աչքը ջուր էր,*
*Միւս աչքը կրակ էր,*
*Թուխ աչքաւորի,*
*Շէկ աչքաւորի,*
*Կանանչ աչքաւորի,*
*Կապուտ աչքաւորի,*
*Զար աչքը տրաքի։*

## Ը.

*Շագելոյս ասա,*
*Շէնաւրիս ասա,*
*Գարևլիս ասա,*
*Ուլիս ասա,*
*Ուլամանիս ասա,*

Digitized by Google

Թաւիս տաս,
Թաւլամանիս տաս,
Էս կուռը ջուր,
Էն կուռը ջուր,
Մէջը կապ ու կշկուռ,
Չար աչքը ճաքի,
Պատով տամ պատահարուի,
Օձի պէս սողայ,
Մկան պէս գողայ,
Աստուած քե պահի, պահպանի,
Չարը քե չը մօտենայ։

—

Ասում են 7 անգամ։

Թ.

Չար աչքին՝ չոր փչակին,
Քար ու քացախ բերանին,
Չէն ուտէր, չէն տանէր,
Չէն տանէր տէր իւր դոխերին,

*Աչքի հատ.*—Երբ մինի աչքի մէջ բրնձի մեծութեան բծեր (*հատ*) են գոյանում, պառաւ կանանց աղօթել են տալիս, որ անցնի։ Սրանք ջրով լի մի աման բռնում են այդպիսի հիւանդութիւն ունեցողի աչքի առաջ, և գլխի վերայից 7 հատ բրինձ մի մի ձգում են ջրի մէջ, ամէն անգամին հետեւեալ աղօթքը կրկնելով.

Մեր տան եդի կռնէն մի կալ,
Կալի միջին մի դէզ,
Դէզի միջին մի հասկ,
Հասկի միջին մի հատիկ,
Հատիկը գցի անդունդը։
Ա՜յ, հատ, դու այստեղ ջուրն ընկի,
Ա՜յ, հասկը, դու էլ կալն ընկի։

Ոմանք էլ այս աղօթքն են ասում.

Օխտը լուծը,
Օխտը սամի,
Օխտը սմոտէն,
Օխտը հետ սսեմ,

Digitized by Google

*Աչքի հետ վերցի,*
*Քեզ փրկի.*
*Հայր մեր, որ յերկինս...*

*Բեղնի խարա* (рожа).—Երբ երեսի վրայ մանր բշտիկներ են դուրս գալիս՝ մի դանակ քսելով վէրքին՝ 7 անգամ շշնջում են հետևեալ աղօթքը.

*Բեղօ,*
*Բեղնիերօ,*
*Քու դեղն ի՞նչ ա,*
*Անհայ մեղրը,*
*Գօգրու [1]) ծաղիկը,*
*Սառը շաքարը.*
*Կը գովեմ, կը գովասանքեմ,*
*Ալամ [2]) աշխարհքի գլխին կը պահեմ։*

*կամ*

*Բեղնի, բեղնի խարայ,*
*Գօգրի ծաղիկ,*
*Քու դեղն ի՞նչ ա։*
*—Թսան բողոճը։*
*Բեղնի, բեղնի խարայ,*
*Քու դեղն ի՞նչ ա։*
*—Զամիչը,*
*Բեղնի, բեղնի խարայ,*
*Քու դեղն ի՞նչ ա։*
*—Գորտը։*

*Շեկէկ.* (мигренъ).—Երբ գլխի կէսն է ցաւում—շեկէկ ունին—հետևեալ աղօթքը գրում են մի թղթի վրայ, եռանկիւնաձև ծալում և կարում եթէ տնամարդ է՝ գլխարկի, իսկ եթէ կին՝ գլխաշորի մէջ.

*Շեկէկը մտաւ խոտի դէզը,*
*Երկաթը հէնց կերաւ,*
*Ոնց որ խոտը՝ եզը,*
*Առաւօտեան սուրբ Գէորգի անէծքով*
*Վե՛ կաց, դուրս ել, շեկէկ։*

*Գորտնուկ,* (бородовка).—Կամ ձեռին աղ բռնած շը-

1) Դդում. 2) Համայն.

շնջում են հետևեալ աղօթքը և կամ մի հաւկթի վրայ գրում այդ և հինգ կամ եօթը ճանապարհների ընդհարման կէտում թաղում.

*Լիսինը նոր,*
*Գորտնուկը չոր.*
*Օրթում ուտեմ,*
*Թոք չուտեմ։*
*Ա՛յ աղ. դու այստեղ հալուի,*
*Ա՛յ գորտնուկ, դու ըստի չորացի։*

*Գէլ-կապ.*—Երբ Լոռեցու անասունը կորչում է կամ հանդն է մնում, գէլ-կապ անողին գայլի բերանը կապել է տալիս, որպէսզի սա չը կարողանայ իւր անասունը ուտել։ Պատմում են, թէ շատ անգամներ գէլ-կապ անելուց յետոյ գնացել տեսել են՝ որ գայլը կապուած բերանով հանգիստ պպզած է ոչխարի մօտ, առանց նրան մի որևէ վնաս հասցնելու։ Լոռեցին նաև այնքան բարեսիրտ է, որ իւր անասունը տուն բերելուց յետոյ նոյն գէլ-կապ անողին գայլի բերանը բանալ է տալիս, որպէսզի խեղճը քաղցածութիւնից չը սատակի։ Գէլ-կապ անողը հետևեալ աղօթքը եօթը անգամ շշնջալով եօթը հանգոյց է ձգում տխրատէնի (թեխի կապ) կամ գուլպի թելի վրայ, որպէսզի ագահ գայլի բերանը կապուի, կամ կացինը դնում սանդուքի բերանի մէջ, որպէսզի գայլի բերանն էլ սուր դրուի, և կամ մոխրով լի գդալը դընում է պատի մէջ, որպէսզի գայլի աչքերն էլ մոխիր լցուի և չը տեսնէ անասունին։

Գայլի բերանը բանալիս առանց մի որևէ աղօթք ասելու արձակում են հանգոյցները, վերցնում կացինը սանդուքի բերանից և գդալի միջից մոխիրը դէն ածում։

Ահա այդ աղօթքը.

*Գիր անեմ, գէլ-կապ անեմ,*
*Օխտը մատով, օխտը բթով,*
*Աստուածածնայ քաղցր կաթով,*
*Լուսաւորչի սուրբ աջով,*
*Գէլի ղունչը կապեմ,*

Digitized by Google

*Փորը ցխի [1]) անեմ,*
*Ոտները ծղի [2]) անեմ,*
*Ատամներն մոմի անեմ,*
*Լեզուն տըխտըմոր [3]) անեմ,*
*Սուրբ Սարգսի ձիու չարը*
*Գեամ անեմ, գլուխն անեմ,*
*Տանեմ քեօթկիցը [4]) կապեմ։*

*Սրտամնայ.*—Երբ մինը վատ է զգում իրեն և ախորժակ չի ունենում, կարծում են թէ մի որևէ բանից զարշել է՝ *սրտամնայ է եղել*։ Եւ որպէսզի ստուգեն իրենց ենթադրութիւնը՝ դիմում են սրտամնայի աղօթքը իմացողին և սա ջըրով լի մի թասի մէջ մի ասեղ է ձգում, աջ ցուցամատը դընում վերան և հետևեալ աղօթքը եօթը անգամ կրկնելուց յետոյ բարձրացնում է ցուցամատը, եթէ ասեղը կպած լինի մատին՝ նշանակում է, որ սրտամնայ է եղած։

Ահա այդ աղօթքը.

*Սիպտակ սարի տակիցը,*
*Սիպտակ Ուհաննէս դուրս եկաւ,*
*Սիպտակ ջուրը մտաւ,*
*Սիպտակ ձեռը տարաւ,*
*Սիպտակ ձուկը հանեց։*
*Անձեռը բռնեց,*
*Անդանակ մորթեց,*
*Անկրակ խորովեց,*
*Անիշտահ կերաւ,*
*Մատաժուժէն ելաւ։*

Երբ այսպէս որոշում են, որ հիւանդութիւնը սրտամնայ է, մի քանի առաւօտ հետևեալ աղօթքը շշնջալով մի գաւաթ սառը ջրի վրայ՝ մի քիչ շաղ են տալիս երեսին, մնացածը խմեցնում, խորհուրդ տալով, որ թթու բաներ ուտի, և գրօնի գլուխն բարձր բռնած։

Ահա աղօթքը.

*Աթլաս,*
*Բաթլաս,*

[1]) Ցեխից [2]) ծղօտեայ [3]) Թթխմոր, խաչ. [4]) կռճղից,

*Թալանչբաշ,*
*Կարմիր քրեղան,*
*Լիքը կուժ։*

*Կոլինչ կամ սանջու.*—Երբ մինի փորը ցաւում է, աղօթող պառաւը մի պոչիկ գդալ ձեռին ցաւոտ տեղերը սեղմելով աղօթում է՝ շշնջալով հետեւեալ աղօթքը և պատուիրում թթու թան խմացնել։*)

*Ինքը սուրբ,*
*Տեղը մուրք,*
*Թթու թան,*
*Պոչիկ գդալ,*
*Պառատ խան.*
*Ով սուրբ Աստուածածին,*
*Դու կտրես (այս ինչի) սանջուն։*

*Խիլթք.*—Այսպէս է կոչւում մրսելուց յառաջացած այն հիւանդութիւնը, որի ժամանակ մէջքի և ուսերի մէջ գտնուող երակները կապտում են։ Բժշկիլու յուսով տրորում են այդ երակները՝ շշնջալով այս աղօթքը.

*Խիթքը խթքեց,*
*Քրիստոսը վեր եկաւ խաչակնքեց,*
*Որ չէր խաչակնքէ*
*Խիթքը մարդ կ'սպանէր.*
*Քրիստոս բռնեց կանեփէ թոկը,*
*Եկաւ առաւ Լուսաւորչու աջը։*

*Նամանի* (կենդանիների рожа) Մի արծաթէ դրամ

*) Աղօթողները այս աղօթքն յառաջանալու պատճառն այսպէս են բացատրում. Մի անգամ, երբ Քրիստոս անցնում էր մի աղքատիկ գիւղով, մի գիւղացի հրաւիրում է նրան իւր տուն, մի պառատ (կոտրուած) խան (ցորեն չափելու աման) դնում՝ վրան նստելու և մի պոչիկ (պոչը կոտրուած) գդալ ձգելով թթու թանի մէջ՝ առաջարկում ուտել։ Քրիստոս սիրով ընդունում է այդ աղքատիկ, բայց սրտանց հիւրասիրութիւնը, և երբ տեսնում է, որ դրա երեխան տանջւում է փորացաւով, աղօթում է նրան վերոյիշեալ աղօթքը հնարելով և աներևոյթանում է։ Այնուհետև թթու թանն ու պոչիկ գդալով մասսաժը վերոյիշեալ աղօթքի հետ համարւում է փորացաւը կտրելու ամենալաւ միջոց։

դնելով վէրքի վրայ կամ քսելով նրա շուրջը և կամ դանակով խաչակնքելով եօթն անգամ ասում են այս աղօթքը.

*Աթլաս,*
*Գաթլաս,*
*Ալալարա*
*Բաս բաս։*

*Մկնատամ.*—Մի թղթի վրայ գրում են հետևեալը և դնում մկնատամի վրայ.—

Ամօն ամօն, յուալ ամօն էն էն ամօն բրայ բոն, բրայ բոն ամօն։—Ագ, եգ արգ. գաագ, ագ, ագ, եղէգն։

Այս գրում են առաւելապէս չորեքշաբթի և մանաւանդ «չիք-չորեքշաբթի» (Զատկի Աւագ չորեքշաբթի) օրը։

*Շների յարձակումից ազատուելու համար ասում են.*

*Ցիսուս Քրիստոս աշխարհ եկաւ*
*Շուն կար՝ գլուխ չկար։*

*Օձի խայթոցից ազատուելու համար օձ տեսնելիս ասում են.*

*Կորէր անիծեալ. կապեալ լինիս Օհան Օձնեցու առաջի անմահ պատարագին։*

*Մինի աչքը գրաւել ցանկանալով մի փոքրիկ թղթի վրայ գրում են.*

*Սուրբ Ցարոս,*
*Սուրբ Ամաթոս,*
*Սուրբ Սալաթոս,*
*Սիրեցուցէք (այսինչին այնինչի) հետ։*

Յետոյ եռանկիւնաձև ծալում են, մի շորի մէջ կարում—համայիլ շինում—և միշտ պահում աչքը գրաւել ցանկացողի մօտ և կամ մանր կտորներ անում, լցնում ջրի մէջ և խմացնում նրան, որի աչքը կամենում են գրաւել։

## ՍՆՈՏԻԱՊԱՇՏՈՒԹԻՒՆՆԵՐ

*Աքաղաղը իմաստուն է, նա իմանում է երկնքի զանգակների առաջին զարկը և ինքն էլ թևերը թափահարում, ձայն տալիս։*

*Սև հաւը խեղդում են և դռան շեմքում թաղում, որ չարը ներս չմտնի։*

*Եթէ մի ապրանք չարի հանդիպի, օրինակ, մի կով հիւանդանայ, ինչ տեղ հիւանդանում է, նոյն տեղը մեխ են խփում, որ չարը ոչնչանայ։*

*Հաւի ձուից ճուտ դուրս գալիս կճեպը դէն չեն ածում, այլ թելի վրայ շարում են, որպէսզի ճտերն ապրեն և չկոտորուեն։*

*Եթէ մի տան անասուններն սատակում են, նորն առնելիս տան մաղը և խաշը պտոյտ են տալիս գլխովը, որ մնայ, չսատակի։*

*Երբ մինից շատ անասուններ են սատակում, վերջին սատակածի գլուխը թաղում են գոմի շէմքում, որ այլևս չսատակեն։*

*Մազերը սանրելիս՝ թափուած մազերը հաւաքում, դնում են պատի խորշում. իսկ ոմանք հաւաքում են մի առանձին քսակի մէջ, որը նոյն մարդու մեռնելիս՝ դագաղի մէջ դրուելով՝ հետը թաղւում է, որպէսզի նա միւս կեանքում մազի նեղութիւն չքաշէ։*

*Եղունգները կտրելիս գետնում թաղում են ասելով.*

*Ղէյնը, ղէյնը ըտեղ կաց.*
*Հերու որ ուզիմ հազիր կաց։*

*որպէսզի պատրաստ մնայ որ միւս կեանքում կրկին վերցնեն։*

*Հաւը թուխս դնելիս հաւկիթները դարսում են գդակի մէջ, տանում և մի անգամից դարձնում՝ ասելով.*

*Խոխուալի տակդ եմ անում,*
*Կճկճալի հանիլ պտես։*

*Յետոյ գդակը դնում են գետնին և իրենք էլ մօտը նստում, որ հաւը նստկան լինի։*

*Գդալը կրակի մէջ չեն ձգիլ, որպէսզի գայլը չուտէ հորթերը։*

*Կաթը տաքացնելիս եթէ մինը կրակ ուզէ, կամ չեն տալ և կամ մի կանաչ տերև են դնում կաթի վրայ ու ապա տալիս, թէ չէ կաթի բարաքեաթը կերթայ ու կովի պտուկը կը քոսոտի։*

*Եթէ կովի կաթը արիւնախառն է լինում, լուացնելու յուսով առանց այդ մասին մինին ասելու, ծածուկ կթում են և երեք անգամ նախ իւր դրինդը (րռի փափուկ մասը) և ապա կովի ծիծը կծում, և յետոյ կթած կաթը տանում մասրենու տակ թաղում։*

*Կովի ստինքը հիւանդանալիս սև խլուրդի (բորեխամուկ) առաջին ոտը դրամի վրայ դրած կտրում են և նրա չոր ճանկը երեք առաւօտ քսում ստինքսին, որ լաւանայ։*

*Նոր գնած անասունը օջախի մօտ են տանում և ոտներին ջուր ածում, որ չը կորչի։*

*Հորթի գլխին աղաքար կամ հասարակ քար են քսում, որպէսզի գլուխը քարի պէս ամուր լինի։*

*Խնոցին փոխ տալիս մի գրաւական են վերցնում, որպէսզի*

Digitized by Google

երևայ, որ խնոցին դարձեալ իրենց մօտ է, ապա թէ ոչ՝ բարաքեաթը կերթայ։

Մաղ, մերան, խաշ, սերմ փոխ չեն տալիս, որպէսզի բարաքեաթը չգնայ։

Որպէսզի մեռելը շատանայ՝ քահանան եկեղեցու կողպէքը պէտք է կրծէ, կամ գերեզմանատանը թաւալուի և կամ ձեռի գաւազանը քաշ տայ։

Հրացանի վրայով թոյլ չեն տալիս անցնելու, որպէսզի 1) հրացանի մեղքերը անցնողին չանցնի. 2) հրացանի գնդակը չծռուի ու այլևս որսին չդիպչի և 3) հրացանը «չկոխուի», այսինքն չփչանայ։

Կշեռքի վրայից էլ թոյլ չեն տալիս անցնելու, մեղք է, ասում են, անցնողը կը մեռնի։

Հաց թխելիս խոնչի վրայ մնացած ալիւրը յետ չեն վերցնում, այլ ածում են թոնիրը անտէր մեռելների յիշատակի համար։

Մաղը առանց գրաւականի չեն թոյլ տալիս որ գիշերով դուրս տանին։

Փռնչտալիս խաչակնքում են, որպէսզի սատանան իրենց փորը չմտնի [1])։

Երեկոները բարձը թափ են տալիս, որպէսզի չարը միջից դուրս գայ։

Խորոված անելիս եթէ շամփուրները աջ ու ձախ դնեն՝ անասուններից կըսատակեն։

Փիծեղը, որ նորատի տղէն ուտէ, թագի տակին կըսևանայ։

Եթէ չամուսնացած աղջիկը կամ տղան կաթի ակուցքը քերէ՝ հարսանիքի օրը ձիւն կըգայ, իսկ եթէ կերակուր ուտելիս ամանը լաւ մաքրէ՝ ապագայ ամուսինը գեղեցիկ կը լինի։

Շորերը թարս չեն ծալում, թէ չէ տէրը կըմեռնի։

Թաթակիշը միշտ մաքուր լուանում են, որովհետև հաւատում են, որ նոյն երեկոյ նա Երուսաղէմ պիտի գնայ ուխտ անէ։ Եթէ խմոր լինի վերան՝ կը գանգատուի։

Սարից վերադառնալիս պանրի մերանը թաղում են, որ սուրբ է, սուրբ կենայ։

Մերանը ուրիշից ուզելիս պէտք է մի գրաւական, օրինակ, մի բաժնաչափ կաթը տանի։

Եթէ կիրակի օրը ստիպուած լինին եղունգ կտրել, պէտք է

---

[1]) Այս բացատրութիւնը մի թուրք լսելով, ասել է թէ ապա մեր փորը ինչի՞ չէ մտնում, չէ՞ որ մենք երբէք չենք խաչակնքում։

—Ձեր փորը սատանի սեպհական տունն է, պատասխանել է հայը, մտնում էլ է, դուրս էլ է գալիս, միայն սովորական բան լինելով դուք չէք իմանում։

*օջախում թաղեն, պահեն, որովհետև միւս աշխարհում կը պահանջեն։*

*Երկուշաբթի օրը դրամ փոխ չեն տալ, որպէսզի ամբողջ շաբաթ նոյնը չկրկնուի։*

*Չորեքշաբթի և ուրբաթ օրերը ձև չեն անում, ապա թէ ոչ կայրուի։*

*Զմռնադուսին, երբ արևի շողերը տունն է ընկնում, կանայք խաշից կտրում են և տանում պատից կպցնում և երբ չորանում է՝ պահում են, որ ամառը, երբ արևը հնձուորին այրէ, նրան քսեն ու առողջացնեն։*

## ՆՇԱՆԱՒՈՐ ՏՕՆԵՐ

*Նոր-տարի.*—*Տարեմուտին* (*դեկտ.* 31-*ին*) *ամէն մի տուն լուացք է անում, հաց թխում, (թէկուզ շատ էլ հաց ունենայ), փոքրիկ, մարդակերպ հացիկներ պատրաստում՝ աչքերի, բերնի և կրծքին դրած ձուքերի վրայ քիշմիշներ խրելով։ Սրանց կոչում են Աւիլ-բասիլ և տալիս են երեխաների ձեռքը։ Ջաւախքում սրանց միջոցով անուող գուշակութիւններն այստեղ յայտնի չեն։ Բացի սրանից, շինում են նաև կլկալ, կամ ղուլաճ—կլոր բլիթ, մէջ տեղը ծակ։ Սրանք, որ իբր հացի հոր են ներկայացնում, նոր տարու օրն անց են կացնում գոմէշի և եզան եղջիւրին, որպէսզի այդ տարին հորը լցուի ցորենով։*

*Հացը թխելիս, հետևեալ օրուայ համար պատրաստում են կերակրներ, որոնց մէջ լինելու է անշուշտ լոբի և լոբիջուր, այնպէս որ իրենք էլ ասում են, թէ նոր տարին չի գալ առանց լոբու։*

*Երբ հացը թխում, աւարտում են, վերջի երեք գունտի վրայ նշաններ են անում, յատկացնելով մինը ցորենի, երկրորդը՝ գարու և երրորդը՝ հաճարի նոր տարուայ բերքին և ձգում թոնրի մէջ, կրակի վրայ, ապա հանում և նայելով թէ որը որչափ է ուռել, բերքի առատութեան վերաբերութեամբ գուշակութիւններ անում։*

*Փոքր ի շատէ ունևոր տներում էլ գողինայ են պատրաստում մեղրով ընկոյզից և նուշից։*

*Նոր նոր վերանում է այն, թերևս զրադաշտական կրօնից*

մնացած սովորութիւնը, որ այս երեկոյ մի մեծ գերան են քաշ տալիս գլխատան մէջ, մի ծայրը դնում օջախը, իսկ միւսը շատ անգամ դռնից դուրս է ձգւում, որի պատճառով էլ դուռը բաց է մնում. (գիւղացու համար այս մի առանձին նշանակութիւն չունի, որովհետև հերթիկն էլ է բաց, տունը երբէք չի տաքանում)։ Այս գերանը, որին *տարեմուտի քիւթուկ* են կոչում, այս երեկոյից մինչև ծննդեան երեկոն անընդհատ պիտի վառուի։ Ծննդեան երեկոյին վերցնում են այս գերանից մնացած խանձողները, տանում հանդերում թաղում, որպէսզի թէ բերքը առատ լինի և թէ կարկուտը չխփի արտին։ Միևնոյն ժամանակ այս խանձողից պահում են, որպէսզի կարկուտ եկած միջոցին դուրս ձգեն՝ և երկինքը խաղաղի։

Այժմ թէև տարեմուտի քիւթուկն այլ ևս չեն վառում, բայց աշխատում են գոնէ այս գիշեր կրակն անշէջ պահել. մեծ քանակութեամբ փայտ են կոտրում և Նոր տարու օրը ով ներս է գալիս, մի կտոր փայտ, գոնէ մի տաշեղ, է վերցնում և ձգում կրակի մէջ։

Տարեմուտի կէս գիշերի մասին պատմում են, թէ գետերը մի փոքր ժամանակ կանգ են առնում և ով այս միջոցում ջուր վերցնի՝ կուժը ոսկու կը փոխարկուի և թէ ով մի բան գնելով գետի մէջ խնդրի որ ուրիշ բանի փոխարկուի, խնդիրն կը կատարուի։ Այսպէս՝ պատմում էին, թէ մի գիւղացի բահը դրել է գետի մէջ և ցանկանալով ասել, թէ ոսկի դառնայ, ասել է թէ փայտ դառնայ։ Հանել տեսել է, որ փայտ է դարձել։ Այս հաւատով առաջնորդուելով այս գիշերը ջուր չեն դուրս ածում։

Նոր—տարու օրը տանտիկինը մի կարմիր շոր վերցրած գնում է դուրս, մի քիչ մեղր քսում տան դռանը և այդ կարմիր շորը մի տեղ փռում, որպէսզի տարին քաղցր ու կարմիր, ուրախ անցնի, ապա մի գիրկ փայտ է բերում, լցնում օջախը ապա շնորհաւորում որդիների, հարսների Նոր տարին, բերաններին մեղր քսում, երեխաներին միրգ և ասիլ-բասիլ բաժանում։ Տան տղամարդն էլ կկալներն առած գնում է գոմը, դռան վերև մեղրով խաչ քաշում, գոմէշների աջ եղ-

*ջուրներին մի մի կլկալ անցկացնում, բերաններին մի քիչ մեղր քսում և վերադառնում։*

*Այս միջոցին սփռոցը ձգած են լինում, պասուց կերակրները շարած, մի շիշ օղի և մի գաւ գինի դրած։ Մօտիկ-ները գալիս են Նոր տարին շնորհաւորելու, նստում են տղամարդիկ առանձին, կանայք առանձին, շատ անգամ տղամարդկանցից յետոյ, և հաց ուտում, օղի, գինի խմում, բարեմաղթութիւններ անելով։ Յետոյ տան մեծը մի շիշ օղի առած գնում է գիւղի տանուտէրի տունը, Նոր-տարին շնորհաւորելու։ Սա էլ սփռոց է ձգած լինում, պասուց կերակուրներ, օղի, գինի շարած, եկողին հրաւիրում է նստել, ուտել, խմել։*

*Ընդհանրապէս շնորհաւորում են հետեւեալ կերպով՝ շատ անգամ մի խնձոր կամ մի ընկոյզ տալով. «Տարիդ շնորհաւոր»։*

*—Տարի քո բոլոր, պատասխանում են ձեռքը բռնելով։*

*Իսկ օղի խմելիս այսպէս են բարեմաղթում. «Սաղ ըլէք. ուրախութէնի տարի ըլի. ցամաք աչքով, ուրախ սրտով ամէն տարի էս օրս հասնունք. ուրախութենով տարեմուտ ենք անում, ուրախութենով էլ սուրբ Յարութեանը արժանանանք, լի ու առատ տարի ըլի. Աստուած մահին թանգութին տայ, հացին էժանութին։*

*Տանուտէրից յետոյ շատերը, թէև ոչ բոլորը, գնում են իրենց ծխական քահանայի մօտ, տարին շնորհաւորելու,— բայց սրան իբր նուէր օղի կամ ուրիշ բան չեն տանում, մինչդեռ տանուտէրի համար պարտաւոր են տանելու։*

*Նշանադրուած երիտասարդներն անշուշտ օղի, թխուածք և մրգեղէն առած դնում են աներանց տուն, համբուրում աներոջ և զոքանչի ձեռքերը, օղին տալիս աներոջը, թխուածքը՝ զոքանչին, իսկ մրգեղէնը՝ հարսնացուին։*

*Վերջինս էլ շատ անգամ «փնջած խնձոր» է նուիրում իւր նշանածին, միայն ծածուկ։ «Փնջած-խնձորը» պատրաստում է ինքը իւր ձեռքով մետաքսեայ գոյզգոյն թելեր փաթաթելով մի կարմիր խնձորի վրայ, և զանազան կողմերում նոյն թելով փնջիկներ շինում։*

Digitized by Google

Առատաձեռն նշանածը սրա փոխարէն ինքն էլ մի խնձոր է նուիրում, վերան արծաթեայ տասն կոպէկանոցներ խրած։

Սանամայրերն էլ իրենց քաւորներին ընծայ են տանում կամ ուղարկում օղի, գինի, մրգեր, թխուածքներ, առաւելապէս՝ բիշի, տոլաղներ, գուլպաներ և այլն։

Միքանի գիւղերում, ինչպէս Հաղբատ, երեխաները խըմբեր կազմած ման են գալիս տները ու միրիշ միրգ ստանալու յուսով երգում հետևեալը.

Կըտեր հողը խնգան փոշի,
Ծոծը վրէն ծալած ոսկի,
Դուռը վրէն փերթ ըրեքնակ,
Կտեր վրէն բոլոր լխնխակ,
Տան սները կերոններ,
Ոսկէ կամար գերաններ։
Բարի բիդուն ալէլուիա,
Ա շէն, հա շէն, էս տունը շէն,
Սին ու գերան սողոմ քաշեն։
Տուն աւլողներ ջուխտ աղունակ,
Ջեռնաւելը փունջ մանուշակ,
Թոռնները խորաննի են,
Հացթուխները խանում խաթուն,
Էս տանը կայ էրկու լիզու,
Մինը բարի, մինը չարի,
Զարինը ընդի, բարինը ըստի,
Բարին վէր գայ ձեզ հետ նստի,
Բարով թող գայ ձեզ նոր տարի,
Մուրազներուդ չիմ կատարի,
Ձեր տուն մտնու հազար բարի,
Աճար, ցորեն, կորեկ, գարի։
Լիքը հորեր շատ ունենաք,
Կարմիր օրեր շատ ունենաք,
Կարմիր օրով, կարմիր շորով,
Ուրախ կենաք միշտ կուշտ փորով։

*Ծնունդ եւ մկրտութիւն.*—Ծննդեան օրը քահանաները մեծ քանակութեամբ նշխարք են պատրաստում և երիտասարդների ձեռքով ցրւում ժողովրդին։ Ստացողը բաժանողին

*տալիս է երկու ձու կամ մի քանի ընկոյզ։ Այս սովորութիւնը վերանալու վրայ է։*

*Ճրագալոյցին Դանիէլի գիրքը կարդում են չորս տղաներ, որոնց ծնողները պարտաւոր են յօդուտ եկեղեցու մի բան, օրինակ, մի քանի փունտ մեղրամոմ և կամ դրամ տալ։*

*Ժամերգութիւնից յետոյ ամէն մարդ շտապում է մի կըտոր նշխարք առնել և տուն վերադառնալ ընթրելու, մանաւանդ որ մի քանիսն այդ օրը ծոմ են բռնած լինում։*

*Այս ընթրիքը «թաթախումն» է կոչւում և սրանից՝ սոյն գիշերը «թաթախման գիշեր»։*

*Ընթրիքին անշուշտ ձուկ է մատուցւում։*

*Մի քիչ յետոյ գրագէտ մանուկներն առանձին, անգրագէտները առանձին խմբեր կազմած սկսում են շրջել. առաջինները մտնում են տները «աւետիս» ասում, իսկ երկրորդները բարձրանում կտուրները, մի կողով քաշ անում հերթիկից և երգում.*

*Բարի րիգուն ձեզ, ալելուիա,*
*Հա ցնծացէք, ուրախացէք,*
*Մեր Մարիամի պասը բացէք,*
*Մարիամը գնաց էլի ծնունդ,*
*Ծննդուեցաւ, ազատուեցաւ,*
*Լուսաթաթախ մանուկ ծնեց,*
*Ծով ու ցամաք լուսով պատեց,*
*Իւր խաչ որդին, իւր սուրբ հոգին,*
*Բարուր կապեց էդ իր գոգին։*
*Դեռ չէր հասել օխտն օրական,*
*Լեզուն բացեց, այսպէս խօսեց.*
*—Ա մէր, ա մէր, Աստուածամէր,*
*—Ինձ տար տուր Տէր Ուհանին,*
*—Ոսկէ բերան էն գահանին։*
*Տարան տուին Տէր Ուհանին,*
*Ոսկէ բերան հայրապետին,*
*Կուս զգեստով շուրջառեցին,*
*Լուս մանուկը ձեռքը տուին,*
*Գետ Յորդանան մկրտեցին,*
*Յիսուս մանուկ անուանեցին,*
*Ողջ աշխարհը կանգնեց յուսով։*

Digitized by Google

Հէնց որ դարձաւ տասը տարեկան՝
Ամենքին էր խիստ սիրեկան.
Երկու տարին վրէն անցաւ,
Տանէրկուսը բոլորուեցաւ,
Դարձաւ մօր հետ, այսպէս խօսեց,
Քաղցր լեզուով խնդրեց, ասեց.
—Ա՛, մէր, ա մէր, Աստուածամէր,
—Ինձի շուտ տար Երուսաղէմ,
—Սուրբ գրքերից օգուտ քաղեմ,
—Միտք իմանամ, միտքս բանամ,
—Աստծու ճամփէն լաւ հասկանամ։
Մայրը առաւ, հետը տարաւ.
Ընտեղ նա շատ գրուց արաւ,
Վարպետներին հարցմունք արաւ,
Ցաղթութիւնը ինքը տարաւ։
Վարպետները խիստ բարկացան,
Տեղներիցը շուտ վերկացան,
Խորհուրդ արին նրա մասին,
Խորհրդի մէջ այսպէս ասին.
Սա չի անիլ մեզ մոնթութին,
Սա մեզ կանի վարպետութին,
Ըրեցներին գանգատ արէք,
Աւագներին կաշառեցէք,
Եւ Մարիամին շատ զարկեցէք,
Իր որդու հետ յետ դարձեցէք»։
Մայր ու մանուկ, որ իմացան,
Նրանք էլ ըստեղ շատ չը կացան,
Որդին տեսաւ մօրը լալով,
Լալով, լալով, մղկտալով.
Դարձաւ ասաւ նա իւր մօրը.
—Ոչինչ բան ա էս բոլորը,
—Ոչինչ, թէ որ ինձ չեն թողում
—Իմ հօր տանը, իմ հօր հողումը,
—Եերան բանամ ուսուցանեմ,
—Բարի գործոց սերմեր ցանեմ,
—Բայց որ կը գայ, կգայ ժամը,
—Կառնուն դրանք իմ ուման համը,
—Ջիք կդառնայ չարակամը,
—Կը մոտենայ բարիկամը։
Մէր ու մանուկ շատ նեղացան,

Digitized by Google

Նրանք էլ այստեղ շատ չկացան։
Մանուկն ասաց.—Գնանք մեր տունը,
Ես կը կտրեմ աչքիս քունը,
Մահ ու մանգաղ կը բանացնեմ,
Կաթնով աղբիւր կը բղխացնեմ,
Քօռ ու քաչալ կը սաղացնեմ,
Ես քեզ ընդով կը կերակրեմ։

Աւելի փոքրահասակները կարճ են կտրում ասելով.

Բարրիգուն ձեզ, ալելուիա,
Աշէն, աշէն էս տուն ա շէն,
Սին ու գերան սողոմքաշ են,
Էս տանը էրկու օրօրոց,
Մինը բարի մինը չարոց,
Չարինը չարով կործանուի,
Բարին բարով առաջուի,
Տունը շէ՛ն, տունը շէն,
Ձեր պստիկի անըմն ի՞նչ ա։

Տանից պատասխանում են օր. Արամ, Անուշ։ Տղաները շարունակում են.

Արամը կամ Անուշը գնաց մըրին,
Եղ մտիկ արաւ իրան հօր կնանչքերին,
Ձուը ջիբը տարաւ,
Զալ ապասին չալը տարաւ,
Մի պռչատ հաւ տուէք,
Կամ մի ստիլ եղ ալելուէն տանի։

Թէ սրանց կողովի մէջ և թէ «աւետիս» ասողների պարկում ընկոյզ, մի երկու ձու, մի քանի կոպէկ են ձգում:

Քրիստոսի մկրտութեան տօնը տեղական բարբառով «ջրօխնէք» է կոչւում։ Այս ժամանակ մի քանի գիւղերում հանդիսաւոր թափորով գնում են մօտակայ գետի ափը և այնտեղ «խաչը ջուրը ձգում», իսկ շատերում այս ծէսը կատարում են եկեղեցու մէջ, սեղանի վրայ ջրով լի մի կոնքայ դնելով։ Քաւոր լինողը պարտաւոր է յօղուտ եկեղեցու մի բան նուիրել։ Օրհնած ջուրն ահաղին իրարանցումով լցնում են շշերի, ամանների մէջ, տանում տուն, մի մասը երեսներին, վէրքերին քսում, որ սրբուեն, առողջանան. մնացածը պա-

հում, որպէսզի այդ ջրով սրբեն պղծուած ամանները, այսինքն որոնց շուն է դիպել կամ մէջը մուկ ընկել։

*Ս. Սարգիս.*—Առաջաւորաց պասին այս գաւառացիք ես Ս. Սարգսի պաս են կոչում։ Երիտասարդներից մի քանիսըն անսուաղ, միւսները միաժամ ծոմ են բռնում, այսինքն, ոմանք ամբողջ պասի ընթացքում բացի ջրից ոչինչ չեն ընդունում, իսկ միւսները օրական միմիայն մի անգամ, երեկոյեան ժամերգութիւնից յետոյ, պասուայ կերակուրներ են ուտում։

Այս պասի ընթացքում իբր սգի նշան գլուխ չեն լուանում, սապոն չեն գործածում, ճաշարակ չեն մանում և ծանր աշխատանքներ չեն կատարում, նոյն իսկ եղջերուները տեղից չեն շարժւում, սուգ են պահում, ապա թէ ոչ մազերը կը թափուին:

Ուրբաթ օրը *կլոնդրակ* են չինում, փոխինդ կամ փոխինձը (բոված և երկանքով աղացած ցորենի ալիւր) մեղրով շաղախում և գլանի ձև տալիս, յետոյ թաթախւում, այսինքն, առաջին անգամ ուտում, որովհետև նախընթաց հինգ օրուայ ընթացքում արգելւում է փոխինդ գործածել։

Նոյն օրն Օձնեցիները գնում են Մոփի գլխի Ս. Սարգսի խաչը «ուխտ անելու», այստեղ մի քիչ ջուր են ածում խաչի վրայ, ապա այդ խաչլուայի ջրով և մեղրով փոխնդից կլոնդրակ են չինում, իրենք թաթախւում և բերում տնեցիներին էլ տալիս։

Այդ օրն անշուշտ փոխինդ գործածելու մասին իրենք գիւղացիներն այսպիսի բացատրութիւն են տալիս։—Պող (սպիտակ) ձիաւոր Ս. Սարգիսը ութ օր շարունակ կռւում էր վրացիների (յունադաւանների) հետ. վերջին օրը ձեռքը տարաւ գրպանը, տեսաւ որ իբր պաշար վերցրած աղանձը այնքան հարուել է իւր քաշած նեղութիւններից, որ փոխինդ է դառել, բռեց, լցրեց բերանը և շարունակեց կռիւը։ Բայց յանկարծ ուրդին ձիու քամակից վայր ընկաւ. իսկոյն վրացիները յարձակուեցան վերան։ Այս անպատեհի աղէտը տեսնելով «մուրազատու» և «յարեհաս» Ս. Սարգիսը՝ յուսահատ վայր իջաւ

ձիուց, ընկաւ որդու վերայ, զրկեց նրան և բացականչեց. Որդուս խաւարացրիք, եկէք ինձ էլ խաւարացրէք։ Վրացիներն շտապեցին նրան էլ սպանել, իսկոյն «ճառայկապած լիսը վերէն վէր էկաւ, լիս էր՝ լիս դառաւ»։

Նոյն ուրբաթ գիշերը, չափահաս երիտասարդները ու աղջիկներն «աղի բլիթ» (սաստիկ աղի, կլոր հաց) են ուտում և առանց ջուր խմելու քնում։ Երազներում ով տղան որ աղջկան, և որ աղջիկը որ տղին տեսաւ իրեն ջուր տալիս, նրա *բուլթէն* է,—նախասահմանուած կողակիցն է դառնում։ Եւ եթէ ձեռին խնձոր ունենայ, դա նշան է որ հարուստ է լինելու։

Պառաւ կանայք էլ նոյն գիշերը դռան առաջ մի սկուտեղի մէջ մաղած փոխինդ են դնում, որպէսզի Ս. Սարգիսը եթէ իրենց այցելէ, ձիու պայտի հետքը մնայ փոխինդի վրայ։

Շաբաթ առաւօտեան այս դուրս դրած կամ այլ փոխինդով անշուշտ *խաշիլ* են անում, ուտում։ Շատերը ուխտ են գնում Ս. Սարգսի ուխտատեղիները, ինչպէս են Վարդաբլուրի մօտ, Արդուի գիւղի բարձրում, Օձունի գիւղի մօտ գտնուածները և այլն։

Աւանդաբար պատմում են, թէ Ս. Սարգիսը փախցրել է Յունաց Թագաւորի աղջիկը և երբ յոյները նրան հետևել են, սաստիկ բուք բարձրացնելով նրանց մոլորեցրել և շատերին խեղդել է։ Եւ իբր թէ մինչև այժմ էլ ոխ պահելով ամէն տարի մի յոյնի կամ վրացու (որ նոյնպէս յունադաւան է) խեղդում է։

*Բարեկենդան*.—Այս երկու շաբաթուայ և մանաւանդ վերջի երեք օրերի ընթացքում թէ տղամարդիկ և թէ կանայք աշխատում են լաւ ուտել, խմել և լաւ հագնուել ու զուարճանալ։ Հարսանիքներ առաւելապէս այս միջոցում լինելով՝ բոլորն էլ միջոց են ունենում հարսնքատանը հաւաքուելու, ուտել խմելու, զուարճանալու։

Բացի սրանից՝ հաւաքւում են կալերը, զանազան խաղեր խաղում, կոտեմարտում, պարում։

Պատահում են նաև բաւականաչափ հարբած մարդիկ,

որոնք սրան նրան վիրաւորելով պատճառ են դառնում կատաղի կռիւներին։

Զուարճանալը՝ ուտել խմելը հետզհետէ աւելանում է մինչև վերջին կիրակի օրը։

Երբ արդէն լիովին յագեցած այլևս չեն կարողանում ուտել, նախ տան մեծը, ապա միւսները «փակում են բերանները» ձուով կամ ձուաձեղով ասելով.

«Բերաններս փակում ենք սպիտակ ձուով, Աստուած արժանացնի կարմիր ձուով բաց անելու»։

Մեծ պասի առաջին օրը կոչւում է «լուացարուք սրբեցարուք»-ի և «կրծունքի» օր։ Առաջինի իմաստն այն է, որ այդ օրը բոլոր ամանեղէնները պէտք է լուանան, սրբեն և բերանքսիվայր դնեն, որպէսզի կարելի լինի պասի ընթացքում գործածել։ Երկրորդի իմաստն այն է, որ թոյլ է տրւում առաւելապէս անչափահասներին և երիտասարդներին նախորդ օրերից մնացածները—կրճոնները—ուտել, վերջացնել։

Առաւօտեան վաղ տան պառաւը մի սոխի կամ գետնախնձորի վրայ անց է կացնում եօթ հատ փետուր և երեխաներին ցոյց տալով ասում.

—Տատը գնաց չերեփը ձեռին,
Պասը եկաւ չոմբախն ուսին:

Յետոյ այդ մի փայտի վրայ ամրացնելով կախում են տան հերթիկից։ Ամէն շաբաթ մի փետուրը պոկում են երեխաները մեծ ուրախութիւնով։ Սրան տեղացիները «պասի պլոր» են կոչում։

Նոյն առաւօտեան տան մէջ մի ճլորթի են ձգում, այսինքն մի թոկ ձգում են առաստաղի մի դերանի վերայով և ծայրերը միմեանց հետ հանգուստում։ Ապա այս հանգուստած թոկի մէջ նստում են և առաջ ու յետ ճօճւում։ Փոքրերը մի քիչ ճօճուելուց յետոյ տան նանիին են բերում նստեցնում, որ «եղ անի».—Սա նստում է ճլորթու մէջ, մի քար դնում գոգը, հարսները փոխանակ ճօճելու, պտտացնում են, թոկը ոլորւում է, յետոյ բաց են թողնում, թոկի ոլորքը սկսում է քանդուել և պառաւը պտոյտ է գալիս առաջուայ հակառակ կողմը։ Այս

Digitized by Google

միջոցին նա ձգում է գոգի քարը մի կողմ, գետնին, ասելով. «Էսքան եղ ինձ»։ Իսկոյն հարսներից մինը վերցնում է նոյն քարը և կրկին նանու գիրկը դնում, որ նորից ձգելով ասում է. «Էսքան եղ էլ հարսիս» և այսպէս շարունակ բոլոր հարսերի համար, որպէսզի շատ եղ ստանան։

Այդ օրը գրեթէ ամեն տուն աղանձ (բոված ցորեն) է անում։ Ամէն մարդ ամենից առաջ աղանձ է ուտում, որ բերանը չը հոտի և շրթունքը չը ճաքի։ Պետք է նկատել, որ տանտիկինները հաշւում են, որ մի գուցէ մեծ պասի ընթացքում այնքան անգամ մախոխ չեփեն, որ զոյգ լինի, այլ անպատճառ կենտ, որպէսզի «օջախին վնաս չը գայ»։

Ուշադրութեան աւելի արժանին այն է, որ պառաւ կանայք աշխատում են այս մեծ պասի ընթացքում շարունակ վառ պահել օջախը։ Պատճառը չգիտեն, միայն ասում են, թէ այս պասի ընթացքում կրակը հանգցնելը շատ մեծ մեղք է։ Ահա և՛ մի ուրիշ մնացորդ զրադաշտական կրօնի։

Հետաքրքրական է նաև այն, որ նորահարսները կշւում են իրենց ամուսինների հետ, կանգնելով իւրաքանչիւրը կըշիռի մի նժարում, որպէսզի իմանան, թէ որն է ծանր։

Մնում է յիշատակելու միայն այն, որ շատերը գնում են միմեանց տուն շնորհաւորելու մեծ պասը և նոր խնամիները միմեանց պասուայ կերակուրներից բաղկացած «սեղան» են ուղարկում։

*Տեառնընդառաջ*.—Լօռեցիներն այս տօնին «դոռոնջ-դուռնջ» են ասում։ Երեկոյեան ժամերգութիւնից յետոյ ծերերն ու պառաւները եկեղեցուց մի մի վառած մոմ են բերում տուն և նրանով վառում ճրագները։

Ապա երեխաներն ու երիտասարդները ծղոտ են հաւաքում տան դռան առաջ և վառում։ Այս կրակը կոչւում է դոռունջ։ Երեխաներն ու երիտասարդները թռչկոտում են այդ դոռունջի վրայով «որպէսզի հարկինք չընկնին»։

«Դոռունջը» պահում, Ս. Սարգսի փոխինդի հետ խառնում և կարկուտ գալիս դէպի երկինք են փչում, որպէսզի

կարկուտը դադարի, և կամ բաղերի վրայ են շաղ տալիս, որ չխփի։

*Ծաղկազարդ*.—Ծաղկազարդին Լօռեցիները կոչում են *ծղզարդար*: Կիրակի առաւօտեան շատ վաղ զանգակները հնչեցնում են և բոլոր գիւղացիները, մանաւանդ կանայք և աղջիկները, շտապում են եկեղեցի։ Այս օր բոլոր աղջիկները անշուշտ եկեղեցի պիտի գնան իրենց մայրերի առաջնորդութեամբ. Նշանադրուածները ձեռներին *կլեպտար* կոչուած մոմն են վառած բռնում, որպէսզի յայտնի լինին, որ նշանադրուած են։

Չամուսնացած երիտասարդները գնում ուռի ծառերի ճիւղեր են բերում եկեղեցի, որ քահանան օրհնի։

Այս օրհնուած ուռը դնում են ցորենի շտեմարաններր, որ հացն առատ լինի։ Նոյն ճիւղերով հորեր են չինում և պահում, որպէսզի այդ տարի այդքան ցորենի հորեր ունենան։

Երեխաները ձեռներին *Ճեռ*-եր շրջում են գիւղում և ճըռացնելով երգում.

Ճեռ ճեռ ճըճենակ,
Ամծու հալալ պըպենակ (Թիթեռ),
Իմ հնգերը ծովն ընկաւ,
Ծովը ծիրանի դառաւ։
Ձէրէն (բազէն) էկաւ կեռ կտուց,
Հաւը թառէն թոցրուց,
Ջուխտ ձուն տակէն պըցրուց,
Տարաւ կոտրեց բլցրուց.
Մինը ինձ, մինը իմ ընկօրը.
Ով մեր փայը տայ դըլարի,
Ով որ տայ ոչ՝ սըլարի։

կամ

Ճեռ ճեռ ճըչանակ,
Ամծու դուռը բանանք,
Դուրսը շարուենք ժամ ասենք,
Ներսը պատարագ անենք։
Սև եզը մատաղ անենք,
Պոզերը չարդախ անենք,
Տակին նստենք քարգեան անենք։

Ճեռը փայտի ատամնաւոր գլան է, երկար կոթով։ Գլանի երկու կողմից 2—3 վերշոկ երկարութեան տախտակներ են անցկացրած, որոնք միանում են ուրիշ ե կու տախտակներով, գոտիներով։ Մի ուրիշ բարակ տախտակ էլ մի ծայրով յենւում է գլանի ատամների վրայ, իսկ միւս ծայրով անցնելով երկրորդ գոտիով՝ ամրանում է առաջի գոտու վրայ։ Գլանը պտտեցնելիս լեզուակը ընկնում է ատամից ատամ և սուր ձայն բարձրացնում։

*Զարչարանաց շաբաթի* ընթացքում կատարում են հետեւեալները։

*Աւագ երեքշաբթի*.—Երեկոյեան ժամերգութեան միջոցին, երբ քահանան կարդում է յիմար և իմաստուն կոյսերի առակը, տասն երեխայի եկեղեցական շապիկ են հագցնում և կանգնացնում կարդացող քահանայի շուրջը։ Ապա մի ափսէի մէջ ածում են տասն կլորած թերթիկներ, որոնցից հնգի վըրայ «իմաստուն», իսկ միւս հնգի՝ «յիմար» խօսքերն են գրուած լինում։ Աւետարանի ընթերցումից յետոյ երեխաներին առաջարկում են մի մի հատ վերցնել այդ թերթիկներից և նայած թէ ում յիմար և ում իմաստուն է դուրս գալիս, նախատում կամ գովում են, հաւատալով, որ յիրաւի, նրանք այդ գուշակութեան համեմատ են լինելու։

Եթէ կանայք մեծ պասի ընթացքում «հաւաքս» են ունենում, այսինքն մածուն կամ սեր են ունենում հաւաքած, այդ օրն անշուշտ հարում են, որովհետև «եթէ չիք չորեքշաբթի հարեն, կը չքուի», այսինքն կանհետանայ և ամբողջ տարին էլ կարագ քիչ և դժուարութեամբ կ'ստացուի։

*Աւագ չորեքշաբթի* օրին չիք չորեքշաբթի են կոչում։ Այդ օրը մի քանի ձու են ներկում «չքի աչքը հանելու համար»։

Ոմանք էլ իրենց եղունգների մէջտեղից մի որևէ բանով գիծ են քաշում, ոպէսզի իրենց «բանը կիսատ-պռատ չմնայ, ոչ էլ իրենց բաղդը ուրիշին գնայ»։

*Աւագ հինգշաբթի*.—Բոլոր գիւղացիները տօն են պահում։ Հաւատալով, որ այդ օրում տնկած ծառը, ցանած սեր-



Digitized by Google

մը բարեբեր և ուռճացող կը լինի՝ շատերը ծառեր են տըն-կում և սերմ ցանում։

Ոմանք էլ սև թելի վրայ եօթն հանգոյց են ձգում և դնում եկեղեցու պատի ճեղքուածքում, որպէսզի «թռչունները հաւերի ձագերը չփախցնեն»։

Երեկոյեան հարուստ տները մի մի բիչ կարագ են ու-ղարկում եկեղեցի՝ քահանային։ Ոտնալուայի ժամանակ աւագ քահանան օրհնուած կարագ է դնում ժամուոր տղամարդկանց մերկացրած աջ ոտքի և կանանց ձեռքերի վրայ, որ մեծ մասամբ աւագութեան կարգով ներկայանում են նրան։

Օրհնած կարագը բաժանում են ժողովրդին, որ խլխլե-լով աչքերին, ճակատին և երեսին են քսում։

Ժողովուրդը կարծում է, թէ այս գիշեր հրէաները խմո-րից Քրիստոս են շինում և չարչարում, քրիստոնեայ երեխայի բռնում սպանում են և նրա արիւնով հաց թխում, ուտում։

Հինգշաբթի գիշերը դարբինները անխօս շինում են ուր-բաթարուր—կեռ երկաթ—որ կարմիր ու կանանչ թելով*) կա-պում են երեխաների ուսերին, որպէսզի չար աչքից ազատ մնան։

Ոմանք էլ չորս մեխ են շինում և պահում մինչև կանանչ կիրակին, երբ մի ուլ են մատաղ անում և սրա ոսկորները մորթու մեջ փաթաթած թաղում են և այս մեխերը վրայից խփում, որպէսզի կարկուտ չը գայ։

Աւագ ուրբաթին Ուխի (Ցուղի) Ուրբաթ են կոչում, ծուխ չեն դնում, որովհետև Քրիստոսը խաչին է, խաչ չեն հանում՝ որովհետև Քրիստոսը խաչուած է, դրամ փոխ չեն տալիս կամ առնում՝ որովհետև Քրիստոսը դրամի համար է մատնուած։

Այս օր ևս ձու են ներկում, որպէսզի Ցուղայի աչքը տը-րաքուի։

Կանայք բաղարջ հաց են թխում տան իւրաքանչիւր անդամի համար մի հատ։ Ջատերն էլ ննջեցեալների համար

---

*) Ոմանք այս թելը գրպանում դրած տանում են եկեղեցի, «պատարագին շանց տալի»։

ևս անուն անուն թխում են և տալիս հարևաններին, աղքատներին։ Այս, ննջեցեալների անունով թխուած բաղարջները «մեռելափայ» են կոչում։

Ճաշերին ևս բանջար են եփում, որպէսզի դրա ծակող զօրութիւնը ոչնչանայ, որովհետև Քրիստոսին բանջարով են ծեծել։

*Տաւալթ օրը* շատերը ծոմ են պահում մինչև երեկոյեան ժամերգութիւնը և հաղորդւում։

Անհամբերները գրպաններում կարմիր ձուեր դրած գալիս են եկեղեցի և հէնց որ քահանան «Առէք, կերէք, այս է մարմին իմ» է ասում, սրանք սկսում են ուտել ձուն։

Ընթրիքին անշուշտ փլաւ և տապակած լոբի են լինում, միայն խէշ լոբի, այսինքն ամառը դեռ կանանչ ժամանակ քաղած և անմիջապէս չորացրած։

*Զատիկ.*—Օծունում պատարագից յետոյ ժամւորները դուրս են գալիս եկեղեցուց և շրջապատում Սմբատ թագաւորի դամբարանը, մի քանի գիւղացիներ բարձրանում են նրա ատիճանների վրայ և երգում հետևեալը, որի իւրաքանչիւր տան աւարտին բազմութիւնը ձայնակցում է երգելով.

Օրհնեալ է Աստուած, օրհնեալ է Աստուած, օրհնեալ է Աստուած,

Օրհնեալ է հայրն Աստուած, Որդին Աստուած, Հոգին Աստուած։

Մեզ աւետիք, ձեզ աւետիք,
Մեզ և ձեզ մեծ աւետիք,
Զի տէրն յարեաւ 'ի մեռելոց,
Ազատութիւն իւր գերելոց։ (Օրհնեալ է Աստուած։)

Օրհնեալ է երկինքն ու երկիր,
Սէրովբէք և Քէրովբէք,
Հրէշտակք և հրեշտակապետք,
Ռամիկք և շինականք,
Արք և կանայք, ծերք և տղայք,
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց,
Ազատութիւն ետ գերելոց,
Մեզ աւետիք, ձեզ աւետիք,
Ձեզ և մեզ մեծ աւետիք։ (Օրհնեալ է Աստուած։)

Նախահայրն գուշակեալ 'ի մարգարէից,
Անարգեալն 'ի հրէից,
Հայհոյեալն 'ի քահանայապետից,
Ըմբռնեալն 'ի փարիսեցւոց,
Մատնեալն 'ի պիղծ Յուդայից.
Խաչեալն 'ի Պիղատոսէն,
Խոցեալն 'ի զինուորէն,
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց,
Ազատութիւն ետ գերելոց,
Մեզ և ձեզ մեծ աւետիք։ (Օրհնեալ է Աստուած)։

Օրհնեալ է սուրբ Երրորդութիւն,
Վենձութիւն, բարձրութիւն,
Թագաւորաց հաստատութիւն,
Գերելոց ազատութիւն,
Հիւանդաց ազատութիւն,
Քրիստոնէից հաստատութիւն,
Մեր մեղացն թողութիւն,
Ննջեցելոց արքայութիւն,
Զի տէրն յարեաւ 'ի մեռելոց,
Ազատութիւն ետ գերելոց,
Մեզ աւետիք, ձեզ աւետիք,
Մեզ և ձեզ մեծ աւետիք։ (Օրհնեալ է Աստուած։)

Օրհնուի և պահպանուի
Ձեր դաշտն ու սարը, այծն ու ոչխարը,
Կովն ու կթանը, չուլթն ու գութանը,
Վարն ու վաստակը, գլուխն ու տակը,
Հանդն ու հանդաստանը, արօտն ու այգեստանը,
Կալն ու ջաղացը, ցորէնն ու հացը,
Ձին ու էշը, եզն ու գոմէշը,
Գոմարածն ու հորթարածը,
Տուարածն ու խոզարածը։

Այս երգից յետոյ եկեղեցու առաջ բաժանում են «Թուրքատարուկը» և «ախարը»։ «Թուրքատարուկը» հասարակութիւնից հաւաքած դրամով գնուած մի մատաղ խոզի միսն է, որ եկեղեցու դռանն եփում և մի մի քիչ տալիս են եկեղեցուց դուրս եկողներին, որ ուտեն և սրանով ցոյց տան, որ Թուրքերի վրայ յաղթանակ են տարած, արձակ համարձակ ուտելով

խողի միսը։ Իսկ «ախարը» նոյն դրամով գնած եզի կամ կովի միսն է, որ հում հում բաժանում են բոլոր գիւղացիներին։ Իսկ քահանաների և միքանի պատուաւոր մարդկանց համար սոյն մսից կերակուր են պատրաստում և հիւրասիրում եկեղեցու մօտ գտնուած տներից մինում։

Այնուհետև շատերը միմեանց այցելում են շնորհաւորելու զատիկը, միմեանց կարմիր ձու նուիրում, «կրկտանուկի» և «Թոլանուկի» խաղում, մանաւանդ անչափահասները։ Կրկտանուկին այսպէս են խաղում։ Նախ ձուերի ծայրերն ատամներին խփելով հանած ձայնից ենթադրութիւններ են անում, թէ որ ձուն աւելի կարծր է. ապա մինը ձուի ծայրը վեր ցցած բռնում է, իսկ միւսն իւր ձուի ծայրով խփում այդ ձուի ծայրին, եթէ կոտրում է, դարձնում են միւս ծայրը, որը կոտրելուց յետոյ գրաւում է ձուն, իսկ եթէ իրենն է կոտրւում հէնց առաջին խփելիս՝ այն ժամանակ սա է բռնում իւր ձուի միւս չկոտրուած ծայրը և առաջինը խփում է, եթէ կոտրեց գրաւում է, եթէ ոչ՝ այն ժամանակ սա է խփում։

«Թոլանուկի» խաղալիս էլ, մի զառիվայր տեղից հերթով գլորում են ձուեր, երբ մինի ձուն դիպչում է մի ձուի, սա գրաւում է բոլոր գլորուած ձուերը։

Այս օր գերդաստանների մեծերն ցերեկը չեն քնում, որպէսզի ամառն անձրևաջուրը կալերը չքշի։

Զատկի հետևեալ օրը, երկուշաբթի, մեռելոց է, բոլորը գնում են գերեզմանատուն իրենց հին և նոր ննջեցեալների գերեզմաններն օրհնել տալու։

Հետևեալ երեքշաբթի օրը ժողովուրդը կիրակի է պահում անուանելով «կարկտի հուքմի», որպէսզի կարկուտը ապագային չխփէ իրենց արտերին և ցանքսերը ոչնչացնէ։

Չորեքշաբթի օրն էլ «Մկան հուքմի» է, տօն են պահում, որպէսզի մկները չկտրեն արտերը։

Իսկ հինգշաբթի՝ «Ցեցի հուքմի»։ Առաւելապէս կանայք են պահում, որպէսզի ցեցը չուտէ նրանց թելերն ու բրդեայ գործուածքները։

Կրկնազատկին Լոռեցիները Կանանչ կիրակի են ասում և

այս օրն ահագին բազմութիւն ուխտ է գնում Արգուի Ս. Յոհան Օձնեցու մատուռը։

Ցինանց լիններորդ օրից սկսած մինչև համբարձում թէ կանայք և թէ տղամարդիկ արևը մայր մտնելուց յետոյ այլևս չեն աշխատում, որպէսզի «հակուր» չլինեն, այսինքն երեխաները բոլորովին կամ վատ չը տեսնեն։

Այս օրից նաև մինչև վարդավառ երկուշաբթի օրերը «կարկտի հուքմի» են պահում, որպէսզի կարկուտը չը խփէ արտերին և մնաւէ։

*Համբարձում*.—Չորեքշաբթի առաւօտեան շատ վաղ տան մեծերը գնում են դաշտերը, քաղում սիրի-սիրի, աստղփուլ ու աւելուկի թուփ և բերում դնում կաթնով լի ամանի վրայ, որպէսզի «կաթը առատ լինի»։

Ճաշից յետոյ հարս ու աղջիկ հաւաքւում են մի նորահարսի տուն և այնտեղից միասին գնում դաշտերը, ծաղիկ քաղում, բերում նոյն տանը վիճակի երգեր ասելով փնջում և շինում խաչփնջեր, ձիաւորափնջեր, սիրափնջեր։

Ապա եօթն կամ երեք աղջիկներ վերցնում են մի կճուճ և անխօս գնում եօթը տեղից ջուր և աւազ են վերցնում, բերում մի մեծ փունջ էլ մէջը ձգում և մի կարմիր շորով բերանը փակում։

Ոմանք հաւաքում են ծաղիկների վրայից առաւօտեան ցօղը և այն լցնում վիճակի կճուճի մէջ։

Երբ վիճակի կճուճը պատրաստ է լինում, աղջիկներն առնում են ձեռները և վիճակի երգեր ասելով խաղացնում, ապա տանում հանդերում թագցնում, որպէսզի եղնարած տղաները չը գտնեն, ապա թէ ոչ փրկանք կը պահանջեն։

Վիճակի կճուճը գիշերը անշուշտ դուրսը, աստղերի տակ պիտի մնայ, որպէսզի ենթարկուի աստղերի զօրութեան։

Նոյն գիշերը մի քանի աղջիկներ անքուն հսկում են, որ չարաճճի տղաները չը գան և իրենց փնջած ծաղիկները չը գողանան, այս հանգամանքից էլ յառաջացել է «ծաղիկ եմ պահում» դարձուածքը, որ ասում են երկար ժամանակ արթուն մնացողին։

Digitized by Google

Հետևեալ առաւօտ, հինգշաբթի, աղջիկները նորից հաւաքւում են և տանում փնջերը տների հերթիկներից վայր ձգում։ Տնեցիներն էլ իւղ, կարագ, բրինձ, պանիր, ձու են ուղարկում այս աղջիկների խմբին, որ այդ պաշարեղէնով ճաշ է պատրաստում և ուտում, ուրախանում, երգում, պարում։

Ճաշից յետոյ այս աղջիկները գիւղացի կանանց և տղամարդկանց բազմութեան հետ գնում են մի կալ կամ դաշտ, ուր մի փոքրիկ աղջկայ գլխին ձգում են մի քող, նստեցնում իրենց շրջանի մէջ երեսը դէպի արևելք դարձրած և վիճակը դնում նրա գիրկը։ Այս ժամանակ հանդիսականները մի մի նշան, մատանի, կոճակ, մեխ և այլն, են ձգում վիճակի մէջ։

Ապա աղջիկները վիճակի երգեր են երգում և իւրաքանչիւր երգից յետոյ վիճակի «հարսը» մի նշան է հանում։ Նըշանի տէրը երգուած վիճակից գուշակութիւններ է անում։

Վիճակի ջրով ևս գուշակութիւններ են անում, միայն ոմանք վիճակ հանելուց անմիջապէս յետոյ, ոմանք հետևեալ օրը, ուրբաթ առաւօտեան։

Վիճակի ջրից ածում են մի մատնոցի մէջ, երկու բթամատերով բռնում, ջրի մէջ մի փոքրիկ ծղոտ (ծեղ) ձգում, եթէ սա դէպի աջ պտտուի, հասկը առատ կը լինի, իսկ եթէ ձախ՝ սակաւ։

Ուրիշներն էլ նոյն ջրից ածում են մի բաժակի կամ փոքրիկ թասի մէջ, որը չորս հոգի բռնում են իրենց աջ ցուցամատերով և կամ երկու հոգի՝ իրենց չորս ցուցամատերով. ապա պայման են դնում, թէ բաժակը կամ թասը թող աջ պտտուի՝ եթէ այսինչին այս տարի նշանելու ենք, եթէ այսինչի նշանածը շուտով գալու է, եթէ այսինչը արու զաւակ է ունենալու, եթէ այսինչի հիւանդութիւնը այսինչ խաչից է և այլն։

Վերափոխումն սուրբ Աստուածածնի.—Մի առանձին բան չի կատարւում, միայն Օձնի շրջականներից ուխտ են գալիս Օձնի Ս. Աստուածածին կամ Խաչգունդ եկեղեցին։

Վարդավառ.—Այս տօնը աւելի լաւ եայլաներումն է

տօնւում բան գիւղերում։ Շաբաթ օրը հորթարածները ծաղիկներ են քաղում, փնջում և հորթերի ու կովերի վզից կապում։ Հետևեալ առաւօտ, կիրակի, այս հոտաղները ծաղկեփնջերը ձեռներին շրջում են և ծաղկափայ իւղ հաւաքում, տանում ազղակ եփում, ուտում, ուրախանում։

Հովիւներն էլ այդ կիրակի օրը մի խոյ են ներկում կարմիր գոյնով, ծաղիկներով և զանազան կտորներով զարդարում և տնէ տուն ման ածելով իւղ են հաւաքում, ուրախութիւն անում։

Աղջիկներն էլ ծաղիկներ են հաւաքում, փնջում, տնէտուն բաժանում և ծաղկափայ հաւաքում, միասին եփում, ուտում, ուրախանում։

Երբեմն էլ այս աղջիկները վիճակ են չինում և հանում ինչպէս համբարձմանը։

Լօռու դրեթէ բոլոր գիւղերից ահագին բազմութիւն ուխտ է գնում Վարդաբլըի մօտի Ս. Սարգիս ուխտատեղին։



Digitized by Google

# ԲՈՐՉԱԼՈՒԻ ԳԱՒԱՌ

### Ե. ԼԱԼԱՅԵԱՆԻ

## ԲԱՆԱՒՈՐ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

### ԱՂՕԹՔՆԵՐ *)

*Քնից զարթնելիս* [1]).

**Ա.**

*Լուսացաւ լուսն է բարին,*
*Ես հաւատամ տէր կենդանին։*
*Ուսին, ուսին, էն սուրփ կուսին,*
*Հրեղէն ծով ա, հրեղէն լուսին.*
*Մարիամը նստէր սուրփ սե-ղանին,*
*Աստծու շնորքն էր բերանին,*
*Գիրկն էր առել Աստուածոր-թին,*
*Մի խաչ սրտին, մի խաչ լերդին։*
*Անարատ կուսութիւն,*
*Մկրտութիւն, խաչելութիւն,*
*Եկեղեցու դուռն էր բաց,*
*Աստուածածին մէջը չոքած;*
*Աղօթք կանէր լուս տաճարին,*
*Ծիծն ու էրէսը վարթ ծիրանի.*
*Աղօթք կանէր իր խաչորդուն,*
*Որ ողորմի ամեն մարթուն,*
*Փրկէ ցաւից, պատուհասից,*
*Ձար փորցանքից, սասում սա-մից,*
*Ով որ իրեք բերան ասի,*
*Մեղքը ջնջուի դատաստանին։*

—

*) *Տես «Ազգ. Հանդէս»* VII-VIII IX *և* X *գրքերը*

[1]) *Այս մասը կազմելիս՝ բացի իմ անձնական հաւաքածուից, ես օգտուեցայ հետևեալ անձերի աշխատութիւններից, որոնց իմ խորին շնորհակալութիւնն եմ յայտնում։*

*Եղիշէ Մելքոնեան Երզնկեանի ժողովածուն, որ ինձ յանձնեց արժ. Եզնիկ քահանայ Երզնկեանը։ Եղիշէ Երզնկեանը ծնուել է Հաղբատում, 1855 թուին, կրթուել Ներսիսեան դպրոցում և մօտ տասն տարի ուսուցչութիւն արել Բորչալուի Օձուն, Շնող և Հաղբատ գիւղերում, ապա ցանկացել է վարդապետ ձեռնադրուել*



Digitized by Google

Բ.

Լիսը լիսով լիսացաւ,
Տիրոջ խաչը պարզեցաւ,
Աստոծ վերէն քաղցրացաւ,
Յիսուս որթին ողորմեցաւ։
Դրախտի գռները բացին,
Արթարները ծլվլացին,
Մեղաւորները խիստ լացին,
Յիսուս Փրկչին յուսացին։
Դրախտի դռները բացուե-
ցան,
Դժողքինը աւերուեցան,
Կապած հոգիքը արձակեցան,
Երգինք գետինք ուրախացան։
Տէր Աստոծ, քեզ յուսացի,
Բարով խէրով, լուսացրի,
Լիս տուր հոգուս, գործեմ բա-
րին,
Արժանանամ սրփոց շարին։

Գ.

Ծրագ, ճրագ ճշմարիտ,
Անմահական մարգարիտ,
Զարին խափան մարտիրոս,
Իմ սիրելի Քրիստոս։
Էրնէկ, էրնէկ էն տարին,
Երուսաղէմ շինեցին,
Շինեցին, կատարեցին,
Պաղածառը տնգեցին,
Արթար ծաղիկ քաղեցին։
Մի տուն ունեմ էրկաթէ,
Զորս բոլորը պողվատէ,
Սուրփ կուսը տանը քուն,
Սուրփ Սարքիսը կտերը զար-
թուն,
Կտուրը էկողը եդ դառնայ,
Դուռը էկողը փէտ դառնայ։

—

և Հաղբատի վանքի միաբան կարգուել, բայց ձեռնադրութեան հրամանն ստացած օրը մեռել է (1895 Թ. Օգոստ. 15). և թաղուել նոյն վանքի գաւթում։ Երջանկայիշատակ հանգուցեալը իւր տասնամեայ ուսուցչական պաշտօնավարութեան ընթացքում գրի է առել ժողովրդական բանաւոր գրականութեան վերաբերեալ բազմաթիւ նիւթեր, միայն վաղահաս մահը թոյլ չի տուել նրան դտելու, կարգաւորելու և հրատարակելու։ Ես քաղեցի այգ ժողովածուից ինչ որ չունէի, ունեցածներս էլ համեմատեցի նրանց հետ՝ բուն ժողովրդականը վերականգնելու համար։

Գ. Գ. Սենեքերիմ Տէր-Սահակեան, ագարակցի, Եղիշէ Զաքարեան, սանահնեցի, Աշխարհբէկ և Գապա Քալանթարեանները արդուեցի, Արմենակ Մամիկոնեան, դսեղեցի, Գեղամ Տէր-Խաչատրեան, օձնեցի և միքանի այլ անձեր իւրաքանչիւրը իւր հայրենի գիւղում հաւաքեց իմ խնդրով և ինձ համար բանաւոր գրականութեան վերաբերեալ նիւթեր։

Բացի այս անտիպ նիւթերից, ի նկատի ունեցայ նաև Կիրակոսեանի «Գաւառական հանելուկի վրայ» գրուածքը (Մեղու Հայաստանի 1860 № № 3 և 4) և Լրէն Տաշրացու «Ժողովրդական աղօթքների մասին» յօդուածը (Նոր-Դար, 1887. № № 123—127.)

Այս հրատարակածս իմ մօտ հաւաքուած նիւթերի 1/60 չեն կազմում, որովհետև չափազանց շատ էին վարիանտները ու անպէտքները։

## Քնելիս.

### Ա.

Ճրագ, ճրագ ճշմարիտ,
Արքայութիւն մարգարիտ,
Ճրագն էկաւ լիսացաւ,
Դևն ու քաջքը չքացաւ.
Ճշմարտապէս քնանամ,
Դրախտի դուռը բանամ,
Մտնեմ անմահ դրախտը,
Անթառամ ծաղիկ առանամ,
Փնջեմ դնեմ գլխիս տակը,
Ինձ պահպանի սուրբ հրեշտակը։

Քուն ըլեմ, քունս անուշ,
Հրեշտակիս հետը մուշ-մուշ,
Զարթնեմ երազս բարի,
Ինչ որ խնդրեմ կատարի։

### Բ.

Ցիսուս բերդ,
Քրիստոս պարիսպ.
Ես ի պարսպի միջին,
Պարսպի դուռը փակ,
Բալանիքը առ Քրիստոս,
Քրիստոսայ գիրքը գրկիս,
Սուրբ նշանը վրայ գլխիս,
Ոնչ վախի սիրտս փորիս,
Ոնչ երերայ լիզուս բերնիս։

### Գ.

Էս տունը տուն ա,
Քրիստոսը միջին քուն ա,
Պատերը բմբեռնած ա,
Սները չարմեխած ա,
Փիլոնը կտերը կալնիչ ա,
Գաւազանը գռան փակիչ ա,
Հրէս էկան իրեք ձիաւոր,
Մինը Ցիսուս, մինը Քրիստոս,
Մինն էլ ամեն ցաւի փրկիչ։
Ով դուռը գայ եդ դառնայ,
Ով կտուրը գայ էրկաթ դառնայ։

### Դ.

Ըհը մտայ ես գերեզման,
Գլուխս բարցի վրան,
Մարմինս տուի իմ գողնքին,
Հոգիս պահապան հրէշտակին,
Մեղայ, մեղայ, հազար, հազար,
Ես քանդեցի հոգուս տաճար,
Եղայ հազար մեղաց պատճառ,
Թէ քնիմ, թէ մեռնիմ,
Հոքիս գիրկը կաւանդեմ
Երկնաւոր Թաքաւորին,
Իմ կենարար բարերարին,
Կէս քշերին, մէջ քշերին,
Հաւախօսին, լուսադէմին։

### Ե.

Մտայ տեղս, գերեզմանս,
Անխօսիլ, անխոստովանուիլ,
Անմահ մեռել եմ,
Անգերեզման թաղուել եմ,
Անթառամ պսակին,
Լուսեղէն դրախտին,
Արժանի ըլեմ. ամէն։

### Զ.

Ցիսուսի խաչը սրտիս,
Աւետարանը բարցիս,
Ըհը մտայ գերեզման,
Իմ Տէրը Ցիսուս աննման,

Հոգիս քեզ ամանաթ,
Մարմինս գողնքին ամանաթ,
Հոգիս Գաբրիէլ հրեշտակին,
Թող յանձնէ Յիսուս Փրկչին։

### Ծննդկանի.

#### Ա.

Հրէս էկան իրեք, իրեք,
Իրեքն էլ բոզ ձիաւոր,
Մինը Յիսուս, մինը Քրիստոս,
Մինն էլ Մարիամ Աստուածամէր,
Ելան սարով, իջան ձորով,
Բիւր ու հազար հրեշտակով,
Մեր տէրը ասաւ, ձեր կերթաք։
—Դուռը հիւանդին,
Երթիկը տղոցկանին,
Բալնիք թաղենք վերև բարձին,
Որ չվախենայ սիրտը փորին։

#### Բ.

Էս տունը էրկաթէ,
Պատերը պողվատէ,
Մարիամը մէջը քուն ա,
Սուրփ Գրիգորը զարթուն ա,
Երթանք սարով, գանք ձորով,
Քառասուն էրկու հրեշտակով,
Հրէս էկան իրեք, իրեք,
Իրեքն էլ բոզ ձիաւոր,
Մինը Յիսուս, մինը Քրիստոս.
Քրիստոսի ձեռին կար իրեք բևեռ,
Մինը զարկեց բերանը գէլ գազանին,
Մինը աչքը սև սատանին,
Մինը տարաւ դուռը ծննդկանին,
Զզարհուրի սիրտը փորին։
Մարիամ, ընչի կթակես թամբաքին,
Երեսին, վեր ներքին երեսին։

### Աստուածածնի աղօթք.

#### Ա.

Աստուածածին կոյս Մարիամ,
Հոքով մարմնով լոյս, Մարիամ,
Լուսեղէն կամար էս կապել,
Հոքիս քեզ համար եմ պահել։
Դուն ինձ տուր իշխանութին,
Իշխանութին, կարողութին.
Գնամ գործեմ շատ բարութին,
Հոքիս տանես արքայութին։
Արքայութեան դռները բաց,
Քու ծառայիդ արա իմաց,
Էլ ճար չունեմ աղաք գնալու,
Մազէ կարմունջն անցկենալու,
Յիսուս որթուդ ջուղաբ տալու։

#### Բ.

Աստուածամէր լուսով կամար,
Յիսուս որթուդ խաթրի համար,
Իմ չար մեղքիցը ինձի դարցրու,
Հոքիս դրախտին արժանացրու,
Չար մեղքերս տար կորցրու,
Քու գիրեցածը սվորցրու,
Լուս հոգուցդ ինձ լուս տու,
Հաստատ հաւատ, հաստատ յուս տու.

Digitized by Google

*Սուրփ կաթը Մարիամ կուսին,*
*Անգին արինը Տէր Յիսուսին,*
*Ծաղիկ գառնան թող փնջուին,*
*Բալքի մեղքերս ջնջուին։*

## ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԳԵՐ

—

## ՕՐՕՐՈՑԻ ԵՐԳԵՐ.

### Օրսագիւլ.

*Նանա, նանա, օրսագիւլ,*
*Օրդ աւելնայ, օրսագիւլ.*
*Մենձատերև թաթաշոր,*
*Մանրատերև ոտաշոր,*
*Մանրատերև փափկոց ա,*
*Լէնատերև ծածկոց ա։*
*Քամին փչի օրօրի,*
*Լիսինը վրէդ բոլորի,*
*Քամին կգայ ժաժ կտայ,*
*Գախրէն կգայ ծիծ կտայ,*
*Ջիգեար չունի քիչ կտայ,*
*Ոտով կտայ թոլ կանի,*
*Մօրդ լացը բոլ կանի։*

### Նանիկ.

#### Ա.

*Նանի, նանի, բալայ ջան,*
*Քունդ տանի, բալայ ջան,*
*Նանա, նանա, նանով ըլես,*
*Ապրես ու սաղ ջանով ըլես։*
*Իմ ըրեխէն քուն ունի,*
*Սողոմաքաշ տուն ունի,*
*Իմ ըրեխի քունը տանի,*
*Նրա դուշմանին շունը տանի։*
*Քանի ջուրը ալին տայ,*
*Քու դուշմանին քարին տայ.*
*Քանի ջուրը փրփրի,*
*Քու դուշմանին քրքրի։*
*Էս իմ բալէն գնանայ,*
*Անուշ քնով քընանայ,*
*Կոկոմ ծիծս կը մամայ,*
*Բալքայ մէրը դինջանայ։*
*Նանա, նանա, բալայ ջան,*
*Նանա, դարդ ու բալայ ջան,*
*Նանա, նանը քեզ ղուրբան,*
*Նանա, ջանս քեզ ղուրբան։*

#### Բ.

*Քուն դնեմ, քնի իմ որթին,*
*Ծածկեմ քրտնի իմ որթին,*
*Երփ որ էրէսը բաց անեմ,*
*Վարթի պէս փռուի իմ որ-*
*թին։*
*Գուլի, գուլին գալիս ա,*
*Թաթիդ, տոտիդ տալիս ա,*
*Էս իմ բալէն խալիս ա,*
*Ծիծ ա ուզմ, լալիս ա։*
*Անուշ, բալին ես ղուրբան,*
*Քաղցր բալին ես ղուրբան.*
*Նախշուն էրէսին մեռնիմ,*
*Սիրուն թաթերին մեռնիմ։*
*Նանա, իմ թագաւոր ջան,*
*Ոսկէ քանքուլաւոր ջան,*
*Նանա, նանդ քեզ մատաղ,*
*Նանա, հէրդ քեզ հոտաղ։*

## «ԴԱՆԴԱՆ»-ՆԵՐ

#### Ա.

*Դան, դան, դան, որթի,*
*Իմ Ըրեւանայ խան, որթի,*
*Թաւրզու թիւթայ, որթի,*
*Շամախու փարչայ, որթի։*

Դան, դան, դան բալայ,
Ես քի մատաղ, ջան բալայ,
Մի հատիկ էս, դու մին ես,
Առքով մի օլքի գին ես։
Դան, դան, դան արա,
Դուս եկ ու մէյդան արա,
Գեանջէն կեր ու խում արա,
Քաղցր շարբաթ կում արա։
Ալ խնձորի էս տղէն,
Շէկ շորի էս տղէն,
Կանանչ թզնի էս տղէն,
Կարմիր նռնի էս տղէն։
Ըսօր էլաւ վաղ էլաւ,
Վարթի թփին շաղ էլաւ,
Ծնգան դրի դան արի,
Բիճ գառի պէս խաղ էլաւ։
Դան, դան, դան արա,
Օր օրի վրայ ջան արա,
Ըրեւան մէյդան արա,
Իգիթութիւնդ նշան արա։

Բ.

Դան, դան, դան կանեմ,
Օրը մի շահու բան կանեմ,
Էն էլ կտամ շամամի,
Մինչի տարիդ թամամի։
Ես քու չարը կտանեմ,
Կշլակեմ ժամը կտանեմ,
Կոկլիկ կլէպտար կվառեմ,
Մի նշանած կճարեմ։
Դան, դան, դան դանի,
Կաբէդ կարեմ ժանգառի,
Քոբէն գնեմ ծիրանի,
Կոճակները գիլանի։
Դան, դան, դան արա,
Օր օրի վրայ ջան արա,
Դուս գնայ մէյդան արա,
Իգիթ տղի նշան արա։
Դան, դան, դան չունիս,
Էլոնց տանը բան չունիս,
Քարով կտան ջան չունիս,
Դու լաց ըլելու նան չունիս։

Գ.

Դան, դան, դիարն ես,
Կանաչ բաղի խիարն ես,
Փոթոլումը փթաթած ես,
Վաղան տակին պահած ես։
Դան, դան, դնգոց ես,
Մեղրով լիքը քթոց ես,
Մատի չափ մատնոց ես,
Խնգան չափ սիրադեղ ես։

Դ.

Հա, դան, հա դան, իմ ըրեխէս,
Բուրջ ու բագան, իմ ըրեխէս,
Հա դան, հա դան, իմ ըրեխէս,
Ոսկու մադան իմ ըրեխէս։
Հա, դան, հա դան, իմ ըրեխէս,
Գեանջու սուլթան, իմ ըրեխէս,
Քաղքի բաթան, իմ ըրեխէս,
Ջանիս վաթան, իմ ըրեխէս։
Շարմաղ սուրու, իմ ըրեխէս,
Կարմիր նախիր, իմ ըրեխէս,
Ջիու իլխայ, իմ ըրեխէս,
Գոմշի գեալլահ, իմ ըրեխէս։
Դաշտումը դարթա, իմ ըրեխէս,
Սարումը ըլաչուխ, իմ ըրեխէս,
Դաշտումը ըմարաթ, իմ ըրեխէս,
Սարումը չադիր, իմ ըրեխէս։
Ղուդրաթ դանայ իմ ըրեխէս,
Ջուստ վենձանայ իմ ըրեխէս,
Մամին հանի իմ ըրեխէս,
Նանը ուրխանայ, իմ ըրեխէս։

Digitized by Google

Ե.

Դան, դան, դան որթի,
Իմ Ըրևանայ խան որթի,
Թաւրզու թաւթայ որթի,
Շամախու փարչայ որթի։
Թաւրզու թաւթայ իմ որթի,
Ծալած փարչայ իմ որթի,
Շարմաղ սուրու իմ որթի,
Կարմիր նախիր իմ որթի։
Դան, դան, դան արա,
Դուսիլ ու մէյդան արա,
Քաղցր շարբաթ կում արա,
Գեանջէն կեր ու խում արա։
Դան, դան, դան բալայ,
Ես քի մատաղ, ջան բալայ,
Մօրդ համար դու մին ես,
Առքով մի օլքի գին ես։

Զ.

Դան, դան, գիարն ես,
Կանանչ բաղի խիարն ես,
Շքարըմը շղաղածն ես,
Վազան տակին պահածն ես,
Մամի ջիբի խուրմէն ես,
Դէդի աչքի սուրմեն ես,
Քեզ ով պոկեց էբեր մեզ,
Սիրուն գուլգազ, գովեմ քեզ։

Է.

Ալ խնձորի, իմ տղէն,
Շէգ չլորի, իմ տղէն,
Կանանչ թզնի, իմ տղէն,
Կարմիր նռնի, իմ տղէն։
Մեռնիմ քու արարողիդ,
Բարակ թաւկար անողիգ,
Որ ճուղ արաւ, ճեղ չարաւ,
Եթիմ բալիս խեղճ չարաւ։

Ը.

Դան, դան, դանեցի,
Բերանդ ա գեղեցի,
Տուն մտայ համբուրեցի,
Դուս էկայ բարովեցի,
Վարթաջրով ջրեցի,
Փունջ մանիշակ փռեցի,
Հայ էկաւ բարով տուի,
Թուրք էկաւ քարով տուի,
Ով քեզ սիրէ—սիրադեղ,
Ով քեզ ատէ—մահադեղ։

Թ.

Դան, դան, դնդոց ես,
Միղրով լիքը քթոց ես,
Սառն աղբրի շւաքն ես,
Ալ ոչխարի դմակն ես,
Մութ գիշերուայ ճրաքն ես,
Դրնդէզի կրակն ես,
Պառաւների մանիչն ես,
Աղջկերանց չամիչն ես,
Ծառի ծէրի ծերատն ես,
Աղջկերանց կերածն ես,
Ծառի ծէրի ծուղէն ես,
Մեղրատանձի ճուղէն ես,
Ծառի ծէրի վարթն ես,
Աղջկերանց մարթն ես։

Ժ.

Դան, դան, դան կասեմ,
Իմ ըրէխին ջան կասեմ.
Դան, դան, դնդոցը,
Իմ էրէխի թնդոցը,
Մեղրով լիքը քթոցը,
Մեծ մոնթերի փուռվառը,
Իրիցների ժամհարը,

Դիմմն հմ դան քե ղուրբան,
Պառաւ նանը քի ղուրբան։

ԺԱ.

Դան, դան, դիարն ես,
Կանանչ բաղի խիարն ես,
Փոթոլումը փաթաթած ես,
Վազան տակին պահած ես։
Դան, դան, դնգոց ես,
Մեղրով լիքը քթոց ես,
Մատի չափ մատնոց ես,
Խնկան չափ սիրադեղ ես։

ԺԲ.

Դան, դան, դան արած,
Քաղքիցն էկած, բեզարած,
Փէշերքդ ճամբուկ արած,
Խուրջինդ էլ քոշմ արած։
Քու խուրջինը չալ պտի,
Բողչէդ ծալուէծալ պտի,
Բաց չի անես, որ տենան,
Որ նիաթով քար կանեն։

ԺԳ.

Դան, դանի, դան, որթի,
Ես քի մատաղ, ջան որթի,
Քու տունդ սարին ըլի,
Դուռդ հովհարին ըլի,
Կովը սարին բռանչի,
Գուքուն ծառին կը կանչի,
Ոտնէ ոտը ծառ կըլես,
Ծուղկնէ ճուղկը թառ կըլես,
Օրը պլէտրիկ արևով,
Տարը կանաչ տերևով,
Թող խնդան ու ուրխանան,
Էդ քու աղիզ ալևով,
Թող ուրխանան, բաց ըլին,
Դուշմաննիդ լաց ըլին։

ԺԴ.

Դան, գան, դան էլաւ,
Էս ինչ թաւուր բան էլաւ,
Քուլլու ալամ ջամ էլաւ,
Բալէս ուրիշ նշան էլաւ։
Էսօր էլաւ վաղ էլաւ,
Վարթի թփին շաղ էլաւ,
Մնգանս դրի դան արի,
Բիճ գառի պէս խաղ էլաւ։
Ջրի ափան էս տղէն,
Ոչխրաթափան էս տղէն,
Ախպրի ափան էս տղէն,
Գառան թափան էս տղէն։
Ախպրի լուլայ էս տղէն,
Թոփի գուլլայ էս տղէն,
Սուփրի մազայ էս տղէն,
Թաւատ թազայ էս տղէն։
Իմ ըրէխէն նախշած ա,
Աստծու իրան բախշած ա։

ԺԵ.

Դան, դան, դան էս տղէն,
Անբանի բան էս տղէն,
Խիստ աննման էս տղէն,
Անջանի ջան էս տղէն։
Ես քի մատաղ որ դու կաս,
Ուրախ օրով խնդմնդաս,
Հրսանքումը թրմփաս,
Ոնչ նեղանաս, ոնչ տընքաս։
Քու տւողը շէն կէնայ,
Ասղի կուրծը լէն կէնայ,
Խայաթին երգէն կէնայ,
Ինքը կարի դէն կէնայ։
Անուշ բալին ես ղուրբան,
Քաղցր բալին ես ղուրբան,
Նախշուն աչերին մեռնիմ,
Սիրուն թաթերին մեռնիմ։

### ԺԶ.

Դան, դան, դնգոցը,
Թաղցր ա բալիս ռընքոցը,
Դան, դան, դնգոցը,
Իմ ըրէխի թնգոցը։

Դան, դան, դընգոցը,
Մեղրով լիքը քթոցը,
Դան, դան, դընդոցը,
Դիրէկան ա ճընգոցը։

Դան, դան, դան կասեմ,
Իմ ըրէխին ջան կասեմ,
Դան, դանը քե ղուրբան,
Պառաւ նանը քե ղուրբան։

### ԺԷ.

Դան, դան, էսօր դան,
Էքուց թամամ տարեկան,
Դան, դան, էքուց դան,
Էլօր քի պարնութին տան։

Դան, դան, էլօր դան,
Գալօր թամամ Դաւիթ խան,
Դան, դան, սիրուն խան,
Թիֆլիսը քեզ դիւան խան։

Դան, դան, թամամ խան,
Արդանուել ու Շիրախան,
Դան, դան, Նարդիւան,
Շաքիզը քեզ Շիրվանխան։

### ԺԸ.

Աստուածածնի մանանայ,
Մարդ կայ մարդի նման ա,
Ում տանը որ Արամ չկայ,
Եարաբ ինչի՞ նման ա։

Իմ Արամը սաղ ըլի,
Մեր խոզի պէս չաղ ըլի։
Իմ Արամը նուշ ըլի,
Զարի աչքին փուշ ըլի,
Իմ Արամը նախշած ա,
Աստու իրան բախշած ա.
Աղեմ, մաղեմ իմ ըրեխին,
Դուշմանը թաղեմ իմ ըրեխին։

### ԺԹ.

Աղջիկ ունեմ հունարի,
Գլխին ունի ջունարի.
Աղջիկ ունեմ հունարի,
Բոյն սալբ ու չինարի։

Աղջիկ ունեմ հունարի,
Տալ չեմ հազար թումանի,
Գլխին ինչքան մազ ունի,
Էնքան իլթիմազ ունի։

Բուրդ բերէք բաժինք անի,
Ուղտ բերէք բարցի տանի,
Գեղով կգան խնամի,
Տալ չեմ աղջիկս տանի։

Որ խնամին քեզ տանի,
Բաս քու մէրն ի՞նչ անի։
Ով կարայ որ քեզ տանի,
Իր մօր ձեռից դուս հանի։

### Ի.

Դան, դան, դան, աղջիկ
Ջանս քեզ ղուրբան, աղջիկ,
Ուզողներդ գան, աղջիկ,
Բերեն քեզ նըշան, աղջիկ։

Դան, դան, դան, աղջիկ,
Մուշտարիքդ գան, աղջիկ,
Ծամփին իրար տան, աղջիկ,
Եդ դառնան ու գնան, աղջիկ։

Իմ աղջիկը կռնել ա,
Վարդը ձեռին բռնել ա,
Ամեն ծառին մի փշատ
Իմ աղջկայ ումրը շատ։

Իմ աղջիկս բշարող ա,
Մանր ուլունք շարող ա,

Թութայ շաբիկ կարող ա,
Իգիթ տղայ ճարող ա։
Իմ աղջիկս լաւ աղջիկ,
Հաքին ալ հալաւ աղջիկ,
Հնէվան որ ձէն գցի,
Ղապաղից գոմէշը կապ կտրի։

## ԻԱ։

Դան հա դան, դանդանի,
Կաբէգ կարեմ ժանգաուի,
Քոբէն դնեմ ծիրանի,
Կոճակները գիլանի։
Դան, դան, դիարն ես,
Կանաչ բաղի խիարն ես,
Սուսամբարով կլօլած ես,
Վազան տակին պահած ես։
Անուշ բալին ես ղուրբան,
Քաղցր բալին ես ղուրբան,
Նախշուն բալին ես մեռնիմ,
Սիրուն թաթերին ես մեռնիմ։
Ոսկէ սուրու քի մեռնիմ,
Կլկլան կուլայ քի մեռնիմ,
Սուփրի մապայ քի մեռնիմ,
Թաւար բազայ քի մեռնիմ։
Ջան ղալամքեար քի մեռ-
նիմ,
Թայ ջուհարդար քի մեռնիմ,
Շուշայ բապար քի մեռնիմ,
Սուփրի մազայ քի մեռնիմ։

## ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԳԵՐ

Ով որ իմ արևս ունի,
Օխտը խախալ ցաւս ունի։
(Երբ մէկը միւսի գիմաց
կանգնելով զրկում է նրան ա-
րևի ճառագայթներից).

—

Ըղունգ, ըղունգ ըտի կաց,
Աթամ դուն վկայ կաց,
Եփոք հարցնեմ, հազիր կաց։
(Կտրած եղունգը պահելիս)։

—

Մուկիկ, մուկիկ, այ մու-
կիկ,
Առ քու էրկաթէ ատամը,
Ինձի իմ օսկոռէ ատամը։
(Ասում են երբ ատամը վայր
է ընկնում և դնում են թարե-
քին կամ պատի խոռոջում)։

—

Դմբրի, դմբրի, գմբրակալի,
Տակիս մի նահալի,
Ջիմ գնացին շան հրսանիք,
Ես մնացի տան բլանիք։
(Ասում են երբ ոտները
թմրում են)։

—

Մահը մոխս է,
Ահը ճոխս է։
(Երբ ականջը ձայն է հա-
նում կամ, ինչպէս իրենք են
ասում, երբ «անդաճը ձէն ա
ածմ»)։

—

Ծեղ ես ծալուի,
Ցող ես հալուի։
(Երբ աչքը մի բան է ընկ-
նում։

—

Աղչի դու ոչ ըլես,
Կատմների փայ ըլես,
Աղամանին աղ ցանես,
Օխտը խախալ ցաւս ունես։
(Երբ ուզում են մէկին տալ
իրենց հիւանդութիւնը)։

—

Ստանայ, ստանայ,
Ոտիդ տակին մի բան կայ,

Դուս բի կէսը ինձ,
Դուս բի կէսը քեզ։
կամ
Ստանայ, ստանայ,
Մի զադ եմ կորցրել,
Դուս բի․ կէսը քի․ կէսը ինձ։
(Երբ մի բան են կորցրել, աշխատում են այս խօսքերով խաբել սատանին, որ չպահի)։

—

Բրինձ, բրինձ,
Աղա բրինձ,
Ջանիս տակին,
Ջալ մատանիք,
Իլլու, բիլլու,
Կտրտոր մատիկ։
(Երբ մի բան վիճակ են ձըգում)։

—

Ձերայ, ձերայ, սիրուն ձերայ,
Ման ես գալի ճուտի ծէրայ,
Վերի թաղէն կուտ կտամ,
Ներքի թաղին ճուտ կտամ։
(Երբ բազէն գալիս է՝ ասում են, որ իրենց թաղից չտանէ, յիշելով, որ իրենց թաղին կուտ կը տան և ոչ ճուտ)։

—

Ականն, ականն, ակն ա կովին,
Ջալ, չալ աչքեր պախրի կովին,
Իմը ականեմ աղաքս անեմ,
Հնգերներինս հետը տանեմ,
կամ՝
Թուրքերինը քարերն անեմ։
(Ասում է տաւարածը դաշտում անասունները հաշուելիս)։

—

Անա խանում, Անա խանում,
Դու սաս խի՞ ես պոզերդ հանում։
(Խխունջ տեսնելիս)։

—

Ալիր մաղի, ալիր մաղի,
Մաղի, մաղի,
Ալիր մաղի,
Ինձ հետ արի,
Ծաղիկ քաղի։
(Թիթեռի թևից բռնում են և խաղալով հետը՝ ասում։)

—

Թու․ իմ ախպօր ոտը կոտըրի ոչ,
Իմ ոտը կոտրի ոչ, չալ ակռաւի ոտը կոտրի։
(Թռչելիս)։

—

Գերան պարոն, գերան պարոն,
Պարոնն սաստ, թուր ու թուանքով կտամ, եդ դառ։
(Գերանի վրայ ման գալիս)։

—

Թափն արա, հա թափն արա,
Տանձ ու խնձոր գօքս արա։
(Ասում են ճլորթի խաղալիս, երբ թոկը պտղատու ծառի ճիւղից է կախած)։

—

Ծորի,ճորի, ճամփորթեմ,
Օխտը եզը կը մորթեմ,
Դանակ չունեմ, որ մորթեմ։
(Երբ մէկը միւսի ունեցածից ուզում է.)

—

Քեռի,
Արի գնանք զկեռի,
Չկեռն ունենք, զկռի տանք,

Բամբքու ձորին կուխ տանք,
Որ քացի տամ այ քեռի,
Բուցափ արա ու մեռի։
(Ձկեռ ուտելիս).

—

Սինդրիկ ու սխորիկ,
Հարսն ու աղջիկ կտորիք։
(Ասում են տանցիք, երբ մինն ուշանում է։)

—

Ծիտը թռչի,
Գորտը կպչի։
կամ
Վիլայ, վիլայ,
Հնգերս գայ. (մի քանի անգամ).
(Երբ մէկին բանի են ուղարկում)։

—

Ով որ խօսի, խոստովանուի,
Ոչխլն ուտի ղրղըճալի.
Ով որ խօսի, խոստովանուի,
Ջաղացպանի կոնտին տանի։
(Երբ ուզում են շատախօսին լռեցնել)։

—

Ով որ չգայ, չիք չքայ,
Պատիցը կպչի, պոկ չը գայ։
(Ջլտողին են ասում)։

—

Դիլ, դիլ, հրսանիք,
Հարսի մատին մտանիք,
Դէ դուս բերէք, որ տանենք,
Փոխան չունի, ինչ անենք։
(Ասում են տիկնանուկի խաղալիս)։

—

Պսակ, պսակ,
Տիկնի պսակ,
Արջի պօլոլ,
Դեղին դմակ,
Կուժն ու կուլէն,
Գլխիդ կոտրեմ,
Տէ՞ր ես, թէ չէ։
(Երեխաները ասում են իրենց տիկնիկները իրար հետ պսակելիս)։

—

Պառաւը, պառաւը ծոցն արա,
Դունչը թխոցն արա։
(Ասում են ուշ ղարթնողին կամ ուշ հագնուողին։

---

Երբեմն աղջիկները միատեղ ժողովուած դէպքում զուարճութեան համար սկսում են հետեւեալ աղօթքի ձեւով յօրինուած խաղը խաղալ.

Աղջիկներից ընքոյշը.—Աղջի ջան, գլուխս շատ գէշ ցաւում է։

Նրան ծաղրող մէկը.—Ախ եարաբ իմանամ ո՞վ աչքը տուեց։

Մէկ ուրիշ կատակասէրը.—Աղջի ջան, արի աղօթեմ, որ անց կենայ, որ նրանից յետոյ էլ ոչ ով չը կարենայ քեզ աչքը տալ։

— Աղօթեմ աղ գողանաս,
Բոշիցը մաղ գողանաս,

Ջուխտ գաթէն սաղ գողանաս,
Էն էլ ուտես՝ ոչ սղանաս։
Գնաս, գնաս, փորխող,
Կերածդ ըլի լխնաֆող,
Ցածր պատից պատրաստ կենաս,
Բարձր պատից դվեր ընկնես,
Բարակ ջրից պատրաստ կենաս,
Վարար ջրի մէջն ընկնես,
Քանի ջուրը ալին տայ,
Քեզ վեր ունի քարին տայ,
Քանի ջուրը փրփրի,
Քեզ վեր ունի քրքրի,
Քանի ջուրը ափին տայ,
Քեզ վեր ունի թփին տայ։

*
* *

Քա, խնամի ջան, էկել եմ էկել *).
Ա, խնամի ջան, ո՞ւր ես էկել.
Քա, խնամի ջան, աղջիկդ ուզող.
Ա, խնամի ջան, աղջիկ չունեմ.
Քա, խնամի ջան, տեհել եմ տեհել.
Ա, խնամի ջան, ո՞րդի ես տեհել.
Քա, խնամի ջան խանբաղումը.
Ա, խնամի ջան, գլխին ի՞նչ կար.
Քա, խնամի ջան, չալ քլաղայ.
Ա, խնամի ջան, ոտին ի՞նչ կար.
Քա, խնամի ջան, ծուղով մաշիկ.
Ա, խնամի ջան, մէջքին ի՞նչ կար.
Քա, խնամի ջան, բուզմայ գոտիկ։
Ա, խնամի ջան, ի՞նչ ես բերել.
Քա, խնամի ջան, սէլով սեղան։
Ա, խնամի ջան, ո՞նց ես եկել.
Քա, խնամի ջան, պռատ գաւով, պոչատ հաւով։

—

Հեքիաթ, հեքիաթ էս պապս,
Ղաշղայ քուռակը տակս,
Ջիգի հարսը քամակս,
Զալ կրկէնին աղաքս,
Զափ դնեմ չկէլ Շուլավէր,
Ընդի տէհայ մի ջաղաց,

*) Ասում են փոքրիկ աղջիկները «տիկին» խաղալիս։

Digitized by Google

Տակին կար մի կտաղած,
Լինգը վեկալաւ կոճերս աղաց,
Թուրը վեկալաւ մէջքս խաղաց,
Էլ պարկով, ասաւ, չը գաս էս ջաղաց։
Ջաղացի գլխին օխտը բուն,
Օխտը բնին մի բմբուլ,
Բմբուլ, բմբուլ, դուռը բաց,
Սոսին էկաւ գլխաբաց,
Մեր հաւը ունէր կեռ կտուց,
Ի՞նչ ուտէր, չիմ ձուի դեղնուց,
Սոսին գնաց մի օր հունձ,
Բերուց մի լաւ ծաղկէ փունջ։

## ՍԻՐՈՅ ԵՐԳԵՐ

Լիմնեակ գիշեր, տափակ կտուր, դաշ-ղարամալլու,
Բոլոր լիմնեակ վրէն տէփուր, դաշ-ղարամալլու,
Սիրուն հարսը ալիր մաղէր, դաշ-ղարամալլու,
Ջուխտ շամամը ծոցին խաղէր, դաշ-ղարամալլու,
Սիրուն հարսը ալիր մաղէր, դաշ-ղարամալլու,
Իր տեսնողի ուշքը շաղէր, դաշ-ղարամալլու,
Սիրուն հարսը ալիր մաղէր, դաշ-ղարամալլու,
Օսալ մարթի գլուխը թաղէր, դաշ-ղարամալլու,
Սիրուն հարսը ալիր մաղէր, դաշ-ղարամալլու,
Ուրախ երգէր ու ծիծաղէր, դաշ-ղարամալլու,
Սիրուն հարսը ալիր մաղէր, դաշ-ղարամալլու,
Ծծերն ի վեր վարսը շաղէր, դաշ-ղարամալլու։

### Սէրով զրույց

— Ա՛ չալ ախչիկ, ո՞ւր ես գնում,
— Ա՛ պալ տղայ, բաղն եմ գնում.
— Ա՛ չալ ախչիկ, բաղն ո՞ւր ես գնում,
— Ա՛ պալ տղայ, վարթի եմ գնում.
— Ա՛ չալ ախչիկ, վարթն ի՞նչ ես անում,
— Ա՛ պալ տղայ, եարիս եմ ղրգում,
— Ա՛ չալ ախչիկ, քու եարը մեռնի.
— Ա՛ պալ տղայ, քու լեզուն լալկի.
— Ա՛ չալ ախչիկ, քու եարը կորչի,
— Ա՛ պալ տղայ, քու լիզուն ուռչի.

— Ա՛ չալ աղջիկ, ես քեզ կուզեմ,
— Ա՛ պալ տղայ, ես քեզ չեմ առնի,
— Ա՛ չալ ախչիկ, զոռով կը տանեմ,
— Ա՛ պալ տղայ, երկրիցս կը կորչեմ,
— Ա՛ չալ ախչիկ, կը գամ կը գտնեմ։
— Ա՛ պալ տղայ, ձուգը կդառնամ ջուրը կընգնեմ,
— Ա՛ չալ ախչիկ, թոռչի կդառնամ ես քեզ կբռնեմ,
— Ա՛ պալ տղայ, ծիտ կդառնամ երկինք կթռչեմ.
— Ա՛ չալ ախչիկ, բազէ կը գառնամ եղնիցդ կընգնեմ,
— Ա՛ պալ տղայ, էրինջ կդառնամ նախիրը կմտնեմ,
— Ա՛ չալ ախչիկ, չոմգառ կդառնամ քեզ կառնեմ,
— Ա՛ պալ տղայ, ջուր կդառնամ կվազեմ,
— Ա՛ չալ ախչիկ, փարչայ կը դառնամ որ բռնեմ,
— Ա՛ պալ տղայ, ասեղ կդառնամ թութը կմտնեմ,
— Ա՛ չալ ախչիկ, խայաթի կդառնամ կուրծքը կմտնեմ,
— Ա՛ պալ տղայ, գառը կդառնամ սուրուն կմտնեմ,
— Ա՛ չալ ախչիկ, չոբան կդառնամ քեզ կառնեմ,
— Ա՛ պալ տղայ,՝ վարթ կդառնամ բաղը կնստեմ,
— Ա՛ չալ ախչիկ, բլբուլ կդառնամ վրէդ կերգեմ,
— Ա՛ պալ տղայ, կորեկ կդառնամ գետնին կփռվեմ,
— Ա՛ չալ ախչիկ, թուխսը կդառնամ քեզ վեր կքաղեմ,
— Ա՛ պալ տղայ, քարէծ կդառնամ քարը կը մտնեմ,
— Ա՛ չալ աղջիկ, ֆօրսկան կդառնամ քեզ կգտնեմ։

## Երկու սիրահարը

Երիտասարդը.—Ա՛յ հայի ախչիկ, ա՛յ շահի ախչիկ,
Հէյրան եմ քեզի, ղուրբան եմ քեզի,
Տանէն դուրս արի, քու բոյդ տեսնեմ։
Աղջիկը.—Ա՛յ հայի տղայ, ա՛յ շահի տղայ,
Բա բաղ չե՞ս մտել, չինար չե՞ս տեսել։
Եր. Ա՛ հայի ախչիկ, ա՛յ շահի ախչիկ,
Դու մին դուս արի, էրէսդ տեսնեմ։
Աղ. Ա՛ հայի տղայ, ա՛յ շահի տղայ,
Քարվան չե՞ս գնացել, լիմնեակ չե՞ս տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, ա՛յ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, ճակատդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, ա՛յ շահի տղայ,
Շհար չե՞ս գնացել, մէյդան չե՞ս տեսել։

Digitized by Google

Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, աչքերդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Երգինք չեմ նայել, աստղեր չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, ունքերդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Երգինք չեմ նայել, լուսին չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն գուս արի ծամերդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Զափար չեմ կոխել, օձեր չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն գուս արի, թշերդ տեսնեմ,
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Բա բաղ չեմ մտել, ալ խնձոր չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, պռօշդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Նուռը չեմ կերել, մէջը չեմ տեհել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, ատամներդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Վզնոց չեմ առել, սադափ չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, քու վիզդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Բա գեօլ չեմ գնացել, օրդակ չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, դօշդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Բա սար չեմ գնացել, ձնդիր չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի ծծերդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Բոստան չեմ մտել, շամամ չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, կռներդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Բա բաղ չեմ մտել, շեեր չեմ տեսել։

Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, մէջքդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Բա փարթ չեմ քաղել, դաստայ չեմ կապել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, ճռներդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Ժամ չեմ մտել, կերոն չեմ տեսել։
Եր. Ա՛յ հայի ախչիկ, այ շահի ախչիկ,
Տանէն դուս արի, ոտներդ տեսնեմ։
Աղ. Ա՛յ հայի տղայ, այ շահի տղայ,
Կաքաւ չեմ բռնել, տոտեր չեմ տեսել։

---

## ՎԻՃԱԿԻ ԵՐԳԵՐ

Ալխուր մազեմ ձին կգայ,
Եգոր աղէն Թրք կգայ,
Ամեն ծառին մի փշատ՝
Սիրած եարիս ումբրը շատ։

Ալ քաթիբէս կարել եմ,
Թաս կոճակը շարել եմ,
Դէ գնա կորիր, գէշ տղայ,
Քանց քեզ լաւը ճարել եմ։

Ախչի, ախչի, ալ ախչի,
Աչքերդ չալ, չալ, ախչի,
Էրնէկ էն օրին կտամ,
Դու մեր տանը տալ, ախչի։

Ախպէր, իմ բաղն անուշ ա,
Մէջը քաղցր եմիշ ա,
Ախպէր, բէդամաղ չլես,
Եարս քեզանէ անուշ ա։

Ախպրի ղրաղը քարքարոտ,
Քաթան շարիքս ծռծառուտ.
Արի Թուշդ մին պաչեմ,
Ցորթերդ տանեմ արօտ։

Ամբել ա ձին չի գալի,
Մթնել ա տուն չի գալի,
Ես մի հեռու եար ունիմ,
Մի մաար գիր չի գալի։

Ամբել ա ձուն չի գալի,
Մթնել ա տուն չի գալի,
Շամ եօրղան, դուլթնի դօշակ,
Առանց եար քուն չի գալի։

Ամրխանանց կտերը
Ծլվլում են ծտերը,
Ազափ տղի դեղն լինչ ա,
Կոկոմ, շամամ ծծերը։

Ա՛յ ախչի սամ, մասամ,
Ծամերիդ ծէրը խաս ա,
Թուշդ դէմն արա պաչեմ,
Վազի գնա մօրդ ասա։

Ա՛յ արխըմը, արխըմը,
Աբրէշումի չարխըմը,
Գլուխս գլխիդ ղուրբան,
Ջոմարդ կաղնի խալխըմը։

Ա՛յ ասըմը, ասըմը,
Նուռն գինին թասըմը,
Ես քի եփ սիրեցի,
Վարթեորի պասըմը։

Ա՛յ դու առն ու վառն ես,
Կանաչ քոլերի խնձառն ես,
Էն ով կասի թէ ղառն ես,
Դու իմ սիրած եարն ես։

Ա՛յ էս կուռը, էն կուռը,
Քաղել եմ Գեանջայ նուռը,
Ես էս ծուռը չեմ առնել,
Ինձ կգցեմ սև ջուրը։

Ա՛ տղայ, անըմդ ա Ռուշան,
Սիպտակ գառանը թուխ նշան,
Աղլուխդ ղրգի նախշեմ,
Չալ, չալ տոտերս քեզ բախշեմ։

Ա՛յ տղայ, ասա, ասա,
Գդակիդ ծալը խասս ա,
Իմ նանը քե ախչիկ չիտայ,
Իմ նանին կուշառք ասա։

Ա՛ տղայ դու խանի որթի,
Հաքինդ լիսամի մորթի,
Թէ ինձնից գուման եար բռնես,
Լէզգին քեզ տանի մորթի։

Ա՛յ տղայ դու բէրաբաշի,
Ղօլթամաջէդ հագի մաշի,
Գամ ըղաքովդ անց կենամ
Թուխ պառը փէշքաշ քաշի։

Ա՛յ տղայ դու ուրես մուրես,
Ես ծարաւ եմ՝ դու ջուր ես,
Մահարլամ-թառլամ շորեր,
Համբարցում գիշերն ձուր ես։

Ա՛յ տղայ դու ատիկ մատիկ,
Աչքերդ նռան հատիկ,
Էն օրէն ինչ քեզ տեսնում եմ,
Համ համբարցում, համ զատիկ,

Ա՛ տղայ դու փէտ ես արել,
Ծմակին փէտ ես արել,
Մեռնիմ վրիդ եարաղին,
Էշխով վրէդ ես արել։

Այ օրօն-օրօն ծաղիկ,
Կարմիր ու տօրօն ծաղիկ,
Խալխին ես մէջլիս կանեմ;
Ու քի մինչին կգովեմ։

Այ օրօն, օրօն ծաղիկ,
Կարմիր ու տօրօն ծաղիկ,
Ալվալայ խալխ եմ կիտել,
Ես գամ քեզ, օրօն ծաղիկ։

Անձրև ա էկել նամ ա,
Ծոցինդ էրծաթէ ջամ ա,
Գնա քու նանիդ ասա,
Նոր ա էկել, դեռ խամ ա։

Արևը թուաւ հովըն ընգաւ,
Նա մէր մտաւ, ծոմն ընգաւ,
Ախչի, մտիկ քու գլխիդ,
Ալ բաղդադիդ մոմն ընգաւ։

Արևը մեր դուռը մտաւ,
Սիրածը սիրածին գտաւ,
Վայ աղա՛յ ջան չուստ արա,
Պահած բաները փտաւ։

Digitized by Google

Արևը մէր ա, մէր ա,
Ոչխարը գոնամէր ա,
Ով մէր ունի՝ մէրատէր ա,
Ով մէր չունի, ընչի՞ տէր ա։

Ըրխալուգս կարել եմ,
Ոսկէ կոճակ շարել եմ,
Նանի ջան, դու դարդ չանես,
Ես իմ սիրածը ճարել եմ։

Արտումս ցանել եմ գարի.
Աստուած տայ իմ Նանին բարի
Որ ինձ տվուց ջահել եարի,
Դարչին, մեխակ, քահրեբարի։

Բաղիս դուռը բաց ա,
Ոտներս շաղով թաց ա,
Եարիցս հեռացել եմ,
Աչքերս լիքը լաց ա։

Բաղիս միջին վարդ ունիմ,
Աղպորս հետ դարթ ունիմ,
Արի, արի, ջան աղպէր,
Տես քանի սև դարդ ունիմ։

Բաղըմս ունեմ բաղմանչի,
Շև կայ, շևի նման չի,
Թաբուն դառան դուս թըռան,
Մինն էլ եարիս նման չի։

Բարդի ծառը բարցր ա,
Սիրած եարը քաղցր ա,
Գնա Նանին հարցրու,
Թը որ չըտայ՝ փախցրու։

Բարցիս տակին մանիշակ,
Աղպէրս գեանջ ու շիշակ,
Արի հոտ կալ, իմ աղպէր,
Գցել եմ զարբաբ դօշակ։

Բերդի տակին ցել ունեմ.
Ըռանգ, ըռանգ թել ունեմ,
Թելիկ մելիկ սարկաւագ,
Դեռ քեզանից մէլ ունեմ։

Գենգդարայ սարը սար ա,
Տակը չնգել ու քար ա,
Մեռնեմ եարիս արևին,
Իմ եարը մին ու ճար ա։

Գերանի տակը ձին ա,
Իմ եարի կարէն հին ա,
Էն ով կասի հին ա,
Ալամ աշխարքի գին ա։

Գիւլում, գիւլում, գիւլասար,
Քոլք եմ մանել հաւասար,
Ես մի շէգլիկ եար ունեմ,
Մի աչկը թեքն ա, մինը եասար։

Գիւլում կանեմ կշարեմ,
Տոպրակ կածեմ կշարեմ.
Երկրէ երկիր ման կգամ,
Քանց քեզ լաւը կճարեմ։

Գնացի ջուրը ջրի,
Ոտս ընգաւ օցի լղի,
Իմ հօրն ու մօրն ինչ անեմ,
Ինձ խի՞ տուին դարիր տղի։

Գնացի ջուրը տեսայ,
Շաբաքու դուռը տեսայ,
Շաբաքու դռան միջին,
Մէկ սիրուն տղայ տեսայ։

Գնա տես դու կալի հորթին,
Զիգ տվի հորթի մորթին,
Ով իմ սիրածն ինձ չտայ,
Թաղի թաքաւոր որթին։

Digitized by Google

*Գոմի փայը աւլել եմ,*
*Սարի ձիանը նալել եմ,*
*Կորի գնա, շան տղայ,*
*Քեզնից լաւը ճարել եմ։*

*Գութանի երգէն ծէրը,*
*Սիրել ա սիրունի տէրը,*
*Սիրունի տէրը ինչ անէ,*
*Արէնտէր ա հէրն ու մէրը։*

*Գութանի թեք դուն ես,*
*Անմեղ ես, խաբար չունիս,*
*Եարըդ առան գնացին,*
*Մգար դու նամուս չունիս։*

*Գութանը վարի ցել դու,*
*Եղնայ մշակիդ մէլ տու,*
*Ջուխէդ կանովդ քաշի,*
*Եդ դառ կարովը եաշի։*

*Դէզ եմ դրել հաւան չեմ,*
*Ինձու գլխու դիւան չեմ,*
*Ինձ դնակամութ արէք,*
*Ես էն եարին հաւան չեմ։*

*Դու կաղնել ես բարցր հովին,*
*Փափուըմ ա դօշիդ մովին,*
*Էրնէկ ծոցիդ քնողին,*
*Շամամ ծծերդ բռնողին։*

*Դուքնի միջի աբադը,*
*Թմամել ա թարադը,*
*Հրէս կգայ իմ եարը,*
*Վրէն կապած եարադը։*

*Եարի կշտին եար պտի,*
*Աղ ու կանաչ խիար պտի,*
*Աման, նանի, մի անի,*
*Եարս ինձ բարեբար պտի։*

*Եղ եմ հալել թասըմը,*
*Վարթէորի պասըմը,*
*Ա՛ տղայ, քի մրտի սիրեցի,*
*Ժամի ըղաքի դասըմը։*

*Գնամ սարերը որս կանեմ,*
*Քարերը գլխիս բարձ կանեմ,*
*Հարցնում եմ քեզ, բարցր սար,*
*Կորցրել եմ Ջէյրան եար։*

*Ես գնում եմ լաց չլես,*
*Արտասունքով թաց չլես,*
*Մեռնիմ խումար ունքերուդ,*
*Հէնց քնի որ բաց չլես։*

*Ես եմ Լեղուարայ քամին,*
*Զանդչանայ ծովի գամին,*
*Խաբար տարէք իմ նանին,*
*Հասրաթ եմ ծոցի համին։*

*Ես լխտատող եմ երկնքին,*
*Շողս տուած գետնքին,*
*Դեռ շատ կարօտ մամ կգաս,*
*Էս իմ չալ չալ աչք, ունքին։*

*Ես ծարաւ եմ ջուր բերէք,*
*Սարերիցը ախպիր բերէք,*
*Տանքցէքս թամամ են,*
*Դրացի եարս տուն բերէք։*

*Ես հողերի տուխտմն եմ,*
*Լիքը փորերի կուխպըն եմ,*
*Ա՜յ ղալամ քաշող տղայ,*
*Ծնգանդ ծէրի թուխտմըն եմ։*

*Ես դուշ եմ թեւ դեղին,*
*Ման կգամ եարիս գեղին,*
*Իմ ջանս ղուրբան կտամ,*
*Իմ եարիս ցաւող տեղին։*

Digitized by Google

Ես մի բուռը խոտ ունեմ,
Հազար թումանի ճոթ ունեմ,
Ես քո ճոթը ինչ կանեմ,
Նարգիզ պտի հոտ ունեմ։

Ես նստել եմ ախպրի ակը,
Քաղել եմ հոնի խակը,
Ով իմ լաւս չի ասէ,
Ոչ տեսնու որթու թագը։

Ես չորան եմ շուն չունեմ,
Աշխարքումս տուն չունեմ,
Սիրուն աղջիկ, խիզճ արի,
Առանց քեզ ես քուն չունեմ։

Էդ գառը պլոլիկ գառն ա,
Թող գայ մեր սուրուն դառնայ,
Էրէսդ էրէսիս արա,
Քրտինքդ ծոցս դառնայ։

Էդ հողն իմ ա՞ վարել մի,
Վարելիս չափարել մի,
Ջափար բասմայ կոխել մի,
Էդ հարն իմն ա՛ խափել մի։

Էկէք գնանք մուխ անենք,
Ղամշուտ թալին ծուխ անենք,
Ով ինձ սիրածիցս հանի,
Որթու թագը թուխ անենք։

Էն սարըմը էրկու ծուխ,
Մինը հանգած, մինը մուխ,
Ես մի եար եմ կորցրել,
Քինթը կալած, վարսը թուխ։

Էս ձորն ըվէր ծնէփակ,
Շղակոլոլ ըրեքնակ,
Ըրեքնակին թև ախպէր,
Շաքար մաղեմ, կեր, ախպէր։

Էսօր պաս ա միջունք ա,
Ամբել ա, պտի ձուն գայ,
Ախչի բուգդ սարդափ ա,
Արանքինը ուլունք ա։

Էս քիշերը աստղալիս ա,
Աստղերը վոխալիս ա,
Ծամփայ տվէք, ախչկերք,
Կարօտ եարս գալիս ա։

Էս քշեր էրազ տեսայ,
Էս դզերը վարած տեսայ,
Նամուսդ կտրի,՝այ տղայ,
Սիրածդ տարած տեսայ։

Ըսօր ամբ ա պարզմ չի,
Ղալամ եմ բռնել սազմ չի,
Ըսօր ինձ համար հէչ օր ա,
Արին սիրտս պարզմ չի։

Ըսօր մեզ համբարցըմ ա,
Աստծուն փառք ի բարցըմ ա,
Քրիստոս երկինք համբարցաւ,
Ողջիս բաղդը բացւըմ ա։

Ըսօր ուրբաթ ա, պաս ա,
Դիմացը կալ ու կաս ա,
Որթիդ մեռնի, վարթապետ,
Դու խի՞ ասիր չհաս ա։

Թեղ տուած թեղիդ մեռնեմ,
Ման էկած տեղիդ մեռնեմ,
Իրեք օր ա տեհել չեմ,
Նոր ծլած բեղիդ մեռնեմ։

Թուխ մազերդ ըլորել ես,
Աչքերդ բըլորել ես,
Իրեք օր ա տեհել չեմ,
Իմ սիրտը մըլորել ես։

Թուր ու թվանք թամքումը,
Ջուխտ աղունակ վանքումը,
Մեռնիմ սիրական եարիս,
Ինքը քաղկի ճամփումը։

Իմ ախպէրը սարըմն ա,
Շուլին թեքի կարըմն ա,
Ախպէր ջան, շուրդ ածա,
Քիրդ Լոռուայ քարըմն ա։

Իմ եարին լաւ եար պտէր,
Գլխին կօշկայ սար պտէր,
Էն շոքած, քրտնած վախտը՝
Մի կանաչ խիար պտէր։

Իմ ծաղիկս քաղած ա,
Տէփրի *) տակին պահած ա,
Ծաղիկ եարս տուն չեկաւ,
Ջանս սաղ-սաղ թաղած ա,

Լալվարայ սարը սար ա,
Տակը ջնջիլ ու քար ա,
Խաբար արէք իմ նանին,
Սիրածս մինուճար ա։

Լէհին եմ կարել խաս ա,
Դօշ եմ դրել գըլան ա,
Ջանին մեռնեմ իմ եարի,
Մինն ա հազարի բաս ա։

Լուսնեակը կեռ ու քեամար,
Քիրը մեռնի ախպօր հըմար,
Յիսուն օր պաս եմ պըհել,
Իմ եարի ճամփի հըմար։

Լուսնեակը ցերեգ, ցերեգ,
Շաքար կոտրեմ, տարէք կերէք,
Աղլուխս կաշառք կտամ,
Եարիցս խաբար բերէք։

Լոռուայ միջին դով կտամ,
Քաթանս իմ գլխով կտամ,
Ով որ կասի եարդ էկաւ,
Ֆօրթը տակին կով կտամ։

Լոռուայ ջուրը սառել ա,
Ղամշին կուռս առել ա,
Քանքլիկ ու թանթլիկ տղէն,
Ուշք ու միտքս տարել ա։

Խաղ կասեմ խաղի գլխին,
Մելիքը բաղի գլխին,
Սա էլ ի՞նչ դարդ կանի,
Ֆողը ըլի կաղի գլխին։

Ծալք եմ դրել հաւան չեմ,
Ինձու գլխու դիւան չեմ,
Ինձ փունջ թրամորթ արէք,
Ես էդ եարին հաւան չեմ։

Ծաղկավանքին ուխտ եմ արել
Շէգ ծամերս ջուխտ եմ արել,
Ա՛յ տղայ էլ խօսալ չի ուզիլ,
Ես քի համար թուղթ եմ արել։

Ծաղիկ, ծաղկեվանայ ես,
Ասլդ [1]) Ըրևանայ ես,
Տարէն մհէտ [2]) կգաս,
Մազեամ [3]) Նուբարխանայ ես։

Ծաղիկ ծաղիկ ծաղկաքաղ,
Լիս ու արև ոսկէմաղ,
Արի գնանք սէյր անենք,
Դու ինձ ըլբիւլ, ես քի բաղ։

*) Մատուցարանի նման, փայտից, որի օգնութեամբ հացհատիկներից ջոկում են քարոտ մասերը։

[1]) Ցեղ. [2]) մի անգամ. [3]) մէթէ.

Digitized by Google

*Ծաղիկ եմ քաղել դեղին ա,*
*Իմ եարը ձեր գեղէն ա,*
*Հել ու մեխակ շատ ունեմ,*
*Հրէ եարիս ձեռին ա։*

*Ծաղիկ եմ քաղել էս ա,*
*Ջանիդ մատաղ, ջան փէսայ,*
*Տղէքը շատ բան կհաչան,*
*Ախչկերանց ծէսն էս ա։*

*Ծաղիկ եմ քաղել նարնջի.*
*Ա՛ տղայ, վեր արի փնջի,*
*Իմ մէրը քի ախչիկ չի տալ,*
*Քանի ման գաս եաւնջի [1])։*

*Ծաղիկ ունեմ դեղին ա,*
*Իմ ուզողը գեղին ա,*
*Էլն էլ գիդի, ալամն էլ,*
*Էն ըրեցի տղէն ա։*

*Ծառի տակը հով քամի,*
*Քանքուլդ քամին տանի,*
*Բա դու սարում, ձորում,*
*Իմ քունը ո՞նց կտանի։*

*Ծառ ունիմ ծիրանի,*
*Քամին թել թել կտանի,*
*Արի գնանք դիւանի,*
*Ում ղսմաթն ա նա տանի։*

*Ծիրան եմ քաղել նուշը,*
*Գտղնցիս վարդի փուշը,*
*Փունջ կապեմ ախպօրս տամ,*
*Գաչ անեմ կարմիր թուշը։*

*Ծիրանին թել թել մանած,*
*Իմ տեհած, իմ հաւանած,*
*Իրեք օր ա տեհել չեմ,*
*Հենց եմ լէգզու թալանած։*

*Ծիրանի ծառ, բար մի տար,*
*Ճխկներդ իրար մի տար,*
*Ամէն մէջդ մտնելով,*
*Դարդերս իրար մի տար։*

*Ծիրանի մանիշակը թերի,*
*Կարօտ եմ քաղցր սէրի,*
*Սիրածը սիրածից հանողի*
*Աչքից ըրթին թօրնմը էրի։*

*Ծմակին հօրս եմ արել,*
*Աչքերս չօրս եմ արել,*
*Վատ խաբարդ լսել եմ,*
*Արինը փօրս եմ արել։*

*Կանաչ տէփուր մէյտան ա,*
*Տեհէք իմ եարը տանն ա,*
*Ութ օր ա, որ տէհել չեմ*
*Սիրտս ո՞նց կդիմանայ։*

*Կարմիր վարթը ջամով ա,*
*Սիրած եարը համով ա,*
*Ըստի զօռի բան չկայ,*
*Սովդէն իրան կամովն ա։*

*Կոխպայ քարը աղի ա,*
*Իմ մազերը ջաղի ա,*
*Իմ մազերը հուսել եմ,*
*Դունչս էրէսիդ քսել եմ։*

*Կտեր կաղնողին մեռնեմ,*
*Ազլուխ բռնողին մեռնեմ,*
*Ըսօր իմ եարը տեհել չեմ,*
*Իմ եար տեռնողին մեռնեմ։*

[1]) Ամէն բանից զուրկ մնացած, անբաղդ.

Կտերը կայ դմդմբոց,
Շունը կ'քնի՝ ես ոչ,
Ծրագները վառել եմ,
Իմ եարը մոլորի ոչ։

Կտրովս քոչ ա գընում,
Քոչ քօչի մէջ ա գընում,
Էրնէկ էն քուոր աչքին,
Օխտն ախպօր մէջ ա գընում։

Հա գնա, գնա հետդ եմ,
Ջուստ ու չաքմայ ոտիդ եմ,
Մսէ աղլուխ թաթիդ եմ,
Փունջ մանիշակ ծոցիդ եմ։

Հա դէդը գնա, գէդը գնա,
Միջքիդ քիրմէն եդ գնայ,
Դէմն արի թուշդ պաչեմ,
Ունքամէջդ ետ գնայ։

Հա տով կտամ, տով կտամ,
Գլխովս կտաւ կտամ,
Ով իմ սիրածն ինձ կտայ,
Ցորթը տակին կով կտամ։

Համբարցըմը գալիս ա,
Ծաղիկը ցնծալիս ա,
Համբարցըմ կանչող ախչիկ,
Ջէնդ ծլվլալիս ա։

Հայ ատար, ատար, Մանուչար,
Սև հաւի կատար, Մանուչար,
Թէ ինձանէ ձեռ քաշես,
Եօրղան դօշակ ոչ մաշես։

Հայ ուռ ես կռանալ մի,
Մեր դռնից հեռանալ մի,
Թէ Աստուածդ կսիրես՝
Սիրել ես մոռանալ մի։

Հաց եմ թխել գարի ա,
Իմ եարը սափարի ա,
Սափար չաքմիդ ես մեռնեմ,
Խօսքերդ շաքարի ա։

Հաց եմ թխել մշակին,
Եդ եմ նստել դօշակին,
Եարիս հէնց կարօտել եմ,
Ոնց որ վարթը մանիշակին։

Ձեռներդ ծափ ես տալի,
Քեամքուլդ թափ ես տալի,
Գշեր ցերէգ գցելով,
Ամեն օր խափ ես տալի։

Ջին ա էկել գերանին,
Մեռնեմ Աւետարանին,
Ով իմ վառը կխօսի,
Սև օձը տայ բերանին։

Ջին ա էկել հալել ա,
Փոսն ա դառել՝ սառել ա,
Էդ քու բռնած բաները
Ինձ մոմի պէս հալել ա։

Ջորըն ու դուս անտէր ա,
Ջիմ էրկաթէ բանդեր ա,
Եարիս որ տեմնաս, ասա,
Քու խեղճ եարը անտէր ա։

Ջորովս ջուր ա գընում,
Հարցրէք ծուր ա գընում,
Քէնին մհանա ա արել,
Նշանածին տես ա գընում։

Ծալէն ի վեր ծնեփակ,
Շըղակոլոլ ըրեքնակ,
Ըրեքնակին թեր ախպէր,
Շաքար կտրեմ կեր, ախպէր։

Digitized by Google

Մաղանի ճամփէն ծուռն ա,
Իմ սիրածը մի նուռն ա,
Սիրել եմ տանել պտեմ,
Ճարս դիւանի դուռն ա։

Մազերդ հլորվել ա,
Աչկերդ բըլորվել ա,
Երեք օր ա տեհել չեմ,
Իմ սիրտս մըլորվել ա։

Մածուն եմ մէրել սեր չունի,
Ջուզն եմ էփել փոր չունի,
Ղովում ղարդաշ շատ ունեմ,
Մի ջանիդիլդան տէր չունեմ։

Մանուշակը էրկու թերի,
Սիրածի սիրտը կէրի,
Ով իմ սիրածը ինձ չի տայ,
Դադաստանին հոքին էրի։

Մանուշակը էրկու թերի,
Սիրածի սիրտը կէրի,
Սիրածը որ սիրածին չի տան,
Լէզուտուն կերթայ գերի։

Մատինս գեղին օղ ա,
Կտրինս ծաղկագող ա,
Տուն մտի, դուռը յետ արա,
Թող կտերը դըղդողայ։

Մատումս կայ մատանի,
Ակները վարթ ծիրանի,
Ով սիրածը սիրածէն հանի,
Ցոքին սըտանէն տանի։

Մատըմս ունեմ մատանի,
Աչքն ա վարթի ծիրանի,
Էկէք գնանք դիւանի,
Ով հախ անի՝ նա տանի։

Մենձ բաղի դուռը բաց ա,
Ոտներս շաղով թաց ա,
Եարիցս հեռացել եմ,
Աչքերս լիքը լաց ա։

Մեր բաղըմը փուշ կլի,
Վարթի ծառին փուշ կլի,
Որ դուս ըլես տուն չգաս,
Սիրտս հալ ու մաշ կլի։

Մեր բաղումը նռան ծառ,
Ջուխտ նռները վրէն թառ,
Քու ջուխտ նռանը ես մեռնեմ,
Մինը քաղէր ու ինձ տար։

Մեր թալվարի ծտերը,
Ծլվլում են կըտերը,
Ով իմ սիրածն ինձ չտայ,
Զանգեալ բռնի ծծերը։

Մեր տան ըղաքին բարդի ծառ,
Էլլի խօսքը դարդ է դառ,
Էնքան էկան, գնացին,
Սիրած եարը եդ էղառ։

Մեր տան տակին էրկու ծուխ,
Մինը հանգած, մինը մուխ,
Ես մի գնացած եար ունեմ,
Բեխը ըլորած, ճաւլը թուխ։

Մեր տան տակին շլորի,
Ծիկներքը՝ եդ ըլօրի,
Էրնակ էն քվոր աչքին,
Օխտը ախպօր թագ կլօրի։

Մթնել ա տուն չի գալիս,
Ամբել ա ձին չի գալիս,
Իմ եարը հեռու տեղ է,
Մի մատը գիր չի գալիս։

Մի բաղ ունեմ ղշերով,
Եարս կգայ քշերով,
Սև սև աչքերին մեռնեմ,
Զորսի կուռը փշերով։

Մի եար ունեմ անուշ ա,
Հալած էրծաթի շուշայ,
Ժամի կռնուց գուս էկաւ,
Ես ասի Թառլան ղուշ ա։

Մտիկ արէք էն ղազին,
Գտպտորիկ բողազին,
Իմ հօրն ու մօրը ի՞նչ ասեմ,
Ինձ տուին էս օլմազին։

Մտիկ տուէք էն ծտին,
Նստել ա եզան լծին,
Էրէկ մի աղջիկ տեհայ,
Աչքս մնաց ջուխտ ծծին։

Նանի ջան, ես մարթ կանեմ,
Գեշ մարթին նամարդ կանեմ,
Թէ փէսէդ հետս գայ ոչ,
Կնստեմ ու գարդ կանեմ։

Նարին, Նարին տղայ,
Քանքիւլգ Նարին, տղայ,
Ես քի ճրդի սիրեցի,
Իմ հէրանց կալին վրայ։

Շիմշիրի գդալ շիրուանի,
Թել-թելը քամին տանի,
Իմ եարը սարում, ձորում,
Իմ քունը ի՞նց կտանի։

Ոչխարս արել եմ էրը,
Ջոգել եմ գառնամէրը,
Ով իմ սիրածը ինձ չի տայ,
Ոչ տեսնու որթու խէրը։

Ոչխարս արել եմ բակը,
Դէմ տուել սէլլի ակը,
Ով իմ սիրածս առնի,
Զվէլլի գլխի թագը։

Ոչխարս արել եմ էրը,
Ջոգել եմ գռնամէրը,
Մեռնի քու՛ չոլախ հէրը,
Դուն խի՞ խլեցիր իմ եարը։

Ուռի ծառին բար չի ըլլի,
Առանց քեօնգուլ եար չի ըլլի,
Սիրտը որ կայ շուշայ ա,
Կոտրած սրտին ճար չի ըլլի։

Ուռի ծառ, կռանալ մի,
Մեր դռնից հեռանալ մի,
Ուռի ծառ, Աստուած սիրես,
Քու եարն եմ, մոռանալ մի։

Զափարիս տակը չափ կտամ,
Ոսկի քիսով թափ կտամ,
Ես իմ պզտիկ տեղովս,
Քեզ պէս շատին խափ կտամ։

Զափար բամայ կոխել մի,
Շահին զալը ա՝ փոխել մի,
Շաբիքն իմն ա՝ թափել մի,
Էդ եարն իմն ա, խափել մի։

Ջիթ եմ հաղել սազով ա,
Գլխիս մազը գազով ա,
Հալբաթ ես էլ նազ կանեմ,
Երբոր եարս նազով ա։

Ջիթ մընթանէդ հինմաշ ա,
Ունքերդ ղալամքաշ ա,
Ախչիկ, ինչ ես միտք անմ,
Իմ ջանս քի փէշքաշ ա։

Digitized by Google

Զուստիք ունիմ դեղին ա,
Իմ եարը ձեր գեղին ա,
Հիլ ու միխակ շատ ունիմ,
Զիմ իմ եարի ձեռին ա։

Գուճուր ախչիկ, լաւ ախչիկ,
Դու ինձ համար ցաւ ախչիկ,
Ես քեզ թաքուն սիրեցի,
Էս ով արաւ չաւ, ախչիկ։

Գուճուր ախչկայ մէրը,
Խօսկը տուեց նրա հէրը,
Իրեք տարի սիրեցին,
Զտուեց եարի մէրը։

Գուճուր Աստծու գառն եմ,
Թոփչու չինարի ծառն եմ,
Ինչ լաւութին քեզ անեմ,
Որ քու խաթրը ես առնեմ։

Գուճուր թփին լէն տերև,
Գաչեմ ունքերիդ վերև,
Արի ցաւիս դեղ արա,
Հենց դու ըլիս ըմբրարև։

Գուճուր տուն երգէն թարէք,
Իմ ախպոր թագը շարէք,
Քուիրը մեձարք [1]) արէք,
Զալ կովը աղաքն արէք։

Ջաղացիս դուռը տաշած,
Մահրըմաս գիւլ քաղած,
Մեռնեմ կեռ կեռ ունքերիդ,
Ղաստի ղալամով քաշած։

Ջաղացիս դուռը տարթ ա,
Կտուրը լիքը մարթ ա,
Հրէս էկաւ իմ ախպէր,
Գողիքը լիքը վարթ ա։

Ջաղացիս դուռը փոս ա,
Քար կգցեմ կխօսայ,
Խօսա, խօսալուդ մեռնիմ,
Իմ Նանի ազիզ փէսայ։

Ջաղացիս դուռը տաշած,
Աղլխիս գիւլը մաշած,
Մեռնեմ կեռ կեռ ունքերիդ,
Ոսկէ ղալամով քաշած։

Ջաղացս էրկու դռնի,
Բարց բերէք եարս կռնի,
Ես դու մի բաղմ ըլինք,
Ես չինարի, դու Նռնի։

Ջաղացս ման եմ տուել,
Սիրել եմ, ջան եմ տուել,
Օխտը տարի սէրութին,
Մէկ օր պայման եմ տուել։

Ջան գիւլում, ջան ջանի,
Սիրող սիրտը ո՞նց անի,
Ով ինձ սիրողից հանի,
Հոքին սրտանէն տանի։

Ջուխտ ծառի հովին ղուրբան,
Շէգ տղի բոյին ղուրբան,
Էրկու օր ա տեհել չեմ,
Տեսողի աչքին ղուրբան։

Ջուր եմ դրել եփ կգայ,
Ալիր եմ մաղել թեփ կտայ,
Աչքս ճամփիդ մնըմ եմ,
Նարար եարս ե՞փ կգայ։

[1]) Հրաւիրել.

Ջուր եմ դրել կեծ ա,
Ոչխարիս աղաքը էծ ա,
Մեռնըմ միջի չոբանին,
Որ Թաւադից էլ մեծ ա։

Ջուր ա գալիս քարիցը,
Ախչիկ ա գալի սարիցը,
Իմ սէրը ձ՞նց կկտրի,
Քեզ պէս ճարտար եարիցը։

Ջուրը կգայ գօլ կանի,
Պախրէն բաղչէս զոլ կանի,
Հա հրէս էկաւ իմ ախպէր։
Խաշ ղումաշս բոլ կանի։

Ջրի էն կուռը եօնջայ,
Քարուքանդ կանեմ Գեանջա,
Գեանջու շհարը փուլ գայ։
Իմ ազիզ եարը տուն գայ։

Ջրի էն կուռը, էս կուռը,
Քաղել եմ ղաստայ նուռը,
Սիրել եմ տանել պտեմ,
Թող տանեն շահի գուռը։

Ջրի էն կուռը փուռն ա,
Իմ սաբաբը մի նուռն ա,
Սաբաբ, քու որթին մեռնի,
Զարէն հեքմի դուռն ա։

Ջրի վրայ սազ պտի,
Մի օրդակ ու ղազ պտի,
Ես որ կամ Թառլան ղուշ եմ,
Իմ եարը Շահաբբաս պտի։

Ջրումըս ունիմ կաշի,
Աչքս ճանփին կեաշի,
Մինչի իմ եարըս հասնի,
Ջանիս կէսը կմաշուի։

Ջրիս էն կուռը դուռը,
Քաղեցի Թեփշով նուռը,
Ես չեմ ուզում էդ նուռը,
Ի՞նձ տարէք իմ եարի դուռը։

Սարերի սի՞նձը ի՞նչ կանեմ,
Կաթնով բրի՞նձը ի՞նչ կանեմ,
Թող իմ սիրածը ինձ տան,
Ոսկին ու էրծաթը ի՞նչ կանեմ։

Սարերին ծաղիկ կլի,
Ոչխարին աղիք կլի,
Էն քիրը որ ախպէր չունի,
Սիրտը սև Թաղիք կլի։

Սարերին կլի ղանձիլ,
Քեղը հետը, ծլոտ, անծիլ,
Ով իմ սէրս յետ առնու,
Որթին ըլի անծիլ-անծիլ։

Սարերըմը տուն ունիմ,
Մինչին ոսկի սին ունիմ,
Ա՛ շան տղայ, քի՞չ խօսայ,
Քի պէս հազար շուն ունիմ։

Սարէն գուգայ ձիաւոր,
Մեր տունը չարդախաւոր,
Քիրը մեռնի ախպօրը,
Իրեք օբէն Թաքաւոր։

Սարը սարին Թուշ կլի,
Սարի գլխին ղուշ կլի,
Նանը բալին տեսնելիս,
Սիրտը աչլմիշ կլի։

Սարի խոտը ծեղուածեղ,
Ախպէր,գնանք միատեղ,
Որ հարամին վրայ տայ,
Գլուխս տամ գլխիդ տեղ։

Digitized by Google

Սարումն ունիմ թել մանած,
Իմ սիրած, քու հաւանած,
Երեք օր է տեհել չեմ,
Հէնց եմ լեզգու թալանած։

Սև եմ, սևաւոր ղուշ եմ,
Դեղին թևաւոր զուշ եմ,
Սարերին ագլան կտամ,
Նանի ձեռի սաւոր զուշ եմ։

Սպաս եմ արել կէծ ա,
Ոչխարիս աղաքն էծ ա,
Մեռնեմ ետնի չոբանին,
Վարթ մանշակի պէս ա։

Վարթեորի իր օրն ա,
Որթին հօրը չի մոռնայ,
Ով իմ սիրածը ինձ չի տայ,
Սև շան նման թող օռնա։

Վարթեորի իր օրն ա,
Որթին հօրը չի մոռնայ,
Ախպերը գնաց սովգայ, [1]
Առչի սովդէն քըորն ա։

Վարդի վրէն փուշ կլի,
Բաբդի դօշին ղուշ կլի,
Քօրփայ օրից սիրածս,
Եարաբ ինձ ճրբ թուշ կլի։

Վիճակ, արի քեզ տանենք,
Կտրէ կըտուր դուս հանենք,
Վիճակը տանից դուս էկաւ,
Վրէն երգնքից լիս էկաւ։

Վիճակը ընգել ա գերի,
Ազափ տղերանց ձեռը,
Տունս էրկու ձու կտանք,
Ով վիճակը եդ բերի։

Վիճակ, վիճակ, խաս վիճակ,
Աստծու տարին գաս վիճակ,
Վիճակ հանող աղջկերանց,
Մուրազներուն տաս վիճակ [2]։

Վիճակ, վիճակ, վարթ վիճակ,
Ես ու դուն մտնենք մի փչակ,
Զվէլ [3] լիսը քչփչանք,
Լիսէն եդը կչկըչանք։

Տանս դուռը բաց ա,
Պուտիկ պուտիկ աւլած ա,
Եօրղան գօշակ քցած ա,
Եարս վրէն կռնած ա։

Տանս տակը զանանայ,
Ղարղու կտամ դիմանայ,
Կուռդ մէջնի ջուրն ինձ տուր,
Խմեմ սիրտս հովանայ։

Տանս տակին բարդի ծառ,
Էլի խօսքը գարդ է դառ,
Հչկէլը էկան գնացին,
Սիրած եարս եդ էդառ։

Տեղ եմ գցել փոթ կգայ,
Բարձ եմ դրել սոթ կտայ,
Մեռնեմ մինչի քնողին,
Անոշ խնգան հոտ կգայ։

Քաղկիս ճանփէն խոտել ա,
Եզներքը նստոտել ա,
Խաբար տարէք իմ նանին,
Մազերս մաղցոտել ա։

1) Ողջիկ տեսնել, ուզել.
2) Վիճակը բանալիս ամենից առաջ առում էին այս տունը։ 3) Մինչև.

Քարիս տակին էրկու ղոչ,
Մինը փնջած, մինը ոչ,
Մեռնեմ Աստծու մուրվաթին,
Մնին կտայ, մնին ոչ։

Քարիս տակին կանանչ խոտ,
Փունջ մանիշակ, անուշ հոտ,
Թէ իմ սիրածն ինձ չի տաք,
Ես ինձ կանեմ հարիր ճոթ։

Քարի տակին կացել իմ,
Լաչակս լուացել իմ,
Խաբար արէք իմ նանին,
Շատ դարդի տիրացել իմ։

Քարի տակին կացել իմ,
Միխակով լեղացել իմ,
Իրեք օր ա տեհել չիմ,
Հենց գիտեմ քոռացել իմ։

Քամին փչեց հով բերուց,
Եզը ծնեց կով բերուց,
Ես մի Թառլան լօռըցի,
Ինձ ըստի ձիվ բերուց։

Օխտը հասար մի դռնի,
Ես բարց դնեմ դու կռնի,
Ես ծիտ դառնամ դուն կաքաւ,
Ես կթռչեմ՝ դուն բռնի։

Օխտը ջաղաց մի դռնի,
Բարց դրէք եարս կռնի,
Աղայ ջան, գլխովդ պտիտ գամ,
Խօսքս դեղամէջ բռնի։

Օխտը օթախ մի դուռը,
Ծնծում ա միջի նուռը,
Իմ սիրելի բլբուլը,
Ընկել ես դռնէ դուռը։

---

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԳԵՐ

### Խնոցու երգը.

Իմ խնոցին շիմշիրի,
Քու խնոցին փշրուի,
Խնոցի եմ հարէ եղ չի կայ,
Քոսակ մարթին դեղ չի կայ։
Հարի՛, հարի, խնոցի.
Մէջդ ա բարի, խնոցի,
Ունգդ բարակ, խնոցի,
Մէջդ կարագ, խնոցի,
Իմ խնոցըմը եղ չի կայ,
Փէսէս էկաւ, տեղ չի կայ։

---

## Ճախարակի երգ

### Ա.

Անճարին ճար, իմ ջահրայ,
Դուն անգլին քար, իմ ջահրայ,
Անտէրին տէր, իմ ջահրայ,
Անհէրին հէր, իմ ջահրայ,
Քեասիբի[1]) մէլ[2]) ես, իմ ջահրայ,
Դու բարցած սէլ ես, իմ ջահրայ։

Ձէնով աշուղ, իմ ջահրայ,
Դարդերս սատղ, իմ ջահրայ,
Ձէն տուր ձէնիս, իմ ջահրայ,
Ցաւս տեհնիս, իմ ջահրայ։

Իմ ջահրէն ալ ու վալ ունի,
Վրէն էլ քիրմանու շալ ունի,
Մանողի հետ սազալ[3]) ունի,
Քաղցր ղալմուղալ ունի։

Իր մանողը օխտը գեղ ունի,
Խանի խալչի վրայ տեղ ունի,
Իր ցաւերին դեղ ունի,
Ազնիւ որթու ցեղ ունի։

### Բ.

Մանի, մանի, իմ ջահրայ,
Քարուանդ բանի, իմ ջահրայ,
Իմ ջահրէն բան ա նստել,
Ումուդով ջան ա նստել.
Աստղերը դուս ա եկել,
Աչքերիս լուս ա եկել.
Մանեմ, մանեմ, մտիկ կանեմ.
Մեծ մեծ ստեր կծիկ կանեմ.
Ըղաքիդ չոքած ղուլ ունիս,
Կողքիդ ալմաստ թուր ունիս,
Օրը մի մախալ եղ ունիս,
Մանողիդ գլխին տեղ ունիս։
Մանի, մանի, իմ ջահրայ,
Իմ ու քու բանը շատ, ջահրայ։

---

1) աղքատ. 2). յայտ. 3). յարմարուել։

### Գ.

Ջահրայ ջան, դու մանի, մանի,
Իմ անուշ քունը թող տանի,
Եարս թող գայ դռանը կանգնի,
Սիրուս համար տուդսաղ ընկնի։

Ջէնով ջահրէս, մանի, մանի,
Քունս անուշ կտանի,
Իմ եարը սարում, ձորում,
Իմ քունը ո՞նց կտանի։

## Ջահել եւ ահել [1].

Աղջկերքն են ծալած բողչայ,
Սիրուն հարսները՝ բաղ ու բաղչայ,
Պառաւները փտած խոնչայ;
Գլխներուն մի-մի գոնչա։

—

Կարմիր խնձորն աղջկերանցը,
Կեանք ու արև տղերանցը,
Խունկ ու մոմը պառաւներին,
Բահն ու ղազմէն հլիորներին։

—

Ղազմայ բերէք մի փոս փորենք,
Պառաւների գլուխը փորենք,
Քելեխն անենք, յարգը տանք,
Քիչ լաց ըլենք, թարգը տանք։

## Ծեծուած հարսը.

Լուսը լուսացաւ,
Հարսը վերկացաւ,
Էրէսը լուացաւ,
Մերոցքը բացաւ,
Կերաւ կշտացաւ,
Կեսուրն իմացաւ,
Տվուց թիլացաւ,

Պատրոնը բարկացաւ,
Հարսը հեռացաւ,
Ջուրը խորացաւ,
Ծառը չորացաւ,
Ծամփէն հեռացաւ.
Վախէն քոռացաւ,
Ցաւը մոռացաւ։

[1]. Նորատի և զառամեալք։

Digitized by Google

## Մուրազիկ հաւս.

Մի հաւ ունէի օխտն օրէն ճուտ էր,
Օխտն օրէն հիւանդ էր, մի չամիչ չուտէր,
Նրա կերածը օրէնը մի կուտ էր,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւս։

Քիչ էր մնացել թամամի տարին,
Նոր էր ջոգուել նրա որցակն ու մարին,
Սատկեց, հողը՜ էլաւ իրան կատարին,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւս։

Իմ հաւը մենձ չէր, ամա մենձ բաշ ունէր,
Ծուռոտ թևերը գետնին քաշ ունէր,
Տարայ լեղացրի սիպտակ լաշ ունէր,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւս։

Մուրազիկ հաւս՝ոնց որ մի ղազ էր,
Վիզը որ չափէի թամամ էրկու գազ էր,
Ներսէս կաթղիկոսի աքլորի հետ կը սազէր,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւս։

Ա կնիկ, վեր կաց, մազերդ սանրի,
Հաւը քաշ դրինք գոմշիցն էլ ծանդր ա,
Գնա, կացին բեր, ոտն ու գլուխը՝մանդրի։
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւս։

Այ կնիկ, վերկաց, դռներին եաշի,
Մուրազիկ հաւը սուրուին բաշ ա[1]),
Հաւկիթը թոփ արա, տար շուտով խաշի,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւս։

Այ կնիկ, վերկաց, ապրանքը ծախէ,
Ըսօրից դէնը մեզ օլումը [2]) հախ է,
Մեռաւ մեր հաւը, կատարը կախ է,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւս։

Այ կնիկ, վերկաց, ալիրը մաղի,
Շատ քահանայ պտի մեր հաւը թաղի,
Օխտը կարաս գինի, տասնէրկու սաղի,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւս։

---

[1]) Այստեղ գործ է ածւում «հաւասար է» մտքով, [2]) մահը։

Մի դուրգեար բերէք գայ կուրոն տաշի,
Մխմխի չիթ բերէք վերարգուն քաշի,
Համքար մօղ արէք նաշը վեր քաշի,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւաս։

Այ կնիկ, վերկաց, հերիք ա լացը,
Մի հակառակիլ Աստծու կամացը,
Սև եզը մորթենք, տանք հոգեհացը,
Մեռաւ, տունս քանդեց Մուրազիկ հաւաս։

## ՊԱՆԴԽՏՈՒԹԵԱՆ ԵՐԳԵՐ

—

### Ղարիբն հիւանդ.

Ղարիբը պարկել ա, անճար կանքայ,
Հէր ու մէր չի կայ, որ հոգսը հոգայ,
Քարերը եօրղանն են, փօղը դօշակ,
Բարձ ու բալիշ չունի նա իր գլխի տակ։
Մէր չունի, որ տեղը գցէ վերցնէ,
Քիր չունի բարցի էրէսը դարցնէ,
Եար էլ չունի հալը, խաթրը հարցնէ,
Ախպէր չունի չուխայ կտրէ, հագցնէ։
Վայ էն մօրը, որ ղարբին բերել ա,
Քշերը ծիծ ա տվել, ցերեկը օրօրել ա,
Ղարիբը երգրէ երգիր կորել ա,
Ինքն իրա ճամփէն լափ[1]) մոլորել ա։
Տասը տարի կայ հեռացել է, կորել,
Օտար երգիրներ ա ընգել, կորել,
Ընչանք[2]) չմեռնէի եարս տեսնէի,
Վարթ ու ռէհանի պէս մօտը բսնէի։

### Հօրանց կարօտ հարսը.

Դօնգչայ, դօնգչայ, դէդի ջան,
Հալս գէշ ա, դէդի ջան,
Վաղուց ա քեզ տեհել չեմ,
Հալս գէշ ա, դէդի ջան։

Հարայ, հարայ, դէդի ջան,
Տակս քար ա, դէդի ջան,
Սիրտս եարայ, դէդի ջան,
Ճամփէդ սար ա, դէդի ջան։

---

[1]) Բոլորովին. [2]) Այնքան ժամանակ. մինչև.

Բարցր սարը ցձանայ,
Երգէն ճամփէն կրճանայ,
Երգէն ճամփէն քըքարուտ,
Քաթան շաբիքս ծռծառուտ։

Թամամ օխտը տարի ա,
Նազլուդ եսիր գերի ա,
Ախաթ շաբիք բհարի ա,
Մղթասեղը կարի ա։

Ծալքս ղումաշով ա լիքը,
Դուռս գոմէշով ա լիքը,
Տունս ղարաւաշով ա լիքը,
Սիրտս եարայ, դէդի ջան։

## Զոփուրի տղի կնոջ ողբը.*)

Ես աննամուս քար դառայ,
Ցից, չորացած ծառ դառայ,
Ոնչ ծեր եմ քուն ունենամ,
Ոնչ կնիկ եմ տուն ունենամ։

Ես ինձ համար տուն չունեմ,
Գիշեր ցերեկ քուն չունեմ,
Գիշեր ցերեկ լալում եմ,
Միս ու ոսկոռս հալում եմ։

Քու դուշմանը սաստիկ ա,
Ըրխալուղդ լաստիկ ա,
Էն ով գիտէ թէ սաղ ես,
Կուռդ կապած տուտսաղ ես[1])։

*
* *

Ընկայ թաղէ թաղ, ես թուղթ ճարեցի,
Շող շողան[2]) մատներս ղալամ արեցի,
Աչքիս ըրտասունքը թանաք արեցի,
Սրտիս դարդերը մէջը գրեցի,
Գրեցի, ասի հալս[3]) իմացիր,
Ես կարմ չեմ, էլ դու դիմացիր,
Իմ կողմանէ դու խիալով կացիր,
Ես քիչ գրեցի, դու շատ իմացիր։
Գրեցի, ասի ամենին տէր կայ,
Էդ քու սրտումը էդ ինչ թաւուր սէր կայ,
Ինձ հմա ոնչ լիս, ոնչ էլ քշեր կայ,
Ես խօրօտ եղնիկ, ինձի տէր չկայ։
Ասի ամեն հաւք իր բունը մտաւ,
Ամենն էլ իրան հնգերը գդաւ,
Մենակ ես եմ, ախ, ես մոլորված,
Ես մառմառ քար եմ, տէղից գլորած։

*). Նշանաւոր աւազակապետ Դոեղեցի։
[1]) Բանտարկեալ. [2]) փայլուն, մաքուր. [3]) Առողջութիւնը, գրութիւն։

## Քրոջ վիշտը.

Գնացի մէրին մորու,
Վեր հանեցին թամքած ջորու,
Ինձ տարան խանի դուռը,
Դուս բերին թէփշով նուռը,
Ասի ուզմ չեմ ձեր նուռը,
Ինձ տարէք իմ նանի դուռը,
Ես գցեցէք քաղկի Քուռը։

## Ղարիբ հարսը կռունգին.

Կռունգ, կռունգ, կռման արմ,
Հէրանցս սարին նշան արմ,
Մեր տան բաշին տուտիկ արմ,
Հօրանց սրահին մտիկ արմ։
Գնա, ասա իմ նանին,
Բաժինքը տայ չոբանին,
Էլ հեռու տեղ ախչիկ չի տայ,
Որ չգնայ շիւանին։

***

Փչեցէք, հովեր, սարեր ձուն բերէք,
Իմ ղարիբ եարս առէք տուն բերէք,
Հենց արէք, որ դուք էս ըրիգուն բերէք,
Անքուն աչքերիս քաղցր քուն բերէք։
Ըսօր թող ձուն գար,
Իմ եարը տուն գար,
Ինձ անուշ քուն գար։
Ծծերս կոկոմ ղարիբ ճամփեցի,
Ծամերս ճերմակ ճամփայ պահեցին,
Ղարբիս գնալը իրեն թողեցի,
Եդ դառնալ գալը Աստծուն բաշխեցի։
Ըսօր թող ձուն գար,
Իմ եարը տուն գար,
Ինձ անուշ քուն գար։
Քանի ու քանի ելնեմ դռները,
Արնով լցուել ա սրտիս կռները,

Digitized by Google

Արի, ծով աչքեր, ինձ մի լացացնէր,
Դուշմանս շատ ա, մի ծիծաղացնէր.
Ըսօր թող ձուն գար,
Իմ եարը տուն գար,
Իմ աչքիս քուն գար։

## ԵՐԿՐԱԳՈՐԾԻ ԵՐԳԵՐ

### Քախհան անողի երգը.

Քախան եմ անում մօտ սարին,
Մատաղ ըլիմ իմ եարին,
Մէջքին էրծաթէ քամար ա,
Մեռնեմ ունքի կամարին։

Ուրաքս սարքած,սրած,
Մաշիկս սաղրուց կարած,
Էս իմ կարմիր էրէսս,
Էրէս էրէսին դրած։

Քախանում եմ կնջիթը,
Հաքած եմ լաւ խասս չիթը,
Էրնէկ կտամ էն օրին,
Որ կընգնեմ եարիս ճիտը։

Ծիտս եմ գցել իմ վզնոցը,
Թող կտրի սրտիս խոցը.
Էրնէկ կտամ էն օրին,
Եարս մտնու իմ ծոցը։

Բազ ու բաղչին բար պտի,
Վարթի ծառին խար պտի.
Ինձ նման սիրուն ախչկան,
Մի լաւ սիրուն եար պտի։

### Հոռովել.

(գութանի երգ.)

Ա.

Ռաւել ա հա, ռաւել ա,
Բերող մէրդ պռաւել ա,
Արեդ ապրի, Խումար գոմէշ,
Արի շանց տուր հունարդ,գոմէշ։

Փչեց հովը ըրիգնադէմին,
Գութանն առաւ դիպաւ քարին,
Շիմալը կոտրեց դրսի սամին,
Անըծեմ քու ազիզ խնամին։

Քաշի եզը, քաշի հոտաղ,
Մաճկալը ձեր ջանին մատաղ,
Օրը թեքուել, հովել ա,
Հոտաղը մըն էլ սովել ա։

Ծաշ չեն բերել խռովել ա,
Հմկալանց հարսին հվհովել ա։

Բ.

Մաճկալը հրէ մաճին ա,
Կնգները ընգանին ա,

Մանկալի սիրած հարսը,
Համկալի խամրաջին ա։

Գութանը սարքին լարել ենք,
Հոտաղը սաղով [1]) շարել ենք,
Հոտաղը բասար ա,
Մանկալը եասար ա։

Մենձ ակը հրէ ակոսին ա,
Խուփն էլ խոռը փոսին ա,
Անգաջդ ձէնի, հարսը,
Մանկալի քէնի հարսը։

Բերեմ գութանը,
Սարքեմ դուքանը։
Ալ գութան, հա, ալ գութան,
Եղն ու գոմէշ, չալ [2]) գութան,

Էկա կշտներովդ անցկացայ,
Հոտաղ, մանկալ, լալ գութան։
Մանկալը մաճին,
Մուկը ընգաճին։

Էս մեր վարպէտ մանկալը,
Մատնանց Գուդայ Սոսին ա։
Մեր Արշօն սիրէ,
Ջեր մանկալի խամբաջին։

Գ.

Հօրովէլ հա, հօրովէլ,
Ջեզ աւելնայ օր աւել,
Ռաւել հա, ռաւել ա,
Ջեր ձէնն ինձ առաւել ա։

Օրհնեալ է Աստուած հոտաղ-
ներ.
Ցամենայն ժամ գութնամէջ ր,
Օրը բացուեց, լիսացաւ,
Մանկալն Աստծուն յուսացաւ։

Գործադերը բարին ա,
Ծմբները շարին ա,
Վարենք, վարի տարին ա,
Գութանն Աստծու շարին ա։

Աստուած յիշենք, վեր կե-
նանք,
Մենք մեր բանին տէր կենանք,
Վարենք, վարենք, վար անենք,
Մեր պուշմանին քար անենք։

Մատաղ եմ ես լծկանին,
Լծկան բերող կթանին,
Եզն ու գոմշին ես մատաղ,
Որ ծառայեն գութանին։

Գութան, գութան, հա գու-
թան,
Աստծու իրան փայ գութան,
Սաղ աշխարքիս փեշակնում,
Դու քեզ չունես թայ, գութան։

Հնձուորի երգ.

Ա.

Հով արա, Լեղուար, հով արա,
Ցողն ու շաղը ծով արա,
Հով արա, Լեղուար, հով արա,
Սոնախպրի Ջրով արա։ *)

[1]) ճաշակով, ոճրուն. [2]) անպիտան.
*) Կրկնել ամէն տան վերջ.

*Հով արա, Լեղուար, հովքամի,*
*Մեր մշակը հով կամի,*
*Մեր մշակը շոքել ա,*
*Որձ գոմշի պէս չոքել ա։*

*Լեղուար, ամբէ ցող արա,*
*Էսօր քիչ ամբշող արա,*
*Շոքն ու տօթը թող աբա,*
*Մի քիչ մեզ բանթող արա։*

*Արևը ինձ դաղում ա,*
*Ուշք ու միտքս շաղում ա,*
*Ծովինարը խաղում ա,*
*Բարակ անձրև մաղում ա։*

*Թող մշակը հովանայ,*
*Քացախ ուտէ լաւանայ,*
*Թէ սխտորով դինջ կլի,*
*Ղանձլաջրով խինջ կլի։*

**Բ.**

*Լանջի հողին, հէպ, հոպ, հէպ,*
*Հացն ա կողին, հէպ, հոպ, հէպ,*
*Նստեմ կողքիդ, հէպ, հոպ, հէպ,*
*Ջիգ տամ փողկիդ, հէպ, հոպ, հէպ,*
*Ուտեմ համեմ, հէպ, հոպ, հէպ,*
*Լեզուդ ծամեմ, հէպ, հոպ, հէպ։*
*Լխնխակ գիշեր, հէպ, հոպ, հէպ,*
*Տափակ կլտեր, հէպ, հոպ, հէպ,*
*Գուլգաղ թշեր, հէպ, հոպ, հէպ,*
*Շամամ ծծեր, հէպ, հոպ, հէպ,*
*Անա-խանում, հէպ, հոպ, հէպ,*
*Քունդ ա տանում, հէպ, հոպ, հէպ։*

## Գութանի երգ.

*(աշուղական)*

*Գութանն ասաւ. Ես կը վարեմ սար ու ձորերը,*
*Կը լքցնեմ կրով շինած կոկլիկ փորերը,*
*Կը կշտացնեմ աղքատ, քեասիբի փորերը.*
*Ես գութանի խէրին մատաղ։*

*Մաճկալն ասաւ. Ես գութանը կը թևեմ,*
*Ծուռն ու դուզը կարգին կը ձևեմ,*
*Սար ու դաշտը ցել կանեմ, կը սևեմ.*
*Ես գութանի խէրին մատաղ։*

*Խոփն ասաւ. Քամակս դուզ, աղաքս կեռ ա,*
*Գեդինը շլակելը շատ ծանր բեռ ա,*

Digitized by Google

Սև փողի տակին մէջքս կեռայ.
Ես գութանի խէրին մատաղ։

Ձևիչն ասաւ. Քամակիս վեր տուէք հացըքի թուրը,
Տարին էրկու հետ կուզեմ իմ ծէրի սուրը,
Թէ չը վարեմ, տարէք գցեցէք ինձ ջուրը,
Ես գութանի խէրին մատաղ։

Թուրն ասաւ. Ես պահըմ եմ գութանի շէնքը,
Ըռանց ինձ պարապ ա դրա երգէնքն ու լէնքը,
Ամենն էլ կօխնեն իմ արևն ու կենքը,
Ես գութանի խէրին մատաղ։

Ոռատամն ասաւ. Կողքս մաշեց էս անդեր փողը,
Բօլ համարեցէք դուք իմ փորխողը,
Սաքի էլ էշն ա ինձ մի քիչ քոմագ ըլողը,
Ես գութանի խէրին մատաղ։

Թևն ասաւ. Ամեն բան ես եմ բշարում,
Կաքաւին քոմագ եմ կանչըմ իտ շարում,
Ծմբները կոկլիկ դարստըմ եմ ու շարում,
Ես գութանի խէրին մատաղ։

Էշն ասաւ. Ես որ ըլեմ ոչ, գութանը վարիլ չի,
Աշխարհս մարդը հացը ճարիլ չի,
Արևն ու լուսինը մեզ խուարիլ չի։
Ես գութանի խէրին մատաղ։

Խարազանն ասաւ. Դուք գիտէք ոչ գութանի բանը,
Զիմ ինձանէ ա ձըքմ էտ քսան ջանը,
Ամբոլչին ա իմ գլխի սուլթանն ու խանը,
Ես գութանի խէրին մատաղ։

Սռնին ասաւ. Իմացէք, որ իմ բանն էլ զօռ ա,
Իշի գլուխը վեր եմ կալել, ձէն չունի զռայ,
Թէ փէտս խնձորի ըլի, քաղցր կգոռայ,
Ես գութանի խէրին մատաղ։

Վենձ ակն ասաւ. Կնդուռս վէր տուէք տասներկու սօլը,
Զալիշ էկէք, արած ցելներուդ գցէք պօլը,

Digitized by Google

Տէհէք ինչց եմ լքցնում ցորնով ու գարով չօլը,
Ես գութանի խէրին մատաղ։

Կորթի ակն ասաւ. Իմ տեղս ջլխս զոռ ա,
Դուք խի՞ չի գիդէք, որ աչքերս քոռ ա,
Սանծլումը կուզեմ ես մի ջուխտ կոռայ,
Ես գութանի խէրին մատաղ։

Ճմբարակն ասաւ. Քառասուն էրկու օզ ա ծէրիս
էրկու կէռը,
Խի՞ էք շալակս տվել էս ղադար բեռը,
Վրիցս վեր կունեմ, թէ ունենամ ձեռը.
Ես գութանի խէրին մատաղ։

Բնատէնն ասաւ. Իմ ձեռխս ա գութանի կէսը,
Զիմ ինձ են մտիկ անմ ծէրատէնից դէսը,
Զիմնուցդ զոռով եմ, չէք գտնուլ ինձ պէսը,
Ես գութանի խէրին մատաղ։

Ծէրատէնն ասաւ. Ինձ մեգնել էք չվէլ ծէրը,
Աշխատում եմ անդնջում [1]), ցերեկն ու գիշերը,
Շատ ա գութանին իմ տուած խէրը,
Ես գութանի խէրին մատաղ։

Սածլատէն ասաւ. Գութան, ղուլ ենք ես ու սար-
գեահը,
Շատ ենք պահըմ մենք գութանի շահը,
Մտներուցս չենք գցում կտրվելու ահը,
Ես գութանի խէրին մատաղ։

Կնգուղն ասաւ. Ես եմ օգտում միշտ ճմբարակին,
Հօռ, ուժ, ղուաթ եմ տալիս հաստին ու բարակին,
Կորեկսը կտրիլ չի, թէ զոռ չտան խարակին[2])։
Ես գութանի խէրին մատաղ։

Լիզու էլան ու խօսեցին մալուխն ու փամփալը,
Աչուկը, ծիլիբը, նուբարը, պոտոքն ու մախալը,
Ասին մենք էլ ենք սիրում ձեր ղալմաղալը.
Ես գութանի խէրին մատաղ։

---

[1]) Առանց հանգստանալու. [2]) Ցելի մէջ մնացած անվարել մասերը։

Լուծն ասաւ. Վեց տեղ ծակած եմ, չորսը տված սամին,
Շատ վախ ունեմ, թէ գութանը առնու խամին,[1])
Ես էլ եմ մասնակից գութանի տված համին,
Ես գութանի խէրին մատաղ։

Գոմէշն ասաւ. Ես մի շատ կոշտ բան եմ,
Թէ ռաւէլ տաս գութանը մենակ կը տանեմ,
Մնացած նաղարները շատ թէզ[2]) կհանեմ.
Ես գութանի խէրին մատաղ։

Եզն ասաւ. Ես շատ զահրաքաշ[3]) եմ,
Թէ ճիպոտ տաս, գոմշից առաւել կքաշեմ,
Ղոռադայ[4]) գոմշին մի ունգանի կմաշեմ.
Ես գութանի խէրին մատաղ։

Ամբոլի լուծն ասաւ. Ինձանում լձեցէք քեալէն,[5])
Ամբոլչին կվախի միշտ փոգակալէն,
Խարազանն ա խղճանմ միշտ սարգալէն,
Ես գութանի խէրին մատաղ։

Սանծկէփի լուծն ասաւ. Իմ տեղս շատ նեղ ա,
Էդ բանի պատճառն ամբոլչու մեղն ա,
Իմ մի ջուխտ գոմէշը գութանին դեղ ա.
Ես գութանի խէրին մատաղ։

Խնձորալուծն ասաւ. Ես եմ սվորացնում լծկանի խամը,
Ես եմ սանծկեփչու իսկ և հախ բարեկամը,
Եղնայ կիմանայ նա իմ տուած համը,
Ես գութանի խէրին մատաղ։

Շնալուծն ասաւ. Դուք գիտէք իմ տեղը դինջ[6]) ա,
Իմ վրի հոտաղը ամեն բանում փուռնջ ա,
Համ թամբալ[7]) ա, համ անգալ, համ լուռ ու մունջ ա,
Ես գութանի խէրին մատաղ։

Հորքի լուծն ասաւ. Զիմնուցդ[8]) շատ եմ քաշմ գութանի
ջափէն[9]),

[1]) Ոչ մի անգամ չվարած հող. [2]) չուտ. [3]) չարչարանք, գործ. [4]) անպէտք, փչացած, հալից ընկած. [5]) կրտած բուղայ. [6]) հանգիստ. [7]) Ծոյլ. [8]) բոլոր. [9]) աշխատանքի ծանր մասը, նեղութիւն։

Digitized by Google

*Ամբօղջին ա տանում բարաքեաթն ու սափէն,*
*Ամենքն էլ ուզում են ինձ մլորեն, խափեն,*
*Ես գութանի խէրին մատաղ։*

*Հորքի լուծն ասաւ. Ով որ պոտոքը վրէս տաշէ,*
*Ուրաքի յըռխի հետ թող իմ մեղքս քաշէ,*
*Թող բանփոգի ըլի, շարիք չմաշէ,*
*Ես գութանի խէրին մատաղ։*

*Հոտաղն ասաւ. Ձիմնուցդ էլ իմ տեղն ա նեղը,*
*Բերում են խաշիլը միջին պօլ տուած եղը,*
*Ուտում ա մաճկալն ու ղլավմ իրա բեղը.*
*Ես գութանի խէրին մատաղ։*

*Համկալն[1]) ասաւ. Ես մաճկալը դուզ կուզեմ,*
*Հախկերի[2]) հէսաբը[3]) մտղար, մտղար կխուզեմ,*
*Կուզեմ, որ ասի, ամեն բանում դուզ եմ,*
*Ես գութանի խէրին մատաղ։*

*Հախկատէրն ասաւ. Աւելացրէք գութանի առը[4]),*
*Հոտաղնի ջան, վեր վառեցէք քաղցր բառը,*
*Մաճկալն էլ թող մորթի մի մատաղ գառը,*
*Ես գութանի խէրին մատաղ։*

*Մաճկալն ասաւ. Ես դուզ եմ, ոչ թէ ծուռը,*
*Կվարեմ հախկերը ես լիաբուռը[5]),*
*Որ Աստուած ինձ դցի ոչ դռնէ դուռը.*
*Ես գութանի խէրին մատաղ։*

*Ցաղար-օղլին պատմեց գութանի սարքը,*
*Էս ա ամեն մի մասալի ձևն ու կարքը,*
*Սրանով ա ապրըմ ալամ[6]) աշխարքը.*
*Ես գութանի խէրին մատաղ։*

---

[1]) Գութանի մէջ մաս ունեցողներից իւրաքանչիւրը. [2]) հողերի այն քանակութիւնը, որ որոշուած է վարելու. [3]) հաշիւ. [4]) հողի այն մեծ տափակ կտորը, որ գութանը կտրում և շուռ է տալիս. [5]) լի ու լի. [6]) Ամբողջ.

## ԵՐԳԻԾԱԿԱՆ ԵՐԳԵՐ

---

### Փեսայ.

Բարով տեսայ, ազիզ փեսայ,
Ոտն ու գլուխդ լիդը ու կէս ա,
Անգաճներդ թըզան պէս ա,
Ունքերդ իշի ունքից գէշ ա։

Քու կերածդ սարի թան ա,
Դու հենց գիդես թէ մի բան ա,
Որ գիդենաս շատ լաւ բան ա,
Քու անումդ փթաթան ա։

Քեզ պէս փէսին փստացնեմ,
Կըտեր ծէրին նստացնեմ,
Մի կտոր հացով կշտացնեմ,
Մի թաս գինով հարփացնեմ։

*
* *

Փէսէն եկել է, թեր խաշեցէք,
Տեհէք ուտմ ա՝ էլ խաշեցէք,
Որ տէսնուք, որ ուտում չի,
Անգաճնուցը վեր քաշեցէք։
(Փեսին ծաղրելիս։)

*
* *

Պառաւ, պառաւ,
Աստոծ ֆոքիդ առաւ։
Մեռաւ, սառաւ,
Էլ յեդ դառաւ։
Պառաւ, պառաւ, չար պառաւ,
Աստոծ ֆոքիդ չուստ առաւ։
(Ասում են վատ, չար պառաւներին։)

*
* *

Ալակոշ, հաւի դօշ,
Կարմիր գինի, սիպտակ լօշ։
(Սեւին ծաղրելիս։)

*
* *

Digitized by Google

*Ձոփուրն ընգաւ կարասը,*
*Մուկը կերաւ էրեսը,*
*(Տաղկատար երեխային չարացնելիս։)*

*
* *

*Քաչալ, քաչալ, քաչ բաշի,*
*Քաչալն ուտի շան կաշի,*
*Իր բաժինը հում բերէք,*
*Մեր քաչալին տուն բերէք։*
*(Քաչալին ծաղրելիս)։*

*
* *

*Չոլախ, չոլախ, չոլ գցէ,*
*Չոլախի ճիտը չըլչոլ դցէ,*
*Եփոր հէրդ տուն կգայ,*
*Ըղաքին սուփրայ գցէ։*
*(Կաղին ծաղրելիս.)*

*
* *

*Չոբան, չոբան,*
*Չոր դդոբան,*
*Մի հաց ունես՝*
*Մկան կերած,*
*Մի կնիկ ունես,*
*Ճակատն էրած։*
*(Հովուին ծաղրելիս.)*

*
* *

*Աղքատն ունէր մի մոզի,*
*Տարաւ էրետ մի խոզի,*
*Ուրբաթ, շաբաթ միս կերաւ,*
*Լիս կիրակի՝ փիս կերաւ։*
*(Պաս ուտողին են ծաղրում.)*

*
* *

*Բոշա, բոշա,*
*Տրտինգ լոշ ա,*
*Մարդդ մեռնի,*
*Գանք թամաշա։*
*(Բոշին ծաղրելիս.)*

## ԼՈՌՈՒԱՑ ԳԻՒՂԱՑԻՆԵՐԸ

*Գինի խմող շուլաւերցիք, աւլուկակեր ճոճկանեցիք,*
*Բաղարճ ուտող արճիշեցիք, կեռ-կեռ դիզան շնողնեցիք,*

Digitized by Google

*Փիչխուլակիր 1) հաղպատեցիք, պտըրաքի հասրաթ ոռնակեցիք,*
*Հարմնասիրուն սանահնեցիք, Թունդ մսակեր մաղանեցիք,*
*Ղոնաղ ղռան 2) աքորվեցիք, փոսում թր... հագվըցիք,*
*Գոմշաբերան ամոջեցիք, քէօխվայ թակող ուզունլարցիք,*
*Մատաղ ուտող արդուեցիք, Ջրչոր էլած այգեհատցիք,*
*Քարից թռած ծաթերեցիք, խլեզախորով դեչաղացիք,*
*Ղուզղուն 3) ուտող կուրթանեցիք, սաթիլջամ էլած ձորագեղցիք,*
*Գիլան խեղդող դսեղեցիք, մեղր ուտող քարինջեցիք,*
*Տանձ ուտող մարցըցիք, տերև ուտող լորուտեցիք,*
*Փետաթակ արած շամուտեցիք, Թուրքի սանամէր աթանեցիք,*
*Թուրքի կնքաւոր ահնիզորցիք,*
*Ջի գողանող-ատկազ ըլող սադախլուեցիք,*
*Կակալ ուտող-տենդախորով գիւլլուբաղցիք,*
*Հարս ճղատող խժռռնեցիք, պոպոք ուտող խոխմելեցիք,*
*Սոմի ուտող օփրէթեցիք, իշխառանչ ուտող չանաղչեցիք,*
*Թուրք սպանող աղքէօրփցիք, արաղ խեղդող պրիվօլնեցիք,*
*Ուռքու կլեպ ուտող ուռուտեցիք, Թարս բունտովչի հայդարբեկցիք,*
*Բադի ծերտ ուտող ղարամահմադցիք,*
*Թուրքի թեջան 4) պատռող-տանող լեջանեցիք,*
*Մեղր ուտող, ծերպին թր... ագարագցիք,*
*Ջհամներ սիրող բերդըցիք,*
*Թանպ միկիտան, տրիցատկի տակը մոմ հալող ջալալ-օղլեցիք,*
*Սալդաթ սիրող գեառգեառեցիք, բողկը ուտող գիւլագարակցիք,*
*Տէրտէր կը . . . հոբալձուեցիք, . . . լոր ուտող վարդաբլուրցիք,*
*Մեռել թոլ անող ղամշուկուտեցիք, մեռել խաշող քոլագիրանցիք,*
*Ղաչաղ 5) պահող շահալուեցիք, քար-ղում ուտող ալեբեքսեցիք,*
*Արևի եփած, անձրևի թակած սըդրբէագդցիք։*

## ԱՇՈՒՂԱԿԱՆ ԵՐԳԵՐ 1)

### ՍԱՆԱՄԷՐ-ՔԱՒՈՐ.

*Ով սիրելիք անգաճ արէք,*
*Գովեմ սանամէրն ու քաւոր,*

1) *Մանրաձուկ ուտող։* 2) *Հիւր սպանող։* 3) *Բադէլի մեծ տեսակ։* 4) *«Թէջան» ասում են ոչխարի ամբողջ մորթուց շինած այն ամանին, որում աղաջուր արած պանիրը հաւաքում են մոթալ շինելու համար։* 5) *Աւազակ։*

1) *Լօռին, որքան ինձ յայտնի է, ունեցել է միայն մի, փոքր ի շատէ նշանաւոր աշուղ, որ ինքնուրոյն երգեր է յօրինել*

Digitized by Google

*Մեր տէրն Նստաւ օխտն աթոռին,*
*Օրհնեց սանամէրն ու քաւոր։*

*Հաւատամք Յիսուս միածին,*
*Մեր ուխտատեղ էջմիածին,*
*Սանամէր մայր Աստուածածին,*
*Մաքուր սանամէրն ու քաւոր։*

*Մեր տէրն իջաւ Յորդանան գետ,*
*Գաբրիէլ, Միքայէլն իրան հետ,*
*Քաւոր էլաւ սուրբ Կարապետ,*
*Ազիզ սանամէրն ու քաւոր*

*Քաւորութիւն պաղ աղբիւր է,*
*Մեռոնն անմահական ջուր է,*
*Սանամէր քաւորի ոտ համբուրէ,*
*Մաքուր սանամէրն ու քաւոր։*

*Քաւորութիւն շատ անչափ է,*
*Չլնի թշնամին ձեզ խափէ,*
*Կանանչ մեռոնը կը թափէ,*
*Խային սանամէրն ու քաւոր։*

*Քաւորութիւն ծանր բեռ ա,*
*Մեռոնն առանց կրակ կեռայ,*

---

*և երգել, դա աշուղ Պայծառն է, Գիւլաքարակ գիւղից, որի կենսագրութիւնը զետեղուած է Գ. Լեւոնեանի «Հայ աշուղներ» առանձին հրատարակած գրքոյկում, և որի երգերի ժողովածուն տըպուած է Բագւում։*

*Ո՛չ յօրինող աշուղներից նշանաւոր են վարդաբլուրցի աշըղ Մարտիրոսը (Իսրայէլեան), որ մի աղջիկ է, Ռեհան անունով։ Չորս տարեկան հասակում կուրացել է և որովհետև լաւ ձայն է ունեցել, ծնողները նրան տղայի շորեր են հագցրել և ուղարկել աշուղ Օհաննէս Աբելեանի մօտ սազի վրայ ածել և երգել սովորելու։ Մինչև այժմ էլ այդ վաթսուն տարեկան աղջիկը տղամարդի շորեր հագած, ահագին փափախը գլխին, հասարակ սազը ձեռին շրջում է Լոռու գիւղերը և աշուղութիւն անելով ապրում։ Կնոջ անապահով դրութիւնը ստիպել է խեղճին տղամարդի շորեր հագնել և տղամարդի անուն կրել։*

*Այստեղ զետեղուած աշուղական երգերը թէև լոռեցիների շարադրածը չեն, բայց Լոռում բաւական տարածուած են, նրանց գրի է առել երջ. Եղիշէ Երզնկեանը։*

Սանամէր որ կայ քաղցր մէր ա,
Օրհնեց սանամէրն ու քաւոր,

Քաւորութիւն ոսկի սին ա,
Ով որ պահէ և ընդունայ,
Ով որ չպահէ չընդունայ,
Դատաստանին սև շուն ա։

Ով որ քառասունք չպահէ,
Աստծու օրէնքը կու փոխէ,
Եւ թէ իզուր քաւոր փոխէ,
Սևերես ա դատաստանին։

Արևն առել է չորս քօշէն,
Կանաչ մեռոնն լցին շուշէն,
Էն ա պահել աշխարհը շէն,
Ընտիր սանամէրն ու քաւոր։

Վանլի-Քիւշար իւր մեղքն է լացեր,
Քաւոր սանամէր գովացեր,
Աստուծոյ սիրտն է. քաղցրացեր,
Քաղցր սանամէրն ու քաւոր։

## ԿԻՐԱԿՈՒ ՄԱՍԻՆ.

Այ քրիստոնէք, անգաճ արէք,
Ծանդր պահէք սուրբ կիրակին,
Մաքուր կացէք, աղօթք արէք,
Պայծառ պահէք սուրբ կիրակին։

Ով կիրակի օր բան կանի,
Սատանան հոգին կտանի,
Օրն վերջին դատաստանի,
Ջի կարող որ պատասխանի։

Ով կիրակի փէտ կը տաշի,
Հոգին կրակը կը մաշի,
Խէր բարաքեաթը կքաշի,
Մաքուր պահէք սուրբ կիրակին։

Digitized by Google

Ով կիրակի հաց կը թխէ,
Գունդը սատանան կ՚փոխէ,
Ջարը բարուն միշտ կը կոխէ,
Մաքուր պահէք սուրբ կիրակին։

Ով կիրակի կերթայ ջաղաց,
Հետը կըբերի թխած բաղաճ,
Կգայ կտենի որդին թաղած,
Մաքուր պահէք սուրբ կիրակին։

Ով կիրակի միշտ կար կանի,
Ասեղն իրան հետ կտանի,
Կը տանի որ աչքը հանի,
Մաքուր պահէք սուրբ կիրակին։

Ով կիրակի էրկանք կաղայ,
Սատանէն դօշին կը խաղայ,
Հոգին բարու հետ կը կաղայ,
Մաքուր պահէք սուրբ կիրակին։

Ով կիրակի կար կկարէ,
Դատաստանին շատ անճար է,
Հոգին նահախ կը չարչարէ,
Մաքուր պահէք սուրբ կիրակին։

Սանամ-Օղլին էր մեղաւոր,
Գաբրիէլ հրէշտակն էր թեւաւոր,
Աստուած է դրել գրաւոր,
Մաքուր պահէք սուրբ կիրակին։

## ԷՋՄԻԱԾԻՆ.

Էջմիածին նոր շինեցին,
Քարը մի ոսկի գնեցին,
Սուրբ Օհան Օձնեցին քաւոր բռնեցին,
Սալբու չինար Էջմիածին։

Էջմիածին բարձր տեղ ա,
Միջումը կայ շատ աբեղայ,
Ամեն խօսքը մի հօր մեղայ,
Սալբու չինար Էջմիածին։

Digitized by Google

Էջմիածին եօթը բղուղ,
Եօթը հարիւր սեւագլուխ,
Ես միշտ կանեմ քեզի ղուլուղ.
Սալբու չինար Էջմիածին։

Էջմիածին նստեց խորին,
Մտիկ տուեց իր ուխտւորին,
Ջիաւորին, ոտաւորին,
Սալբու չինար Էջմիածին։

Ուխտւոր ունէր բոբիկ-բոբիկ,
Մէջքին կապած ալ շալ գոտիկ,
Ինքը հեռու, զօրքը մօտիկ,
Սալբու չինար Էջմիածին։

Դռներ ունի ալաղափի,
Մեռոնն անկրակ կէփի,
Մեզի մեղքէն միշտ կ՚թափի,
Սալբու չինար Էջմիածին։

Մարտիրոսն եմ Խօրասանցի,
Ասկու տակով եմ վրացի,
Քեզ որ տեհայ հաւատացի,
Սալբու չինար Էջմիածին։

## ՍՈՒՐԲ ՕՀԱՆՆՈՒ ՎԱՆՔԻ ՈՒԽՏԱՒՈՐԸ.

Ճանապարհս ընկել ա ապառաժ քարին,
Տարակուսեցի էս անցաւոր աշխարին,
Դու ողորմաս էս իմ անճար եարին,
Ազգի փրկիչ, ով սուրբ Օհան-Օձնեցի։

Քու ողորմութենով դու անչափ ես,
Հաւատով դու չարերին կը կապես,
Էս իմ դուշկուն եարիս դուն ցաւից թափես,
Ազգի հաւատար, ով սուրբ Օձնեցի։

Ջորս բոլորդ քարով հասար ա,
Համաշայ էդ քու լուսդ վառ ա,

Digitized by Google

*Ազատէ սիրուհուս՝ լինիմ քեզ ծառայ,*
*Ազատարար, ով սուրբ Օձնեցի։*

*Կաթուղիկէդ կապած ա սիրուն թաղով,*
*Քեզ գովասանք կտամ համաշայ խաղով,*
*Ազատէ դուռդ գամ ես միշտ մատաղով,*
*Ազգի մատաղ, ով սուրբ Օձնեցի։*

*Արի փրկիր էս իմ սրտիս խոցը,*
*Բորոտին փրկում ա քու Թ՛նդոցը,*
*Անըծեցիր թէ չէ քար դառաւ օձը,*
*Թ՛շնամու յաղթող, ո՛վ սուրբ Օձնեցի։*

*Ես Ջիլավանց Զաքարն եմ լոռեցի,*
*Քու թարիփդ արի, քեզ գովեցի,*
*Երկար ժամանակ ես մոլորուեցի,*
*Ողորմէ՛ր մոլորածիս, ո՛վ սուրբ Օձնեցի։*

## Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

*Գիշերը լեզուիս ազբարը դուն ես,*
*Ես քեզի կաղաչեմ, մայր Աստուածածին,*
*Առաջի Աստծուն բարեխօս ըլես,*
*Աղքատ հոգուս անես ճար, Աստուածածին։*

*Մեր տէրն ձայն տվուց ասաւ էս ով ա,*
*Էն պտուղն որ կերաւ մէրկ էլաւ Եւայ,*
*Ես մեղաւոր եմ, մեղքս անթիւ ա,*
*Մեղքիցս մնացի անճար, Աստուածածին։*

*Տասներկու միլլէթ աչք ա դրել քու լուսին,*
*Գաբրիէլ ողջոյն բերաւ Մարիամ կուսին,*
*Բարխօս ըլես մեզ հետ բարիլուսին,*
*Բալքամ մեզ անես ճար, Աստուածածին։*

*Մեր տէրը որ կգայ Ուռնէին կալը,*
*Էն տեղ կհարցնեն մեղաւորաց հալը,*
*Միրզէն եմ չեմ ուզիլ տունիայի մալը,*
*Արգիս արքայութիւն տար, Աստուածածին։*

Digitized by Google

## ԷՋՄԻԱԾԻՆ

Անմահ պատարագներ բարեխօս ըլլին,
Բալքի տամ գովասանք սուրբ Իջման տեղին,
Օգնական, պահապան արժանաւորաց,
Արժանի չեմ գովեմ սուրբ Իջման տեղին։
Արժանաւոր անեղ առաքելանքը,
Սերովբէք, Քերովբէք, մաքուր կուսանքը,
Գնացի դուռն համբուրեմ, որ մտայ վանքը,
Կայնայ մայիլ էլայ սուրբ Իջման տեղին։
Մայիլ էլայ սուրբ սեղանին, տաճարին,
Լուսեղէն զգեստին, շահ ժամարարին,
Արծաթէ խաչերին, ոսկէ կամարին,
Ծածկոցները զարբաբ էր սուրբ Իջման տեղին։
Ծածկոցն զարբաբ էր, խիստ զանազան էր,
Տասն և վեց բոլորակ վերին դըրան էր,
Լուսարար կու կայնէր ղսմաթ կու հանէր,
Գլուխ վեր կ'բերէր սուրբ Իջման տեղին։
Գլուխ վեր կբերէր, եօթը խորանին,
Կանանչ ու կարմիր մեռոնի ղազանին,
Լուսաւորչու թաղթին, սուրբ աւազանին,
Լաջվարթ զառ հալէր սուրբ Իջման տեղին։
Լաջվարթ էր զառ հալէր, սալվիքն նախշած,
Գաբրիէլ հրեշտակի սուրաթն քաշած,
Զորս սին ունէր մարմար, ռանտած, տաշած,
Աչք պիտէր սէհր անէր սուրբ Իջման տեղին։
Աչք պիտէր սէհր անէր ոսկէ ճաղերին,
Արծաթէ խաչերին, սադափ զաղերին,
Եաղութ, զմրուխթ, ալմաստ, շամչրաղներին
Ակունքներն անգին էր սուրբ Իջման տեղին։
Ակունքներն անգին էր, համ ջաւահիր էր,
Աւետարաններ կազմած, ոսկէհալ դիր էր,
Երանի այն մարդին սրտով կսիրէր,
Մեր Հայոց թագաւոր սուրբ Իջման տեղին։
Մեր Հայոց թագաւոր իջման տեղ կասեն,
Զանգեր կը քաշեն, ժամեր կը խօսեն,
Տեղով վարդապետ, եպիսկոպոս են,
Զայնաւոր շատ էր սուրբ Իջման տեղին։
Զայնաւոր տիրացուք կուգան փուռվառով,
Խաչով, խաչվառով, քաղցրանուշ բառով,

Digitized by Google

*Շարական կարդալով՝ սաղմոսը շարով,*
*Խաչը ջուր կըգցեն սուրբ Իջման տեղին։*

## ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ

*Էս երդրին յարա հաս*
*Դու ես, զօրաւոր սուրբ Սարգիս,*
*Ուխտ էկողին մուրազ կտաս,*
*Մուրազատու, ով սուրբ Սարգիս։*

*Անունդ սուրբ Սարգիս խօսուեց,*
*Որդիդ Թարգիդ մարտիրոսուեց,*
*Խնկան ծառն վրէն բուսնեց,*
*Դու ես զօրաւոր, սուրբ Սարգիս։*

*Սուրբ Քեղարդն Նախչուանայ,*
*Քեզ ուխտ կգան Հընդստանայ,*
*Դուռըդ էկածը հազար ջան ա,*
*Զօրաւոր ես, ով սուրբ Սարգիս։*

*Նստած տեղդ բարձր սար ա,*
*Զորսի կողմդ անդին քար ա,*
*Եկ դու հոգուս մի ճար արա,*
*Դու զօրաւոր, ով սուրբ Սարգիս։*

*Սրտիս մէջը կարմիր բով ա,*
*Զորս կողմերդ անտակ ծով ա,*
*Այվազ զաղէն քեզ կգովայ,*
*Դու ես զօրաւոր, սուրբ Սարգիս։*

## ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏ.

*Շատ երկիր ման էկայ, շատ աշխարհ տեսայ,*
*Չկար հէչ նման սուրբ Կարապետին,*
*Ինքը էր դրախտի մէջ, հոգին էր լուսին,*
*Տաճարը զանազան սուրբ Կարապետին։*

*Ջուխտակ կաթուղիկէ ունի, զօրաւոր խաչ է,*
*Շատ միլլէթ կգայ դուռը կաղաչէ,*
*Ծառայ եմ սուրբ լուսին, բոլորը կանանչ է,*
*Նարգիզ բանէուշ ա սուրբ Կարապետին։*

Digitized by Google

Ղայսարի քաղաքում գլխատեցին, գաղեցին,
Հրէշտակնին հոգիդ լուսով քաղեցին,
Հայրապետներ եկան մարմինդ թաղեցին,
Գլուխն Իւսկուտար էր սուրբ Կարապետին։

Ով իրան հոգին պահի պատուական,
Առաջի Աստըծոյ կլնի սիրական,
Աշղ Վարդանն ասեց ես իմ ծառայական,
Էն Մշու սուլթան սուրբ Կարապետին։

## 'Ի մահ Շիրինի ասացեալ.

Չի այդպէս լուռ երևիս, ով քաղցրաբարբառ Շիրինի,
Ամենայնիւ լեզուագէտ՝ թութակ ճարտար Շիրինի,
Վայ է հայրդ թողեցիր դու անմխիթար, Շիրինի,
Կուզէր ընդ քեզ միռանել, թէ լինէր ճար, Շիրինի,
Կասէ լոյսն իմ փոխեցաւ այսօր խաւար, Շիրինի։

Միշտ ասում է վայ աչացս չէի տեսել երանի,
Ով իմ հարազատ որդի, քաղցրալեզու պատանի,
Քո կինդ սևահագուստ ո՞նց պահեմ որ ա՛խ չանի,
Կամ թէ փոքր գառներիդ ո՞ր մինն Անուշ անուանի,
Քայքայեցիր օթևանս այսօր իսպառ, Շիրինի։

Համարեա մէկ լոյս էիր բոլոր Հայաստանի մէջ,
Ամբիծ անուն ունէիր ողջ Ռուսաստանի մէջ,
Էրևանուց սկսած մինչի Հընդստանի մէջ,
Թէ որ լսին այս լուրը՝ ցաւէ աշխարհ, Շիրինի։

Վայէ հօրդ քո ծերացեալ թողեցիր կսկծալով,
Թողեցիր կինդ սիրելի ուրախ խնդումէն լալով,
Վայով փոքրիկ գառներդ դեգերում են ողբալով,
Ասում են. Հայրս ո՞ւր է, այս է դժուար, Շիրինի։

Մի՛ լար, հայր իմ ծերունի, մահը մարդկանց համար է,
Տէրը տուեց, տէրը առաւ, միշտ դատաստանն արդար է,
Կին, մի տրտմիլ մահուանս որ Շիրինին յօժար է,
Սէրն Արարչին չի ցաւէք, մահուան համար Շիրինի։

Ով եղբարք իմ սիրելիք, սխալմունքս ներեցէք,
Ի՛վան իմ սիրոյ պատուին, ծնողացս սիրեցէք,

Digitized by Google

Խրախճանաց անուշս միտ բերեցէք,
Ինձ տեսնելով ձեզ լացէք, փոքր ինչ համբերէք,
Վերջը դուք գալոց էք այս ճանապարհ Շիրինին։

1857 տարուն Վաղարշապատ աշխարումը,
՚Ի Մայիսի ինը թվին եղև այս կատարումը,
Գուրջի-Նաւէն այս լուրէն ցաւով էր բազարումը,
Ոչ գոյ հնար և ոչ ունի, և ոչ հնչէ բառ Շիրինի։

## ԳՈՎԱՍԱՆՔ ԼՈՌԻՍ ՄԵԼԻՔԵԱՆԻ.

(Ղարսայ գաւառապետ եւ գվարդի պօլկովնիկ ժամանակ.)

Ցնծա, Արարատ, որ գովածս ուղղափառ հայ է,
Երկար միջոցին քո սպասած պտուղն սա է,
Եթէ պիտոյ լինի՝ ազգին կեանքը կընծայէ,
Մտքով հինամեայ, իսկ հասակով դեռ երեխայ է,
Լօռու Մելիքեան բարձրապատիւ ծնողաց տղայ է։

Ինքն անքուն՝ միտքն անհուն՝ աշխատաւոր սարդ,
Դէմքն շքեղ, հասակը ծեղ, իշխանաց մէջ զարդ,
Գեղեցկատես, ծիծաղերես՝ մէկ նոր բացուած վարդ,
Մինչ չի խօսի, էն ով կասի, պատկեր է, թէ մարդ,
Հայոց ազգի յոյսն դա է, Տէր, դու խնայէ։

Բերան պիտի, որ լաւ գովի սորա արարքը,
Բնութիւնը, մարդկութիւնը, սրբակաց վարքը,
Աստուած պահի, որոնք լինին՝ նորա սատարքը,
Ջի փութապէս մուծցեն զնա դիւցազնից շարքը,
Որ պարծենայ Հայաստանն, թէ՛ որդիս դա է։

Ո՛վ պաշտելի և տօնելի Եօթը վիրաց պատկեր,
Ո՛վ անաչառ, բազմաչարչար Լուսաւորիչ մեր,
Ո՛վ հրաշալի և սքանչելի Հայկազին սուրբեր,
Դուք եղէք այս իշխանիս հովանի և տէր,
Որ այժմ մեր աչքն ճիշտ սըրան կը նայէ։

Սէյեաղ, մի գովիլ այս իշխանին, որ միշտ միայ լաւ,
Որին գովեցիր, յայտնի տեսար, վերջը լաւ չէլաւ,
Որի ասեցիր՝ սա Ցակոբն է, նա էլաւ Եսաւ,
Նրանց հիմը քայքայուած էր, սա է հաստատ նաւ,
Այս խօսքերս ժամանակին ձեզ կը վկայէ։

1854 Թ. Ղարս.

## ՀՈՒՐԻ-ՓԱՐԻՆ.

*Ժամ էր գնում այսօր տեսայ մէկ ջիւան,*
*Եա փարի էր, եա հուրի էր, եա ղլման,*
*Ունքեր ունէր ղալամ քաշած աննըման,*
*Մտաւ ժամը, իմ սիրտը բռնեց դուման։*

*Դուրթսաղ դառայ մինչ դուս էկաւ ժամիցը,*
*Կամ էր տուել յետ չի դառաւ կամիցը,*
*Ցանկարծ տեսայ դուս գալիս համամիցը,*
*Հոտ քաշեցի էն ջուխտակ շամամիցը,*
*Նա ինձ սիրեց, ես էլ սիրեցի նըրան։*

*Մտիկ տուի որ նա ինձ հետ սէր ունի,*
*Ասի, Աստուած, եարաբ սրան տէր ունի,*
*Ղուղրաթ ղալամով քաշած ունքեր ունի,*
*Հարցրեցի մէկ հոգեսէր մէր ունի,*
*Միտք արեցի, եարաբ սրան ինձ կը տա՞ն։*

*Մինա բոյը, երբոր տեսայ հաղ արի,*
*Սարսաղի պէս ընկայ յետնէն վաղ արի,*
*Ուշունց տվեց ու անըծեց, տաղ արի,*
*Բիւլբիւլ էի, վարդ տեսայ, փարվաղ արի,*
*Հէնց որ տեսայ, հալս էլաւ փարիշան։*

*Գլխին գցած Ալքիրմանու շալ ունէր,*
*Սիպտակ բոխաղ վրէն ղոշայ խալ ունէր,*
*Մատանքումը եաղութ, ալմաս, լալ ունէր,*
*Գիւրջի-Նաւուն համ էլ ողորմալ ունէր,*
*Հոգու տէր ես, կտրիր դու ուղիղ դիվան։*

## ԽԱՂ ԹԷՋԼԻՍ.

*Էս աշխարհիս ախ չեմ քաշել,*
*Քանի որ սաղ ես ինձ համար,*
*Անմահական ջրով լիքը՝*
*Ոսկէ բուղաղ ես ինձ համար։*
*Թէջլիս, տուբէիթ, վարսաղ,*
*Իրանու խաղ ես ինձ համար։*

*Մատուռմդ ունես անգին ակը,*
*Լեզուտ է հիլ ու միխակը,*
*Ծոցիդ միջի մանուշակը,*
*Քու ձեռով քաղես ինձ համար։*

*Ակուիքներդ ալմաստ տաշած,*
*Մտիկ տալէն ջանս է մաշած,*
*Ունքերդ ղալամով քաշած,*
*Հնդու վարաղ ես ինձ համար։*

*Դու ինձ համար խիստ լաւ եար ես,*
*Ծոցիդ մէջը միխակ շարես,*
*Մի պատուական անգին քար ես,*
*Ոսկէ բուղաղ ես ինձ համար։*

*Խօսքեր ունիմ էսպէս բերած,*
*Շատ դաւթարի մէջը գրած,*
*Բանդայ-Աբէլ էշխէտ էրած,*
*Սրտի բուղաղ ես ինձ համար։*

«ԴՕՏԱՂ-ԴԷԿՄԷԶ»*)

*Սիրելի կշտիցս էկար անցկացար,*
*Խէթ խէթ աչք ածեցիր, խիալդ ի՞նչ ա,*
*Էլած խելքս գլխէս առեցիր, գնաց,*
*Էլի կրկին գալդ գնալդ ի՞նչ ա։*

*Հանեցիր կէս ջանս, ինձանից տարիր,*
*Սրտիս դաղ քաշեցիր, խաթր չի արիր,*
*Խաթր անելու տեղ՝ քար ու քանդ արիր,*
*Գեահի գեահի շախշախ խընդալդ ի՞նչ ա։*

*Ջանիս ջիդա, Նաշտար, խանջալ ես ցըցել,*
*Իստակ սիրտս լերդ լերդ արիւն ես լցել,*
*Նահախ ինձի անճար կրակն ես գցել,*
*Ջես հարցնիլ հարգիս թէ՝ հալդ ի՞նչ ա։*

*Հէրիք էշխիդ սիրով չիշերը քաշես,*
*Դնես կրակն էրէս, ջիգեարս խաշես,*

*) Այս երգը կոչւում է շրթունքները միմեանց չ'կպչող, աշուղների առա-ջարկութիւնների մի ձև է։

Թէ ինձի յետ առաջ՝ սիրով սրտաշ ես,
Էլի նահախ քարեքար տալդ ի՛նչ ա։

Դալ ղաթդին սազ կը գայ, ալը նարինջին,
Հէյրան արար խելքիդ շադ ու զարինջին,
Ասել ես ջալլաթին խեղդի Թուրինջին,
Էլի խնայելգ, ինձ խղճալդ ի՛նչ ա։

## ՄՈՒԽԱՄԲԱԶ.

(Եարալու իմ եարի ձիռնէն,
Մէկ փիալայ խալի ձիռնէն։)

Արի մօտս ձիռնէս բռնէ, ման գանք մէտի վարդի վրէն,
Ծաղիկ ես, թաց ես էլէլ դուն անմահական Ջըրէրեմէն,
Եաշիլու բաշ Սօնայ ես՝ դուս ես էկել սուրուէմէն,
Ջաւահիր, անգին քար ես՝ հանած անտակ ծովէմէն,
Շատ սիրուն ես, աննըման ես, բէզարել եմ գովէլեմէն։
Խնդրում եմ հետդ տանես, ես դաստուր տաս ես սպանես,
Ջէն եմ տալիս, ձէն չես տալիս, եարաբ էտ ի՛նչպէս իսան ես,
Ոսկէ վարագով նաղըշած՝ եարաբ էտ ի՛նչ ասկական ես,
Ասկուտակդ օրինած է, անպատմելի զանէզան ես,
Սարսաղի պէս ման եմ գալիս մի բէյբափայ եարի վրէն։
Ինձ խաբեցիր խաղուբազով՝ սպանեցիր էտ քու նազով,
Դամ անենք սոյբաթով սազով՝ թէկուզ խեխտէ դաստայ մազով,
Մէկ մէկու սիրենք թաւազով՝ ծոցումդ ունես գիւլ նարգիզով,
Քեզ պահեմ ոսկէ ղափազով, ինձ մի սպանիլ էշխիդ ջազով,
Եարաբ ես քեզ ինչ գէթ արի՝ մանես գալիս ինձ ղարազով,
Գիշեր ցերէկ փիքր եմ անում էս իմ փիս իղվալի ձէռնէն,
Եարալու իմ եարի ձեռնէն, մէկ փիալայ խարի ձեռնէն։
Բոյդ նման է չինարի՝ մէջքդ շիմշատէմէն քաշած,
Անչափ հեռու ման ես գալիս ջանս քեզանից է մաշած,
Էրծըթէ լուլայ մատներդ ըղնկներդ սադափէն քաշած,
Ծոցիդ միջի ջուխտ շամամը ոսկէ վարագով նաղըշած,
Աչքերդ մի փիալայ, ունքերդ ղալամով քաշած,
Անչափ քաղցր խօսիլ ունիս, էրվել եմ ես՝ քու լիղվեմէն,
Եարալու իմ եարի ձեռնէն, մէկ փիալայ խալի ձեռնէն։
Գռօշներդ ղըմզի է՝ շարմաղէ քու պատիկ չանէն,
Շատ սիրուն դուն դուս էկար քուլլու գոված Գուրջիստանէն,
Սիրովդ բանդ ես արել Դարբանդ, Ղուբայ, Փռանգստանէն,

Digitized by Google

*Քեզ համար շատ մանեկայ՝ եադտի եալթուզ Դաղստանէն,*
*Խօյու երկրի մաթտահ եմ՝ նոր եմ էկել Հընդստանէն,*
*Քու համը բալքամ դուս գայ՝ Ղզլար, Մոսկով, Հաշտարխանէն,*
*Ուրախ սրտով ըռահմ արա բէչարայ Ղաչախ-Օղլանին,*
*Գժուել եմ էշխիդ դարդիցը՝ բանդայ զուլ եմ ես քու ձեռնէն,*
*Եարալու եմ եարի ձեռնէն, մէկ փիալայ խալի ձեռնէն։*
*Գիշեր ցերէկ փիքր իմ անում էս իմ փիս իղվալի ձիռնէն։*

## ՍԻՐՈՒՆԱՆՑ ՍԻՐՈՒՆԸ.

*Էսօր ես մի գիւզալ տեսայ,*
*Խիստ նազանի ջան էր, սիրուն,*
*Ջան ասելով՝ ջան լսելով,*
*Կռնէս բռնեց տանէր սիրուն։*

*Տարաւ աղաքիս դրեց հաց,*
*Հէնց ծիծաղեց խելքս գնաց,*
*Լոյս էրեսին կամար կապած,*
*Խալերը մառջան էր սիրուն։*

*Խալեր ունէր, եաղութ եաման,*
*Ես քեզ սիրեցի բէգուման,*
*Լոյս էր տալիս արեգական,*
*Երեսն աննըման էր, սիրուն։*

*Ես քեզ սիրեցի հաւասով,*
*Համ՝ գինի տուր չինի թասով,*
*Եկ խաղ ասենք քաղցր սասով,*
*Ինձ հետ զովղեր անէր, սիրուն։*

*Զովղ անելը սիրոյ բան էր,*
*Ցետոյ սէրն միաբանէր,*
*Ոսկի թելերը քամին տանէր,*
*Թամամ զառնըշան էր, սիրուն։*

*Զառ նշանի թելերը թամամ,*
*Ինքն էր սիրուն, օդն էր համամ,*
*Ծոցումը կար մի ջուխտ շամամ,*
*Ծաղկախառ բոստան էր սիրուն։*

Digitized by Google

*Ծաղկախառ բոստան էթաղէն,*
*Էս էր միշտ իմ խօսքիս սաղէն,*
*Մեծարք արաւ իր օթաղէն,*
*Ղուլ անելով տանէր սիրուն։*

*Ղուլ անելով խելքս տարաւ,*
*Գինի տուաւ, չեթող ծարաւ,*
*Ղուլ Արութին Թարիֆդ արաւ,*
*Էս էլ մի Թովրան էր սիրուն։*

*Վերոյիշեալ երգը շատերը ղուլ Թադէոսին են տալիս, շատերն էլ ղուլ Արութիւն Սալմաստեցուն։*

*
* *

*Ախ քու ջամալիդ մատաղ,*
*Խելք ու քեամալիդ մատաղ,*
*Կեանք ու ահվալիդ մատաղ,*
*Դովլաթ ու մալիդ մատաղ։*

*Բնած տեղդ բաց չիլիս,*
*Ես գնում եմ լաց չիլիս,*
*Համարցակ նըստած չիլիս,*
*Խոնարհ մանգալիդ մատաղ։*

*Ըռանգով աբրեշում ես,*
*Պատկերի պէս նաշխուն ես,*
*Սիրեկան ես, սիրուն ես,*
*Թիրմանու շալիդ մատաղ։*

*Գիւլաբաթնով կարած դօշիդ,*
*Կամ ես տալիս քու խօշիդ,*
*Մեռնեմ ես քու մաումառ դօշիդ,*
*Ջէյրան—մարալիդ մատաղ։*

*Բաւական է ամանչես,*
*Սումբուլի պէս կանանչ ես,*
*Շամչի Բալին քեզ մօտ կանչես,*
*Ձէնով ղաւալիդ մատաղ։*

*
* *

*Հայաստան չկայ քեզ պէս գեօզալը,*
*Դօշդ լցրել ես զըմրուխտ ու լալը,*

Սպիտակ բուխաղիդ վրի ջուխտ խալը,
Ոսկէ շարքը ճակատիդ է յարմարած,
Փիալայ աչքերդ ղալամով քաշած։*)

Նազուք մէջքիդ կապած մինա քամարը,
Դու ես իմ սիրելի գոված եարը,
Աշխարհումը չկայ բոյուդ յարմարը։

Կաքաւ ես, ման ես գալի բաղումը,
Նոր դուս էկած շամամ ես թաղումը,
Ջիգեարս էրել ես եփման եղումը։

Ստամբօլից դուս էկած նոր նմուշ ես,
Արզրումից հեռացար, հիմայ էլ Մուշ ես,
Երկնային մանանայի պէս անուշ ես։

Վարդ, մանուշակ հոտով փնջած թայգուլ ես,
Սոխակից քաղցր երգող բիւլբիւլ ես,
Դարճի-Օղլանին դու համեմատ եար կուլես։

*
* *

Ասամդ ինջի, պռօշդ մերջան,
Ում սէր չի տվիր, կրակուեց նրա ջան,
Գիշեր ցերեկ, դադար չունի ու դինջան,
Ունքերդ կամար, աչքերդ փնջան։

Արի՛ բան ասեմ, հոգուս դուռն ես,
Թայգուլ ու ռեհան ու ջուխտակ նուռն ես,
Ցորդանան սուրբ գետի դնացկան ջուրն ես,
Դու ես Ադամայ դրախտին դռնապան։

Դու ամենալիք պտղաբեր բաղ ես,
Շամամներդ ծոցիդ փաթաթուած թաղ ես,
Թէ մէկն ինձ չի տաս, սիրտս կը դաղես,
Ում ծուռը նայես կորած է յաւիտեան։

Հաքել ես մախմուր ու խարայ ատլազը,
Որ առնուած է տասը մանէթ գազը,

*) Պրկնել ամէն տան վերջը։

Ամեն օր ուտելիքդ է խորոված ղազը,
Ինձ գործից գցել ես ծառայ ես շինել քու դրան։

Շատ գեղեցիկ ես, Արեւան գառն ես,
Դրախտան միջի դուս եկած ծառն ես,
Առանց աջալի դու հոգի կառնես,
Ողջ աշխարհումը չկայ քեզ նման։

Ինչի՞ ես այդպէս անում, դեռ ջահել ես,
Ազնիւ սէրդ ինձանից խնահել ես,
Դարճի-Օղլանին մօտդ պահել ես,
Ոչ փոքր կանես, ոչ մեծ, ոչ իշխան։

*
* *

Այսուհետեւ Թիաս բարով, ով իմ գովական սիրելի,
Քու խորհրդով կամ քու կամքով չկայ քեզ նման սիրելի,
Արի տուր ինձ, մօտս պահեմ, քեզնից մի նըշան, սիրելի,
Ցաւիտեան չմոռանամ, զի ես պատուական, սիրելի։

Մատումդ ոսկի մատնիք, ձեռքիդ էրծաթի թաս ունես,
Հագել ես զար ու զարբաբ ատլասի պէս խաս ունես,
Մտել ես ղափաղի մէջ, կարթալու հաւաս ունես,
Ձայն կը տաս բուլբուլի պէս, ձայնդ գովական, սիրելի։

Եկ դոհանամ ես համաշայ, մեր ստեղծող տէրի կարքին,
Նրա ստեղծած պատուիրանքի, օրինաւոր սէրի կարքին,
Ծղուբ-Օղլին էլ չի տեսել քեզ պէս Նազանի սարքին,
Միաւին մինչի դատաստան Թիանք մշտական սիրելի։

ԹԷՋԼԻՍ·

Շիրինը քաշեց Բահրատի ջափէն,
Դուս էլաւ դուս փորեց սէ, այբ, բէ,
Աշխարհս ման էկայ Նազանի չգտայ,
Ես քեզի նման եչ, այբ ու բէ։

Աշխարս մանգալով էշխիցդ բայ չեմ,
Դէմքիդ ծառայ եմ, ձեռքերս խաչեմ,
Բէմուրւաթ Նազանի, էսչափ կաղաչեմ,
Մազեամ քու սիրտդ է քէ, այբ, ու բէ։

Digitized by Google

*Աշխարհումս, մէջլիս խղվալ կացել եմ,*
*Գիշեր ցերեկ կանգնել ճամփէդ լացել եմ,*
*Բէմուրվաթ նազանի, գարդէդ հիւանդացել եմ,*
*Ի՞նչ կլի մէկ անես ճէ, այբ ու բէ։*

*Արազլու Սարքիսն եմ խօսքս քեաս հա քեաս,*
*Հարջէիլ ես հետս մտել բաս հա բաս,*
*Քու Աստուածդ սիրես ձուր որ կերթաս,*
*Ինձ մի թողուր, տիւն, այբ, բէ։*

*Այսօր սիրունների սարգարը տեսայ,*
*Ջամալն կարճ ու խիդար խէ, այբ, լիւն,*
*Բոյին նմանցուցի սալբուդար չինար,*
*Ղադն զուեար հաքել էր հոյ, այբ, լիւն։*

*Ագեար սաղդ եար ես իղրարիդ կացիր,*
*Անումդ կարդացի թամամ օխտը գիր,*
*Եաղութ, զմրուտ, ալմաստ քար ես ջաւահիր,*
*Հէչ քեզի դին չունիս մէն, այբ, լիւն։*

*Սալմաստլի Արութինն եմ անել մի ինքար,*
*Քեզի հետ շատ նստանք, էլանք բարեբար,*
*Նաֆազդ խնկելի, լեզուտ է շաքար,*
*Գոօշդ նման է պէ, այբ, լիւն։*

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ. [1]

*Ծնուեց ոչ, մեռաւ.* (Ադամը)
*Զորս ախպէր, չորսն էլ մի գդակի տակի.* (Աթոռի ոտքերը).
*Սև սլիկը սարն էլաւ,*
*Անհամբարքը վեր էկաւ։* (Ածելին).
*Արէն ծովին ջուր կը խմի,*
*Ֆուշանդի պէս ձէն կը հանի։* (Ամպը).

---

[1]. Լոռեցիները հանելուկին «բունգլն» են ասում։ Երեխաները խաղալիս մինն ասում է. «էն ի՞նչն ա ինչ-լար ու լար, երգար ու լար, էրկու կաքաւ գնալու գալ»։ Միւսներն աշխատում են գտնել և ամէն մինը մի բան է ասում։ Գտնողն իրաւունք է ստանում ինքը հանելուկ առաջարկելու, իսկ եթէ չեն կարողանում գտնել, ասողը վարձատրութիւն է ուզում, որ ինքը բացատրի։ Սրանք էլ տալիս են նրան այս կամ այն գիւղը, քա-

*Բռնեմ բռնովս մին,*
*Վեր թողում աշխարովս մին։* (Ամպը).
*Մի կով ունենք հանդի ա,*
*Պոզերը կռմանդի ա,*
*Խանըմ պտի որ կթի,*
*Աղայ պտի, որ բէջարի։* (Այգին).
*Էրկու ախպէր վազմ են, վազմ իրար եղնայ՝ հասնմ չեն։* (Անիւները).
*Ըրիգունը վեր ա գալի, ըռաւօտը վեր ըլում.* (Անկողինը)։
*Ցերեգը նորահարս, քշերն ղարաւաշ.* (Անկողինը).
*Քշերը լքցըւմ ա, ցերեգը դըրդակվմ.* (Անկողինը).
*Մի բան կայ, ամեն բանի պէտք ա գալի.* (Անունը).
*Էն ի՞նչն ա, որ ո՛նչ ծէր ունի, ո՛նչ տուտ.* (Աշխարհը).
*Բռնեմ բռնովս մին,*
*Վեր թողամ աշխարովս մին։* (Աչքը).
*Սև սալա, սիպտակ սալա,*
*Խաթունը միջին կըսըլսըլայ։* (Աչքի լոյսը).
*Գուճուր ղուլթիկ ծպկներաւոր։* (Աչքերը).
*Էրկու ախպէր իրար կարմ չեն տեսնալ։* (Աչքերը).
*Մսէ տուն, մազէ սրահ։* (Աչքը).
*Մսէ աղլուխ, մսով լիքը։* (Աչքը).
*Քշերը աղայ, ցերեգը ծառայ։* (Աչքը).
*Ըստի նստի, ընդի նստի,*
*Դէ՞հ կըտրովը դուս թռի.* (Արեգակի շողքը).
*Ըստի պուպուզ,*
*Ընդի պուպուզ,*
*Մ'նէլ տեհար,*
*Կտրովը դուս։* (Արեգակի ճառագայթ).
*Էս կուռը դար, էն կուռը դար, մէջը անդաթար.* (Առուն).

*Մի կալ, միչին մի ծառ, ծառի գլխին օխտը օթախ, օխտը օթախըմը օխտը ասեղ։* (Արեգակը և ճառագայթները).

*Մի ծով կայ, էրէսին քիր ու ախպէր ման են գալի գեամով։* (Արեգակը և լուսինը),

ղաքը, արեգակը, լուսինը, աստղեր և այլն։ Ապա ասողը սկսում է այսպէս. «ուտեմ, խմեմ ձեր քաղաքը (կամ գիւղը, արեգակը, լուսինը և այլն.), հալեմ, մաշեմ ձեր քաղաքը, գար փարչէնին շոր կարեմ, կնանոնց էլ փախցնեմ, բայց չես ասել, էն էրկու կաքաւը, որ գնում գալիս են, լիմնիակն ու արեգակն է, որ երգնքի վրայ ման են գալիս»։ Եթէ համաձայնում են նրա բացատրութեան, մի ուրիշն են ասում, իսկ եթէ ոչ՝ վիճում են և տուած գիւղն ու քաղաքը յետ առնում։

Digitized by Google

*Քիր ու ախպէր մի դըղըմ քշեր ցերէկ իրար եդնայ վազըմ են, ամա հասնըմ չեն։ (Արեգակն և լուսինը).*

*Մի ոչխար ունեմ, ոտովը ջուր ա խըմում։ (Արտը).*

*Կարմիր հինեմ, կանաչ թել տամ, սիպտակ կտրեմ։ (Արտը).*

*Էն ի՞նչն ա ինչ, քինթը ոսկուց, միրուքը մսից։ (Աքաղաղը).*

*Ելնելու սար, կանչելու ձոր, մեռած մարթին կենդանութին։ (Աքաղաղ).*

*Էն ի՞նչն ա ինչ, մի ծիտ մի տուն ա պահըմ։ (Բանալիք).*

*Մի պտրհան, մէջը լիքը սեպեր։ (Բերանը և ատամները).*

*Գեղնի տակին սև կծիկ։ (Բողկը).*

*Պապս գեղնի տակին, միրուքը ըրէսին։ (Բողկը),*

*Սև ա, ակռաւ չի,*
*Թուփ ա շինըմ, վարպետ չի։ (Բողոճը).*

*Էն ի՞նչն ա ինչ, սև հաւ ա, փորը ճղած։ (Բուխարին).*

*Ալ եզը,*
*Ջալ եզը,*
*Քանի բարցեմ,*
*Տար եզը։ (Գդալը).*

*Սարէն կգայ սլվլալէն,*
*Ոսկէ բեղեր պլպլալէն։ (Գերանդի).*

*Երգէն մարթ, կարճ գըւազան։ (Գետը և կամուրջը).*

*Մութը տուն,*
*Իսանի բուն։ (Գերեզմանը),*

*Էն ի՞նչն ա ի՞նչ՝ կարմիր բուղէն գետնի տակին գոռում ա։ (Գինու կարասը).*

*Արաբ օղլին բեղն ըլօրեց,*
*Օխտը հազար ջան գլորեց։ (Գիշերը).*

*Մի ծառ ունեմ՝ էրկու տերև ունի, մինը սիպտակ, մինը սև։ (Գիշեր և ցերեկը).*

*Լուն նստեց կարպետին,*
*Խաբարը գնաց վարպետին։ (Գիրը և թանաքը).*

*Գլխավէր բռնեմ՝ լեցուի, դվեր բռնեմ՝ դըդակուի. (Գլխարկը).*

*Հազար ասեմ, հազար դասեմ,*
*Հազար գեղ տուր, որ քեզ ասեմ։ (Գիրքը).*

*Հուլունքանոց, հուլ պըտանոց,*
*Ուլանն էկան կարմրակտուց։ (Գորգը).*

*Էն ի՞նչն ա, որ մօրիցը անձեռն, անոտն ա ծնվըմ։ (Գորտի շերեփակոթը).*

*Ջորս չորթան,*
*Տասնէրկու սուլթան,*

*Հնգեր են կերթան։ (Գութանը).*

*Էն ի՞նչ պուշ ա, որ էրկու թև ունի, էրկունն էլ մի կոխկի վրայ։ (Գութանը).*

*Էն ի՞նչ ա ինչ, քառասուն պոչ ունի, ութանասուն ոտը։ (Գութանը).*

*Մի ֆոր ունեմ, ամեն ռանգի պատաքար ունի. (Գուլպան).*

*Հինգ ախպէր մի ֆորըմը բանըմ են. (Գուլպան և մլերը).*

*Ալնգլնգա, պա լնգլնգա,*
*Զիթ մինթանայ, գանգին ընգայ։ (Գրքակալ և Աւետարան).*

*Ցանեմ աճար, դուս գայ բանջար, շուշը տայ շիմալ, բոլոր կճուճ։ (Դդումը).*

*Թոգը ջուր տամ, մոզին ուռչի. (Դդումը).*

*Ղնգղնդանը ըխպըհարին, հլօրկոտունը չափարին։ (Դգումը).*

*Մէրը իրեք տարեկան, որդին բազարը գնաց. (Դեղձի ծառը).*

*Գուճուր էր, չորս գեղ քանդեց,*
*Վենձացաւ գեղինը փորեց,*
*Եփ որ մեռաւ, աշխարհ ման էկաւ։ (Եզը և իւր կաշին).*

*Վազանք, վազանք,*
*Օխտը դռան դէմ առանք. (Եկեղեցու խորհուրդները).*

*Էն ի՞նչ կենդանի ա, որ լղին քմակին ա։ (Եղջերուն).*

*Էփի, էփի, էփն ա վրէն,*
*Ոտները ցից, խուփն ա վրէն։ (Եռոտանին).*

*Ասլանը չոքեց, արաբը վեր էլաւ։ (Եռոտանին և կաթսան).*

*Ինքը մին ա, ոտը երեք։ (Եռոտանին).*

*Մի ձի ունենք իրեք ոտնանի, ո՛նչ պոչ ունի, ո՛նչ գլուխ։ (Եռոտանին),*

*Էն ի՞նչ տուն ա, իրեք դռնանի, իրեք սնանի, մի կտրանի. (Եռոտանին).*

*Ես տուն վռնդեմ, դուն դուս վռնդիր։ (Երկանքը).*

*Տափակը տփակին,*
*Խօլոզը ծակին։ (Երկանքը).*

*Խալչէն թափ տալ չի ըլիլ.*
*Ոսկիքը հմբարիլ չի ըլիլ։ (Երկինք և աստղեր).*

*Գոմշի կաշին ծալուիլ չի,*
*Ծովի աւազը հըմբարուիլ չի։ Երկինքն ու աստղերը).*

*Մի սարի ծէրի էրկու ծիտ ծլվլում են իրար հետ. (Զանգակները).*

*Բացըրմը էրկու աղունակ ծըլվըլում են։ (Զանգակները).*

*Ըղզի, ըղզի, հինգ կորզի,*
*Վայ իմ մի տարեկան մոզի։ (Զկեռը).*

*Ծպռոտ հաւը թառին։* *(Ջկեռը).*
*Բացրիցը վէր ընգայ, հին գտակս կորաւ.* *(Ընկոյզը).*
*Ղօշունն ասմ ա ըտի ի՞նչ ես շինմ, շորդ հանի, դուս արի.* *(Ընկոյզը).*

*Մութը մառան,*
*Ջուխտ Աւետարան։* *(Ընկոյզը).*
*Մի թորոն, էրկու հաց, մի քերինջ։* *(Ընկոյզը).*

*Ինքը ուռի,*
*Թամքը թուռի,*
*Ինքը առաւ,*
*Թամքը թռաւ։* *(Ընկոյզը).*

*Վեր ունեմ ու վեր քցեմ,*
*Հազար տեղան մէր քցեմ։* *(Թամբը).*
*Էն ինչ ծառ ա, որ անծախկել բար ա տալիս.* *(Թզենին).*
*Ջին ձորը քաշեցի թամքեցի, սանծկը երգինքը դուս էլաւ։* *(Թոնիրը).*
*Բոլոր եզեղեցի, կուպ-կուպ քաղեցի.* *(Թոնիր և հացերը).*
*Ախը գնաց, չախը եղնէն։* *(Թուխսը).*
*Ցելը սիպտակ, սերմը սեւ։* *(Թուղթն ու թանաքը).*
*Մի գոմէշ ունենք, ինքը մինչի կռանը, պոզերը դըրսի կռանը.* *(Թուրը).*

*Մութը տուն,*
*Արաբը քուն։* *(Թուրը).*

*Ձորը մութն ա,*
*Ուշաբը մէջն ա,*
*Դժարը պըտիտ գալն ա։* *(Թուր).*

*Էն ո՞վ էր, որ ասեղը թուր շինեց,*
*Թուրքի զօրքին ջուր շինեց։* *(Զօրապետ Լազարեան).*
*Էրվըմ ա, էրվըմ ա, էլի թաց ա.* *(Լեզուն).*
*Էն ի՞նչն ա ինչ, ինքը մի ամսական, մի ամիս էլ ապրըմ չի.* *(Լուսինը).*
*Հզար հակը, հզար պհակը, հզար գեղ տու քէ ասեմ։* *(Խաղողի ողկոյզը).*
*Հանդի քօթուկ, գեղի իշխան։* *(Խանը).*
*Ի՞նչն ա ի՞նչ, բոզ եզը գետնովը տամ.* *(Խլինքը).*

*Ջորսի կուռը դար,*
*Մէջը արդար։* *(Խմորի տաշտը).*

*Փետէ պըլօլաք,*
*Թօզից ճըլօլակ,*
*Սիպտակ հլիւոր,*

Դեղին թագաւոր։ (Խնոցին, խուղը և թանը).
Երգէն քուչայ,
Մէջը փուչ ա։ (Խնոցին).
Իրեք ոտնանի, վեց պոզանի։ (Խնոցափէտերը).
Մազէ կլօլակ,
Դեղին ճլօլակ,
Սիպտակ հլիւոր,
Դեղին թաքաւոր։ (Խնոցին և կարագը).
Ղնդնդան ախպահարին,
Ըլօրկոտուն չափարին։ (Խոզը).
Մի կով ունիմ, կաթն ա տալիս,
Քշեր ցէրէկ տուն չի գալիս։ (Ծառը).
Էն ի՞նչ ծառ ա, որ կրակն ա ընգել էրւում ա, հմա էլի տերևը կանանչ ա։ (Ծաղկագարդի ուռենին).
Քշերը դրդակվում ա,
Ցերեգը լքցվմ։ (Ծալքը).
Քշերը քանդմ եմ, ցերեգը շինմ։ (Ծալքը).
Ըստի ճոքմ եմ, Բաղդադ ջուր խըմում։ (Ծիածանը).
Ձիգ ձիգ, ձիգ չուան,
Ձիգ չուան ա տափի պէս,
Ըրևանայ վարդի պէս։ (Ծիածան).
Էն ի՞նչ ա ինչ, Ըրևանայ տափի պէս,
Կանանչ ա Նախչվանայ վարթի պէս։ (Ծիածանը).
Բարցր տան ա, սև ստանայ,
Թէ որ գտնուս, խելքի բան ա։ (Ծիծեռնակը).
Մի սարի դօշին էրկու բօքոն։ (Ծծերը).
Էրկու սիրուն կուլայ մի պատից կախ։ (Ծծերը).
Էն ի՞նչն ա ինչ, Ըստծանէ երեք բան ա պակաս։
(Ծովին խուփը, երկնքին սիւն, ջորուն քուռակ).
Մի պապ ունեմ, օխտը քրքանի։ (Կաղամբը).
Գլխինը սիպտակ թաս ա,
Շորերը դասուէ դաս ա։ (Կաղամբը).
Փէտէ աման, քարէ բրթոշ։ (Կամը).
Սև ա սաթի նման,
Սիպտակ ա կաթի նման,
Իլիկ ա իլկի պէս,
Պուլիկ ա պուլկի պէս։ (Կաչաղակը).
Անծինը անծնին բարցեցին,
Անդաթարովը անցկացրին։ (Կամուրջ և ջորի).
Երգէն էրէց, կարճ գւագան։ (Կամուրջը).

Digitized by Google

Մենձ ախպէրը պուճուրի եգնայ վազմ ա վազմ, հասնըմ չի։
(Կառքի անիւները).

Սիպտակ հլիւոր,
Դեղին Թոքաւոր։ (Կարագ).
Ջուրն եմ գցում,
Թաց չի ըլում,
Դուս ենք բերում,
Պինդ ա մնում։ (Կարագը).
Ջրէ տուն՝ փէտէ բլանիք։ (Կարմիր ծովը և Մովսէսի գաւազ.).
Փէտէ օքմին, էրկաԹէ գլուխ։ (Կացինը).
Սարի դօշին կէս հաց։ (Կիսալուսինը).
Մի էծ ունեմ, խօսկին շատ դրուստ ա, պոչը մէջկիցն ա կպած։ (Կշիռը).
Մի խօրոմ խոտ, կոխկը ցխոտ։ (Կուժը).
Փուչ ծառը փորեցին,
Առուն մէջը ֆորեցին։ (Կուժը).
Ի՞նչն ա, որ իմ մէրը ռաւօդը հանայ կարմիրը բաց արաւ։
(Կրակը)։
Մի գոմէշ ունեմ, որդի պարկըմ ա, խոտ չի դուս գալիս։
(Կրակը).
Մէչը դժողք, ղրաղը ղրախտ։ (Կրակը).
Իմ պապը սարըմը, ոտները կրակըմը։ (Կրակախառնին).
Մէրը դեռ չի ծնել, տղէն գանգատ ա գնում։ (Կրակը և ծուխը).
Էս կուռը դար ա, դար չի,
Էն կուռը դար ա, դար չի,
Խոտ ա ուտըմ կով չի,
Ջու ա ածըմ հաւ չի։ (Կրիան).
Էս կուռը Թախտ ա,
Էն կուռը Թախտ ա,
Մէջը ղալ ու ղախպայ։ (Հայելին).
Էս կուռը արար,
Էն կուռը արար,
Մէջը զնգզնգան քարափ։ (Հայելին).
Թուր ու Թւանք Թամքումը,
Ջուխտ աղունակ վանքումը։ (Հարսն ու փեսէն).
Անդանակ խազած, անտորոն ներկած. (Հաւի կատարը).
Ջալ եզը մէրին մտաւ։ (Հրացան).
Կովը բռանչի, ֆօրԹը փախչի։ (Հրացան).
Փէտի գրեզման, էրկաԹի մեռել։ (Հրացան).
Մէրը գոռաց, ըրէխէն փախաւ։ (Հրացան).

*Օձէ գուլթան, կարճ է հոտաղ։* (Հրացան).
*Տապանը փէտ ա,*
*Մեռելն էրկաթ ա,*
*Ծփոր ձէն կտայ,*
*Աշխարհը կթնդայ։* (Հրացան).
*Ամեն փէտ կէրի կրակին,*
*Աբլախը ման գէր ծմակին։* (Հրացան).
*Էն ի՞նչն ա ինչ, մէրը ըրօրօցըմը, ըրեխէն փորումը,* (Հրացան).
*Էն ինչ թռչուն ա, որ ոնչ միս ունի, ոնչ ոսկոռ։* (Հոգին).
*Մէյդ ունեմ ծախուիլ չի,*
*Քշռքումը քաշուիլ չի։* (Հոգին).
*Էն ի՞նչն ա ինչ, նրանից անոշ բան չի կայ.* (Հոգին).
*Ծիտը թռաւ, բունը մնաց։* (Հոգին և մարմինը).
*Դեղին հինեմ, սիպտակ գործեմ, կարմիր կտրեմ.* (Հոնը).
*Ուլանոց, որպրտանոց,*
*Ուլանը էկան կրմրակտուց,*
*Ծրերեակ ծըըրմեակ,*
*Ծըըմին փիր ու զանգակ։* (Հոնը).
*Մի կով ունենք անանայ,*
*Պոզերը Սպահանայ,*
*Լաւ պարոն պտի բռնի,*
*Լաւ խաթուն պտի, որ կթի։* (Ջիթահանքը).
*Մի գոմէշ ունեմ, սարումը կթում եմ գեղումը եղ հանում։* (Ջիթահանքը).
*Ոսկռէ բղուղ, էրկաթէ սեպեր։* (Ջիի ոտքը և պայտը).
*Քշեմ չկէլ Ըրեւան,*
*Մանդրը մանդրը քրեղան։* (Ջիու պայտը).
*Վայ նանի ջան գէլ ա գալիս,*
*Ծառի ամբուլ վէր ա գալիս,*
*Ոտներ չունի, ման ա գալիս,*
*Բերան չունի, կուլ ա տալիս։* (Ձմեռը).
*Մի հորթ ունեմ, թոկով ա ջուր խըմում։* (Ձմէրուկը).
*Օլօր անցնի, բօլոր անցնի,*
*Ջնգլին տամ դուս բացուի։* (Ձմերուկ կտրելը).
*Դվէր քարւան, դվէր քարւան,*
*Ոնչ խոտ կուտէ, ոնչ դարման։* (Ջուկը).
*Ըփին, ըփին,*
*Ընգնի խփին,*
*Օխտը ծուէն,*

Digitized by Google

Պատուած ծովէն։ (Ձուկը).

Էն ի՞նչն ա ինչը, Աստոծ մի տուն ա շինել, ոչ դուռ ունի, ոչ կտուր։ (Ձուն).

Մի պատ կայ, որ մի քար հանես, շինուիլ չի։ (Ձուն).

Մէջը վարշաւ, էրէսը էրծաթ. (Ձուն).

Սիպտակ ըլաչուխ, ոչ դուռն ունի, ոչ կտուր։ (Ձուն).

Հով հալած,
Տաք սառած. (Ձուն).

Հինգ փութ աղի մէջ ինչ կերակուր ա էփվում, որ էլի ըլանի ա. (Ձուն).

Շնչաւորից անշունչ էլաւ,
Անշունչից շնչաւոր. (Ձու. ճուտ).

Սիպտակ օբայ,
Դեղին քօբայ։ (Ձու).

Մի բերդ ունիմ՝ դըսից էրծաթ, միջից ոսկի, որ աշխարքս վրայ գայ, կարալ չի շինել։ (Ձուն).

Մի աման, մէջը էրկու ռանգի ջուր։ (Ձուն).

Էն ի՞նչն ա ինչ, ղրաղը էրծաթ, մէջը ոսկի։ (Ձուն).

Մի հետ ծնեց, էրկու հետ մեռաւ։ (Ղազարոսը).

Արճիճ կածեմ, էրծաթ կհալեմ։ (Ճաճը և արաղը).

Թուրքի տղէն վազէ վազ,
Գոտիկ ունի հարիր գազ։ (Ճանապարհը).

Ծալմ եմ, ծալմ, ծալվմ չի։ (Ճանապարհը).

Մի փօրում էրկու ալապստրակ խաղ են անում։ (Ճլկահորի փէտերը).

Մի օձ ունեմ, հուլը յուխին։ (Ճրագը).

Օձը ծովըմը, հուլը բերնըմը։ (Ճրագը).

Ինքը պուճուր, կերը շատ։ (Ճրագի պատրոյգը).

Անվարիլ դուս էկաւ, հնձեցինք կերուաւ ոչ։ (Մազը).

Էն ի՞նչ ճամփայ ա, որ գնում են, էլ գալիս չեն. (Մահը).

Համ գիդեմ, համ գիդամ ոչ։ (Մահը).

Պուճուր Աստոծ, տակին ձին ա գալի։ (Մազը).

Էրն ըրըրվէր, տակին ձին գէր։ (Մազը).

Սեւ է սեռը,
Ոսկէ բեռը։ (Մանուկը).

Դամա-ղամայ լէգզու ղամայ,
Լաւ ձիու պէս փռնգում ա։ (Մանգաղը).

Ծառի ծէրին կորկաֆոր։ (Մասուր).

Կարմիր պուլիկ, սև սիրէկ։ (Մասուրը).

Իմ պապը սարումը,

Ոտերը շորումը,
Ծուտերը փորումը։ (Մասուրը).
Ծպոտ պատաւ, ծառի ծէրին։ (Մասուրը).
Մաէ շամփուր, էրկաթէ խրոված։ (Մատանի).
Տասը ախպէր ոսկէ քանքուլ։ (Մատերը).
Տասը եզն ունեմ, տասնի ճակատն էլ պէծիկ ա։
(10 մատերի ծայրերը).
Էրկաթի լուլայ, մսի գիւլլայ։ (Մատնոցը և մատը).
Կոխկոճն ուտում ա, բերնովը վեր ածմ։ (Մարագը).
Միսը հալչըմ աղ ա դառնըմ,
Որ աղը հալչըմ ա, ի՞նչ ա դառնմ։ (Մարդու հոգին).
Ըրկու թող, ամէնքը մի դօշմ։ (Մարդու թևերը).
Երգէն աղիք, ծէրը ծաղիկ։ (Մեծ պասը).
Մէրը ըրօրօցըմը, ախչիկը տղայ բերեց։ (Մեղուի ձագ տալը).
Քուրդը գնաց, քուրդը էկաւ,
Քուրդը քրդին բարով չերէտ։ (Մեղուները).
Էն ի՞նչ քեարվան ա, էն ծուր ա գնում, որ չի՞մն էլ սաքուլ ոտով են եդ դառնում։ (Մեղուն).
Դաստէն էկաւ, դաստէն գնաց,
Դաստէն դաստին բարով չտվուց։ (Մեղուն).
Էն ի՞նչն ա ինչ, մէր ունի, հէր չունի։ (Մեղուն).
Անջուր ջաղաց,
Անկրակ բաղաճ։ (Մեղրահացը).
Վրէն դնենք ինքը չի իմանալ։ (Մեռածը).
Ուղտը գնաց լնգլնգալէ,
Ծուտերը յէդնէն մնգմնգալէ։ (Մեռելը).
Գնըմ եմ գնըմ, եդնէն հասնըմ չեմ։ (Միտքը).
Ըստի չոքեմ, Ըրևան ջուր խմեմ։ (Միտքը).
Ի՞նքը կեռ, յաքին կընգեռ,
Հենց կերթայ, ոնց որ մկծեռ։ (Մկրատը).
Մի ոչխար ունենք, որ մորթես արին չի գնալ։ (Մոթալը).
Գեդնի տակին բուրթ պլոճիկ։ (Մուկը).
Էն ինչ ղուշ ա, որ մնգերը քմակիցը երգար ա։ (Մորեխը).
Կարմիր գառը,
Խոտի հետ խառը։ (Մորին).
Սիպտակ հինեմ, կարմիր թել տամ, սև կտրեմ։ (Մոշը).
Թև ունի, թռչում չի, կծում ա, շուն չի։ (Մորեխը).
Մի խոբոմ խոտ չի վեր ունիլ, հազար գլուխ ապրանք վեր կունի։ (Մրջիւնի բունը).
Էրկու ձողի մի դօշըմ վեր ընգած։ (Ցոնքերը).

Digitized by Google

*Մի սար էրկու թոկով կապած ա։* (Յօնքերը).
*Տարին հինգ օր, օրը մի ծաղիկ։* (Նաւակատիկ).
*Բունգլը բլիթ մի շահի,*
*Կէսը կի, կէսը պահի։* (Նշխարք).
*Մի ցոփոլ մէջը լիքը կարմիր հուլունք։* (Նուռը).
*Դրսիցը խաս ա, միջիցը հզար։* (Նուռը).
*Դրսից պըսպըղոց,*
*Միջից ղըլղըլոց։* (Նուռը).
*Դրսից սիպտակ, միջից կարմիր։* (Նուռը).
*Ոսկէ կճուճիկ,*
*Մէջն անուշիկ։* (Նուռը).
*Ուլանոց, ուլկտանոց,*
*Ուլանն էկան կարմրակտուց.* (Նուռը).
*Մի օթաղ մի օթաղըմ, օխտը օթաղ մի օթաղըմ։* (Նուռը).
*Ինքը ուռի, թամքը թուռի,*
*Ինքը ուռաւ, թամքը թռաւ։* (Նուռը).
*Ինքը մին, մէջը հզար։* (Նուռը).
*Ծառի ծէրին ցորնի փոր։* (Նուռը).
*Պիծի թոռոն, շէղջով լիքը։* (Նուռը).
*Սև եզը չլեմ, չուլն ուտեմ։* (Շաջը).
*Երգէն էրէց, քինթը կեռ։* (Շամփուրը).
*Ոչխարի պէս ըրածըմ ա, ջուր չի խմում։* (Շերամը).
*Ինքը գօլումը, պոչը չօլումը։* (Շերեփը).
*Ասըմ եմ արի, արի, գալիս չի,*
*Ասըմ եմ գալ մի, գալ մի, գալիս ա։* (Շրթունքը).
*Էրկու հրեշտակ,*
*Մի փշի տակ։* (Ոչխարի պտուկները).
*Ցողըմը թաղեն փթիլ չի։* (Ոսկին).
*Գղինձը հալըմ ա, դմակը մըրըմ։* (Ոտը և ոտնամանը).
*Լարը քաշեմ, սարը գայ։* (Ուղտերի քարվանը).
*Մի ծակ, էրկու ծակ, հազար ու մին ծակ, միջինը ի՞նչ ա, մի լաւ զանգակ։* (Ուռկանը).
*Մի կուռը միս, մի կուռը կրակ,*
*Մէջտեղը գոմշի օրինակ։* (Չիբուխը).
*Պուճուր թորոն, շղճով լիքը։* (Չիբուխը).
*Ունք ունի, բունք ունի,*
*Տերև չունի, ճուխկն ունի։* (Պախրի եղջիւրը).
*Մի բխուրակ, մազով լիքը։* (Պաճիճը).
*Ինքը իրան է, ոտները ծիրանէ։* (Չահրէն).
*Ինքը փէտէ, դունչը մազէ,*

Ես կքաշեմ, նա կը վազէ։ (Ջահրէն),
Շունը մեռաց, դունչը ուռաւ։ (Ջահրէն).
Հայ անգառը, անգառը,
Ծափ տու Թող գայ լանգառը։ (Ջահրէն).

Էն ի՞նչն ա ինչ, ես ընրա յեգնէն կերԹամ, նա իմ յեդնէն գալ չի։ (Ջուրը).

Ջին գնաց, չուլը մնաց։ (Ջուրը և կամուրջը).

Մի ձորըմ էրկու արջ քոլոլ քոլոլ են գալիս։ (Ջրաղացի քարերը).

Ձեռով բռնեմ, փէտով կտրեմ։ (Ջրաղացի ջրոտանը).

Գորտոմն ուտում ա, կըռնգովը վեր ածմ։ (Ջրաղացը).

Էն ի՞նչն ա ինչ, աշխարին կշտացնըմ ա, ինքը անկշտըմ ա։ (Ջրաղացը).

Փորովը ուտըմ ա, մեջքովը վէր ածըմ։ (Ռանդէն).

Գոքս կդնեմ, լաց կըլի,
Վեր կդնեմ, մունջ կըլի։ (Սազը).

Ալալայ, Թալալայ, տար խաղ արա, բի քաշ արա։ (Սազը).

Սարիցը գալիս ա սարի պէս,
Կռները մենձ ծառի պէս,
Կաղնըմ ա, որ ջուր խմի,
Ձէն ա ածում ուլի պէս։ (Սայլը).

Օխտը ախպէր ջրի էն ղըաղին, օխտը էս ղրաղին, իրար մոտիկ են տալի։ (Սայլի ճաղերը).

Աքտամ, լոք տամ,
Քեանքուլիցդ ձիգ տամ։ (Սանդերքը).

Իմ պապը մի կարմունջ շինեց,
Ան կացին, ան ուրագ, հազար ջան վրովը անց կացաւ։ (Սառած գետը).

Քար եմ, հմա քար չեմ,
Արև կանի, կհալչեմ։ (Սառոյցը).

Էն ինչ վարպէտ ա, որ իրա ախլնին համ վէր ա ածըմ, համ հվաքըմ։ (Սարդ).

Սիպտակ ցանեմ, կանանչ հանեմ։ (Սերմ).

Ըռաւոդը ախչիկ, ճաշին հարսը, ըրիգունը պառաւ։ (Սինդրիկը).

Էն ի՞նչն ա ինչ, անկրակ կէրի, անջուր կհանքչի։ (Սիրտը).

Ի՞նքը սարին, փլփիլը փորին, միխակը ծէրին։ (Սկիհը).

Էն ի՞նչն ա ինչը, որ մորԹւող ոչխարը լաց չի ըլըմ, մորԹող ղասաբն ա լաց ըլըմ։ (Սոխը).

Մի հատ ոտնանի, որ դուս գայ, գէլը կտանի։ (Սունկը).

Digitized by Google

Մի սնանի դարբաս անի։ (Սունկը).
Մի ըլաչուխ մի սնանի։ (Սունկը).
Մի սնանի, հազար տիտկանի,
Դուս մի դալ, գէլը կտանի։ (Սունկը).
Ունք ունի,
Բունք ունի,
Տերև չունի,
Ծուխկն ունի։ (Սունկը).
Բացրը տան ա,
Սև սատանայ,
Թէ գթնուս,
Խէլի բան ա։ (Ստինքները՝.
Սարի դօշըմը խմորի էրկու գունդ ա ընգած։ (Ստինքները).
Մի սարի դօշին էրկու բօքոն։ (Ստինքները).
Կրակն ընգնի էրուիլ չի,
Ջուրն ընգնի խեղդուիլ չի։ (Ստուերը).
Քանի գնաս եղնէտ կգայ։ (Ստուերը).
Էն ինչն ա ինչ, սեխը ոտիցը կապած ա։ (Վազը).
Դուզ հէր, ծուռտիկ մէր, խէլօք քիր, գիժ ախպէր։
(Վազը իւր ճուխով և գինով).
Թուրքի տղէն վազ է վազ,
Գօղիկ ունի հարիր գազ։ (Վիլարարը).
Մի եզը ունենք, չկէլ պոչը կտրում չենք, տուն չի մտնում։
(Տանձը).
Մի ծառ կայ, տասնէրկու ճուղն ունի, ամէն ճուղն էլ եռեսուն խնձոր, ամեն մի խնձորի կէսը սև ա, կէսը սիպտակ։
(Տարին, ամիսը, ցերեկն և գիշերը).
Իկլիկ, Թիկլիկ, Թիլանի,
Ջորս սնանի, մի կտրանի։ (Տունը).
Էն ինչն ա, որ կապըմ ենք ման ա գալի, վեր ենք թողըմ քնըմ ա։ (Տրեխը).
Ցերեգը ման ա գալի, ըրիգունը ըռխաբաց վեր ա ընգնում։
(Տրեխը).
Տակնուց փլանեմ, վերնուց քաշեմ։
(Տրեխն ու տրխաթելերը).
Որ կապեմ կերթայ, վեր թողամ կմնայ։ (Տրեխը).
Գղինձը կհալչի, դմակը չէ։ (Տրեխը).
Ափալաս, ափլիփալաս,
Անըմը տամ, ոչ իմանաս։ (Փալասը).

Գլուխը կտրեմ, սիրտը հանեմ, ջուր տամ խօսի։
(Փետրեայ գրիչը).
Էն ո՞ր կենթանին ա, որ օխտը տարէնը մհետ ա ցուլ գալի։
(Փիղը).
Կարմիր կաշի, սիպտակ միս, սև ոսկոռ. (Փշատը).
Իմ պապը ծմակըմը, ոտները կրակըմը։ (Փուքսը).
Պուճուր ծիտը մարթին սիրէկան։ (Փողը).
Էն ի՞նչն ա ինչ, մարմին չունի, ձէն ունի։ (Քամին).
Երգէն էրէց, քինթը կեռ։ (Քարշիկը).
Մի մնանի,
Էրկու տնանի։ (Քարշիկ).
Դուրսը միս, մէջը կաշի։ (Քարճիկը)
Մի օթախ էրկու դռնանի,
Քշեր ցերեկ միշտ կբանի։ (Քիթը).
Եղիցը լաւն ա, մեղրիցը քաղցր։ (Քունը).
Բազարըմը ծախուիլ չի, քշրքըմը քաշուիլ չի, քանց էն ա-
նոշ բան չկայ։ (Քունը).
Ասլանը չոքեց, ղափլանը վեր էլաւ։ (Օղիի կաթսան).
Գեղնի միչին մի շամփոր։ (Օձը).
Դռան տակին չալ ղամշի։ (Օձը).
Մարթ կսպանի ձեռքեր չունի,
Մանէ գալիս ոտներ չունի։ (Օձը).
Ջան ունի, ձէն չունի, շոր ա հաքնըմ, ձեռներ չունի։ (Օձը).
Սէլէ սուման,
Նախշէ թուման։ (Օձը).
Արխանայ, թարխանայ,
Մէչը լիքը բարխանայ։ (Օրօրոցը).
Մի քոշ, միջին մի խլապոշ,
Քացի տամ քոշին քունը տանի։ (Օրօրոց).

---

## ԱՇՈՒՂԱԿԱՆ ԿԱՊԱՆՔՆԵՐ.

Աշուղ էն ո՞ր տարին էր,
Հին էր, ոսկէ դարին էր,
Մի տեղ մի մատաղ մորթեցին,
Էն էլ անմիս, անարին էր։

(Աբրահամի մատաղը).

Digitized by Google

Աշուղ անունդ ա Բանգի,
Արի խօսենք ուրիշ հանգի,
Էն ինչ վարդ էր մի օրումը
Բացուեց, ծաղկեց երեք ռանգի։

(Առաւօտ, ցերեկ, երեկոյ).

Ոնչ հէր ունի և ոնչ մէր,
Ոնչ քիր ունի, ոնչ ախպեր,
Թէ որ լաւ չի ծառայես,
Քեզ կը թողու միշտ անտէր։

(Աստուած).

Մի ասլան կայ էրեսը արին,
Ման է գալիս ամբողջ տարին,
Ծովն ա մտնում ու դուս գալի,
Ոչ միս ունի, ոչ արին։

(Արեգակ).

Աշուղ, հէնց այս առաւօտ,
Մի բան տեսայ զարմանքոտ,
Մի կենդանի ծնուեցաւ,
Ոչ ձեռք ունի և ոչ ոտք։

(Արև).

Էն ինչ ղուշ է, թևերը լիս,
Լիս ա տալիս շատ խալիս,
Բայց երբ երկինք է թռչում,
Ոսկոռ չունի և ոչ միս։

(Բոց).

Ինքը զօրեղ իշխան է,
Կեցարանը անպէտ բան է,
Ողջ աշխարքին կշտացնում է,
Սակայն ինքը անկշտան է։

(Թոնիր կամ հացի փուռ).

Աշուղ, ծարաւ եմ, ջուր կուզեմ,
Էս հաղաղս տուր, կուզեմ,
Հէչ վարպէտի ձեռք չդիպած,
Քեզնից ես մի թուր կուզեմ։

(Լեզու).

Մի ծէր մարդ կայ, սրբի բաս ա,
Գլխինը սիպտակ թաս ա,

Շորերը ծալուկ դասուէ դաս ա,
Կամ գտի կամ հախս սամ։

(Կաղամբ).

Առաջին տաղը չորս,
Դուգունը չորս, տաղը չորս,
Էսօր մէկ զարմանք տեսայ,
Խմողը մէկ՝ սաղին չորս։

(Կովի պտուկները).

Էն ի՞նչ ղուշ է, նախշ ու նկար է,
Հագուստը դիփ ալ ու զար է,
Խոտ է ուտում կասես ոչխար է,
Ջուր չի խմում, անհնար է։

(Հրդեհ).

Աշուղ, թէ միտքդ ա սուր,
Իմ ասածիս ջուղար տուր,
Մի թասում կայ երկու ջուր,
Կամ զտի, կամ սապդ տուր։

(Ձու).

Աշուղ, խօսքիս ականջ տուր,
Շատ մի խօսալ կցկըտուր,
Էն ի՞նչ տուն է որ շինուեց,
Ոչ դուռն ունի, ոչ կըտուր։

(Ձու).

Աշուղ կասեմ մէկ ջրից,
Համ գրից է, համ փրից,
Էն ինչ լղնորդ էր որ լղեց,
Ջուրը փախաւ երկրից։

(Մովսէսի գաւազանը).

Էն ով էր որ գին արաւ,
Անմեղ արեան գին առաւ,
Նախ իւր հօրը սպանեց,
Ապա մօրը կին առաւ։

(Ցուղան).

Քեզանից օխտը գեղ կուզեմ,
Խօսքիս պատասխան կուզեմ,
Արև չտեսած էրընջից,
Ես անհարել եղ կուզեմ։

(Նաւթ).

Digitized by Google

*Աշուղ, էտ խի՞ ես ննջում,*
*Ես գրում եմ, դու ջնջում,*
*Էն ի՞նչ ղուշ ա, որ երբ շնչում ա,*
*Փորիցը ծաղիկ ա փնջում։*

(*Շերամի որդն*).

*Ղուշը սիրում է իր ճուտին,*
*Հաւը մեռած է իր կուտին,*
*Էն ի՞նչ ղուշ է, ծնում է,*
*Ծիծ է տալիս իր ճուտին։*

(*Չղջիկը*).

*Աշուղ էրեսդ ինձ թէքի,*
*Կուպես կանգնի ու չոքի,*
*Ես քեզանից միս կուզեմ,*
*Ոնց որցի ըլի, ոնց էքի։*

(*Սունկ*).

*Մի ձի ունեմ անսանձ ա,*
*Կնիկս անպսակ անձ ա,*
*Էրկու անոսկոռ գառը կերայ,*
*Թէ որ գտնուս մեծ գանձ ա։*

(*Ստինքներ*).

*Մի ոչխար կայ, խիստ շատ չաղ է,*
*Իւր չորս ոտով նա միշտ կաղ է,*
*Մարմին ունի, բայց շունչ չունի,*
*Ման չէ գալիս, այլ տութսաղ է։*

(*Տիկ կամ տկճոր*).

*Աշուղ, էն ի՞նչ գործիք ա,*
*Երկաթ ու փէտ չի, բայց կարիք ա,*
*Երկրագործը եթէ չունի,*
*Չի՛ կարող, որ գործի գայ։*

(*Փոկ*).

*Մարմին չունի նա ինքը,*
*Կուզէ կերթայ երկինքը,*
*Չես կարող հանել, գտնել,*
*Թէկուզ ման գաս գետինքը։*

(*Քամի*).

Digitized by Google

## ԱՌԱԾՆԵՐ

*Ախչիկ դառար՝ լաւ դառար,*
*Հարսը դառար՝ ցաւ դառար։*
*Ախչիկը որ կայ, անկտրել ձմերուկ ա։*
*Ախչկանը որ իր կամքի թողուս, զուռնաչուն մարթի կերթայ։*
*Ածովի ֆօղը, ասովի խօսքը կենալ չի։*
*Ակռաւի խնամին կչեղակը կլի։*
*Անի տարին էրազը շատ կլի, մահի տարին խարարը։*
*Ամեն կնգայ 30 մախալ խելք են տվել։*
*Ամեն մարդ իր փայ աղքատն ա։*
*Ամեն մարթ իր հըմար աղօթք կանի։*
*Ամեն ծառ շամի չի ըլիլ։*
*Ամեն փլաւ ուտիլ չի ըլմ, ամեն խօսք ասիլ չի ըլմ։*
*Անդէր մնաս դուռն բողազ, ինչ կը տեննաս կը դողաս։*
*Անձրևի արևը թեժ կլի։*
*Անձրևը քարըմը չի տակն անել, խրատը յիմարըմը։*
*Անհախ ընացնել կլի, համա անճաշ ըլիլ չի։*
*Անճարն ա կերել բանջարը։*
*Անորդի—անֆոքի։*
*Անջուր բոբկանալ մի։*
*Աչկը արթար լաւ ա, քանց միտքը մեղաւոր։*
*Աչքի չըտեսութինը անձի կուսութին ա։*
*Աստուած մին ա, հազար ա ստեղծել։*
*Աստոծ օխնել ա հան, օխնել ա չէն, հմա անիծել ա հան ու չէն։*
*Ատեմ ատելուն, սիրեմ սիրելուն։*
*Ատելական քարը պատի գլուխը էլաւ։*
*Ափսուս քու ամակը,*
*Էլաւ իշի քամակը։*
*Բանը քանի հնանայ,*
*Էնքան կը շնանայ։*
*Բարատու ծառին քար քցող շատ կլի։*
*Բարեգամը շատ արա, ղօնաղխանէդ մինը։*
*Բարովը կը բարցրանայ, արևը կը ցձանայ։*
*Գառնիցը շուն ա ծնմ, շանիցը պառը։*
*Գիդենալը մարիփաթ չի. պահելն ա մարիփաթ։*
*Գէլիցը վախողը ոչխար չի անիլ։*
*Գէղըցին գէշ բանից ըմանչիլ չի, հէսաբից կըմանչի։*

Digitized by Google

Գժի համար ամեն օր Զադիկ ա.

Գժի աղունը Աստուծ կաղայ.

Գոմշի գլուխը ծանդրն ա, տիբոնչը կքաշի.

Գրողը իր որթուն անծիլ չի.

Գովական ձիու վերչը բեռնատարութինն ա.

Դարդակ կարասը ղայմ ձէն կածի.

Դարդակ փէտին շուն չի հաչիլ.

Եզը եզան հետ կքաշի, ամա ըրածելը Աստուծ գիդի.

Երուսաղէմ գնացողը փօքին ընդի թողմ ա, անփօքի եդ գալի.

Եկէյնիցը սով կըլի, չորէյնիցը չէ.

Ես ուստայ, դուն ուստայ,
Բա մեր ախպը ով գուս տայ.

Զանքաշի սիրած փէսէն անէրը սիրիլ չի.

Զիզի շորեր, սև սև օրեր.

Էշըգի համար լաց ըլողը աչքից չուստ կընգնի.

Էրնէկ էն կնգանը, որ ռնչ ախչկայ դլուխ ա լուանում. ռնչ մածնիցը խնոցի հարմ.

Էշը մատաղ չի ըլիլ, իշի գինը հու կըլի.

Էշը իբա սատկելը կուգի, թէ գիդենայ, որ տիրոնչը վնաս կըլի.

Էրէխէն օխտը ղամարից մինը կնքաւորին կը գցի.

Էրկու սարթը իրար հետ աչեր չեն անել.

Էս օրուայ խօսքը էքուցուայ կարմունջն ա.

Ըլարողի ապրանքը լաց կըլի.

Ով ըլարի ոչ դլարի.

Ըրէխի ուշկը խաղին կըլի, սիրտը՝ պէծին.

Թաքուն ցուլ էկողը աշկար կըծնի.

Թշնամուս մեռնիլը ասիլ մի, նրա բաժանքը ասա ախպօրիցը.

Թոլ ըլող քարը մամուռ բռնիլ չի.

Թռչուն կայ, որ միսն ա ուտմ,
Թռչուն էլ կայ, որ միս են ուտացնում:

Ժամ քանդելը մի արին ա, սիրտ քանդելը էրկու.

Ժէռ քարը լաւ ա, քանց անգութ սիրտը.

Իշին որ խոնար տենան, Ջրիցը Ջուխտ կընստեն.

Իմաստուն մեղաւորը լաւ ա, քան թէ արդար յիմարը.

Ինչ ուզըմ ես արա Պօղոսը Պետրոս չի ըլիլ.

Ինչ տեղ ումուդ չունես, ընդի ա խոտ դուս գալի.

Իսանը հում կթնակեր ա, էհտիբար չունի.

Իսանը ռնչ անմեռ ա ծնըմ, ռնչ անբաժանք.

Իսանի աչկը փօղը կը կշտացնի.

*Լաւ ա մորթես, քան թէ մորթուիս.*
*Լիզուն շաղվմ ա, խօսքը դրուստ ա ասըմ.*
*Լծանը լծընգեր ա պէտք.*
*Լուիցը որ արին առնեն, էլ տեղը ինչ կմնայ.*
*Խաչը խաչապաշտին խռով կը կենայ.*
*Խաչը տէրը զօրաւոր կանի.*
*Խելքից թեթևը ոտից եգին կլի.*
*Խելք ունես, քեզ համար պահի.*
*Խելքը վենձութենըմը չի ըլմ, գլխումն ա ըլմ.*
*Խօզը զանչաքով կորկի արտից դուս չի գալ.*
*Խօզի գլուխը խալչին կենալ չի.*
*Խունգ ու մոմով սրփերին էլ կը խափենք.*
*Խռովկանը չվէլ աղլուխի ցմաքելը կարալ չի խռով կենալ.*
*Խօսողի խօսքը կտրիլ մի, սովածին խօսացնիլ մի.*
*Ծաղիկը ծաղկած ծառից կ՚թափի.*
*Ծակ հուլունքը գեղնին մնալ չի.*
*Ծանդր նստի, փութ կը գաս.*
*Ծէծը դրախտիցն ա դուս էկել.*
*Ծիծը որ ծիծ ա, ծոցըմը իրար կը կպչի.*
*Ծիտը էրազըմ կորեկ ա տենըմ.*
*Ծիտը ցորեն տենալիս ըկանաթը աչկը չի գալի.*
*Եա գժի հետ խօսելես, եա գարի հաց ես կերել.*
*Կամաց րանի, կամաց մի ուտի.*
*Կաշառքը դադաւորի աչկը կը քոռացնի.*
*Կաշառքը դժոխկմը լիս ա տալի.*
*Կարիքը թշնամու դուռն է տարել.*
*Կարմիր ձու տուր, կարմիր օր տամ.*
*Կեղծաւորութինը կէս առաքինութին ա.*
*Կծու կծու, փառք Աստծու.*

*Կնգայ բերած փողը դաան զանգակ ա, անց ու դարց անելիս ճկատիդ կդիբչի.*

*Կուժը ջրի ճամփին կը կոտրուի.*
*Կտրած հացը կպչիլ չի, կոտրած սիրտը դզվիլ չի.*
*Հալալ քեռին ինչ արաւ, թէ խորթը ի՞նչ անի.*
*Հարամը գալիս ա հալալին տանմ.*
*Հտրսը հաց թխեց, տանտիկինը պարծեցաւ.*
*Հարուստ հրևանը օքուտ ա.*
*Հարսը դառայ, զուլ դառայ,*
*Թագի-թուլի չուլ դառայ.*
*Հաց ըլի՝ հուրին կուտի.*

Digitized by Google

Հացը Փօրիցը, որթին փորիցը·
Հըտեւակը ձիաւորին տնազ կանի.
Հեռաւոր խաչը զօրաւոր կըլի·
Հրէւանիդ համար մինը ուզի, որ Աստոծ քեզ էրկուսը տայ.
Հմբարտը պարկը կը մտնի.
Հչկէլը լիսինը կծնի, Աստոծ գիդի թէ ինչեր կը ծնի.
Հչվէլ ամբը գոռայ ոչ, անձրև չի գալ·
Ջեռիս մի ղուշը լաւ ա, քանց ծառի վրի էրկուսը.
Ջուգը Չըըմը կը մենձանայ.
Ղչերին աղօթարան չի կայ.
Ղուշն իր թևիցը քըեհ չի ուզմ.
Ճամփիցը դուս էկողի թշնամին ճամփէն կըլի·
Ճամփուցը դուս ըլնըլը չի ամօթ, ճամփայ չը գնալն ա ամօթ.
Ճամփորթի գնալը իրան ձեռին ա, գալը Աստծու.
Ճանջը ինչ ա, թէ իր ճենճը ինչ ըլի· կամ ծիտն ինչ ա թէ իրա եղն ինչ ըլի·
Մաղիանի քացին ուրց ձիուն օքուտ ա.
Մահը մարթիս ընգաճի եդի կռանն ա.
Մանի տօնին, մանի Ջատկին, մի մանիլ բարկենդանին.
Մարթս քուն, բախտը զարթուն.
Մենձ ծառը փչակ կըլի, մենձ մարթը փթռակ.
Մեծ տուն, մեծ ցաւի բուն.
Մի հայլին լաւ ա, քան օխտը տեքերակինը.
Մի փոր հացը մի Փոր հաց կը կտրի.
Մի փէտէ մարթը լաւ ա, քանց օխտը պողվատի տղէն.
Մի քօռ մարթը լաւ ա, քանց օխտը տեքրը.
Մինը մնով կապրի, էրկուսը Աստծով.
Մինն ա կտրել հազարի օղորմը.
Մի թիքայ հացի պատիւը չիմացողը հարրինն էլ չի իմանալ։
Մնին համփերողը տասն մնին էլ կհամփէրի.
Մողին ես եմ պահմ, ղայմախը մօքիրս ա ուտմ.
Մօրը թախտ, որթուն բախտ.
Շան պոչը որ կտրես, գառը չի դառնալ.
Շատ անողին շալ շաբիք.
Շաքարն անուշ ա, համա ամեն օր ուտվըմ չի.
Շաքարը որ ատամ ունենայ, իրան կուտի.
Շողոմքար գառը օխտը մօր կը ծծի.
Շոր տու՝ շնորքի գամ, հաց տու-ռանգի գամ.
Շունը ինչ գիդի շահն ինչ ա.
Շունը շան ոտը կծիլ չի.

Շունը շլակաւորի վրայ կը հաչի.
Ոնչ լաւին պատիւ, ոնչ վատին անարգանք.
Ոչխարի դմակը իրան բեռը չի.
Ով չի ծեծել իր կնգանը, նա վայ կտայ իր ծնգանը.
Որբէւերու փէշն էլ իրան ահ ա.
Որբվէրին գլուխը կտրած կնիկ ա, տանիցը դուս չպտի ըլիլ.
Որդի վէրք կայ՝ դիրք չի կայ, որդի դիրք կայ՝ վէրք չի կայ.
Որթին արմ հէրը յեղնէն, ապրանք արմ՝ տէրը յեղնէն.
Ուզովի թանը թէրէքը չի ըլիլ.
Ում բախտը ծռուեց, նրա ձին ախոռըմը էշ՝ կը դառնայ.
Ուռը քանի թէզ ըլօրես, լաւ կըլօրուի.
Ուշ արի, նուշ արի.
Ուրշի աչկը քի լիս չի տալ.
Զէլած տեղից Աստոծ էլ ա բէզարած.
Զմչակեր հարսը չէլած տարին մաշուր կըլի.
Զուստ ճամփայ ընգնողն ու չուստ պսակւողը չեն փոշմանիլ.
Պառաւութինը ակռաւութին ա.
Պարեմ գալիս ծիծաղըմ, ամա իմ պարիկս իմ մտից դուս չի ըլըմ.
Պարտկը որ հազարի հասաւ, ճուտով փլաւ կեր.
Պուճուր մարդիկ մինձ էրազ կտենան.
Պռաւած ախջիկը ծրգարթարի գլողն ա.
Ջահելութինը մաշի, պառաւութինը քաշի.
Ջան կասես, ջան կը լսես.
Ջան ունիմ աշխատելու, պահըմ եմ բաժանելու.
Ջուրն իրան ճամփէն կը գտնի.
Ջուրը պուճուրինն ա, խօսկը վենձինը.
Սարի ծաղիկը ֆոտ չի ունենայ.
Սէլը քիչ բարցի, չուստ եդ դարցի.
Սիրուն նշանած, հարուստ անէրանք.
Ստանէն իրա բունը քանդիլ չի.
Ստի վգէն իրա կշտին կլի.
Սրտով քարի վրայ էլ որ գնաս, կը կանանչի.
Վենձ ահին վենձ օղորմութին կայ.
Վենձի խօսքը թէ լսուի էլ ոչ, գեղնին մնալ չի.
Տաշած քարը գեղնին մնալ չի.
Տարին բերըմ ա, ֆողը պարծենըմ ա.
Տարին տարուն էրնակ կը տայ.
Տվարածի կուշտը մողարածին կը ղրկեն.
Ցաւը ցաւագարին կը բռնի.

Digitized by Google

*Ցորենի հաց չունես, կորեկի հաց բանացրու.*

*Փէտն ա սիրել աթարը.*

*Փորցածին կրկին փորցողն ա իմար.*

*Քաղցր լեզուն օցը ծակից կը հանի.*

*Քանդիլը ամեն օքմու բան ա, շինիլը քչի.*

*Քարը իր տեղը ծանդր կըլի.*

*Քեասիբի ջանը ախ ու վախով ա դուս գալի, հմա էլի օրը չորս հէտ սամ ա «Աստոծ ըղորմած ա».*

*Քիրը գնաց քուորանց, հէնց իմացաւ գնաց հօրանց.*

*Քոռ մոշահաւի բունը Աստոծ կը շինի.*

*Քոռը քոսին որ քոս չասի, սիրտը կը ճաքի.*

*Քու ձեռը տար քու սիրտը բռնի.*

*Օխտը քենակալ մի ձորըմ սալմին, վայ մի գրից անող ունենանք.*

*Օչով իրան թանին թթու չի ասիլ,*

*Օրէն ղարթ ա, տարէն կսկիծ.*

*Օրը գայ բարին հետը,*

*Օրն օրի վրայ բան ա լիս ընգնըմ.*

*Օցը ջուր խմողին դիբչըմ չի.*

*Օցի գլուխը լագլագը կը մարսի.*

*Օցի կծածը կը քնի, սովածը քնիլ չի.*

*Օցի չարութինը դըսից կլի, ամա խսանինը ներսից.*

## ԵՐԴՈՒՄՆԵՐ

*Աղկատ ֆոքիս գիդենայ.*

*Անհաղորթ մեռնիմ թէ...*

*Անըն հօրը գիդենայ,*

*Աստծու աղ ու հացին քօռ մտիկ տամ, թէ սասծնիս ըղորդ չըլեն։*

*Աստծու արդարութինը գիդենայ.*

*Աստծու ըղաքին սևէրես ըլիմ թէ...*

*Աստծու տակին եմ ասում, թող միջնորդ ըլի։*

*Աստոծ, երգինք, ծով, ցամաք.*

*Գեդինը մտնեմ, թէ սուտ ասեմ.*

*Դեղնաթիգունք սուրփ Նշանը վգայ ըլի։*

*Դժոխկի փայ ըլեմ, թէ...*

*Դու ու քու խղճմտանքը.*

*Ես ըլիմ էն բոզ ձիաւոր Ս. Սարքիսը.*

*Ես ոչ կարմիր ձու կլպեմ, թէ...*

*Երգինք գիդենայ.*

*Ջինաւոր սուրբ Գէորքայ զօրքը[1]) գիդենայ.*

*Էն ախպէրութինը գիդենայ.*

[1]) Զօրութիւն և ոչ թէ զինուորական ոյժը.

Էն անմահ պատարագը գիդենայ.

Էն անուշ քիր ու ախպէրու-թինը գիդենայ.

Էն առէք կերէքը գիդենայ.

Էն արթար ճամփէն վգայ.

Էն բաժակը վկայ.

Էն բարի լիսը գիդենայ.

Էն բարով Աստծու բարինը գիդենայ, որ…

Էն կաղնի սուրփ խէչը գի-դենայ.

Էն կանաչ մեռոնը գիդենայ.

Էն կապիտ Աստոծը գիդե-նայ.

Էն կարմիր Աւետարանը վգայ.

Էն նշխարքը վգայ.

Էն շղակոլոլ ըրեգնակը գի-դենայ.

Էն պաշտում պատարաքը գիդենայ.

Էն պէլացած րեքնակը գի-դենայ.

Էն բարի օրը գիդենայ.

Էս հացը գիդենայ.

Էս հացը ֆօքուս չգտնվի, թէ սուտ ասեմ.

Էս հացի բարաքեաթը վգայ,

Էս հացին քու մտիկ տամ, թէ մուխաննաթ դառնամ. կամ թէ մուխաննաթութին անեմ.

Էս հացի զօրքը գիդենայ.

Էս ճրաքի լսին կապուած մնամ.

Էս ճրաքը վգայ.

Էս սուրբ մատաղը վգայ.

Էս տէրտէրի կարգը գի-դենայ.

Թող Աստոծ գլխիս քար գցի, թէ…

Իմ ազիզ ճամփորթի տես-քին ոչ արժանի ըլիմ, թէ…

Իմ ախչկայ ձի էլած ճամ-փէն գիդենայ.

Իմ ախպօր ազիզ արևը.

Իմ աղ ու հացը քու աճկե-րը կապի, թէ…

Իմ արևը գիդենայ, իմ ա-րևս վգայ.

Իմ հօր գերեզմանը գիդե-նայ.

Իրան, Քրիստոսայ անըմը կտամ ու ֆող ծուլ կանեմ, հաւատայ.

Իրար հետ կերած աղ ու հացը դիդենայ.

Կամակատար քաղցր Աս-տոձաձինը վգայ.

Հօրս ֆօքին գիդենայ.

Ծրագի հետ հանգչեմ, թէ սուտ ասեմ.

Մեր մէր ու որթութինը գիդենայ.

Մուրազատու սուրփ Սար-քիսը գիդենայ.

Յութի ղաւակ ըլեմ թէ գի-դենամ.

Էն օրը մահ ըլի ինձ, որ…

Ոչ հասնում իմ մուրազին, թէ…

Պարտական մնամ աւուր դա-ղաստանին.

Սուտ ես խօսըմ, ֆօքուդ ծանդրութին տալ մի։

Սուրփ աւազանն ու մեռո-նը վգայ.

Քու աղ ու հացին կապուած ըլեմ.

Digitized by Google

Քու աղ ու հացին քոռ մըտիկ տամ, թէ սուտ ըլեմ ասելիս.

Քու անուշ բարովը գիդենայ.

Քու օխտը պօրտի մեղքին տէր ըլեմ, թէ...

Օջաղի խէր ու բարաքեաթը վգայ.

Ցող ու ջուրը վգայ.

Ցօքիս սատանի փայ դառնայ, թէ...

## ՕՐՀՆԱՆՔ

### Մանուկներին

Արեգ ապրի.

Արևիդ մեռնիմ.

Արևով կշտանաս.

Արևս արևիդ ղուրբան, ջանըս ջանիդ։

Բարի իշատակ ըլիս.

Բարին քեզ մօտ.

Գլխիդ ու արևիդ մատաղ.

Գլխովդ պտիտ գամ.

Ըմբրարև ըլիս.

Ծառի պէս ծաղկիս, ծաղկի պէս ֆոտ տաս.

Ծլիս, ծաղկիս.

Կարմիրդ կապենք.

Հալալ կաթնակերի արժանի ըլիս։

### Նորապսակներին.

Աչքի լուսով պառաւիք.

Աստուած անփոշմանելի անի.

Բարով սև օր չը տեսնուք.

Թագ ու պարծանք ըլիք.

Թագիդ հետ երգարիս, թագուհի։

Ճղկճղկնոտիս.

Մի բարցի ծերանաք.

Մուրազիդ հասնուս.

Ձեր առջնեքը տղայ ըլի.

Տէրդ ապրի.

Փնջփնջնոտիս.

Ցօգուդ վրայ լիս վէր գայ.

Ցօգիդ սրբերի դասը դասուի.

### Սկեսուրը հարսին.

Անուշով հարս դառնաս, բարով խէրով իմ տարսը դառնաս.

Ազու ծիծը քեզ բարեխօս.

Աչքի լըսով, ցամաք աչքով ապրիք.

Բար ու նուբարը արևներիդ.

Ձախու ծիծս քեզ պհապան.

Շէն մնայ քու հօր տունը.

Որդկերանցդ արևի խէրը տեսնուս.

Քու աչքը քի էրնէկ տայ.

Քու գլխի տիրոջ հետ երգարիս.

Քու տէրդ ապրի.

Քու տէրդ գլխիցդ անպակաս ըլի.

Ծոցինդ ապրի.

### Ծննդկանին.

Աշխարքին պէտքական, ամենքին սիրեկան-դիրեկան ըլի.

Աչքդ լիս, բաղդաւոր գաւակ ըլի.

Աստոծ օխտը ձեռով քեզ բաշխի.

*Աստծու աչքը վրէդ քաղցր ըլի.*
*Հօրով մօրով վենձանայ.*
*Մնացական զաւակ ըլի.*
*Հազար ճուխկը տաս.*
*Օխտը որդու հէր (կամ մէր) ըլիս.*

### *Տառսէրին.*

*Կուռդ երգէն ըլի.*
*Կուռդ կանանչ.*

### *Հիւանդին.*

*Աստոծ ինքը ճար անէ քու անճար ցաւին։*
*Աստոծ լաւութին տայ, առողջութին ու սաղ սլամաթ ջան տայ։*

### *Սքաւորին.*

*Արքայութենի փայ ըլի.*
*Աստոծ փոքին լուսաւորի.*
*Աստոծ ձեր սիրտը մխիթարէ։*
*Աստոծ յիշատակնին օխնի.*
*Աստոծ Նրա դատաստանը քաղցր անէ։*
*Աստոծ Նրա մեղագիրը ջընջէ, կենած դաւթարին գրէ։*
*Դուք ըլէք ողջ։*
*Ինչ Նրան օր ա պկասել, Աստոծ բաշխի իր ըրեխանցը։*
*Լիս վէր գայ գըրեզմանին.*
*Հոգով սրբով մխիթարուիք.*
*Ձեր գլուխն ապրի.*
*Նրա փոգին բարեխօս ըլի իր յիշատակներին։*
*Ողորմի փոգուն.*

### *Ծերունիներին.*

*Արածդ որդկերանցդ ադաբը գայ։*
*Լիս դառնաս, լսի փայ ըլիս.*
*Լիս հոգով զարդարուես.*
*Հայր Աբրահամու գոքը գընաս։*
*Որդկերանցդ մի բուռը հոգին արժանի ըլիս։*
*Սիմոն ծերունու դասը դասուես։*
*Քի արքայութին.*
*Փայըդ Աստծանէ առնուս։*

### *Քահանային.*

*Աստոծ կարգիդ հաստատ պահէ։*
*Ժամ պատարագի ըլիս.*
*Կարգիդ հետ երգարիս.*
*Մուղարար (միշտ) աղօթարար ըլիս։*
*Պաշտըմ պատարագի ըլիս։*
*Փառոց կենաս։*

### *Սեղանն օրհնելիս.*

*Աստուած օխնէ, շէն պահէ, ձեր սեղանը շէն պահէ։*
*Աստծու տան հետ շէն կենաք, շէն ու շհար ըլիք, բահր բհար ըլիք։*
*Ես պակասացրի, Աստոծ էւելցնի։*
*Համաշայ ձեր սուփրէն գըցած ըլի, գաւով գինին դրած ըլի։*
*Ձեր տունը հայր Աբրահամու օջախը դառնայ։*
*Օջախդ շէն։*

Digitized by Google

### Նոր հանդերձ հագնողին.

Առողջութինի ըլի։
Բարով մաշես, հինն ինձ բախշես. կամ—բարով մաշես, հազարը մաշես։
Շնհաւոր ըլի։
Ուրախ օրով, կուշտ փորով մաշես։
Ջան սաղութենի ըլի։
Փեսայութինի, հարսնութինի ըլի։

### Մատաղ անողին.

Աբելան գառն ըլի։
Սաթեկան ոչխարն ըլի։
Արնափոխ ըլի։
Առ Աստոծ համնու։
Մատաղդ ընդունելի ըլի։
Սրտիդ մուրազին հասնիս։

### Ճանապարհորդին.

Աջն ու խաչը քեզ պահապան։
Աստուած հըմմաշայ հետդ ըլի։
Բարի հրեշտակը քեզ ուղեկից ըլի, բարով տեսութինիդ արժանանանք։
Բարի ճամփայ, բարով գընաս, բարով գաս։
Ճամփէդ փունջ մանիշակ դառնայ։

### Բարեւ բերողին.

Բարին արեւդ։
Բարին բարեւ բերողին էլ, ղրգողին էլ։
Բարեւամ կենաս, սաղ ըլիս։
Բարու նուբարը վրէդ։

### Նոր տուն շինողին.

Աստծու շէնքն ու շնորքը վրէն։
Բարով վայելէք։
Դովլաթբաշին աղօթող ըլի։
Էս տան հիմքը հաստատ ըլի.
Մէջը ծերանաք.
Շէն մնայ էս տունը.
Շնորհաւոր ըլի ձեր նոր շինութինը.
Տան բարի հրեշտակը անխռով ըլի.
Կանաչ ու կարմիր օրով ապրես։

## ԱՆԷԾՔ.

### Մատաղահաս աղջիկներին անիծելիս.

Լէզգու գուլակ ընկնիս.
Ծամդ փէտվի.
Պրծկվես դու.
Վարդդ վէր գայ.
Քու մաֆրաշդ կապած մնայ.
Մի հատ քօշով օխտը տուն մտնես, թէ տուն չգտնես, օձի բուն մտնես, օձի բնումն էլ ութ օր քուն մտնես։
Մազս ըմբարես.
Տորերդ անծակ մաշես.
Ոչ բզըզնես.
Քօղրած քուշուշկի հասրաթ մեռնես։

### Փոքրահասակ տղաներին եւ աղջիկներին անիծելիս.

Արին լուիկ ըլես.
Արեդ խուարի.
Թագդ մաարին գցեմ.
Թախտիդ նստած մեռնես.
Խուարես դու.
Կանաչ ու կարմիր օրդ թաղեմ.
Կարմիրդ արնով կապեմ.
Կկոմած, կկոռնած թաղեմ քեզ.
Ոչ կկոնես.
Ոչ թագի ու պսակի արժանի ըլես.
Ոչ կարմիր օր տեսնուս.
Ջուր կտրվես դուն, պակսես դուն.
Սև ծիծաղեմ վրէդ.
Սև ուսպանգ կապեմ վրէդ.
Քու մէրը վայ խաբարիդ պար գայ.
Օրդ սև մթնի.

### Սկեսուրը հարսին անիծելիս.

Հօրդ տանը սօկոն դուս գայ.
Հօրդ օջաղը բոստանատեղ դառնայ.
Սևալաչակ ըլես.
Քու դուս էկած օջախը բըրընկավերուի.
Քու դուս էկած տանը ցաքի փուշ դուս գայ.
Քու հօր տան կտրովը դարման ածեն.
Քու հօր տան շէմքը շարուի, դուռը չփարուի։
Քու հօր տան դուռը դուն գնաս բաց անես.

### Ընդհանուր անէծքներ.

Աբուրդ վէր գայ.
Ատակը գնաս, ոչ եդ գաս.
Ախ անես արին գայ.
Աղ անեմ, մրմունջ անեմ, աչկերդ ածեմ.
Աղ ու հաց տանես էն դունիէն.
Ամագս աչկերդ քոռացնի.
Անխօսը ընգնի ջանդ.
Անիշատակ քարին նստես.
Անումդ Աստծանէ կտրի.
Անձիլ-անձիլ ըլես.
Անջուր քարեքար ընգնես.
Աչկերդ մէկ.
Աչկիդ լիսը հանեմ, տեղը փլփիլ ցանեմ.
Աչկմդ քոռամեխ վեր տան.
Աստծու անհատնելի կրակը ջանդ ընգնի.
Աստծու հուր կրակին գաս։
Աստուած գլխիդ խռով կենայ.
Աստոծ ինձ տեսնու քեզ վեր ունի.
Աստոծ հացդ կտրի.
Աստոծ քեզ քոս տայ, դունգ չի տայ.
Արածդ փօքուդ աղաքը գայ.
Արևը կտրովը տեսնուս, անձրևը դռովըն.
Արեդ թաղեմ.
Բմբլահան ըլես, եախէդ ծամես.
Բոյդ խամ թելով չափեմ.
Բոյդ կաման վրայ լւանամ.

Բրիշակ ըլի քու գուս էկած կալը։

Գեղնագիլլի գաս դուն։

Գեղնին գերի ապրես։

Գլխիդ ձին գայ։

Գլխիդ քար ընգնի, անհուն կրակ ուտես։

Գնալդ ձգան ըլի, գալդ տարեխի։

Գրող։

Գրողատար։

Գրողը ըրէսիդ։

Գրողը բգիցդ կպչի, պոկ չի գայ։

Գրողը քոռանայ, որ քի կարըմ չի գդնի։

Գրողը քի տանի

Գրողի խեղդած։

Գրողն ինձ տեննու, քի վեր ունի։

Գրողն ու մահը քեզ խեզտի։

Գրողի դաւթարում գրուես։

Գրողի ջիդէն փորդ մտնու։

Դագածդ բարցիդ տակին ուտես։

Դռներին մնաս։

Դօշիդ կրակ անեմ։

Եղին քի տանի։

Էնգար ապրես, որ բողոճ դառնաս։

Էն ղդամ ապրես, որ որցակին վեր ըլես։

Էնղդամ ապրես, որ ասեղը տնգես ու շուաք անես։

Էն օրը ընգնես, որ շունը ձեռիցդ հաց չառնի։

Էս լիսաթաթախ օրը քի խռով կենայ։

Էրէսդ տախտակին լուանամ։

Ըմբրաքամ ըլիս։

Ընդի գնաս, որ ոնչ վարմ են՝ ոնչ ցանմ։

Ընկրծակլի գաս։

Ումբրդ լօրի պոչ դառնայ։

Ըրէցի փայ դառնաս։

Իմ ցաւս տանես։

Ինչ արել ես,քու աղաքը գայ։

Ինչ բերանիցդ դուս գայ,
Ծոցդ ու գոքդ դառնայ։

Բերանդ խան դառնայ, ծոցըդ Ջվալ։

Լաշիցդ արին Ջուր գցես
Կաշիդ վրէդ շուռ գցես։

Լաւ լարանի գաս, հաստ պարանի։

Լաւ լարի գաս, սուր դնակի։

Լէգզու ճանգ ընկնես։

Լէգզու քէչուտը գնաս։

Լիզուդ ծրծորանքովդ դուս գայ։

Լեզուիդ տակին ոսկոր դուս գայ։

Լիքը օրօրոցին հարաթ մնաս։

Խաւար պատը նստես դու։

Խէչերի դուռը ղօչով ման գաս։

Ամեն օր փնջաց ղօչով ման գաս։

Խնչեմ վրէդ։

Ծառով, ճղնով թաղեմ քեզ։

Ծիծդ ծկծկորուի։

Ծծերըմդ փիլթա[1]) բանի։

Կանաչ օրդ կտրի։

Կանաչ խլէզ մտնու անգաճդ։

Կանգնես միսդ քրքրուի,
Նստես ոսկորդ՝
Կապանքը փորիդ թաղեմ

[1]) պատրոյգ։

Կարկուտս քի տանի.

Կրեմ գլուխդ.

Կորչես, կրափորն ընգնես.

Հացդ ձիաւոր դառնայ, դու ոտաւոր.

Հացմուր գառնաս.

Հենց դժարանաս, որ բամբակով ջուր տան.

Հինէդ քամուն տամ.

Հրաշքը քի տանի.

Հրեղէն Թուրը տունդ ընգնի.

Ձեռդ կանաչի մեգնես փուշ գայ.

Ձիաթափ ու սեաթափ ըլես.

Ձի էլած ճամփէդ Աստոծ անըծի.

Ճամփէդ փուշ ու տատասկ բսնի կամ—դառնայ.

Ճարու լէզվին քի տանի.

Ճաքած ցորնի հասրաթ մընաս.

Մազիդ հմբարքովը մին տընքաս.

Մահը բգիցդ կպչի.

Մահի դուռը գնաս.

Մաշուես, մշմարանք դառնաս,
Հինուես, հին լիսին դառնաս.

Մէր փօղին արժանի չըլես.

Մին էլ ոչ էս օրը հասնես.

Մի ջուխտ քօշով օխտը տուն մտնես.

Մխդ շունը ծամի, արինդ ես խմեմ.

Մորու Թերի տակին շաք անես.

Մուրազդ փորըմդ մեռնես.

Մտմտուկ ըրեքնակը քի տանի.

Շուն ու գէլի փայ ըլես.

Ոչ ըղաքիդ քինԹը կալած հարսը տեսնաս, ոնչ էլ բեխը ըլօրած որդի.

Ոչ կարմիր օր տեսնաս.

Ոչ կարմիր ձու կլպես.

Որդիդ Թորոնն ընգնի.

Ոսքու պէս կռանաս,
Բարդքու պէս չորանաս.

Ոտդ դէնը, կրունգդ դէսը.

Ուսպանգդ փշին տամ.

Չարի դաւԹարըմը գրուես.

Չոր քարին էրնակ տաս.

Չոքէչոք խաչի դուռը գնաս.

Չքուիս չորանաս, չոր քարին պպզես.

Պատանըդ սև Թէլով կարեմ.

Պատէ պատ ման գաս.

Պէլացած ըրեգնակը քի տանի.

Պտուղդ կարեմ. կամ պտուղըդ դուս գայ.

Ջիգեարդ պէծին ընգնի.

Ջուր կտրես.

Ջուր մաղուես դու.

Ջուրս քի տանի.

Սեալաչակ.

Սեակոլոլ ու դուշկուն ապրես.

Սև խաւարը գնաս դուն.

Սև ուսպանգ կապեմ վրէդ.

Սև սրի գաս, արին Թրի.

Սև քարը գցեմ վրէդ.

Սև օցը կծի քի.

Սև օց դառնայիր, պատը քաշուէիր, բհամ չդայիր, լէշիդ վրայ մղկտամ.

Սիրտդ պէծին գցեմ.

Սուր սրի գաս, ալմաղ Թրի.

Սրտիդ ծէրը կուլ գնայ.

Սրտամեռ.
Վա՜յ հալիդ.
Վայ տամ էտ գլխիդ.
Վայ նստեմ.
Վարձկդ շունը տանի.
Վարսըս վրէդ շաղեմ.
Տրտէրպատար ըլին շորերդ.
Տունդ ու տեղդ մոխիր դառնայ, մոխիրը քամին տանի.
Փայդ Ուռնէին կալիցը կըտրուի.
Փորդ կշտանայ ոչ.
Փորդ լիքը տէնուս, կողքդ դարդակ.
Քանց փշատի կռանաս,
Քանց ճրճատուկ չորանաս,
Քանց բարդի երգարես։
Քար ընգնի գլխիդ.
Քեափուրի հանդը ընգնես.
Քեզ բալի շորով շուռ տան.
Քեզ տեննում գունդ ու կծիկ գաս.
Քօռ մահը բուգդ.
Քու բերողը խորը գնայ.
Քու խուրջինը քօշմարած մնայ.
Քու մինը ոչ էրկու դառնայ.
Քու մօր որթին թորոնը ընգնի.
Քու օխտը ախպէրը մի պատանըմ դնեմ.
Քու կլոլող տատի կոնները չորանայ.
Օրդ թաղեմ.
Օրդ ու ումբրդ գեդինը դընեմ.
Օր ու մէջ ապրես.
Օցը իրա պորտովը, հաւքը թեւովը սէյրիդ նստեն։
Օցի բնին էրնէկ տաս.
Ցողը քու գլխին.
Ցոքիդ Ֆոքու ոչ խառնուի.
Ցոքիզ սատանի փայ դառնայ.
Ցողեմ էդ շաշ գլուխդ.
Ցոքիդ հուրը մաշի.
Ցոքիդ ստանէրոց ըլի.
Ցոքիդ ստանէն տանի.

## Անասուններին անիծելիս.

Ըղանձուիք հա՜.
Սեակօլօլ ըլիք.
Ըրիցատար ըլիք.
Վանքը գրուէք.
Տէրատրաք ըլես.
Սոնգ ըլէք.
Թոքդ պծպէծեմ.
Կաշիդ ղարղու տամ.
Շիմալ շշմակ մեռնես դուն,
Դառը մշակ մեռնես դուն.
Կաշիդ հաքնեմ.
Ոսկոռներդ իրարից ըլի.
Ջիգեարդ շներին տամ.
Տմազըղահան ըլէք։

## Բոշաները միմեանց անիծելիս.

Անմաղ մեռնես դուն.
Թորնով հաց թխես ճակատըդ էրուի.
Պարկլի հացին հասրաթ մեռնես.
Հօ, հօ էնիս, չօ, չօ չէնիս։
Ջոզռան իշու ձէնին համաշայ կարօտ քաշելով մեռնիս։
Գուլթնի ճռճռոց իմանաս,
Իշի զռզռունի կարօտ մնաս.

Սօփայ իշու կաթին հասարաթ մեռնիս.
Զաղցի փաթերակին գաս.
Սև օջօրքի տակին ալիր մաղես.
Սև յարկի տակին ապրես.
Տաշտի հաց ուտես.
Օջօրք մրոտես.

ՓԱՂԱՔՇԱԿԱՆ ԽՕՍՔԵՐ

Աղիզ որդի.
Անուշ ջան։
Աշխարհի բարեբար.
Աչքիս լիս.
Արև ջան.
Գլխիս տէր.
Թագաւոր ջան.
Թոմփլիկ ջան.
Իմ աչու կուռը.
Իմ ճար ու իմ դարդ.
Իմ տէր ու տիրական.
Ծոցիս գառը.
Շահ ու սուլթան.
Պարոն ջան.
Պարոնս որ դու ես.
Ջան բալայ.
Ջանիդ մատաղ.
Սիրուն բալայ.
Փաշայ ջան։

# ՀԵՔԻԱԹ

## ՕԽՏՆ ԱԽՊԷՐ ՄԻ ՔԻՐ.

Էլել են չեն էլել օխտն ախպէր։ Էտ օխտն ախպէրը քիր չեն ունենըմ. դրանք մի հետ տանիցը դուս գնալիս, մօրն ասըմ են թէ. թէ որ տղայ բերես, գութանը կդնես կտուրը, թէ որ աղջիկ՝ ջահրէն. մենք էլ որ տենանք գութանն ա դրած, էլ գալ չենք, թէ որ տենանք ջահրէն ա, կգանք։ Ասըմ են ու գնըմ։ Մէրը խտոր ա ընգնըմ, աղջիկ ա բերըմ, հմա տատմէրը սխալըմ ա գութանն ա դնըմ կտուրը։ Ախպէրտինքը հեռուանց եփ որ գութանը տենըմ են, թողըմ են գնըմ։ Էդ աղջիկը վենձանըմ ա. սրանք էլ մի շուն են ունենըմ, անըմը Պուլտիկ։ Մի օր հրևանների աղջկերանց հետ իրանց տան գիմացի ծառի տակին գուլբա անելիս, մինը իրան թևը կորցնըմ ա։ Ջիմն էլ իրանց ախպօրտանց արևովը օրթըմ են ուտըմ, որ տեհել չեն. սա էլ իրանց Պուլտիկի արևովն ա օրթում ուտըմ։ Ննգերտինքը ասըմ են, խմ չես ախպօրտանցդ արևովը օրթում ուտըմ, դու օխտն ախպէր ունես։ Գնըմ ա մօրը հարցնըմ ա, նա էլ ասըմ ա թէ հա դրուստ ա։ Վեր ա կենըմ էս աղջիկը գնըմ ախպօրտանցը ման գալու։ Գնըմ ա գնըմ, տենըմ ա մի տուն, տենըմ ա էտ տան միջին ամեն բան կայ, հմա օքմին չկայ. ըտի կերակուր ա էփըմ, պատրաստըմ ու ինքը տապ ա կե-

նըմ։ Դու մի ասիլ էդ տունը իրան ախպօրտանց տունն ա։ Ախպէրտինքը գալիս են տենըմ կերակուր էփած, տունըն աւլած, խատակած, ամէն բանը սարքին-կարքին, հմա կարըմ չեն իմանան թէ էս ով ա արել։

Էքսի օրը ախպօրտանցի մինը մի տեղ տապ ա անըմ. էփ որ քիրը տենըմ ա որ ոչով չկայ, դուս ա գալիս. էն վախտը ախպէրը տէնըմ ա սրան ու բռնըմ. վերչը հարց ու փորձով իմանըմ ա որ իրանց քիրն ա։ Րիգունը որ մէկէլ ախպէրտինքն էլ տուն են գալի, Նրանք էլ են իմանըմ ու շատ ուրխանըմ են։ Դրանից եդը օխտն ախպէր մի քիր իրանց հմար արխէին ապրելիս են ըլըմ։ Մի օր էփ որ ախպէրտինքը տանը չեն ըլըմ, էդ աղջիկը մի չամիչ ա գտնըմ։ Գուլտին ասըմ ա ինձ տու, թէ չէ կփչեմ թոթոնդ կհանգցնեմ. նա տալիս չի-նա էլ փչըմ ա հանգցնըմ։ Էդ աղջիկը գնըմ ա կրակ բերելու. գնըմ ա գնըմ, տենըմ ա հրէս մի տեղից ծուխ ա վեր ըլըմ, մօդանըմ ա, տենըմ ա որ հրէս կրակի ղըրաղին մի պառաւ կնիկ ա նստած, քառասուն փութ արճիճ բերանը գցած մաստակի տեղ ծամըմ ա։ Էս պառաւիցը կրակ ա ուզըմ. պառաւը համ կրակ ա տալիս, համ էլ մի բուռը մոխիր, որ իզակորուստ չլի։ Էփ որ էդ աղջիկը ետ ա գնըմ, էդ պառաւի տղէն, որ մի դև ա ըլըմ, գալիս ա, մօրիցը իմանըմ ա որ տհենց բան ա էլէլ, ու էս աղջկայ իզը բռնած գնըմ ա հասնըմ Նրանց տան դռանը. ասըմ ա դուռը բաց արա քեզ հմա զարթարանքնի եմ բերել. էս աղջիկը բաց չի անըմ. էփ որ տենըմ ա որ դուռը բաց չի անըմ, ասըմ ա թէ մատդ դռան ծակիցը հանի, մտանի դնեմ մատըմըդ. էփ որ մատը հանըմ ա, դևը մատը կտրըմ ա ու գնըմ։ Էս աղջիկը Նղաւըմ ա վեր ընգնըմ։ Ախպէրտինքը գալիս են տենըմ դուռը եդնափակ տըւած, կտրովը տուն են մտնըմ, տենըմ են իրանց քիրը Նղաւած, եդ են բերըմ ու իմանըմ են ամեն բան ինչ որ անց ա կացել։ Գնըմ են դևին սպանըմ ու բերըմ իրանց տունը մի ֆորըմ թաղըմ։ Դևի մէր պառաւն էլ գալիս ա ու զոռով դրանց տանն ապրըմ ա։ Ախպէրտինքը ասըմ են որ ֆորի վրայ ջուր չածեն, պառաւը խաստի թաքուն ածըմ ա. էդ ֆորի վրայ խոտ ա դուս գալի, ինչըդար քաղըմ են, էլ եդ դուս ա գալի։ Ախպերտինքը թամբահ են անըմ որ էդ խոտիցը գցեն ոչ կիրակրի մէջ, հմա պառաւը թաքուն գցըմ ա. ախպերտինքը էդ կիրակուրը ուտըմ են ու ղոչ են դառնըմ։ Վենձ ախպօր անըմը Աւագ ա ըլըմ։ Քիրը էդ Աւագի շորերը հագնըմ ա ու տանըմ ա դրանց ըրածացնելու։ Ղոչ-ախպօրտանցը ըրածացնելու վախտը, մի հետ թագաւորի տղէն ջըհըմ ա էս աղջիկ-չոբանին, շատ հաւանըմ ա, վեր ա ունըմ էս աղջկանն էլ ղոչերին էլ, տանըմ

ա իրա ըմարաթը, ու էդ աղջկայ վրայ պսակւըմ ա ու ղոչերին էլ պատուով պահըմ են։

Թագաւորի բարեգամ կնանիքը տենըմ են որ Թագաւորի տղէն էդ աղջկանը շատ ա սիրըմ, ուզըմ են դրան մի փոթոցի բերեն. մի հետ դրան հետներուն տանըմ են Ջրըմը լեղանալու ու գցըմ են Ջուրը. էդ կնանոնցի մինը հագնըմ ա նրա շորերը ու գալի տուն. Թագաւորի տղէն սրան ճնանչըմ չի, հենց գիդենըմ ա թէ իրան կնիկն ա. սա սուտ հիւանդանըմ ա ու ասըմ ա որ Աւագ ղոչը մորթեն, իրան ուտացնեն։ Թագաւորի տղէն զարմանըմ ա թէ էդ ղոչին էնղադար սիրըմ իր, հմի ոնց ես ղիմիշ անըմ, որ ուզըմ ես մորթես ուտես. սա թէ ինչ անեմ, կենքը քաղցրն ա, իմ դեղն էլ էն ա։ Կրակը վառըմ են, դանակնին սրըմ են, գնըմ են որ ղոչին բերեն. եփ որ էն Ջրի վրիցը անց կացնելիս են ըլըմ, սա լիզու ա ըլըմ ու ասըմ.

Սուրը սրել են, Ջուրը դրել են,
Քիրա ջան, դուս արի։

Էն սահաթին քիրը դուս ա գալիս Ջրիցը։ Թագաւորի տղէն սրան որ տենըմ ա, ճանանչըմ ա. էն ստանայ, սուտ հիւանդ կընգանը կապել ա տալիս ղաթրի պոչիցը ու քշիլ տալիս. եդնա թագաղան էդ աղջկայ վրայ հրսանիք ա ըլըլ. ու դրանից եդը ղոչերին շատ լաւ պահըմ են։

Բարին ըստի, չարին ընդի։

Էստածանէ իրեք խնձոր վեր գայ, մինն ասողին, մինը լսողին, մինն էլ ալամ աշխարհքին։

